# ԴԱՐԱՊԱՏՈՒՄ

Տեառն Հ. Ղուկասու Վարդապետի
Ինճիճեան

Ի Միաբանութենէ Մխիթարեան։



ՈՐ Է

## ԱՇԽԱՐՀԱՄԱՐ

ԿԱՄ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Քաղաքական, Եկեղեցական, Ուսումնական,
և Արուեստական.

Դարուց ի դարս բաժանեալ։

-Դ-

ԴԱՐ ՈՒԹՈՒՏԱՍԱՆԵՐՈՐԴ

1780—1789

Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1826



# ՊԱՎԻԷՐԱՅԻ

## Պատերազմը .

1777 — 1778 ։

Ամերիկայի ծեծէն ետև երբոր ամէնը կըսպասէին մէկ հաշտութիւն մը տեսնալու Եւրոպայի թագաւորներուն մէջ, ուրիշ մէկ նոր պատերազմ տեսան թէ ով ըլլայ պավիէրային ժառանգը ։ Վասն զի 1777 դեկտ . 30 մաքսիմիլիանոս յովսէփ դուքս և կայսրընտիր պավիէրայի 50 տարվան մեռաւ ծաղկի հիւանդութե̃ . ասոր կողակիցն էր մարիամ սոֆիա դուստր Գ̃ . օգոստոսի սաքսոնիայի կայսրընտրին, որ եղբր լեհի թագաւոր եղեր էր, ինչպէս որ առաջները պատմեցինք ։ Աս մաքսիմիլիանոսին

մահը մեծ կսկիծ ձգեց ժողովրդեան մէջ, մէյմը որ մէկ զաւակ մը չթողուց, վերջինը եղաւ վերդելապախին Չիւղին, անանկով կուլխելմեան ցեղը վերջացաւ. մէյմընալ որ ինքը խիստ աղէկ մարդ էր, քաղցրաբարոյ, բարերար, մարդասէր. և թէպէտ քիչ մը բռնաւորական կառավարութիւն ունէր, բայց միշտ բարեխառնեալէր. խելքին փչածին կեօրէ չէր բանեցըներ իրեն իշխանութիւնը։ Նորբոր 1745 թախտը նստաւ՝ ամենէն պավիեռուան ավրըված գտաւ իր հօրը է. կարոլոս կայսեր զօռողութենը բարձրամտութենը համար. իր առջի հոգը եղաւ երկիրը խաղաղացընել, երսունվերկու տարի խոհեմութեք կառավարելով անանկ ծաղկեցուց որ ոչ երբէք անանկ եղէրէր։

Բայց ամենէն մէկ թագաւորաց ցեղին հասնելուն՝ մէյմէկ մեծ չարիք հետևերեն, աստալ հիմա անանկ եղաւ։ Մաքսիմիլիանոս մեռածին պէս՝ բալադինօ ուէնօին կայսրընտիրը՝ որ կըսվէր կարոլոս թէոդորոս՝ մաքսիմիլիանոսին տեղը նստաւ, գործակից իրեն ունենալով զյովսէփ. վասն զի յովսէփ կայսրը միշտ ուշադիր ըլլալով չըլլայ թէ խռովութիւն մը ելլայ պավիեռային յաջորդութենը վրայ, առաջուցմէ բալադինօյին կայսրընտրին հետ խօսք դըրեր էր որ ինքը ամենէն մօտիկ ժառանգը ըլլալով իրեն կինար, որովհետև պավարեան սուլցպախ (կամ վերդելապախ) ցեղէն էր ինջած։ Ոս բանիս վրայ իրեք տարի առաջ պաղ-

տակ մէջերնին խօսք կապեր էին պայման դնելով մէկ քանի թէութիւններով. Հիմա ան թէութիւններուն զօրութիւնը վերոյիշեալ Թէոդորոս բալադինեան կայսրընտիրը շուտ մը Մոնաքօ եկաւ որ պավիերային մայր քաղաքն է. Հոն հանդիստ մնալով կայսրընտրին դարպասը ( սերայը՝ ) որ մեծաշէն դարպասներէն մէկն է, տէր եղաւ պավիերային՝ ու անոր տակը եղած գաւառներուն, Թէպէտև ամմէն Թագաւորներէն աւելի ծերն էր ։ Նոյն տարին 1778 յունվ. 3. վեննայի մէջ մէկ դաշնադրութ՟ մը ստորագրեցին հինգ գլուխ բաժնըված, որուն մէջը ստանկ էր գրված ։ " Այս բալադինօ պա-
» վարեան կայսրընտիրս օրինաւոր կըճանչ-
» նա՛մ աւստրիական արշիդուքսին ցեղին խըն-
» դիրքը, (1) որ կըպահանջէ զօրութ՟ ան
» հաւանութ՟ը՝ որով սիգիսմոնտոս կայսրը՝
» Ե. ալպերտոսի աւստրիական դուքսին իր
» փեսային տրված ամմէն երկիրները ու
» գաւառները՝ որ յոհաննէս պավիերային
» դուքսը ձեռք ձգերէր (2). Նոր համար
» ես հիմա դէմ չեմ դներ կայսեր՝ որ վե-
» րոգրեալ երկիրները իրեն կառնէ. Նաև
» օրինաւոր կըճանչնամ ան իրաւունքը՝ որ
» աւստրիական տունը կըպահէր մինտել-
» հէյմ կոմսութ՟նը վրայ (3), և ուրիշ կա-

---

(1) Որ է նոյն իսկ յովսէփ կայսեր ցեղը ։
(2) Ասիկայ ձեռք ձգած էր զօրութ՟ ան դաշնադրութ՟նը՝ որով 1353 երկիրներ բաժնեցին ։
(3) Աս կոմսութիւնը սըվէվիայի շրջանակին մէջն է ։

„ լուածոց վրայ՝ որ պօէմիայի Թագաւորէն
„ են կախուած „ ։

Աս դաշնադրութիւնը հաստատուածին պէս՝ Զ․ Յովսէփ կայսրը խորհուրդին մէջ առաջարկեց որ շուտ մը զօրք խրկէ, ան երկիրները առնէ ․ աս քանի կըսէին որուն իր մայրը Մարիամ Թերեզիինա կայսրուհին չուզեց հաւանութիւն տալ՝ բռնաւորական սեպելով, ուսկից կիմանար որ դեռ հետեւութիւններ պիտոր հետեւէին, բայց իր որդին Յովսէփ կայսրը՝ և իր վեզիրը քաունից՝ որոնց խօսքը աւելի կըքալէր, շատ պատճառներով համոզեցին ընդունել տըլլին ։ Ասոր համար շուտ մը 18 հազար աւստրիական կամ նեմցէի զօրք գացին լանտշուդ և ըօդրավլինկա՝ որ վարի պավիէրա կըսվին, շամպ կոմսութիւնը՝ որ պօէմիայի և բարձր բալադինօի մէջն է, ըսքարտինկա քերդը՝ որ Ինն ըսված գետին վրայ է ․ ասանկ ալ 8 հազար զօրք գացին առին զանազան կոմսութիւններ ու կալուածներ՝ որոնց տիրվըտանքը մեռած ըլլալով պարապ էին, որոնցմէ մէկն ալ լուչէմպեռկին լանկռավիան էր, որուն վրայ գերմանիային շատ իշխանազուն տունը կըպնդէին Թէ մերն է ժառանգելու իրաւունքը ։

Աս երկիրները Յովսէփ կայսրը առաւ ապահովցընելու համար իբր գլուխ կայսերութեան, ծանուցանելով ամէնուն որ՝ աս կալուածները իր քովը պիտոր մնան իբր աւանդ մը, ինչվոր որ կատարեալ բացորոշվի ժառանգութեան իրաւունքը՝ որուն որ կինայ ։ Բայց աս ստոյգ է որ՝ ասանկ զօրա-

ւոր աւանդ պահօղ արծիւ մը, ամմէն թըռ-
չունները տիրմըտանքը կըվախցըներ բաժին
առնելու ։

Պրուշէն Թագաւորը Բ. Ֆէտէրիկոս աս ան
կըկրկնէ յոլուէտ հայտնէր դէմ Աւստրբա.

1778 ։

Քանի հեղ որ նեմցէն ուզէ մէկ յաջողու-
թի մը գտնալու, միշտ պրուշը քովը ունի
իրեն արգելիչ. հիմա աս բանս լսածին պէս
Բ. Ֆետերիքոս պրուշին ծերացեալ թագա-
ւորը շուտ մը սկսաւ մեծ աղաղակ ու բողոք
փրցընելու պավիէրային ասանկ բաժնըվե-
լուն վրայ, ինչու որ՝ աւստրիոյ տանը մէկ
պզտիկ մեծնալմընալ ամմէն անգամուն
իրեն մահ կըսեպէր. մէկին լսածին պէս-
ալ չէր ուզեր տեսնալ որ ուրիշները սե-
ղան նստին ուտեն, առանց ինքը ան սեղա-
նէն վայելելու ։ Պատճառներ կըբերէր թէ
կայսրը գերմանական սահմանադրութեան
դէմ՝ բան կըպահանջէ՝ իրեն ձգել ուզելով
իրաւունքը տրամադրելու ան յաջորդու-
թիւնները՝ որ պարապ մնացած էին, աս բա-
նիս ծայրը գէշի կերթայ կըսէր, կործանել
կուտայ ամմէն ցեղերուն օրէնքը, դաշնա-
դրութիւնները, պայմանները, ու կայսերու-
թեան վճիռները ։ Ասանկ շտկէշիտակ յայտնի
բողոք վերցընել իրեն չէր կինար, հապա
ռադիսպօնայի ժողովքին կինար, որ իր
լռելովը կերեւար որ իր հաւանութիւնը տը-

ված էր, անոր համար ան հնացեալ ծերը ակսաւ զանխալ դրդուել։ Կօէրց կոմսը (1) Մօնաքօ քաղաքը խրկեց, որպէս զի տէրօնդլին դուքսին հետ (2) խօրաթէ, իր դիւցէն խոստանայ օգնութի ու պաշտպանութի տալու. կօէրց գոցել ուզելով բանը՝ որպէս զի չիմացընէ՝ առաջ վէյմար գնաց, հոն անանկ հասկըցուց որ՝ եկերէ իր եղբայրը առնելու՝ Փռանքօնիա տանելու իրենց տանը բանին համար. աս պատրուակով ( մահանայով ) գնաց ռադիսպօնա, ժողովքին գլխաւորին հետ խօրաթեց, պրուշի թագաւորին միտքը իրեն հասկըցընելով. ժողովքին գլխաւորը ըլլալով վերոյիշեալ թէօդորոսին վէզիրը՝ պատասխանեց։ „Իմ
„ տէրս թէօդորոս բալանդինօին կայսրըն
„ տիրը պաշարված ըլլալով կայսերական
„ զօրքով, չիկրնար պրուշին միջին կեօրէ
„ շարժիլ։

Կօէրց անցաւ գնաց անկից մօնաքօ քաղաքը տէր րօնդլին դքսին հետ խօրաթելու, աս դուքսը կարօղոս օգոստոս քանի մը հեղ խիստ գաղտուկ մէկ տեղ գալով խօրաթելով՝ պրուշին կամքին համաձայնեցաւ, չիմըտածելով որ ինչ արիւնհեղութի պիտոր հետևէր. թուղթ գրեց պրուշի թագաւորին աղաչելով որ իրեն օգնութի հասնի։ Այս

---

(1) Սուէկայ ժԲ կարօղոսի շվէտի Թագաւորին վէզիրին թոռն էր։

(2) Որ բալդադինօի կայսրընարին ժառանգն եմ կըռէր, ու անօրէնը հոն էր եկած։

որովհետեւ կայսրընտիրը շօշորդ մը տեսնալով արգելլերէր բօսգանները, մէկ Ֆրանչիսքեան կրօնաւորի մը տուլին Թուղթը, որ առանց մէկ կասկած մը տալու՝ բերաւ պէտլին պրուշի Թագաւորին տրվալ (1). տիւբօնգլին դուքսը այնչափ յարերերէր պրուշին գլին՝ որ իր փառաւոր առաքելութեան նշանը Գոլդըն փօռօ ըսված՝ որ Յովսէփ կայսրը իրեն ընծայ էր խրկեր, ու ոսկի շղթայով ( զինձիլով ) կըկախէր, ետ խրկեց ըսելով, մէկ ոչինչ պատուոյ մը համար չեմ ուզեր իմ վիզս իրաւ շղթայներով կապել:

Պրուշին Թագաւորը կըջանար կըփնտռէր որ իրաւունք մը գտնայ, ինքնալ պավլիեւայէն կտոր մը փրցընէ առնէ, անոր համար զինքը հրատարակեց Նախանձաւոր Ըատոհմով կայսերական օրինաց, ան օրինացը՝ որ ինքը այնչափ անգամ ոտքի տակ էր առած: Իմացուեցաւ որ՝ կայսեր մէջ ու սաքսօնիայի կայսրընտրին մէջ պաղութիւն էր ընկած, գաղտուկ կայսրընտիրնալ յորդորեց՝ որ իրեն Թուղթ մը գրէ, իրմէն օգնութիւն ուզէ իրեն իրաւունքը առաջ տանելու համար, ըստ որում ինքը սաքսօնիայէն կայսրընտիրը առջինեկ զաւակն էր անդօնիա մարիամին, որ քոյր էր մեռնող պավլիեռայի կայսրընտրին, ու կնիկ մարդու դիպացէն վերջինն էր ան ցեղին մէջ: Սաքսօնիայի կայս-

(1) Ոմանք կըսեն որ՝ մէկ պատճառն ալ ան եղաւ որ՝ Յովսէփ կայսրը կրօնաւորներուն այնչափ դէմ եղաւ:

ընտիրը խաբվելով սուտ յուսադրութեամբ չյիշեց որ՝ քիչ մը առաջ օխտը տարվան ծեծին մէջը ինչ քաշեց պրուշի ձեռքէն իր ամմէն տունը՝ իր ամմէն ժողովուրդը. այլ այն ընական թշնամին իրեն բարեկամ սեպելով՝ սիրով մը կապվեցաւ անոր հետ։ Ասանկով երկուք ատոնք եղան՝ որ իրաւունք ունենք կըսէին պավլիկեան ժառանգութեան վրայ, ասոնցմէ զատ իրաւունք ունին կըպընդէին նաև մէքլէմպուրկ շվէրինի դուքսը, լամպեռկին իշխանը, ու պրունզվիքին ցեղը. Թող տուր որ տիւ բօնդին դուքսին հետ միացած էին նաև պավլիկեայի իշխանները։ Նայէ հիմա ինչ բլբլկոց ու կռիւ մէկ երկրի մը ժառանգութեան վրայ, որ յաճախ կըլլայ եւրոպացոց մէջ, ինչ ճամփայ օսմանցոց, որոնց մէջ չիլսվիր ասանկ կռիւ։ Ասչափ ետեւէ լսօղները տեսնալով է. Ֆետերիքօս պրուշին թագաւորը կուրախանար իրաւունք գտնալով իր ժողովուրդը խաբելու, մէկմէկու վրայ թուղթեր բողօքներ կըխրկէր ռադիսպօնայի ժողովքին, ու ամմէն թագաւորներուն. սուտ ձայներ հանել կուտար յովսէփ կայսեր մտքին դըրածին վրայ, կասկածներ ձգել կուտար ըսելով, թէ որ առջի բերանը անոր դէմ չիդնենք, ամմէնուն վրայ պիտոր իշխէ անի-
„ կայ։ „ Արթնցէք, իմացէք կըսէր, յով-
„ սէփ կայսեր միտքը պավլիեռա առնելու
„ սա է որ՝ ճամփայ մը բանայ ալզացիայի
„ ու լօռէնայի մօտիկնալու, մուտ գտնայ
„ իդալիա մտնալու, առնէ վերի ու վարի

„ Նօվարան , Վիճէնցանան , Դօրդօնան , և
„ ուրիշ գաւառներ՝ որ Միլանի դքսութենէ
„ բաժնըված են „ ։

Ասանկ խօսքերու ամենք կըհաւատային, ամենք չէին հաւատար. իսկ ուադխսպօնայի մէջ փետր. 10 ասանկ վճիռ մը եղավ կայսեր յանձնելովը ։ „ Կայսեր միտքը աս է որ՝
„ որովհետև առջի գիծը պավիեռայի ցե-
„ ղին հատաւ, միւս գիծը պավարեան բա-
„ լադինօին ցեղը ունենայ հազարապետու-
„ թէ պաշտօնը՝ ու իշխանութիւը կայսերու-
„ թէ դարպասին ( սէրային ) մէջ „ ։ Ասո վճռով բալադինօ կայսրընտիրը որ ութերորդ էր կարգին մէջ՝ ( վեստֆալիա եղած 1648 դաշնադրութէը կեօրէ ) հինգերորդ եղավ կայսրընտրաց մէջ, իսկ աշխարհական կայսրընտրաց մէջ եղավ եկրորդ ։

Աքմչէն ու ագռաւը ծեծկըվէրու հըղպատրատըվին ,
Բողբէր հըհանէն ատրխաղժա ծողոդին ։

1778 ։

Երկու Թագաւորք Նեմցէն ու պրուշը սկսան ամմէն դիրացէն պատրաստուիլ տեսնալ պատերազմի. յովսէփ կայսրը 84 գունդ զօրաց ժողվեց տըվավ, 55 գունդ ձիաւորներու, Թող տուր անկանոն զինուորները, հազարէնալ աւելի Թօփ, ասոնք ամմէնը իրեք բանակ պիտոր ըլլային պրուշին զօրացը դէմ՝ որոնք չորս դիրացէն շլէզինայի մէջը կըժողվըվէին, հոն եկավ նաև պրուշին

Թագաւորը ապրիլի 7, իսկ Պէռլին եղած զօրքը խրկեց Սաքսօնիա, որոնց զօրացը հետ մէկտեղելով գնացին սահմանները պաշտպանելու. իր մարդնալ որ Ռադիսպօնա էր, ա-սանկ մէկ Թուղթ (արզուհալ) մը հանեց Պրուշի Թագաւորին դիւանէն (1):

„ Կայսեր զօրք խրկելը՝ Պավիեռային ու
„ Պալատինօյին մեծ մասը իրենն ձեռք ան-
„ ցընելը՝ որովհետև բոլորովին դէմ է
„ կայսեր սահմանադրութեան՝ ուրիշ կանդա-
„ կին՝ Վեստ-ֆալիա եղած դաշնադրութեան՝
„ ու պայմաններուն՝ որ Պավիեռային ու Պա-
„ լատինօին ցեղերուն մէջը եղած են՝ (որ
„ մէկ արմատէ են ինչած), անոր համար
„ Պրուշին Թագաւորը կաղաչէ իր ամմէն
„ Գերմանիայի իշխանակիցներուն՝ որ իրենն
„ հետ միաբանին, որպէս զի ամմէնուն պատ-
„ ճառները լսելով՝ Պավիեռային յաջոր-
„ դութիւը գերմանական օրինացը կէօրէ ը-
„ նենն. Նաև որովհետև Տիւ Բօնդին դուքս-
„ նալ և Սաքսօնիայի կայսրընտրուհինալ ի-
„ րաւունք կըպահանջեն Պավիեռային յա-
„ ջորդութեան վրայ, անոր համար ինչ որ
„ ըրին ինչվան հիմա կայսրը ու կայսրուհին՝
„ սխալած սեպելու է. իրենքալ պիտոր
„ հաւնին որ՝ արդարութիւն քննըվի ու բանս
„ ու իրաւամբք ըլլըվի ու յաջորդութիւը
„ կայսերական սահմանադրութեանը կէօրէ:

(1) Այս Թղթիս գրօղը պարոն Հերցպերկն էր, որ անցած պատերազմին Թղթերնալ՝ նաև Լեհը բաժնելու տանենին Թղթերնալ գրեց:

Սա թուղթիս դէմ կայսրնալ շուտ մը ասանկ
թուղթ հանեց ։ « Ասանկ բաներն իրաւամբք
» ըլլալու համար պէտք է որ՝ որոնց որ կր-
» նայ՝ մէջերնին պայմանադրութիւն ըրած
» ըլլան, որդ տաւլիեռայի կայսրընտիրը
» մեռնելէն առաջ իրաւունքը ցըցուցած
» էր, ու ամմէն ընդդիմութիւնները տարա-
» կոյսները վերցընելով՝ օրինաւոր պայմա-
» նադրութ՟ միաբան հաւանութ՟ երկու
» դիւանէն հաստատուած էր ։ Հազիւ թէ
» իմացաւ պրուշին թագաւորը՝ դժվարը ե-
» կաւ, ու իր միտքը գոցելու համար՝ անմեղ
» կերպարանքի մը մէջ խօթեց բանը ու իր
» միտքին դրածը, ամմէննալ ոտք հանել
» ուզեց ․ ան որ զարմանալին է՝ սա բանիս
» մէջ կուզէ զինքը դատաւոր ընել աւս-
» դրիոյ ու բալատինային դատաստանը տես-
» նալու ․ իր առարկութ՟ները՝ տարակոյ-
» ները՝ կուզէ վճռի տեղ անցընել, ըսելով
» թէ աւստրիոյ տանը ուզածները ամմէնեւին
» հիմն չունին, իրաւունք չունին, ասկի կա-
» ռակին՝ վեստֆալիոյ դաշնադրութեանը
» դէմ են ։ Բայց հարցընելու է՝ սա պրու-
» շին առաջարկութ՟ներնալ վճիռներնալ
» որ բանին վրայ հիմնըված են, գուցէ
» (պէլքիմ) իր պրուշի թագաւորին վրայ,
» որ կայսերութեան մէջ ուրիշ բան մը չէ՝
» բայց եթէ պարզ իշխանակիցներէն մէկն
» է․ սա գործս ուրիշ բան չերեւար որ՝
» խառնըվիլ անանկ բանի մը մէջ՝ որ իրեն
» չիյնար ամմէնեւին ։ Չիկայ մէկ օրէնք մը՝
» որ արգելէ մէկ կայսերական իշխանի մը

» պայման դնել մէկալ իշխանակցի մը հետ․
» ով կրնայ անվաւեր ըսել այն դաշնակցու-
» թիւը՝ որ բնաւ մնաս մը չիտար իրաւունքի
» մէկ երրորդ իշխանակցի մը, ասանկ է ա-
» հա աս բանս : Անոր համար կայսրուհին
» ու կայսրը չեն ճանչնար զիրենք պարտա-
» ւոր պրուշի թագաւորին համար տալու
» իրենց գործողութեցը վրայ․ մանաւանդ
» թէ ուրիշ կայսերական իշխանակիցնե-
» րուն կըյանձնեն քննել, որդեօք պրու-
» շի թագաւորին աս խօսքերը ու ասանկ ա-
» նարգական կերպ բանեցընելը իրաւունք
» է, որ փնասող են չէ թէ միայն ամմէն թա-
» գաւորի պատուոյ, հապա նաև ամմէն
» կայսերական իշխաններու՝ որ անդամ են
» գերմանական մարմնոյ :

Ասանկով պրուշին ու նեմցեի դիւացեն վիճ-
մունք հակաճառութիւներ․ կըլլային ռատիս-
պօնայի ժողովքին մէջը, մէկալ դիւացենալ
մեծ պատրաստութի կըտեսնային պատե-
րազմելու : Առջի գարունքը բացվածին
պես՝ Բ յովսէփ կայսրը իր եղբօրը հետ որ է
մաքսիմիլիանոս արշիդուքսը՝ գնաց պօեմիա,
իր զօրքը որ 200 հազար կըհամնէր՝ անանկ
տեղվանք սփռեց, ուր տեղվանք որ կար-
գելէր պրուշին գալը լուսացիային ու շլէ-
զիային դիւացեն․ իսկ մօռավիա եղած իր
զօրքը տարածեց ինչվան կլացին կոմսութե
քովերը, քիչ մը հեռու ռէյնէրցեն, ուր
տեղ որ վռնաք պրուշին զօրապետը ընտիր
զօրքով կեցած էր : Պրուշնալ իր զօրքը որ
լեհաստանը առնելէն ետև մնծնալով 200

հազարէն աւելի շատցուց, աս դիս ան դին կըպտըտցընէր Նեմցէին սահմանին մէջը վազելու համար ։

Բայց որովհետեւ կայսրուհին Մարիամ Թերեզիանան իր եօթի տարիները խիստ կըվախնար չէր ուզէր պատերազմ ու արիւնհեղութիւն ընելու, յովսէփ կայսրը իր մօրը սիրտը շինելու համար՝ մէկ պայման մը առաջարկեց պրուշի Թագաւորին հաշտըվելու համար չորս Թէութը ատանկ ։ Պրուշին Թագաւորը իր հաւանութիւնը տայ, արգելք մը չիդնէ աւստրիոյ տանը (Նեմցէի) պավիէռան ժառանգելու՝ որ բալադինօին կայսրընտիրը տըվաւ. Նեմցէնալ ատոր փոխարէն վաւերական սեպէ որ երկու մարկռավիադօն (իշխանութիւնը) Անսբախ ու Պայրաթ՝ պրանտէմպուրկին առաջինեկին ըլլայ, նաեւ երբոր ուզէ պրուշին Թագաւորը՝ ուրիշ իշխաններու երկիրներուն հետ փոխէ անոնք, միայն Թէ ան երկիրները ուղղակի սահմանակից ըլլան աւստրիոյ տանը երկիրներու հետ ։

Ասոր վրայ երկու Թագաւորները յովսէփ ու Ֆետերիքոս Թղթակցութիւններ ըրին իրենց մէջը, որ տասնըհինգ օր քշեց, քապէնցէլ կոմմնալ Նեմցէի դիւանէն պրուշի Թագաւորին քովը գնաց՝ ուրիշ կերպ առաջարկութիւներաւ ըրավ, բայց մէկը չընդունեց Ֆետերիքոս, աս կըպատասխանէր ։ Թէ որ Նեմցէն ամէն պահէստան էր չիտայ բալանդինօի կայսրընտրին, կըծեծէի, ծեծը կորուշէ ինչ ըէ ցուը ։ Մէջերնին ատանկ կըխօսէր, իսկ դուր-

որ ամմէն տեղ կըղուբցեր ։ Թէ որ ծեծ բաղ-վի՝ պարծանօք յոխորտ նորութիւն ըլլայ , որ Գաղղիական երկու կէսիս ամէն աստղագիտութիւնները պարապ հա-ներ՝ որպէս մէ ... ցա վրայ մէկ գիրք ըլլայ , ա-նանկով եւ մէկը պաշտօն բերողն եղայ ։

Ըս շատագէտ Փետերիքսը մէկ դիպացեն կու-զէր կրնայեր որ հաշտուե խօսքերը ուշա-ցընել , որպէս զի ատեն ունենայ իր զօրքը ժող-վելու , տեղվանքը ամրցընելու , ձիեր ու պա-շար ( զահրէ ) պատրաստելու , մինչու որ 15 տարի պատերազմ չընելով ան չուառ շար-ժիլը՝ ոտքի վրայ ելլալը՝ որ առջի ատեններ-ըը աշխարհ զարմացուց , կորսըված էր պըրու-չին մէջը ։ Իր միտքը աս էր որ՝ Մօռավիայի մէջ վազէ , 20 հազար մարդ հոն թողու՝ կըլացին կոմնութիւը ու լանտշուղին կիրճե-րը ( պօղազները ) պաշտպանելու , հոն պա-տերազմելով թէ որ յաղթութիւն յաջողվի՝ դէպ 'ի Բրէզլաուրկ մեծ գունդ մը զօրաց խրկէ մօռավ գետին վրայէն , որպէս զի հոն եղած կամուրջը դուռնա գետին վրայ՝ իր ձեռքը ձգէ . անանկով նեմցէի զօրաց կե-րակուր գալը արգելէ , անկէց թէ որ կըր-նայ՝ վեննա քաղքին վրայ վազէ , ան ա-տենը նեմցէն վեննա պաշտպանելու համար կըհարկադրի իր զօրքը հոն բերելու , պօհէ-միայի մէջ եղած իր զօրքը կըքիչնայ կըտըր-կարանայ , Ճամիայ կըբացվի հէնրիքոսի հա-մարձակ առաջ երթալու , որ Փետերիքո-սին եղբայրն էր ։

Նեմցէին միտքը խորհուրդը (1) աս էր , շուտ

---

(1) Աս խորհուրդս տըվերեր մառէշալ լավտօնը

մը սաքսոնիա մնալ, որպէս զի ուրիշի երկրին մէջը ըլլայ պատերազմը, անկէց 100 հազար մարդով պէտալինի դէմ քալել, անանկով պրուսիները ետ դարձընել տալ դէպ 'ի պետլին: Կայսրուհին կուզէր որ՝ առջի ըսկսօղը ծեծկըռվիլ պրուսը ըլլայ՝ ինքը չըլլայ, թէ իրեն արդարութիւը ցըցընելու համար, և թէ Ֆրանսայէն օգնութիւն առնելու համար վերսայլիա եղած դաշնադրութենը կեօրէ. անոր համար նեմցէին մէնծ բանակը մէկ դաշտի մը մէջ ամրցած կեցաւ՝ որ եարօմինցին քովն էր, քէնիկսկրաց բերդը պաշտպան ունէր, էլպա գետին անցնիլը կըպաշտպանէր, չէցխիայի մէջ վազելու դիւրութին (խօլայութին) ունէր:

Նաով եղաւ որ՝ պրուսը ինչ որ միտքը դրած էր պարապ ելաւ, իր զօրաց դիրքը փոխեց, ինչպէս կըգրէ ինքը Ֆետերիքոսալ իր գրուածոցը մէջ որ իր մեռնելէն ետև տըպվեցան. միտածեց ան ատենը որ՝ քանի բարձր տեղվանք կան նեմցէին բանակին քովերը՝ ինքը տիրապետէ, աջ թևը ձախ թևէն երկուք բաժնելով զատէ, որով տկարանայ նեմցէին զօրութիւը, կամ հարկադրի դուրս ելլայ բանակը անանկ զօրաւոր տեղէն:

---

որուն հաւնէրքէին կայսրուհինալ քաշեց՝ մեկնենալ:

Պրուսիա ու Նեմչէն երրորդ հեղ կռուեցան, Բաւարիային համար հաշտութիւն ընել.

1778 :

Պրուսը յուլիսի 8 սկսաւ իր Թշնամու-Թիւը ցուցընել, առաջ երԹալով պօհէմիայի վրայ, մէկ յայտարար ԹուղԹ մըընալ հանելով պատճառը հասկըցընելու համար. որուն դէմ Նեմչէնալ խօսքոյն ուրիշ ԹուղԹ մը հանեց մէկիկ մէկիկ պատասխանելով պրուսին բերած պատճառներուն : Պրուսը եկաւ էլպա գետը ուզեց անցնելու, որպէս զի միանայ իր եղբօրը հետ որ էր հէնրիքոս իշխանը, շատ հեղ ջանաց անցնելու, որ անկէց պօհէմիա մտնայ, բայց կայսրը անշարժ կենալով իր տեղը առանց բաժնըվելու ամենուին՝ պարապ հանեց պրուսին հնարքները :

Հէնրիքոս իշխանը յաջողուԹի գտնալով աւստրիական սահմանին մէջ մտաւ. կայսերական զօրքնալ լուսացիա վազեցին, 100 հազար ռիալի առին ցիդ-դավ տեղէն, 22 հազար շինիկ հաճար (եուլաֆ), մաճառի ու խոտվաԹի զօրքնալ տուրք առին սաքսօնիայէն ու պրուշեան լուսացիայէն : Ասոր նման կընէէին նաեւ պրուսին ու սաքսօնիային զօրքերը՝ որ տրէզտահի քով մէկ տեղ միացան. երբեմնալ ինչվան աւստրիական շլեզիա ու մօռավիա վազելով կավրէին. ասանկով ԹաԹարի պէս աւպատակուԹիւն

կրնէին չէ թէ մէկ կանոնաւոր պատերազմ։ Օր մը պրուշէն զօրքը նեմցէի զօրաց վրայ վազելով զարկաւ, որ Թօլլէնտէյն անտառի մէջ գէշ տեղ մը կեցած էին, քանի մը Թօփ ու 10 դրօշակ առաւ. ան ատենը Լաւտօն մառէշալը 60 հազարով տաք ելաւ, որ պրուշէն Թող չիտայ աւելի առաջ երթալու. Իսէր գետին վրայ եկաւ բանակը նստե-ցուց, զանազան հնարքներ շարժմունքներ բանեցընելով Հէնրիքոս իշխանին դէմ, ինչպէս Հէնրիքոսալ Լաւտօնին դէմ, Լաւտօնը ճամփայ կըբանար, ազատ կըթողուր, որպէս զի Հէնրիքոս թէ որ ուզելու ըլլայ՝ Բռակա վազէ. և իրաւ որ Մօլլէնտօրֆ պրուշէն զօրապետը խիստ վառվռուն ա-րիւնըտաք երիտասարդ ըլլալով խաբուե-ցաւ՝ առաջ գնաց որ Բռակա վազէ, բայց Հէնրիքոս հինցած վարպետ ըլլալով իմա-ցաւ Լաւտօնին որոգայթը, հրամեց որ շուտ մը ետ դառնայ, ինչու որ՝ ուտելիք գալու ճամփան շուտ մը կըգոցէր Լաւտօնը։

Աս ատենները պրուշի բանակին մէջ եկաւ պարօն Թուկուդը գաղտուկ ծպտեալ (Թէպտիլ) հագուստով իբրև մէկ մուսկովի մարդ մը, անոր համար թուղթ առած ու-նէր Կալլիցին իշխանէն՝ որ Վիեննա մուսկովի դեսպանն էր։ Պատճառը աս էր որ՝ Մարիամ Թերեզիա կայսրուհին ա-մենուին ծեծ չուզելով խիստ կըդողդողար իր երկու զաւկին վրայ ու փեսին վրայ որ ծեծին մէջն էին, Թուկուդին ձեռքովը Թուղթ խրկեց պրուշի Թագաւորին հաշ-

տութի ընելու համար՝ նոր թեւութիւններ
առաջարկելով։ Պրուսին թագաւորը ընդ-
ունեց Թուկուդը, մարդիկներ դրաւ որ
հաշտութեան վրայ խօրաթեն, որոնց գլխաւո-
րը հերցպերկ կոմսն էր։ Կայսրուհւոյն ա-
ռաջարկութիը աս էր․ Ինքը ինչ դաշնա-
դրութի որ եղերեր բալադինօի կայսրըն-
տորին հետ՝ ոչնչացընէ, առջինին պէս ըլլայ,
քանի տեղ որ առերեր պավլիեռայէն՝ ետ
դարձընէ, բայց պրուսին ժառանգներնալ
ու յաջորդներնալ հրաժարին, պրանտեմ-
պուրկի առջինեկին չխափանեն անսբախ
ու պայրաթ մանկռավիաները ( իշխանու-
թիւները )։ Աս եղաւ ահա մեծ արգելք
հաշտութիը լմնցընելու ։
Աս բանիս վրայ սասանկ կըպատմըվի Ֆե-
տերիքոսին գրուածոցը մէջ։ "Կայսրուհին
„ կըսէ բացարձակ հաշտութի կուզեր, վասն
„ զի իր զաւկին յովսէփ կայսեր փառասի-
„ րութիը կըճանչնար, կըվախնար որ՝ չըլլայ
„ թէ յովսէփ երկու մեծ բանակի գլուխ
„ ըլլալով, ինքը կայսրուհին իր հեղինա-
„ կութիը կորսնցընէր կամ տկարացընէր։
„ Աշրօրով յովսէփ իմացաւ Թուկուդին
„ երթալը՝ խիստ այլայլելով սասանկ գրեց
„ իր մօրը կայսրուհւոյն։ Թէ որ դուն մէկ
„ խեղճ հաշտութի մը ընելով ցածցընես
„ զքեզ ամենէն աշխարհքիս առջին, ես անկեց
„ ետքը ոչ երբէք վիեննա կըդառնամ, հա-
„ պա աւելի կընտրեմ աքվիսկռանա կամ
„ աւրիշ տեղ մը նստելու, քան թէ աւս-
„ տրիայի մէջ ոտքս կոխելու, աս ցածութիս

„Հոն տեսնալու, որ Լոնծի մէկ մեռնիլը „մինչ։

Բայց սա խօսքերս մէկ հիմ (Թէմէլ) մը չունենալովս՝ անչափ հաւատալու չենք, որովհետև յովսէփ կայսեր թղթակցութիւնը իր մօրը հետ՝ տեսնըված չենք։

Բաւարացին ժառանգը, Փրուսիոյ ու Աւստրիոյ մէջ ելած հաշտութեան ընթը.

1778—1779։

Սա միջոցին մէջ նեմցերուն ու պրուշին զօրքը իրարու հետ կըզարնըվէին պզտիկ ծեծ կըռւըներով. օգոստոսի մէջ պրուշին երկու զօրապետները զարկին նեմցերուն մէկ զօրապետը որ կըսվէր Քնէպել, 750 մարդ գերի ըրին, ըստորկին մնտուկնալ ուրիշ բաներով առին։ Յովսէփ կայսրը միշտ իր կեցած տեղը կըկենար, իր ամմէն ջանքը սա էր որ թող չտայ պրուշին երկու եղբարցը Ֆետերիքոսին ու Հենրիքոսին մէկ տեղ միանալու իրենց զօրքովը, հօհենելպ լեռներուն վրայ միշտ զօրք կեցընելով կարգելէր թող չէր տար որ թօփ քերեն. անոր համար երկու եղբարք յուսահատեցան մէկմէկու մօտիկնալու, ու կայսեր մեծ բանակը զարնելու, չէին կրնար էլպա գետը անցնելու, անչափ ուժով պաշտպաներէին նեմցէները։ Երկու դիմացէնալ սաստիկ անօգուտ նստելէն ետև ամբողջ իրեք ամիս՝ պրուշներուն ուտելիքը ու Չէպխանէն պակսեցան.

դէշ ուտելիքները փոխադրական հիւան-
դութիւն մը ծագեցին պրուսիոյն զօրացը մէջ, անոր համար քաշվիլ սկսան, աշնան սկիզբը ինչ պզտիկ քաղաքներ ու տեղվանքներ որ առերէին՝ Թողուցին, հենրիքոսին զօրքը տեղ տեղ նեղը իյնալով նեմցեին ապատակ (չարխա) զօրքէն՝ քանի մը ձեպխանէի առապայներ Թողուցին։ Աուստմներ նեմցեին քաջ զօրապետը 240 առապայ առավ պրուսիէն. 870 ձիաւոր մարդ ծրը կտորեց, ծրը գերի ըրաւ. 500ալ ձի առավ. ասկեց ետքը լավտօննալ պրուսիներուն ետևէն ընկաւ, որ արտորնօք կուզէին սաքսօնիա երԹալ ուսկից որ եկած էին. անանկով ամմէն տեղ մարդ ու անասուն կորմնցուցին. սաքսօնիայի մէջ մտնալուն պէս իր զօրքը՝ ծանր տուրքեր առին, այնչափ որ սաքսօնիային կայսրընտիրը կուզէր իր խազնայովը փախչիլ, արդէնալ իր պատուական ապրանքը մակտէպուրկ փախուցերեր։

Աս բաներուս վրայ յովսէփ կայսրը հան եկավ, իր մօրը հրամանքը լավտօնին բերաւ որ կարգելէր ծեծկըվիլը, անոր համար լավտօննալ ետ կեցաւ ան մեծ յաղթութիւներէն որ պիտոր ըներ. վասն զի մայրը կայսրուհին Ֆիոււէնցաէն վենսա բերել տըվավ լեոբոլտոս դօսքանային մեծ դուքսը՝ յովսէփ կայսեր եղբարը, որպէս զի երԹայ յովսէփ կայսեր իր եղբօրը միտքը փոխել տայ, պատերազմէն պաղեցընէ։ Աս խօսքերէս երկու եղբարց մէջ շատ վիճմունք եղան, վերջապէս յովսէփ կայսրը իր մօրը հնազանդե-

լու համար ծեծը դադրեցուց ։ Գետերի-քոնալ անձրեւային աշնան մէջ եւ քաշվեցաւ շադցլարին գիացէն, հոկտեմբեր ամի որ չիլմնցած ամմէն պրուշին զօրքը պօէմիայէն դուրս ելան, կայսերական շլէզիային մէջը ձմերեցին ։ Նեմցէին զօրապետը պարօն ըշդայլին նոյեմբ. 25 պրուշները փախուց վէպքիրքէն գեղէն որ յանկարծ երեվեցաւ ։ Յովսէփ կայսրնալ լաուշիին ու լավտօնին երկու մաուէշալներուն խորհրդովը ընկերութէը գնաց սահմանագլուխ (հիւտուտ) տեղերը քննելու, շատ զօրքեր դնելով, անկից վէննա եկավ իր մօրը հանկըցընելու ։ Հետեւեալ տարին 1779 Թէպէտ խիստ շատ ձիւն եկավ, սաստիկ սառույց (տօնդ) եղավ, բայց ծեծկըվելէն չիդադրեցան. յունվ. 14 վումոսխ պրուշին զօրապետը կլաց կոմսուէն ելավ, դէպ ՚ի ցուքմանդել գնաց, որ շլէզիային քաղաքն է նեմցէին տակը. միտքը ան էր որ՝ յանկարծ կայսեր զօրաց վրայ վազէ զարնէ, բայց ինքը զարնըրվեցաւ. լավտօննալ ուզելով անոր հատուցում ընելու վուրմսէր զօրապետը խըրկեց երկու դիւացէն կլացին կոմսութենը վըրայ, որովհետեւ ան տարի խիստ չոր ցուրտ ըրավ, իրենց հեշտ (խօլայ) եղավ երթալու ։ Վուրմսէր 19 գունդ ոտանաւոր (եաեան) զօրքով, 3 գունդ խուվաթի ձիաւոր զօրքալ հետը ունենալով՝ սկսաւ գնալ ինչ կերպով որ իրեն ապսպրերէր լավտօնը, ամսոյն 20 եկավ սպաննեց պահապանները, որ սաստիկ ցրտութենէն արդէն կե-

սամեռ էին, սանդուխքներ (ներոտիվէններ) կը թընդընելով պատին՝ քաղքին մէջը մը-տաւ նռանց մէկի մը խմխալու, քանի պըռուշի զօրք կար հոն՝ ամմէննալ գերի ը-րավ իրենց զօրապետով որ կըսվէր Իշխան Հասսիա Ֆիլլինշգատի, դըօշակներ ու ըս-տըկլին մնտուկը առավ։ Պուրիշ քաղաքմը-նալ գնաց՝ ուր տեղ որ պըռուշի զօրք կային. ասանք մէկ մարտկոցի (Թապեաի) մը առւէն շատ գէմ դըրին, բայց ետքը անձնատուր եղան 1540 հոգի, 44 ալ հազարապետ, քա-ղաքնալ Թալլեց։

Քանի ծեծ որ՝ ըրին երկու դիւացէն աս պատերազմիս մէջ՝ ամմէնէն երեւելի ծեծ աս եղավ, շատ մնաս տըվավ պըռուշներուն, անոր համար Ֆետերիքոս շատ բարկացաւ-էր հազարապետայը անհոգութեր վըրայ, պա-տիժ տըվավ, պըէզըլավէն ելավ վուռմնե-րին գէմ գնաց։ Նա տակէնը լավտօնմնալ շուտ մը գնաց վուռմներին օգնութին ընե-լու. Ֆետերիքոս տեսածին պէս լավտօնը չիգզարնըվեցաւ. երկու դիւացէնալ իրենց տեղերը անանկ կեցան չիծեծկըվեցան, մին-չևան որ ծեծը լմնցաւ։ Աս կռիւը եղավ մէկ երկրի մը համար՝ որ միլիոն ու կէս Ֆիօ-ռին տարին եկամուտ կըբերէր, իսկ իրենք երկու Թագաւորք երկու իրեք ամիսվան մէջ շատ աւելի խարձեցին՝ անչափ զօրք ոտքի վըրայ պահելու համար։ Աշկուքնալ իրենց դաշնակից տէրութեց վըրայ յոյս ու-նեցան որ օգնութին խըրկեն, նեմցէն Ֆրան-սայէն օգնութին գալու կըսպասեր՝ 1756 վէր.

տալէս եղած դաշնադրութենը ուժով։ Բայց Ֆրանսզին տէրութիը չէր ուզեր որ Նեմցէն մենձնայ, իրենց Թագուհիինալ նկատում ընելով (որ Նեմցեի կայսրուհւոյն աղջիկն էր,) Նեմցէիինալ դէմ ելլալ չէր ըլլար, անոր համար կատարեալ չէզոքութի պահեց։ Ուրիշ ծածուկ պատճառներալ կային՝ որոնց համար չօգնեց Նեմցեին. շատ պարտքի տակ ընկած էր. իր վէզիրը մօուէքա ութսուն տարվան ալեւոր ըլլալով ուրիշ մը կընէր իր ընելիքը. Ֆրանսըզներնալ անցած ծեծի մէջ կոտրնցուցած ըլլալով իրենց վարկումը՝ չէին ուզեր գերմանիայի մէջ ծեծկըվիլ. Թող տուր որ անն ատենը Ֆրանսզնալ ուրիշ ծեծ ունէր Ինկկիլիզի դէմ ամերիկացոց համար։ Էս բաներս պատճառ եղան որ Ֆրանսային Թագաւորը ժզ լուիզ՝ օգնութի ընելուն տեղը Նեմցեին՝ հաշտութի ընելու միջնորդ ուզեց ըլլալ։

Մոսկովի Թագուհիինալ Թէպէտ դաշնակից էր պրուշին՝ բայց ինքնալ տաճկին հետ նորէն ծեծկըվելու շոշորդ տեսնալով խըրըմին համար՝ օգնութի չխրկեց պրուշին, ինչպէս որ պրուշնալ անցած կռիւներուն մէջ օգնութի չէր խրկած մոսկովին՝ Թէպէտև շատ խոստում ըրեր էր, հապա մոսկովնալ ուզեց միջնորդ ըլլալ հաշտութի ընելու, բայց առաջ առանկ գրեց վիեննա ու աւագխսպօնա։ «Աղաչեմ մէկ կերպով մը շտկեցէք «պավիէրային ժառանգութե վրայ եղած «կռիւը ու պահանջմունքը, Թէ չէ կըհաւ-

« կադրիմ զօրք խրկելու պրուշիոն , որպէս
« զի գերմանիայի սահմանադրութիւնը ան-
« խախտ պահէ ։ « Նման կըգրէր , բայց
չէր ուզեր իր զօրքը խրկելու գերմանիայի
մէջ անբաւ խարճ ընելով , ուր տեղ գի-
տէր որ մէկ շահ մը չիկար իրեն , ուրեմն
իշխանը երեսփոխան ընելով իրեն՝ պրեզլաւ
խրկեց հաշտութեան վրայ խօսելու , մանա-
ւանդ որ Փետերիքոս մոսկովէն ուզեր էր որ՝
երկու գունդ զօրաց խրկէ կալլիցիայի
վրայէն մաճառի մէջ՝ դմշվարին պաննադին
մէջ , կամ դրանսիլվանիայի (1) մէջ , որ-
պէս զի ապստամբեցընեն ան յունադաւան-
ները որ միացած չեն , ու շատ կըգտնըվին
ան երկիրները ․ եսալ ըսաւ կըխրկեմ քանի
մը գունդ իմ զօրքերէս , խօսք տալով որ՝
ինչ հարստութիւն որ կրնան թալլել՝ ամմէն-
նալ մոսկովնէրուն թողուն ։ Նա առաջար-
կութիւնը մէկէն մերժեց մոսկովը սոսկալով ,
սաստիկ պատասխան տալով ։ « Մոսկովի պէս
« մեծ տէրութեան մը չվայլեր ապստամբու-
« թիւն հանել տալ ․ ան օգնութիւնը որ կրնամ
« քեզի տալ , 16 հազար զօրք է , ինչպէս որ
« դաշնադրըվեր էինք մէկ տեղ » ։
Փետերիքոս իմացաւ որ՝ մոսկովին ասչափ
օգնութիւնը իրեն շահ ըլլալուն տեղը՝ շատ
ծանրութիւն պիտոր տար՝ շատ նեղութիւն , ա-
նոնք պահելու համար տարին 2 միլիոն ռիա-
լիէն աւելի պիտոր խարճեր , իմացաւ ալ որ՝
հիմա չունէր ինքը ան դաշնակիցները՝ ինչ

---

(1) Հիմա կըսվի Ջիբեպն պեւրկին ։

որ օխտը տարվան ծեծին մէջը ունէր, չունէր ան զօրութը՝ որ երկրորդ անգամ դէմ դնէ նեմցէին՝ ֆրանսայէն՝ ու մոսկովին՝ անոնց իրեքնալ հաշտութ մը ընել տալ կուզէին, ինչպէս որ ինքնալ կըխոստովանի իր գրուածոցը մէջ, խանտըհեցաւ իր բարձրամտութէն որ կըցըցընէր, մանաւանդ որ ֆրանսային թագաւորնալ հաշտութեն թէութիները խրկերէր վեննա եղած իր դեսպանին որ կըսվէր պրեդդէվիլ. աս մարդս փառասէր ըլլալով զանազան հնարքով շատ ետևէ ընկաւ հաշտեցընելու, որպէս զի ետքը մեծ պաշտօն մը ձեռք ձգէ, հաւնեցուց կայսրուհին, ան հաւնած թէութիները յանձվարին ետքերը խրկեց ուերսին իշխանին՝ որ փարեզէ խրկըված էին։

Աս թէութիներուն դէմ դարձան սաքսօնիացիք, վասն զի իրենք փոխարէն կուզէին 40, միլիոն ֆիօրին և մէկ երկիր մը. կուզէինալ որ կայսրը հրաժարի իր ամմէն իրաւունքներէն՝ որ ըստ օրում պօէմիայի թագաւոր ունէր սաքսօնիայի ու լուսացիայի կալուածոցը վրայ։ Տիւ բօնդին դուքը կըպնդէր չէր ուզէր որ պավիէրան բաժնըվի, այլ մանաւանդ վերին բալադինադօին մէկ մասը տրվի, որպէս զի պուրկավզէն շըրջանակը պահվի, իսկ սաքսօնիայի կայսրընտըրին որ իր ազգականն էր՝ բան մը տալ չէր ուզէր, և ոչ իսկ կուզէր որ աս բանիս վրայ խօսվի։ Վանք որ կայսրը՝ իրեն մայրը՝ հաստատուն կեցան, որոշեցին չընդունիլ անանկ մէկ ցած թէութի մը, իրենց պահել զանէ

պավլիկեանային ան մասը՝ որ Դունային ու Իսն և Սալցա գետերուն մէջը կեցնան, ու ւանոց մէկ մասը կոտրել տալու իրենց զօրացմէ :

Պուլղարին թագին մէջ եղած հալածմունքը .

: 779 :

Աս խօսքերը ըլլալէն ետև մարտի 4 զինւադուլ (միւթարեքէ) ըրին, տէշէն քաղաքը խօսելու տեղ որոշեցին, որ մայր քաղաքն է համանուն կոմսութեան, մանճառուի ու կայսերական շլէզիային մէջ տեղը (1). ամենուն երեսփոխանները հոս ժողվըվեցան նաև սաքսոնիային ու տիւ պօնդին դիւացէն, Ֆրանսային ու մոսկովի դիւացէն, որ միջնորդ պիտոր ըլլային : Շատ վիճմունք ըլլալէն ետև՝ վեց շաբթըվան մէջ մայիսի 13 ստորագրեցին հաստատեցին աս թեսութիւնները :

ա . Ասկէց ետքը հաստատուն մշտական խաղաղութիւն ըլլայ նեմցեւին ու պրուշին մէջ, իրենց ու իրենց յաջորդացը մէջ :

բ . Աս հաշտութեր ձեռք զնելէն ետև՝ տասնըվէց օրվան մէջ երկուքնալ իրարու տանին քաղաքները ու տեղերը որ մէկմէկէ առին իրենց գերիներով, տուրք առնելը վերջացընեն :

(1) Աս քաղաքս տրված էր ալլերաժ սաքսոնիայի դքսին, որ է որդի Գ. օգոստոսի լէհի թագաւորին, երբոր փեսայ ընտրվեցաւ քրիստինայ արշիդքսին :

Դ. Ոչինչ սեպվի ան դաշնադրութիւնը որ նեմցէի ու բալադինոյի կայսրընտրին մէջ եղված էր 1778 յունվ. 3. հապա նոր դաշնադրութիւնը որ այսօր կը հաստատվի նեմցէի՝ բալադինոյի կայսրընտրի՝ և տիւ բօնդին դքսին մէջը՝ իբրև ամբողջ մնան սեպվի աս դաշնադրութեան, որուն պաշտպան են միջնորդ տէրութիւնները։

Ե. Ասանկ ալ պաշտպանվին պիտոր ան պայմանները՝ որ եղած են բալադինեան ցեղին ամմէն ճիւղերուն հետ. նաև ան մասնաւոր դաշնադրութիւնը՝ որ այսօր կը հաստատվի սաքսօնիայի ու բալադինոյի կայսրընտիրներուն մէջ։

Զ. Կայսրը ու կայսրուհին յայտնի խօսք կուտան որ՝ ամենևին չարգելեն, այլ թող տան որ՝ պրանտէմպուրկին տանը առջինեկին անցնի երկու մառկգավիան (իշխանութիւը) Անսբախ ու Պայրաթ. երբոր հասնի ան ցեղը որ հիմա կը ժառանգէ, խօսք կուտան որ հրաժարին ան տանը ամմէն իրաւունքէ ոմանց կալուածոց վրայ՝ որ վերոյգրեալ դքսութեց մէջ կը գտնուին, ու պօէմիայի թագաւորութեէն կախում ունին։

Է. Ան հաշտութեն դաշնադրութեը մէջ կիմացվի նաև սաքսօնիայի կայսրընտիրը, կըհաստատվին նաև ամմէն դաշնադրութիւնները որ եղված են նեմցէի ու պրանտէմպուրկին մէջը 1742. 1745. 1763։

Նոր պատմագրութիւնը հայոց՝ հայաստանի մէջ,
ու Եւրոպիոյ հայոցներուն մէջ:

1779:

ա. Բալադինօին կայսրընտուրը ժառանգէ ամմէն ան գաւառները՝ որ աւստրիոյ տունը (Նեմցէն) գրաւեր է (զափթ ըրեր է), թէ պավիէռային մէջ՝ և թէ վերին բալադինօին մէջ, հրաժարելով ամմէն պահանջմունքներէ՝ որ կրնայ ընել ատնք ձեռք ձըգելու համար. ազատ ըլլայ ան ամմէն պայմաններէն՝ որ ըրեր է 1778 յունվ. 3. եղած դաշնադրութեը մէջ. ան դաշնադրութինալ ոչինչ ըլլայ, իբր թէ չէր եղած:
բ. Կայսրը ու կայսրուհին իրենց մասնաւոր տիրոյն համար որ ունին բալադինօի կայսրընտրին վրայ, իրեն՝ ու իրեն ժառանգացը կուտան Մինտելքէօյմ որ պավիէռային մէջն է, և ինչ իրաւունք որ ունի ըստ արուն պօէմիայի թագաւոր Գլաւխաու, Վալտէնպուրկ, ու Լիխթէնսթէյմ տէղվանցը վրայ, հատուցում ընելու համար սաքսոնիայի տանը, 6 միլիոն ֆիօրին տալով, ամմէն մէկ տարին կէս միլիոն տայ, երկու անգամմէն վճարելով վեց ամսէ վեց ամիս առանց մէկ շահու մը: Նոյնպէս բալադինօի կայսրընտրին ու իր ժառանգներուն կուտան պօէմիայի թագաւորին կալուածները՝ որ վերի բալադինօին մէջն են, ինչպէս որ ինչվան հիմա կըժառանգէր պավիէռային

կայսրընտիրը ։ Նահանկալ կայսրը ըստ ո-րում գլուխ կայսերութեան կըխոստանայ կայսրընտրին ու իրենց յաջորդներուն տա-լու կայսերութեան կալուածները, որ պավլէ-ւայի ու շւեզիայի շրջանակներուն մէջն են ։

Գ. Ըւալադրէնօրէն կայսրընտիրներու հաստա-ցուած ընտրելու համար այն օրէնքն՝ որ կայսրը ու կայսրուհին իրենց ցըցուցին, կուտայ ի-րենց ու իրենց ժառանգացը կատարեալ ու միտնջենաւոր տէրութիւն ունենալ՝ ինչպէս որ հիմա ունին աս տեղվանքներուն վրայ, որք են Սիլէշուռ, Պրաշնավ իր քաղքով, Մ`ավրքերքէն, Փրիպուրկ, Մ`աղդըլինկէն, Մոփիէա, Շ`արտենկա, և ընդհանրապէս պա-վիէռայի`ն` ամէն կտորը՝ որ Գուանա, Յենն, ու Սայցա գետերուն մէջ կէսնայ, որ Պրուկավզէն կառավարութեան մեծ մասը կըձեւացընեն ։ Նոնք թող տանէ կայսրը, վերին աւստրիայի հետ միացնէ, որոնց տա-րեկան եկամուտը մէկ միլիոն ֆիորինը անցնի ։

Դ. Միջոյիշեալ գետերը Գուանա, Յենն, ու Սալցա, հասարակաց ըլլայ երկու տէրու-թեց, մէկը չիկրնայ արգելել ազատ նա-ւարկութիւը երկուքին ժողովրդեան, և ի-րենց ապրանքներուն ։

Ե. Միջոյիշեալ երկիրը ամէն իրաւուն-քով կայսեր ու կայսրուհւոյն ըլլայ, և ի-րենց ժառանգներուն. իրենքալ կըհրաժա-րին ամէն պահանջմունքներէն՝ որ կրնան ունենալ պավիէռայի ժառանգութը վրայ,

չիպատահանջէ աս բանիս վրայ մէջ ռադիապօ-նայի ժողովքին մէջ, և մէջ պավլիէտուայի շըր-ջանակին կառավարութեան մէջ, որ բոլորո-վին կայսրընտրին ձեռքը մնայ. կայսրըն տիրանալ իր վրայ ու իր ժառանգներուն վը-րայ կառնէ հոն եղած ամմէն պարտքը ինչ որ ըլլայ։

Ձ. Կայսրը կայսրուհին և բաւարիոյ կայ-րընտիրը՝ իրարու յանձնեն ամմէն թըղ-թերը, հաշուեգիրները (տեֆթերները՝) գիւանները (տեֆթերխանէները՝) որ ի-րենց տրված երկիրներուն մէջը կըգտնը-վին։ Աս դաշնադրութիւն հաստատվելու օրէն՝ 16 օր անցնելէն ետև կայսեր զօրքը ետ տանի պավլիէտուայէն ան կտորը՝ որ ետ դարձըլելի պիտոր բաւարիոյ տանը. և իշ-խեն ան երկիրներուն վրայ որ իրենց տրվե-ցան։ Թէշէն 1779 մայիսի 13։

Աւստրիէին ու պրուսիին զօրաց դադար ելլալը, իրենց խարճերը.

1779։

Վերոգրեալ թէութեանց վրայ աւելցուցին որ՝ Ֆրանսան ու Մոսկովը պաշտպան կենան աս թէութեանց, ինչպէս նաև կայսրնալ պաշտպան ըլլայ բոտ որուն գլուխ գերման-նական իշխաններուն։ Շուտ մը պրուսին զօրքը դուրս ելան պօէմիայէն ու սաքսօ-նիայէն, որոնց բնակիչքը խալըսեցան ան

տուրքերէն՝ որ պատերազմի մէջ կուտային։ Կայսեր զօրքնալ դուրս ելած այն երկիրներէն՝ որ պիտոր ուրիշի տային, մնաց այն երկիրը՝ որ կայսեր պիտոր մնար որուն տարեկան եկամուտը կը հասնէր իբր մէկ միլիոն ու 300 հազար ֆիօրին ։

Այս երկիրս 60 մղոն երկան կը տարածվի դիւօլօյին սահմանէն մինչեւ բասսավիա, որ է քաղաք ամմէն դիւացէն մէջ տեղը մնացած, տասնկ է նաեւ սալիգպուրկին արքեպիսկոպոսութիւնը, որ հարուստ է ու ընդարձակ, և իբր թէ կայսեր սահմանին մէջ հաշւուցած է ։ Նեմցէին շահաւորը այն եղավ՝ որ աս երկիրը առնելով՝ վերին աւստրիան միացուց դիւօլօյին կոմսութեան հետ ։ Բայց աս ծեծս ընելու համար՝ կայսրը խարճեց 50 միլիոն ֆիօրինէն աւելի, առջաժ ըստակ հերիք կըլլար եռապատիկ տասնկ երկիր ծախու առնելու, մէյմընալ որ ամմէն հին պարտքերէն խալըսեցաւ, որովհետեւ պավիէռային մէկալ մնացած երկիրը 37 միլիոն պարտքի տակ էր ընկած է, կարօղաս կայսերմէ վեր ։

Պրուշին թագաւորը պըրեզլավը թողուց, իրեն սովորական տեղը դարձաւ, որ է բօզտամ. մինչնալ աս ծեծիս մէջը 20 միլիոն ռիալի խարճեց, ուրիշ բան չի վաստըկեցաւ որ՝ մէկ պզտիկ տեղի մը ժառանգութիւնը ապահովցուց՝ որ իր երկըքէն բօլօրովին բաժնըված է. կառավարութեան ու կարդալ գրելուն հետ պարապեցաւ. այն յիշատակարանը որ իր ատենին պատմութիւն է՝ աս ատեն

զառ ածուէն ( Թաւլայէն ) առնելու։ Մերին Մաճառի մէջ Թիւնաւ ըսուած տեղը համալսարան կար՝ ուր քիչ աշկերտներ կերթար, անկից փոխվեցաւ Պուտիմ քաղաքը բերվեցաւ, որ Մաճառին մայր քաղաքն է. Թէպէտեւ աս բանս եղաւ մէկ նորոգութիւն մը ան ուսման՝ որ 1465 մադդիա քօռվինօս հանդըներեր, որ երեւելի Թագաւորներեն մէկն էր ժն դարուն մէջ, և որովհետեւ 1541 տաճիկը առեր էր ան քաղաքը՝ վարպետներնալ աշկերտներնալ փախերեին անկից։

Յովսէփ կայսեր երրորդ ճամբորդութիւնը Լեհաստան, Մոսկովիա, ու Բետրբուրգ.

1780.

Յովսէփ կայսրը սէր մեծ ունենալով աշխարհ քալել, աշխարհ ու մարդ ճանչնալ, պօէմիայէն անցաւ եկաւ կալլիցիա, անկէց ձերմակ ռուսիա, մոյլովլին մէջ որ տնեբեր գետին վրայ է՝ տեսնըվեցաւ կատարինէ Թագուհիին հետ՝ որ անալ ճամփայ ելեր էր լեհէն առած երկիրները տեսնալու համար. վեց օր մէկ տեղ տեսնըվեցան երկան խօսեցան մեծ բարեկամութիւն կապեցին. Երկու տէրութեց մէջ մէկ մշտնջենաւոր նոր դաշնադրութի մը ըրին մարտապահ և մարտավար՝ բայց խիստ գաղտուկ։ Ետքը մէկ տեղ ելան մոյլովէն ինչվան ըզմօլէնսքօ եկան, հոն բաժնըվելով յովսէփ գնաց Մոսք-

վրայ տեսնալու․ երբոր տեսաւ ան Ջրանցքը՝ որ մեծն պետրոս բանալ էր տըւեր, որ մօսքվիայէն բէդրօպուրկ կըտանի, երկան 600 մղոն աշխարհագրական, խիստ զարմացուցեաց, խոստովանելով որ՝ ինչ մեծագործ շէնքեր որ մնացած կան հռոմայեցոց կայսերաց, անիկայ անոնցմէ շատ աւելի կըգերազանցէր ։

Մոսքվիայի տեսնալու բաները տեսնալէն ետև՝ բէդրօպուրկ գնաց, ուր կատարինէ Թագուհին դարձած ըլլալով իրեն կըսպասէր․ քանի մը օր նստաւ ցարսքօլլիա ըսուած զուարճալի տեղը, Թագուհւոյն և իր ընտանեացը հետ տեսնըւելով, զանազան հանդէսներ ընելով ։ Յուլիսի 10 հին տոմարին կեօրկէ որովհետև ս. պետրոսի տօն էր՝ յովսէփ կայսեր համար աւելի փառաւոր տօնեցին բէդէրհօֆ ըսուած տեղը, գիշերը լուսաւորութիւն ըրին 50 հազար պիլլօռէ կանթեղներով զանազան գոյներով համեմատութե̃ շարուած ըլլալով տեսնօղները կըզմայլեցներ․ աւրիշ խորհրդաւոր կամարներ շինեցին, խորհրդաւոր գրուածներ, որ մօսկօվլին բարեկամութիւը կըցըցընէր նեմցերէնհետ, մօսկօվլին մեծծերնալ ան հանդէսին (ալային) մէջը ամմէնինալ իրենց փառաւոր հագուստնին հագուած․ 60 հազարէն աւելի ալ ժողովուրդ հոն ժողվըւած տեսնալու համար, շատ մեծ ընդունելութիւն ու պատիւ ըրին յովսէփ կայսեր ։

Մաղվան օրը յովսէփ գնաց գիտութե̃ ճեմարանը տեսնալու, որ մեծն պետրոս հիմ-

ներէր, ու եղիսաբէթ իր դուստրը մեծցու-
ցէր զարդարերէր, հոն իրեն առջին եղան
ամենէն գիտուն վարպետները՝ ու պատուա-
նուն անդամները, որ եւրոպայի մէջէն ա-
ւելի գիտուն ու ծաղկած ազգերէն ժողվը-
ված ընտրըված էին: Ներքոր մասու թնա-
պատում հանդիսարանը տեսնալու, իրեն
ընծայեցին մէկ ոսկի մետալ մը շուտ մը
տպված, երկու թագաւորաց մէկ տեղ գա-
լու յիշատակը պահելու համար: Գրքա-
տունը տեսաւ շատ հաւնեցաւ իր մեծաշի-
նութեները ու ազէկ կարգաւորութեները վրայ,
հոն իրեն ընծայեցին մէկ Ճանապարհորդա-
բան մը, որ էր հաւաքում զանազան ատենի
եղած Ճամփորդութեներու ամենէն ռուսասիայի
երկրին մէջ, անիկայ խիստ հաճոյ անցաւ
յովսէփ կայսեր. իրեն ընծայեցին նաեւ հա-
ւաքում մը գեղանէ եղած թերթերու, եւ
Ճիշդ աշխարհացոյցներու. նաեւ մէկ աշ-
խարհացոյց մը յովսեփայ ըրած Ճամփոր-
դութենը վրայ, վեննայէն մոյլով, մոյլովէն
մօսքվիա, մօսքվիայէն բետրբուրկ: Նոյն
վան յուլիսի 20 ատանկ պատուով հոն կե-
նալէն ետեւ յովսէփ, գիշերանց Ճամփայ ե-
լաւ, թագուհին ու ամենէն արքունիքը իրեն
ընկերանալով:

Բայց աս Ճամփորդութիւը ամենէն թագա-
ւորաց մէջ մեծ շփոթութի ձգեց, որովհետեւ
յովսէփ որչափ որ բետրբուրկ կեցաւ,
ամենէն օր երկու թագաւորք երկան առանձ-
նախօսութիւն կընէին, գրիգոր բօդէմքին
իշխանինալ մէկ տեղ. Ինչ պիտոր ըլլայ ըսե-

լով ամէն Թագաւորներուն դեսպանները զանազան կարծիք դացին իրենց դաղտնի խորհուրդին վրայ, կըկասկածէին որ անոնց խորհուրդը մէկ ձամփայ մը դտնել էր զիրենք մեծցընելու։ Մեր համար ուրիշ Թագաւորներու խիստ անհաճոյ եղաւ ու անոնց մէկ տեղ տեսնըվիլը, չըլլայ որ անոնց մեծնալովը եւրոպայի ուրիշ Թագաւորներուն հաւասարակշռութիւնը կորսըվի. մէջերնին ամենէնէն աւելի պրուշին Թագաւորը խիստ կըմտմտար, ետեւէ կվախնար իրենց խորհուրդը իմանալու։ Մանաւանդ որ կըտեսնային մոսկովին զօրքը 350 հազար ոտանաւոր ու ձիաւոր պատրաստ ոտքի վրայ կեցած ունենալով ետեւէ ետեւ ալ միշտ շատցընելու հետ կըլլար, 150 պատերազմական նաւալ ծովի վրայ ունէր. իրեն եկամուտնալ անհամնկ աղէկ կարգաւորված էր՝ որ ամէնն տարի Թագուհին ծածուկ խազնան 5. 6. միլիոն ռուպլի (պէշլիք) կսեղմէնար, ասկէց ամէնն տէրութին վախնալ սկսան։

Այսօրուս լօռէնեան դուքսը հըմէանէ, մարիէթիլերանոս կայսեր եղբայրը տիրասնեան կարգին մեծաւոր հրամնն, ու դուքս Պրէհէնթեյի.

1780։

Մրբոր յանկարծ վեննա հասաւ, իր աղքանիքը սուգի մէջ դտաւ կարօլոս աղեքսանդր լօռէնեան դուքսին մահուանը համար, որ էր եղբայրը ա Փրանչիսկոս մեռած կայսեր, հօր

որուն առաջ օգնականն էր եղած, ու կար-
դին մեծաւոր. ըլլալովը՝ կայսերական ժո-
ղովքին հաւանութ., եղաւ նաև. դուքս մեր-
կենթեյմ քաղաքին՝ որ Փռանքօնիայի մէջն
է ։ Նսանկով ամմէն կայսեր եղբայրները
մէյ մէկ տեղի տէր եղան, մէյ մէկ երկրի
իշխանութ. ձեռք ձգեցին, մէկը Տօսքանայի
դուքս ըլլալով, մէկալը լօմպարտիայի կա-
ռավար ըլլալով՝ որ ժառանգօղ պիտոր ըլ-
լար հօրը ցեղին, ու իր երկիրներուն մօ-
տէնայի ու ռէճճիօյի. իսկ մաքսիմիլիանոս
մերկենթէյմին ինչպէս որ ըսինք ։
Նօ բանիս համար ատենին պարապայներ-
նալ յաջողութ. տրվին, ինչու որ Փրան-
սան՝ ինկիլթէրռան, օլանտան հոմ Փիլէ-
մէնկը սաստիկ կռուի մէջ ըլլալով՝ ատեն
չունէին դէմ դնելու. իսկ մոսկովը օգնա-
կան էր նեմցէին ։

---

ները տաք երկիրէն ելան՝ պրուսսիային ցուրտ երկի-
րը եկան, որոնք Գ. Անորիոս պապ քարոզիչ ըլլա
անհաւատները դարձընելու համար, բայց ասոնք ի-
րենց տէրութե. տակը առին, Օթոնին մարքէմպուրկ
դրին, անկէց 1460ին ատենները լեհերէն հալածվե-
լով՝ փախան եկան քէնիկսպէրկ, հոնալ քիչ կեցան.
վասն զի՝ արևելեան պրուսսիան դրեթէ բոլորովին
լութրան ըլլալով, պրանտէմպուրկեան ալպերտը մե-
ծաւորութենէ անցաւ եղաւ ժառանգաւոր իշխան,
ինչպէս որ քէթլէրի ցեղնալ քուռլանտեայի մէջ
ըրաւ, ժառանգութիւննալ իր տանը վրայ անցաւ ։
Երբոր կորսնցուցին պրուսսիան նաև լիվօնիան՝ շվէ-
տի ու մոսկովի ծեծէն ավրըշտըկվելով՝ քաշվեցան
մտան վերոյիշեալ մերկենթէյմ քաղաքը տաուպէր գե-
տին վրայ, ուր տեղ է ինչվան հիմա իրենց բնակա-
րանը ։

## Մաքսիմիլիանոս քօլոնիայի կայսրընտրին օգնական կըլլայ, ու եպիսկոպոս Մունսդերի.

1780.

Մերոգըրեալ իշխանուէ զատ՝ մնացեալներն որ նոյն Մաքսիմիլիանոսը մէկ յաջորդ մը ընտրեն ձեր կայսրընտրին ու արքեպիսկոպոսին Ֆրետերիկոսի, որ քօլոնիայի արքեպիսկոպոս էր, և Մունսդերի եպիսկոպոս և իշխան, որով իսկոյն տէր կըլլար ան երկիրներու՝ որ վեսդֆալիայէն ուէնսօ գետին ան դի դին կըտարածվին. աս բանիս վրայ Ֆրանսայէն հաւանութիւնալ շուտով առին, վասն զի արդէն ժդ. լուիզին ատենը սաստիկ պատերազմ ըրեր էր Ֆրանսան ա. Լէօբոլտոս կայսեր հետ, որպէս զի իրեն զին մէկ կայսրընտիր մը ունենայ Գերմանիայի մէջ, հիմա Մաքսիմիլիանոս Ֆրանսայի թագուհիին եղբայրը ըլլալով՝ իբր թէ ուզածնին եղած կըլլար: Սանկով բանը աղէկ մը շտկելով՝ Մաքսիմիլիանոս արշիդուքսը հրապարակաւ հագաւ եկեղեցական հագուստը, որպէս զի օգնական ընտրուի վերոյիշեալ արքեպիսկոպոսին:

Գերմանիայի ամմէն իշխանները լաւ կեցան աս բանիս վրայ, միայն Բ. Ֆետերիքոս պրուշին թագաւորը դժվարը գալով գանկատ ըրեց քօլոնիայի կայսրընտրին, թէ ինչպէս եղաւ որ՝ ատով երկու կայսրընտրութիւն ընկաւ աւստրիոյ տանը վրայ (որ է նեմցէն)

և երկու իշխանաւոր եպիսկոպոսութին իրեն մէկ իշխանի վրայ. տեսնելով նեմցէն իր մեծազօր տէրութիւնը մէկ յաջորդական ժառանգութին մը կըթողու իր թոռներուն, ինչպէս որ մաճառի ու պօէմիայի թագաւորները եղան, որ առաջ ընտրութիւն կըլլըվէր, նեմցէլին ձեռքը անցնելէն ետև կամաց կամաց դադրեցաւ ընտրութիւն ըլլալը: Ասանկ թղթեր գրելէն զատ՝ չիկրցաւ ուրիշ բան մը ընել Փետերիքոս. կերևայ որ իր ծերութիւնն ու հիւանդութիւնն որ միշտ կըտանջըվէր, չէր համարձակեր ծեծ բանալ աս բանիս համար:

Կօլօնիայէն կայսրընտիրը պատասխանեց Փետերիքոսի: „Ինչ բանէ որ դուք կըվախ-
„նաք, ան վախը աս բանիս մէջ չիկայ:
„վասն զի աս երկու եպիսկոպոսութե կառա-
„վարողը (որ է մաքսիմիլիանոս), պէտք է
„միշտ հնազանդ ըլլալ՝ ան օրէնքին կեօրէ
„երթալ, որ հիմնական օրէնք են թէ ան
„երկու եպիսկոպոսութեանը, և թէ գեր-
„մանական սահմանադրութեը. առանկայ
„ահա ըստ պրանտէնպուրկին տանէն և
„բաւրու ետևէն իրեք իշխաններ նստան
„յաջորդութիւ, առանց մէկ վնաս մը տա-
„լու կարգադրութե գերմանական իշխա-
„նուէ (1)“: Փետերիքոս աս գիտցէն յա-

(1) Պրանտէնպուրկ ըսված տունը՝ իրեն Փետերիքոսին տունն էր, որ և աւստրիոյ տանը պէս միշտ կուզէր իր սահմանը ընդարձակել՝ գերմանիայէն տեղվանք յափշտակելով:

եւս, որ աւագերէց տանը եղբօր մնացած
զաւակը եղաւ բուն մանչու գիւղացին, որուն
առջի նահապետը եղած էր Ռոստոլֆոս, որ
1273 թագաւորեր էր։ Բայց աս եղբօր զա-
ւակը եղաւ ամենէն առջի պարծանքը
իր աւստրիական ցեղին վրայ իր բարե-
պաշտութեան համար, ըլլալով խղճմտանքա-
ւոր, խոհեմ, շատ համբերող, առատա-
ձեռն բարերարող ամենուն, բարի օրի-
նակ թողուց ամէն թագաւորներուն ան
տանը՝ որ տանն որ պաղութիւն էր մնած
մեծ մասը եւրոպայի աշխարհներու մէջ։
Իրեն նոր նստելու ատենը՝ կայսերական
թախտը կործանցընելու վտանգի մէջ ընկաւ,
բայց ինքը անսանկ խոհեմութիւն մը կառա-
վարեց, որ եղբը ամէն թագաւորներ կը-
ցանկային իրեն ցեղին մտնելնալ, իրեն հետ
ազգականութիւն ունենալ. սասանկով հիմա
մեռնելու ատենը իր զաւկըները մէյ մէկ
թախտի մէջ տեղաւորված տեսաւ իր աչ-
քով մանչերը նաեւ աղջիկները, յովսէփը
իր աւստրիական թախտին վրայ, լէոպոլտոսը
տոսքանայի վրայ՝ որ մէտիչի ցեղին թախտն
էր, Ֆերտինանտոսը լոմպարտայի վրայ որ
միլանն կըսուտէր, մաքսիմիլիանոսը քոլօնիայի
կայսրընտրութեան վրայ՝ որուն օգնական էր
եղած, գեղղոնեան կարդինալ մեծաւոր,
մունստերի եպիսկոպոսի օգնական։ Աղջիկ-
ներէն՝ մարիամ ամալիան պառմայի դքը-
սուհի էր եղած, քառլօզդան կամ քառօլի-
նան՝ նաբօլիի թագուհի, անդօնիէգդան՝
Ֆրանսայի թագուհի, մարիամ քրիստինան՝

սաքս դէջէնին դքսուհի, որ սորբին Նա-
հանգներնալ մէկ տեղ կըկառավարէր ։
Իր ընկերը Յ. Փրանչիսկոս մեռնելէն ետև՝
աս հօգեսէր կայսրուհիս իր մահը մտածե-
լու համար՝ իրեն մարմնոյն սնտուկը կամ
տապանը շինել տըվավ, մեռնելու հագուստ-
նալ ինքիր ձեռքովը գաղտուկ կարեց պա-
տրաստեց, որով և Թաղվեցաւ՝ վրանին
նայելով միշտ իր մահը կըմտածէր ։ Ինս-
բրուք քաղաքը ուր որ մեռաւ Փրանչիսքոս,
ան տունը փառաւոր վանք մը շինեց, մէջը
տասներկու կոյս աղջիկ դըրաւ կանոնիկո-
սուհի անունով, ամմէննալ հին ազնուական
տներէ, որոնց քննութիւնը անանկ կըլլար՝
ինչպէս որ կըլլար մալթայի ասպետներու
վրայ. ասոնց աղէկ եկամուտ կապելով
պարտք դըրաւ միշտ աղօթք ընել Փրանչիս-
քոսի իր երկանը հոգիին համար ։
Իսկ երբոր ինքը կայսրուհին մեռնելու ե-
ղավ իրեն ետքի օրերը շատ աւելի բարերա-
րութե ընել տըվավ որբերու և աղքատնե-
րու. իր մեռնելէն քիչ մը առաջ աս խօսքս
զուրցեց ։ „ Ան որ իմ Թագաւորութենս
„ ատենը մեղադրելու արժանի բան մը ե-
„ ղերէ՝ գիտցիք որ իմ չիգիտնալովս եղե-
„ րէ, ինչու որ իմ միտքս միշտ աղէկութի
„ ընել կընայէր „ ։ Արգարմանային քովը
եղօղները իր քաջալերութե ու մխիթարութենը
վրայ, վասն զի խիստ ուրախ կըցըցընէր զին-
քը մեռնելու վրայ, դարձաւ ան ատենը
Յովսէփ կայսեր իր որդւոյն ըսավ ։ „ Ինչ
„ որ աշխարհ մենծութի ու զօրութիւն կը-

» կոչէ ծրդեակ, աս ատենս ամմէնը կըկոր-
» սըվլին անհերևոյթ կըլլան, բայց իս հիմա
» հանգիստ և ուրախ կըտեսնաք, ասիկայ
» կուգայ խղճմտանքիս մաքրութենէ. քառ-
» սուն տարվան ծանր թագաւորութեանս
» ատենը՝ միշտ ճշմարտութիւը ու արդարու-
» թիւը նայերեմ, կրնայ ըլլալ որ խաբված
» ըլլամ պաշտօնեայ ընտրելուս ատենը, իմ
» մտքինս ծուռ հասկըցած ըլլամ, ծուռ ը-
» րած ըլլամ, բայց սրտագէտն Ած գիտէ իմ
» սրախս խորունկ շարժմունքը, աս հիմակ-
» վան հանգստութիւը՝ առջի շնորհքն է իր
» անհուն ողորմութեը. ասիկայ ինծի յոյս
» կըբերէ որ՝ ետևէ ուրիշ շնորհքներալ
» պիտոր ընէ. ես խուլ չեղայ ողորմելինե-
» րուն ձայնին որ ինծմէն բան մը կըխնդրէին,
» գիտեմ որ ինքնալ անլսող չըլլար ինծի
» շնորհք ընելու. աս է ահա իմ մէկ հատիկ
» միխիթարութիս աս ետքի ատեններս ».

Իրաւ որ շատ զարմանալու բան է, ասանկ մենծ թագաւոր մը, ասչափ ընդարձակ կա-ռավարութի ունեցող, ասչափ պատե-րազմերու մէջ խառնըվօղ, իր ետքի օրը խղճմտանք մը չունենայ արդարութե դէմ ըրած բանի մը վրայ: Իր թագաւորելու ատենը Եւրոպայի մէջ սկսված էր անհա-ւատներուն աղանդը՝ որ խափան կըլլային իր ամմէն ուզածները առաջ տանելու, թէ չէ՝ ուրիշ շատ աղեկութիններալ ըրած կըլ-լար. բայց աս ըրավ որ՝ միշտ հաւատքը ողջ պահել տըվավ. անառակութինները՝ մոլու-թինները՝ զուսպ պահեց, գէշ գրքերը խա-

փանեց, անանկ խաղերը՝ որ ըստըկով խա-
ղալով տուներ կըկործանէին՝ վերցուց, եւ-
դուռ ընելը սաստիկ արգելեց։

Իր հագուստը՝ ուտելիքը՝ մէկ ձգնաւորի մը պէս էր. իր կառավարուէ մեծ զբաղմունքը արգելք չէր ըլլար իրեն առանձնանալու ատեն գտնալ, քանի հարկաւոր բան ունենար՝ չէր ձգեր սովորական աղօթքները. ատեն ունէր որ եկածին պէս՝ կըքաշվէր առանձին իր աղօթքները՝ մտածականները՝ ջերմեռանդութիւը ամմէն օր կընէր։

Իսոստովանահայրը կըպատմէր՝ թէ աս կայսրուհին մէկ յատուկ շնորհք մը ունեցաւ յայ. երբոր կառանձնանար՝ աղօթքի հետ կըլլար՝ այնչափ մտադրութե ջերմեռանդութե բոլորովին զինքը այ կուտար որ՝ գիտես թէ ամենեւին ուրիշ զբաղմունք մը չունէր կառավարութե, այլ իբր թէ մէկ ձգնաւոր մընէր եղած, կամ մէկ առանձին մարդ մը. ինչու որ իր կառավարութե ընելու ատենն ալ՝ միշտ ած իր աչքին դիմացը ունենալով կընէր. չունէր մէկ բանի մը վրայ կամ հնհնալով սրդողելով ընել, կամ խիստ նեղելով տաքնալով ընել, ինչպէս որ հասարակօրէն կըլլայ շատ զբաղմանց մէջ եղողներուն։

Որչափ էր իր ողորմածութիւը՝ որ պզտիկուցմէ իրեն բնական բան մըն էր դարձած. տասնըչորս տարվան պզտիկ ըլլալով՝ Դ. կարոլոս իր հայրը խորհուրդ կըհարցընէր իրեն խնելացի ըլլալուն համար. ան ատենէն ալ անդադար իր հօրմէն շնորհք կըխնդ-

դրեր խեղճերուն համար՝ յանցաւորներուն համար, անչափ որ կայսրը դարձաւ իրեն ըսաւ։ Այնման որ դուռն Բագոսնի ալևոր ըլլալոյն ուրիշի ողջկութիւն ընելու համար։ Նապատասխան տըլալ, Բագաւորէն ընծայն ողջկութիւն ընէն ընել է. ասանկ բնութիւն ունենալով Թախտը անցնելէն ետև ամէն օր պէտք էր որ մէյ մէկ բարերարութիւն ընէր, կըցաւէր քնոյն վրայ՝ որ քուն ըլլալովը՝ չէր կրնար ան ատենը մէկ բարերարութիւն մը ընել ժողովրդեան։ Օր մը իր տանը զինուորներէն մէկը հիւանդ տեսավ, շուտ մը վերցընել տըլալ հիւանդանոցը խրկեց. իրեն հասկըցուցին որ՝ ան զինուորին հիւանդութիւնը իր մտմտուքէն էր. մէյմը իր մօրը կարօտը քաշելուն համար որ մէկ հատիկն էր, մէյմընալ իր չքաւորութենը համար՝ որ չէր կրնար հանիլ իր մայրը պահելու։ Շուտ մը մարդ խրկեց մօռավիայի մէջ Պուրին տեղը՝ 140 մղոն հեռու, մայրը բերել տըլավ, իրեն յանձնեց տղան. յատուկ Թոշակալ կապեց ըսելով, Սանկ բանէրն են իմին ըղձօսանքս։ Ասանկալ ընելով Թէ ինչչափ իրեն կըքաշէր ժողովուրդին սիրտը, յայտ է աս մօրը պատասխանէն՝ որ ան ատենը աղաղակելով գուրցեց։ Ովէպէտ իմ մէկհատիկ զաւակս է, իմ կեանքէս աւելի անիկայ կըսիրեմ, բայց կըբաղձայի որ հիմա աչքիս առջին մեռնի, միայն թէ քու ծառայութեդ մէջ մեռնի։ Ասանկ բաներու համար էր որ՝ ժողովուրդը Մայր հայրենեաց անուանեցին աս կայսրութիւնս։ Օր

մը երբոր իր պալատը (սէրայը) պիտոր մտնար՝ մէկ կնիկ մը իր երկու տղաքովը առջը ընկաւ, անօթիութէն չիդիմանալով. կայսրուհւոյն սիրտը այնչափ ցաւեցաւ աս բանիս վրայ՝ որ ինչ պատրաստերէին իրեն ուտելու համար՝ բերել տըւաւ, անոնց կերուցուց. ինքը միայն արցունք թափելով խըղճալէն բան մը չիկերաւ:

Երբոր մէկը մէկ խնդիրք մը կառաջարկէր, իր վիշտը (տէրտը) կըբանար, ամէնուն մտիկ կըդնէր, բայց ինչ որ պիտոր ընէր՝ անանկալ պատասխան կուտար մենծի պզտիկի, հարուստի աղքատի. չիկար ամենևին իր քովը մէկ բանը անորոշ թողուլ, կամ վըրայէն քերելու համար կերպ կերպ պատասխան բանեցընել, կամ թէ խօսք տալ՝ ետքը չընել, ինչպէս որ շատ իշխանաւորաց սովորութի է, հապա ինչ պիտոր ընէր՝ անանկալ յայտնի կըզուրցէր: Անանկալ եղանակ մը ունէր խօսելու՝ պարզ, շիտակ, թափանցող, որ ամէն իրեն դիմօղները գոհ կընէր, պտոյտ խօսել ամենևին չունէր: Շատ մարդ ասոր վարքը ու գովասանքը գրերեն, ամէննալ իր խօսվածքը կըգովեն ըսելով թէպէտ ճարտասանական խօսվածք չէր՝ ինչպէս որ ոմանք կըգտնըվին՝ որ անուշ ճարտասան լեզուով լսօղները կըզմայլեցընեն, բայց աս կայսրուհին մէկ ուրիշ ոճ մը ունէր իրեն յատուկ՝ որ մէկի մը չէր նմանէր, պարզ անկեղծ սրտէ մը առաջ եկած, կտրուկ՝ անուշ՝ բնական ըլլալով՝ մէկ լոյս մը կուտար որ՝

Ինչ կըսէր՝ մէկ վայրկենի մը մէջ կը հասկը-
ցընէր . Ինչ որ կառաջարկէր՝ մարդուն միտ-
քը կը թափանցէր, ասով ամմէնն ալ իր խօս-
քին բերել կուտար կը հնազանդեցընէր .
Ձայնն ալ զօրաւոր՝ կերպարանքն ալ գեղեց-
կութէն զատ մէկ փառաւորութին մը ունե-
նալով՝ դուրսէն (1) յայտնի կը ցըցընէր՝ թէ
ստեղծըված էր թագաւորելու համար . իր
բարի վարքն ալ կրկին արժենի ընել կու-
տար զինքը :

Մ՛տքին դատումը՝ աղէկ հասկըցող, որո-
շող, հաստատուն, սիրտը քաջ աներկիւղ,
ինչպէս իր քաշածները կը ցըցընեն, տան-
կով ամմէնն ալ միաբան կըսեն որ՝ աս իշ-
խանուհիս եղաւ աւելի գերազանցներէն
մէկը՝ որ Եւրոպայի մէջ թագաւորեցին . և
մէկին ըսածին պէս՝ Մարկոս Աւրելիոս ինչ
պէս պէտք է մէկ թագաւորի մը վարվելու՝
խրատներ գրեց, իսկ Մարիամ Թերեզինան
ինչ խրատ որ գրեց Աւրելիոս, ամմէնը
գործքով կատարեց, մանաւանդ թէ աւե-
տարանական խրատներովն ալ լուսաւորեալ
ըլլալով՝ շատ գերազանց կերպով կատարեց:

(1) Երբոր Մօբէռդիւի աստղաբաշխը պրուշի երկրէն վիեննա եկաւ, կայսրուհին բաներ հարցընելով իրեն պրուշի երկրին վրայ, աս ալ հարցուց : Կըճանչնա՞ս ըսաւ շվետի թագուհին՝ որ պրուշի թագաւորին քոյրն է . կըսեն տար համար որ՝ աշխարհիս մէջը ամմէնէն գեղեցիկ իշխանուհին է : Պատասխան ըր-աւ Մօբէռդիւին . իրաւ եսալ անանկ կըհաւատայի ինչվան աս օրս : Ըսել ուզեց որ՝ իրեն գեղեցկու-թինը որ ան օրը տեսաւ աւելի էր քան թէ շվետի թագուհիին :

Մեռնելու առենը իր Թագաւորութիւնը ծաղկեալ թողուց, եկամուտը աղէկ կարգի մէջ դրած. իսկ զօրքը 200 հազարէն աւելի՝ կամ ըստ ոմանց մինչև 400 հազար ոտքի վրայ կեցած թողուց։ Իրեն յիշատակներն են համալսարանները՝ դպրատուններ՝ որ գիտութիւններ ծաղկեցընելու համար բացաւ, որոնց մէջ անուանի եղաւ ան՝ որ իրեն անունով կիշվի. դպրատուններ բացաւ րէսիմ քաշելու, պատկերհանութի ճարտարպետութի սորվելու. հասարակաց գրքատուններ շինեց բռակա ու իմսբրուք. Մեծաշէն դիտարաններ կանգնեց վէննա, կռաց, ու գիռնավ աստղաբաշխութեն համար, վարպետաշէն գիտակներ (տիւրպիններ) դնելով մէջերնին. որոնցմով շատ բան գտան երկինքը երևելի աստղաբաշխները հէլլ, հալլէյ, ու պօտքօվիք. վէննայի արուարձաններուն (վարըշներուն) մէջ գործարաններ բացաւ կտաւի՝ չուխայի՝ իփեկի՝ ըսդօֆայի՝ փաղփուրիի.

Յովսէփ երկրորդ կայսրը Գերմանիոյ մէջ ըրաւ՝ կարգադրութիւններ հինէ քաղաքական ու եկեղեցական.

1781։

Կայսրուհին Մարիամ Թերեզիանան մեռնելէն ետև ամմէն նեմցէին քաղաքները՝ նաև ամմէն դուքաի տէրութիւնները իրենց սուզը

ցուցուցին իր մահուանը վրայ հանդէսներ ընելով, միայն Հռոմ այնչափ սուգ չցըցուց կըսեն, որովհետև օրինակ մընալ չիկար պատմութեանց մէջ՝ որ նեմցէ կայսրուհի մը ինքիրմէ իր երկրէն զատ թագաւորէ. աս բանս եղավ կըսեն պատճառ՝ որ Յովսէփ կայսեր սիրտը պաղեցաւ Հռոմայի վրայէն, վասն զի առաքելական թագուհի պսակված ըլլալով իրաւցընէ պէտք էր որ կըսեն Հռոմ մէկ հանդէս մը ըներ իր մահուանը: Բայց ինչ նոր փոփոխութիւններ որ ըրավ Յովսէփ կայսրը իր եկեղեցականաց վրայ, աս բանիս վրէժը առնելու համար չէր, այլ իր տէրութիւնը և եկամուտը կարգաւորելու համար: Ուրիշ դիպուածմընալ պատահեցաւ, վիեննայի արքեպիսկոպոսը՝ որ կըսվէր քառտինալ միկացցի, ատենօք իրեն ծածարան ունէր մէկ ըզվիցերացի քահանայ մը Նիօւէր անունով. աս քահանան Պրինն եղած դպրոցերեցին որ մօռավիայի մէջն է՝ վերակացու ընտրեցին. քառտինալը աս բանիս հաւանութիւն չտըվավ անոր յանսենեան ըլլալուն համար. քահանան իմանալով վիեննա դիմեց, հոն իրեն պաշտպան գտնալով վիեննայի դպրոցերեցին (սէմինառիօին) վերակացու եղավ: Աս բանով քառտինալնալ Յովսէփ կայսեր աչքէն իյնելով հրաժարիլ խնդրեց իր աթոռէն, որուն հաւանութիւն տըվավ կայսրը. բայց ասոր հրաժարվելուն վրայ նեղեցաւ սըբազան պապը:

Յովսէփ իր մայրը մեռնելէն ետև երբոր

մինակ բացարձակ տէր եղաւ՝ շուտ մը Նեմ-
ցէի կառավարութիւնը փոխել սկսաւ. վասն
զի Յովսէփ շատ յօժարութիւն (հավէս) ու-
նէր, շատ կարգաւորութիւններ կուզէր ը-
նել. կըբաղձար ըլլալ չէ թէ մինակ պատե-
րազմօղ աշխարհակալ թագաւոր, այլ նաև
օրէնսդիր, բարեկարգօղ, ծաղկեցընօղ:
Ամմէն բանէն առաջ իր դարպասին (սե-
րային) վրայ սկսաւ կարգաւորութիւն ընել,
ամմէն խարճը չափաւորել. որովհետև
թախտը նստածին պէս՝ իմացաւ որ Նեմ-
ցէի տէրութեան պարտքը կըհասնէր իբր 160
միլիոն ֆիօռին, աս պարտքս վճարելու՝
չուզեց որ ժողովրդեան վրայ ծանրութիւն
ձգէ, իր անձին ու դարպասին վրայ սկսաւ
չափ դնել, ախոռին, մուդվախին, սեղա-
նին, որս (ավը) երթալու վրայ, աս ամմէն
խարճերը քիչցուց, որոնց համար առաջ
շատ աւելորդ խարճեր կըլլային. ինչ մարդ-
կանց որ թագաւորական եկամուտ կըտըր-
վէր՝ ամմէննալ քննեց, միայն արժանաւոր
եղօղներուն եկամուտը թողուց, մէկալնոն-
ցը կտրեց, ասով շատ մարդ զանկտիլ սկսաւ:
Իր մայրը մեռնելու ատենը ուզերէր որ՝
մէկ ամսըվան թոշակը (եօլէֆէն) կրկին
վճարվի ամմէն զօրաց, Յովսէփ իր մօրը ը-
սածը իսկոյն վճարել ուզելով՝ իր առան-
ձին ըստըրկէն մէկ միլիոն 200 հազար ֆիօ-
ռին հանեց տըվավ, որպէս զի վճարվի ան-
չափ զօրաց ու անոնց հազարապետաց:
Ասկէց ետքը պինտ առաջ եկեղեցականաց
վրայ սկսաւ իր կարգադրութիւնը բանեցը-

նել, որ առաջ դօքանայի մէջ ընել տը-
վերէր իր եղբօրը Լէօբոլտոսին իբր փորձ.
օրէնքներ հանեց. 1781 յունիսի 10, օրէնք
հանեց Թոյլտուութեան ամմէն դաւանանքի
համար իր երկրին մէջը. Լութրան՝ քալվին՝
հոռոմ՝ ուրիշ ինչ դաւանանք որ կայ խա-
չապաշտներուն, Թող համարձակ բանեցը-
նեն իրենց եկեղեցիները՝ կրօնքին բաները,
առատինկ ապսպրելով եպիսկոպոսներուն՝ որ
ամենևին չիդպչին չինեղեն անոնք (1);
Վեսդ-Ֆալիա եղած հաշտութեանը մէջ սահմանե-
վերէր որ՝ Գերմանիայի մէջ աչք գոցվի, Թող
տըրվի Լութրականներուն՝ քալվինիներուն՝ ի-
րենց պաշտամունքը ընելու, հիմա յօվսէփ
կայսրը ան երկիրներուն մէջնալ Թող տը-
վավ՝ որ վերոգրեալ հաշտութեանը մէջ չի-
կար, (բաց 'ի Լօմպարտիայէն ու ստորին
նահանգներէն,) ամմէն օտարահաւատնե-

---

(1) Յովսէփ կայսերէր 1603ին եղած ապստամբութեանը՝ որ Մաճառի մէջ եղած օտարահաւատները հանեցին նեմցեին դէմ՝ հաղիւ վերջացաւ 1711. սոսնք Ռ. Լէօբոլտոսին ատենը խիստ կրգանկաւեին Ճիզվիթներէն ու դօմինիկեան կրօնաւորներէն. իբր Թէ սոսնք կըգըրգռւեին նեմցեին ատերութեանը, պատճառ կըլլային ան հալածման իրենց դէմ որով սկսաւ մէկ ապստամբութիւն մը. Թէքէլ ու Ռաքօցցի կոմսերը տաճկին հետ խօսք դրին, տաճիկնալ անոնցմէ շարժեալ եկաւ 1683 վիեննա պաշարեց: Աս դանկաստ է, կաթոլական ատեններ եղավ երբեմն շատ՝ երբեմն քիչ. անոր համար մարիամ Թերեզիա կայսրուհին 1740 Թող տըվերէր որ՝ անոնց ժամերը ու դպրատուները բացվին, բայց ատեն անցնելէն ետև՝ ուրիշները խղճմտանքի մէջ ձգելով զինքը. իրեն Թոյլտուութեանը կամ արգելեցին, կամ քիչցուցին.

րուն յատուկ թղթով ազատութին տրված ու պաշտպանուի ։ Ըսանկալ շատ արտօնութիններ տրված հրեաններուն, թոյլ տալով որ ամէն արուեստ կարենան բանեցընել ինչպէս ուրիշ ժողովուրդները ։

Օրէնք դրաւ ամէն վանքերու վրայ՝ որ մէջի կրօնաւորները ամենուն կապակցութին մը չունենան այն մեծաւորներուն հետ՝ որ իր երկրէն դուրս են, այլ իրենց եպիսկոպոսներուն տակը ըլլան, այն ժողովքներու մէջ որ իր երկրէն դուրս կըլլան՝ չխըրկեն մէկ կրօնաւոր մը. դուրսէն մէկ այցելու մը մէկ կարգադրող մը չընդունին առանց յայտնի հրամանի կայսեր ։ Կրօնաւորները իրենց ուսումը վանքերու մէջ չեսորվին, հապա երթան համալսարաններու մէջ սորվին, որպէս զի միակերպ ըլլայ իրենց ուսումը մանաւանդ ածաբանութեան մէջ. չէ թէ հաւատքի դիպցէն, որ ամէն ուղղափառաց երկիրները մէկ է, հապա կարծիքներու դիպցէն. արգելեց որ մէկ նոր կրօնաւոր մը չընեն, ինչվան որ նորէն հրաման չիտրվի ։

Միւսներ հանեց կարգաւորելու համար այն խարճերը և տուրքերը՝ որ կըլլըվէին մկրտութեան՝ պսակի՝ և թաղման համար, առանց տուրքը խիստ քիչցուց, մէկ չափաւոր արոշեալ յատուկ բան մը կապելով քահանայից։ Քանի որ հռոմայէն թուղթ ու կոնդակ կուգար՝ սահմանեց որ առաջ կայսերական հաւանութիւնը առնըվի, վրան դրվելով աս բառս. Թող ՚ի գործ դրվի, ետքը

Հրատարակվի, ինչպէս որ դօսքանա ու Նա-
բօլի սահմանեցին սա բանս։ Երկու կան-
դակ կային որ՝ Ռոբէրթոն, և Սնածին կըս-
վէին, որոնք հրապարակաւ կըկարդացվէին,
անոնց կարդալը խափանեց։ Տնօրինում
առնելու հռոմայէն պսակի վրայ՝ արգելեց,
այլ ամմէն տեղ իրենց եպիսկոպոսէն տնօ-
րինում առնել հրամմեց։ Ռանի եղբայ-
րութիններ ժողովքներ որ կային աշխարհա-
կանաց (1), ամմէննալ վերցուց, անոնք միայն
թողուց որ աղքատները՝ հիւանդները նայե-
լու հոգ կըտանէին. կամ ինքը ուրիշ նոր
ժողովքներ սահմանեց անուանելով Սէր Դեր-
ջաւորին. որոնց գործքը պիտոր ըլլար որբեր
ու ձգած տղաքներ պահելու, աղքատ հի-
ւանդները հոգալու իրենց տանը մէջ։

Յովսէփ կայսեր հինգերորդ ճամփորդութիւնը
Պելճիա, Հոլլանդ, ու Փարիզ.

1781։

Այսչափ հոգը զբաղմունքը զանազան բա-
ներու վրայ՝ արգելք մը չէր ըլլար Յովսէփ
կայսեր հեռու տեղվանք ճամփայ ընել որ

(1) Եղբայրութիւն ըսվածները ժա. դարուն մէջ խա-
չակրաց ատենները սահմանվեցան Եւրոպայի մէջ. ուր
տեղ աշխարհական մարդիկ կրօնաւորաց պէս մէկ տեղ
ժողվըված երևելի արարողութեան հանդիսով կընեն
իրենց աղօթքները, ջերմեռանդութիւնները, մէյ մէկ
բարի գործքի մը զիրենք պարտաւորելով։ Առջի
եղբայրութիւնը եղաւ կըսեն վէքսիլլօ ըսված Գ. ուր-
բանոս քահանայապետին ատենը՝ ողորմութեան համար։

սովորութենը կեօրէ , այլ յանկարծ մեն-նայէն ելավ, մակօնցայի ու փռանքֆօռդի վրայէն գաղտուկ գնաց ստորին Նահանգնե-րը տեսնալու , առաջ լուչէմպուրկ , մայի-սի 5 պրուսսէլ , ուր գտաւ կլօչէստըրը դուք-սը՝ ինկիլիզի Թագաւորին եղբարը , որ Թա-գաւորին դիպայէն շատ հրաւիրեց զյօվսէփ ինկիլդեռռա տանելու, բայց յօվսէփ յանձն չառաւ ։ Հոն տեղս հանդիսիւ երդվընցաւ անխախտ պահելու համար պելճիքեան գա-ւառներուն արտօնութիւնները, որք են Պրա-պանդ , Փիանտրա , Հաննօնիա , ու Նա-մուր , ինչ արտօնութի որ տըվերէր 1740 փիլիպպոս բարի մականուանեալը՝ իրեն ա-նուանի Թղթին մէջը . որ կըսվի Ոսկեխաւլէ Ոսկ. ասիկայ ինչվան 1794 եղավ Ոսկէ Բուղը ըսվածը՝ կամ Ոսկեան (քիւթիւկ) ան ժողովուրդին արտօնութենցը . բայց եօքը պատմենք ինչպէս կայսրը իր երդու-մը չիպահօղ սեպելով աս ժողովուրդը ա-պըստամբեցաւ իրմէ [1]։

Սկեց ելավ յօվսէփ կայսրը գնաց օլանտա կամ Փիլէմէնկ՝ որ քովի դրացին է . աչ-քով տեսաւ ան տեղացի ժողովրդեան ան-համեմատ առուտուրը՝ որ խելքէ մօքէ դուրս բան էր ան ատենը , տեսաւ իրենց Ճարտարութիւնը , երկրագործութիւնը , տնտե-

(1) Ինչպէս որ 1489ավ պրուսճէսին մէջը ա մաքսի-միլիանոս կայսրը բանտը դրին , սկիզբը տըվին ան ա-րիւնահեղ ապստամբութեան որ եղավ 1567. ի. փիլիպ-պոսի սպանիայի Թագաւորին դէմ ։

սութիւնը կամ չափաւորութիւնը․ ասանկալ տեսաւ իրենց գլխաւոր քաղաքները, Լէյտէնին համալսարանը, անոր անդամազննութեան հանդիսարանը, որ խիստ անուանի է ամմէն Եւրոպայի մէջ, ուրիշ գիտութեաց ու ազատական արուեստից երևելի բաները․ անկէց գնաց Սառտամ գեղը՝ ուր մեծն պետրոս Մոսկովի Թագաւորը կեցերէր՝ նաւ շինելու և նաւարկութիւն սորվելու համար, ան պզտիկ տունը ուր որ պետրոս բնակերէր, հոն սիրով ճաշ կերաւ յովսէփ, մեծագործ Թագաւորին յիշատակը՝ պզտիկ տեղը մեծաշէն տեղ ըրաւ յովսեփայ աչքին։

Այս քաղքէն ելաւ յովսէփ՝ գնաց փարէզ, Թագաւորը ու Թագուհին տեսնալու համար՝ որ իր սիրական քոյրն էր, օխտը օր անոնց հետ շատ առանձնախօսութիւն ընելէն ետև դարձաւ յովսէփ, բայց դարձածին պէս՝ արգելք դրաւ որ՝ դուրսի ապրանքներ ձեռագործներ իր երկիրը չիմտնան։ Աս բանս Փրանսզներուն մեծ խոց եղաւ, ամէնք սկսան Քօլպէրդին ըրածը վար զարնել, որ Ժդ․ Լուիզին ատենը՝ Փրանսային շահապ իշխանը (տէֆթէրտար էֆէնտին) ըլլալով շատ ձեռագործներ հնարել տըւաւ Փրանսայի մէջ որպէս զի անով առուտուրը ծաղկեցընէ, բայց անով շատ մարդ իրեն երկրագործութիւնը թողուց, ձեռագործ բանելու ընկաւ, անանկով Փրանսային շատ երկիրները պարապ մնացին․ հիմայ իրենց ձեռագործները չիկրնալով նեմցէստան խրկել՝ առանց շահու մնացին, աղքատութ̃

տիրեց վրանին ։ Իսկ մնացեալ բազմութիւնը յովսէփ կայսրը սկսան վար զարնել , ամմէն Փրանսայալ ատել սկսաւ յովսէփ , անոր պատճառովը ատելի եղաւ նաև իրենց թագուհին՝ որ յովսէփայ քոյրն էր , մանաւանդ որ թագուհիին թշնամիները տակէն կրգր-գռէին ժողովուրդը ։

Թագուհին փարէզին ժողովրդեան սիրտը քիչ մը շինելու համար՝ սկսաւ խարճեր հընարել , նոր նոր հագուստներ հանելով հանդէսներ ընելով՝ որպէս զի Փրանսային ուրիշ մեծերնալ իրմէ օրինակ առնեն , բատակ խարճին որ՝ արուեստաւորները վաստըկին , գրեթէ ամմէն օր իր զարդերը կըփոխէր , ինչ որ տեսնար՝ նմանը ընել կուտար · անոր նայելով ամմէն Փրանսայալ անանկ կընէին ։ Անանկով արուեստաւորները սկսան վաստըկիլ · թէ որ աս չըլլար՝ մուրացկան պիտոր ըլլային · բայց աս դեղը ուրիշ դիւացէն աւելի վնաս տըւաւ Փրանսային քան թէ շահ ։

Անգղիային մէջի եղածները , [illegible] [illegible] ճամբորդութիւնը ·

1780—1782 ։

Ուլրիքոս անտօն անունով իշխանը ու աննա իշխանուհին իր կինը քշված էին մծուրկ արքանճնելի տեղին , ասանք հիմա մեռած ըլլալով՝ իրենց զաւկըրները որ հեռու տեղվանքներ տարված էին , 1780 կատարինէ

կայսրուհին ազատեց, փուդլանտխա խրկեց, ազատութիւն տալով իրենց։ Երկու քաղաքալ շինեց աս տարի սև ծովին եզերքը, մէկին անունը Կատարինէսլավ ըսվեցաւ իր անունով, մէկալը Մարիանուպօլիս. Խէրսօն քաղաքնալ շինեց խրըըմու մէջ տնեքեր գետին մօտիկ Հաննիպալ զօրապետին ձեռքովը, որուն շէնքը ոմանք 1778 կըդնեն. ասիկայ մէկ տարվանը մէջ անանկ շէնցաւ, որ 40 հազարէն աւելի բնակիչ ունեցաւ։

Կատարինէին զաւակը պօղոս դուքսը՝ իր ընկերովը որ կըսվի մեծ դքսուհի՝ 1781 Ճամփայ ելավ ժուռ գալու համար, ծըպտեալ (Թէպտիլ) կերպարանքով, անոր համար իրենց անունը Հիւսիսային իշխաններ ըսել տըվլին. ասանք առաջ վիեննա գացին, ուր յովսէփ կայսրը շատ հանդէսներ ուրախութիւններ (ալայներ զինեկթներ) ընել տըվավ. իրենց գալէն առաջ մէկ տուն մը շինել տըվեր էր նման ամենևին ան տանը՝ ուր որ պօղոս կըբնակէր բէդրօպուրկին մէջ, նոյն չափով, նոյն խուցերով (օտաներով), նոյն զարդերով, նոյն գուներով, անանկ որ երբոր պօղոս ներս մտաւ, կարծեց որ բէդրօպուրկ իր տանը մէջ կըմտնար, խիստ զարմացած մնաց, որմէնալ առտըվանց երբոր պօղոս դեռ քուն էր, տեսաւ որ իր խուցը կուգային կըմտնային բազմութիւն իր երկրին գեղացիներուն՝ իրենց հագուստներով նուագարաններով (չալղըներով); որ խաղալով պար կըբռնէին, ձեռ-

վրնին իրենց ծախելու բաները բռնած՝ իբր
թէ ծախելու համար եկերեին, մէյմընալ
տեսաւ որ այն գեղացի կարծածները ամ-
մէնն ալ կայսեր մօտիկներն էին, մեծ իշխա-
նաւորներ՝ որ իրեն գալուստը շնորհաւորե-
լու սանկ խաղ ցըցընելով շնորհաւորե-
ցին ։

Սանկ ուրախութիւն անցընելէն ետեւ՝ վեն-
նայէն ելան վենետիկ եկան, վենետիկցիք-
ալ չորս հինգ օր նոր նոր հանդէսներ ը-
րին գիշեր ցորեկ խիստ փառաւոր, յովսէփ
կայսերմէ յանձնըւած ըլլալով. զարմացաւ
պօղոս տեսնալով վենետիկի ժողովրդեան
բարեկարգութիւնը հնազանդութիւնը իրենց
թագաւորութեան, որոնք այն հանդէսները
տեսնալու կըժողվըվէին խառնիճաղանճ
ամբոխ բազմութիւն 50, 60 հազարէն աւելի
պզտիկ նեղ տեղվանք մէկմէկու վրայ կուտ-
լեցուած, բայց մէկ ձայն մը մէկ կռիւ մը
չէր ելլար այն հինգ օրվան մէջ, դատաւոր-
ներէն ալ քանի մը հոգի միայն դրկված ըլլա-
լով՝ անոնց վախը միայն հերիք կըլլար այն
ըզգամները զուսպ պահելու. խոստովանեցաւ
պօղոս որ՝ իրենց երկիրը այսչափ բազմութեան
ժողովրդեան զուսպ պահելու համար պէտք
էր հազարներով զինուոր կեցընել սանկ
հանդէսներու մէջ ։

Վենետիկէն ելավ պօղոս իր ընկերովը
հռոմ անցաւ. Զ. պիոս քահանայապետին
հետ տեսնըվելով երկուքնալ շատ ուրա-
խացան, շատ սէր կապեցին վրան, որուն
արդէնի կերպարանքը փառաւոր շնորհալի

տեղքիլը՝ ամմէնուն պատկառանք մը բերել կուտար. երբոր քահանայապետը Ճամփայ ելավ Վիէննա երթալու՝ իրենքալ մէկն էին ան բազմութեան իշխանաւորաց մէջէն՝ որ ըն-կերացան Ճամփայ դնելու անիկայ, որուն մէկ փառաւոր մուշտակ (քիւրք) մը ընծայ տըվին Ճամփան հագնելու համար։ Հաւ-մայէն ելան գացին բիէմօնդ, Ֆրանսա, ստորին Նահանգներ, օլանտա կամ Ֆիլէ-մէնկ, աս տեղվանքներս պտըտելէն ետև նորէն դարձան Վիէննա, լեհին վրայէն 1782 եկան մոսկով իրենց երկիրը, ան.տարին կա-տարինէ Թագուհինալ նոր կարգ մը սահ-մանեց Սէ վօլօտօմիրոս անունով։

Ըս Ճամփորդութեան պատճառ ոմանք ուրիշ բան հաշակեցին. իբր թէ պօղոս ուզերէր թախտըն նստիլ թագաւորել, մայրնալ խուա-վութին չելլալու համար յովսէփ կայսեր խորհրդովը հեռացընել ուզելով աս Ճամ-փորդութիը ընել տըվերէ, բայց թէնչուց լըսված խօսք մը սեպվեցաւ անիկայ։

## Յովսէփ կայսեր եկեղեցական կարգաւորութիւնները.

## 1781։

Ս Էրը յիշեցինք իրեն ըրած քանի մը կար-գաւորութիւները, բայց ան կարգաւորութեց մէջը երկու բան մնաւ որ՝ շատ ձայն հանել տըվավ. մէյմը որ՝ շատ բանի վրայ տարա-ծեց ան կարգաւորութիւները, մէյմընալ որ շատ·հեղ փոխփռտեց, հիմա ասանկ կարգը

պրէր, ամիս մը անցնելէն ետև անոր ներ֊ հակը կապսպրէր, ամմէն տեղէն դատաւոր֊ ները չիտէին որ ինչ ընեն ։ Եւ որովհետև եկեղեցական բանեցնալ շատ փոխեց, ան֊ կից մեծ աղաղակ ելաւ. քանի՜ վանք որ կար կրօնաւորաց, քանի՜ աբբայութիւներ կրօ֊ նաւորներու և մարապետներու՝ ամմէննալ վերուց. ան վանքերուն եկամուտներովը սնտուկ մը սահմանեց աղքատաց համար, որպէս զի աղքատները չիմուրան, ան սըն֊ տուկէն ապրին. վանքերուն տեղը նոր նոր ժողովրդապետական եկեղեցիներ շինեց ամ֊ մէն գաւառներու մէջ, որ ժողովուրդին հեշտ (խօլայ) ըլլայ իր քահանայէն կառա֊ վարվիլ, որովհետև առաջ խիստ քիչ էին. անանկով վերի և վարի աւստրիայի մէջ միայն 263 ժողովրդապետութի սահման֊ վեցաւ ։ Ամէն թափօրները վերցուց, միայն մարիամոյ և արեան տօնին՝ և իրենց խտրելէզին թափօրները թողուց, տօներուն շատը վերուց. իր կարգադրութիւը հասուց ինչվան եկեղեցնայ մէջ եղած պէսպէս ա֊ րարողութենց վրայ՝ որ հռոմէական մաշտո֊ ցին մէջ ապսպրըված էին ։

Ամէն բանէն աւելի ան եղաւ դժարը՝ որ խիստ կերպ մը կըբանեցընէին աս կարգա֊ ւորութիւները գործ դնելու ատենը, մէյմը֊ նալ ան եղաւ դժարը՝ որ մուրացկան կրօ֊ նաւորներուն շահը արգելեց, անոր համար շատ վանահայր գացին իրեն հասկըցընելու՝ թէ քանի՜ անկարգութիւներ կըհետևէին ի֊ րենց վանքերուն մէջ աս նորութիւներէն.

յովսէփ առանց գանկատը աղէկ մը մտիկ ընելէն ետև ըսաւ. շատ երկիրներ կան որ աս իմ ըրած կարգաւորութիւններս չիկան , կընաք հոն երթալ ապրիլ, որ կրօնաւոր որ ուզենայ երթալ, ես իրեն ընդարձակ հրաման կուտամ երթալու ։ Ասանկով իրեք տարվան մէջ 174 վանք կրօնաւորներու և մարապետներու վերցուց իր երկրէն, միայն ան մարապետները թողուց՝ որ աղջիկները կըկրթէին կըսորվեցընէին ։ Որ մընալ եպիսկոպոս մը խնդրեց յովսէփ կայսերմէ՝ որ իրեն աւելի տեղեկութիւն տայ ինչ որ իր հրամանագիրներուն մէջը կըգրեր, որովհետև խղճմտանք կըներ՝ չըլլայ որ իր իշխանութենէն դուրս բան ընէ. յովսէփ պատասխան տըվաւ, իմ տեղեկութի տալս աս է որ՝ ամմէննալ կուզեմ որ իմ ըսածներուս հնազանդին ։

Աս բաներս ամմէն եկեղեցականներու դէմ էին, բայց ա՛լ աւելի սրբազան հայրապետի Զ. պիոսի, անոր համար վէննա եղած իր նուիրակին ձեռքովը որ Կարամբի կըսվէր՝ իր գանկատը ըրաւ աս նոր բաներուս վրայ, մանաւանդ որ առանց հասկըցընելու՝ առանց իրմէ հաւանութիւն առնելու կըներ ։ Կայսեր վէզիրը որ Քաունից կըսվէր, պատասխան տըվաւ ։ „ Կայսեր ըրած նո-
„ րութիւնները շիտակ հաւատքի և հոգևորի
„ դպչելու բաներ չեն՝ հապա եկեղեցական
„ բաներու, և որովհետև աս նորութիւնե-
„ րով անկարգութիւնները պիտոր վերնային ,
„ տեղը բարեկարգութիւններ պիտոր մնային,

„ անոր համար ինքը Թագաւոր ըլլալովը
„ ունի իրաւունք իր երկրին բարեկարգու-
„ թիւնները շտկել ինչպէս որ ինքը կը ճանչ-
„ նայ։

Աս բաներուս վրայ Թղթեր ալ գրուեցան, կոնդակներ, բայց բերնէ բերան խօսքեր ալ տարածուելով կերեւար որ խաղաղկելու տեղը՝ հակառակութիւն բորբոքող մը պիտոր հանէր կայսեր ու հռոմայ մէջ, ասոնք մտմտալով սրբազան քահանայապետը պիոս Է. իր ծերութիւնը մէկ դի թողլով որոշեց վիեննա երթալու բերան բերնի խօրաթելու յովսէփ կայսեր հետ, որպէս զի վերնար գայթակղութիւնն ալ չար օրինակն ալ։ Որովհետեւ դօքանային մեծ դուքսն ալ իր երկրին մէջ օրէօր վանքերուն շատը կը վերցընէր, ոմանք կը քիչցընէր, ինչվան բառնաբեանց կարգն ալ քիչցուց՝ որոնք տղաք կը սորվեցընէին, քանի եղբայրութիւններ որ կային՝ հոգեւոր ժողովքներ, եւ ընկերութիւններ, անոնցմէ ալ 2500 վերցուց, իրենց ապրանքը առաւ, մէկ մնտուկ մը սահմանեց քահանայից ապրուստ տալու՝ աղջիկներուն օժիտ (ճէհէզ), եւ ուրիշ հոգեւոր բաներու համար. բայց աս բանիս մէջ ետքէն հաւատարմութիւն չիմնաց չքըշէց։ Կրօնաւորաց ուխտելու տարին՝ 25 տարվանը կապեց, իսկ կուսանաց 22. բայց ինչվան աս տարիքս ամմէն մարդ բանի մը վրայ կապուած ըլլալով՝ կրօնաւորութիւնը ինքիրեն կը քիչնար։ Գերեզմաննոցը քաղքէն դուրս հեռու տեղ մը որոշեց, եւ որովհետեւ հոն առաջ ժամէ-

րու մէջ կըԹաղէին , աս քանի ամմէն քանէն աւելի ներհակ եղաւ ժողովրդեան ։ Պիստօյայի ու Բռադօի վրայ մէկ եպիսկոպոս մը դրաւ Շիպիօն Ռիչչի անունով , որ ետքը շատ վիշտ տըվաւ եկեղեցինայ ։ Եպիսկոպոսներուն իշխանութիւնն ալ իրեն քաշել կընայեր ։

Ասոր նման Նաբօլիի Թագաւորն ալ իրեն վէզիրին դըրդըւելովը որ Դանուչչի կըսվէր՝ շատոնցմընէ վերցուցեր կոտրեր էր երկրէն՝ որչափ որ հռոմայու խառնըվելու բաներ կային ։

Ջ. Պիոս քահանայապետին ճամբորդութիւնը .

1782 ։

Երբոր սըրբազան պապին Ճամփայ ելլալը իմացան , շատ մարդ հռոմայու մէջ չիհաւնեցան , իրենց խորհուրդ տըվին աս Ճամփորդութենէ ետ կենալու , զօրաւոր պատճառներ բերելով , բայց անիկայ իր յոյսը բոլորովին Այ վրայ դնելով իր պարտքը լմնցընել ուզելով որոշեց ելլալու . աղէկ գիտէր որչափ տարբերութիւն կայ Թըղթով խօրաթելուն ու բերնով խօրաթելուն մէջ ։ Ճամփայ չելած Թուղթ գրեց յովսէփ կայսեր 1781 դեկտ . 16 . հասկըցընելով որ՝ իրեն ըրածները իրաւանց կէօրէ չէին , Թըղթակցութ̃ չէր կրնար հասկըցվիլ , անոր աղէկը ես կուզամ ըսաւ վիեննա հետը բերնով խօրաթելու . յովսէփ կայսրն ալ 1782

յունվ. 11 պատասխանս գրեց իր իրաւունքը հասկըցընելով, բայց իր գալուն վրայով հաճունի ցըցուց: Նորէն Թուղթ գրեց սրբազան հայրապետը փետրվ. 9. Թէ իմ գալս պիտոր ըլլայ քիչվորով, իմ նուիրակիս ընակարանը նստելով ինչը առանձին, բայց յովսէփ պատասխան գրեց փետրվ. 26. ծանուցանելով Թէ իր պալատանը (սէրային) մէջ պիտոր նստէր, որ իրեն շատ հաճոյական բան պիտոր ըլլար, անձամբ քովը տեսնալով եկեղեցեաց գլուխը, որով և մօտիկ կըլլար իրեն հետ տեսնըվիլը:

Սանկով Համփայ ելլալու պատրաստեց զինքը, երբոր վերջին տեսնըվիլը ըրաւ իր քառտինալներուն ժողովքին մէջը՝ որ կըլավի Կոնսիսդորիօն. իր երԹալուն պատճառը չիբացաւ, չիհարցուցալ իրենց կարծիքը առ երԹալուն վրայ, այլ միայն յայտնեց: Այս սրովհետև շատոնցմընէ էր որ հռոմայ քահանայապետը հռոմայէն դուրս չէր ելած, անոր համար իտալիայի մէջ մեծնաւանդ Թէ ամմէն եւրոպայի մէջ շատ շշնկոց հանեց (1). երբոր Համփայ ելլալու եղաւ, քառտինալները իրենց պաշտօննէրու վրայ հաստատեց բալլավիչինի քառտի

---

(1) Վասն զի Գ. պօղոս Ֆարնէզեան հայրապետէն ետև (որ շատ քալեց, շատ աշխատեցաւ հաշտեցընելու համար Ֆրանսային ու Ֆրանչիսկոս Թագաւորը, և. կարոլոս կայսեր հետ,) Է. կղեմէս պապապրանտեանը եղաւ, որ ժղ դարուն ետքերը հանդիսով գնաց Ֆէռառա, էսդէ ցեղին իշխանուԹիւնը առնելու համար:

նայրն հնազանդութեան տակը դնելով որ դի-ւանադիրն էր, իր ըրած կտակը յանձնեց քօնդի քաւատինային՝ որ Թղթերուն դիւանադպիրն էր, ասանկով 1782 փետրվ. 27 առտըվանց Ճամիրայ եղավ, բազմութե քաւ-տինայիներու և ազնուականներու ընկերանալով:

Ուր որ կերթար սրբազան քահանայապետը՝ կրօնաւորներուն վանքը կիջնար, աւելի դոմինիկեան կրօնաւորներուն վանքը. չէր ուզեր փառաւորութի Ճամիրայ ընել ինչպես որ ըրին Ժ. լէոն, և Է. կղեմէս եւթոր պօլօնիա գացին: Հիմա երբոր պիոս Զ. պօլօնիա հասաւ, ծամպեքքարի կոմը սպանիայի Թագաւորին դիմացէն եկավ երթաք բարոլի, պառմայի դուքսը՝ անձամբ եկավ շնորհաւորելու՝ օրհնութիւը առնելու. ասանկալ ուրիշ մենծեր եկան իտալիա եղած զանազան տէրութեց դիմացէն, միայն դօսքանայի մեծ դուքսին դիմացէն մարդ չեկավ, այլ մէջի ժողովուրդը բազմութի վազեցին դուրս ելան իրեն օրհնութիւը առնելու, անկից անցաւ ֆեռռառա, վենետիկ, ուր շատ պատուով ընդունեցան:

Երբոր աւստրիոյ կամ նեմցերին սահմանը հասաւ՝ հօն մաճառ զօրքը որ կայսրը խըրկեր էր իր յատուկ պահապան զօրքերէն՝ ամմէննալ ազնուականի տղաքներ՝ առին մէկ տեղ ընկերացան՝ ինչվան որ վիէննա հասուցին: Դամփան երբոր սրբազանը կօռիցիա հասաւ՝ անոր արքեպիսկոպոսը իրեն կանչեց հէտը խօրանթելու համար, բայց եպիսկո-

ասոր հոն չէր, վիեննա կանչըլուած էր կայսեր կարգադրութիւնները 'ի գործ դնելուն համար. դատաստանական իշխանեան ձգել տըրվերէր կայսրը ան յանցանքին համար: Յուղիանոս հանելու ատենը՝ կայսեր քոյրը արշիդուքսուհին մառիաննա հոն եկաւ քլակէնֆուրդ տեղէն որ քառինթիային մէջն է, ուր որ կընստէր սովորաբար, սրբազանին հետ երկան խօսեցաւ: Մարտի 22 երբոր նէվշդատ տեղին հասնելու 6 մղոնի չափ էր մնացած՝ յովսէփ կայսրը դէմը ելաւ մաքսիմիլիանոս եղբօրը հետ մէկ տեղ, տեսածին պէս առաւտյէն վար ինջաւ, բայց սրբազան հայրապետը իր առապան առաւ անիկայ, իր քովը նստեցուց. ինքնալ երկու տեղ յովսէփ կայսեր առապան նստաւ, միշտ սրբազանին ձախ դին կընստէր յովսէփ: Երբոր վիեննա հասան՝ ամմէն ճամփան զօրք կեցած էր, և անթաւ բազմութին ժողովրդեան 8 հազար առապաներու մէջ, թող տուր ուրիշ ժողովուրդը՝ իրեն օրհնութիւնը առնելու համար, թօփերով, զանկակներով, ինջեցուցին թագաւորական պալատին մէջը: Իրեն նուիրակը՝ կայսեր վէզիրը քաղնից՝ ուրիշ ամմէն դեսպանները՝ զօրապետները՝ տեսութի եկան. հոն անանկ կերպով պահապաններով նստեցուցին սրբազան հայրապետը՝ ինչպէս որ կայսեր կընէին: Այսարը շատ ընծաներ տըվաւ իրեն ու իր հետ եղողներուն, ինչպէս որ սրբազանն ալ իրեն տըվաւ, կայսեր տըվածն էր մէկ զարդ մը կուրծքը կախելու քարերով շինուած, որ

200 հազար Ֆիօռինի աժեցուցին․ սրբազանը ասիկայ իրեն անձին համար չընդունեց, հապա իբրև կայսերական յիշատակ մը իր ամմէն յաջորդներուն համար․ մէկ հրովարտակ (պէրաթ) մընալ ուզեց կայսրը տալ սրբազանին եղբօրորդիքներուն համար, հռոմէական կայսերուն իշխան գրել տալով անոնք, բայց սրբազանը աս գիրը չուզեց ընդունիլ, որ պատճառ չըտայ լեզուագար մարդիկներու ըսելու՝ թէ իրեն ազգականները մեծցընելու համար ըրաւ աս ճամփորդութիւնը։

Ամմէն օր կելլար վէննային տեսնալու տեղվանքը կըքալէր, գըքատունները, հանգիստարանները, շէնքերը, ձեռագործները, զինարանը՝ որ եւրոպային մէջ ամմէնէն երևելի է, ուր տեղ գեղեցիկ կարգով (րէսիմով) շարված կան զէնք (սիլահ), ու զէնքի վերաբերեալ բանէր 300 հազար մարդու համար նաև աւելի, ուսկից բան մը առանձնին պէս տեղը ուրիշ մը կըդնեն։ Զատկին օրը՝ նա ստեփաննոսի մայր եկեղեցնայ մէջ ձայնաւոր պատարագ ըրաւ սրբազան հայրապետը շատ փառաւորութ՟ քառատինալըներով եպիսկոպոսներով, միայն տալիզպուրկին արքեպիսկոպոսը չեկաւ, որ ամմէն գերմանիայի եպիսկոպոսապետ ըլլալով՝ իրեն գալը իր պատիւը պղտիկցընել սեպեց կըսեն։ Այնչափ շատւոր ժողովուրդ կըթափէին վէննայի մէջ սրբազան հայրապետը տեսնալու՝ որ հարկ կըլլար ամմէն օր չորս հեղ բարձր տեղէն երևնալ, իր

օրհնութիւն տալ, առանց թօփ նետելով
ծանուցանելով :

Երրորդ օր վէննա նստելով սրբազան հայ-
րապետը շատ խօրաթայ ըրավ յովսէփ
կայսեր հետ առանձին ծածուկ, բայց հա-
կըզվեցաւ որ՝ ինչ ըրեր էր կայսրը ու ետեւէ
ետեւ սկսոր ընէր, բան մը չփկրնաց փոխել
տալ, որով քահանայապետական իրաւու-
թիւն խափանվեցաւ չէ թէ միայն հռոմ-
տեղվանք, հապա նաւ լոմպարտիայի մէջ
որ աւելի մօտիկ է հռոմայու : Բայց միայն
մաճառատանու եպիսկոպոսապետը և ուրիշ
եպիսկոպոս՝ իրենց մէջի իշխանութէ ու ի-
րաւասութէ վրայ մեծին պզտիկին վրայ խօ-
րաթելով սրբազան հայրապետին հետ կար-
գաւորեցին. հերետիկոսները արձըկելու հա-
մար, ուխտերը և ամուսնութիւնները անօրի-
նելու համար, և ուրիշ արտօնութեց հա-
մար քանի գլուխ բան հաստատեցին :

Ապրիլ 22 վէննայէն ճամփայ ելաւ սրբա-
զանը, որում ընկերացան յովսէփ կայսրը՝
իրեն եղբայրը մաքսիմիլիանոս արքեդուքսը
ու սրբազանին նուիրակը կարամբի. պա-
վիէաայի ճամփուն. առջի մենզիլխանէն ի-
րարմէ բաժնըվեցան, ուր տեղ քիչ մը ա-
տենէն ետեւ յիշատակարան մը կանգնեցին,
ինչպէսոր որ երբոր վէննա էր, մէկ միտալ
մը տպեցին Պ. պիոսի անուանովը. վրան գրած
Պանդուխտ առաքելական (1). ուրիշ միտալ մը-

(1) Աս խօսքս իրեն վրայ մարգարէութէ էր եղած, հիմա հռոմայէն ինչվան վէննա ճամփորդութէ ընե.

նաւ տպեցին Նօրիմպէրկ քաղաքը ։ Նոյն 24 հատոր լինելոց , ուր ընդունելութիւն ըրած Ֆիլամեան քարտինալը բասսավիայի եպիսկոպոսը , անկէց եղբօր մօտիկցաւ Մոնաքօ քաղաքը՝ չորս բօստա մնացած եկած պավարեան բալատինեան կայսրընտիրը , ատանկալ Ձամիրու վրայ եկան տեսնըւեցան տիւ բօնդէին իշխանը , սալիզպուրկայ իշխան եպիսկոպոսը ․ վեց օր հոն շատ ուրախութիւն ընդունելութիւն գտնելէն ետև՝ անցաւ գընաց ավկուստա քաղաքը , ուր ընդունելութիւն ըրած դուքսերին կայսրընտիրը , հոն տեսնըւեցան իր հետը իշխաններ ու իշխանաւոր եպիսկոպոսներ , որոնց մէջն էր և կղեմէս սաքսօնիայի իշխանը , սանկալ քաղքին հասարակապետութեան իշխանները, որ թէպէտ բողոքական էին՝ բայց մեծ ընդունելութիւն ըրին ։

Անկէց դիւօլօ անցնելով վէռօնա եկաւ , որուն անուանի ամֆիթատրոնը լեցուն տեսավ անբաւ ժողովրդով որ իրմէ օրհնութիւն կըխնդրէին , ետքը վիչէնցային բատուային վրայէն անցնելով վենետիկ եկաւ նորէն , հոն կատարելու հոգեգալուստը ․ վենետիկցիք մէկ յատուկ զարդարված նաւակմը խրկեցին իրեն , որ խուց ( օտայ ) կըմանի ,

---

լով՝ պանդխտութիւն քաշելով՝ իբր թէ ստուգեց իր վրայ եղած մարգարէութիւնը , անոր համար աս խօսքս տպեցին , բայց ետքը պիտոր տեսնանք ինչպէս ուրիշ դիպուած մը ըման պանդխտութեան , ալ աւելի կատարեալ լինելուց աս մարգարէութիւնը իր վրայ ։

անանկ պատուով բազմութը ամմէն զան-
գակները զարնելով ցամաքէն առին բերին
վենետիկ քաղաքը՝ որ ծովի մէջ կըղզի
(ատա) մընէ։ Այնչափ էր բազմութիւն
առջևը ելլող ժողովրդեան՝ որ քաղքէն
մինչվան ցամաքը 8 մղոնի չափ ծովը ծայրէ
'ի ծայր լեցուած էր հազարաւոր նաւակնե-
րով. անանկով բերին հասեցուցին առջի
անգամուն պէս դոմինիկեան կարգին ան
վանքը՝ որ կըսուի Սբ յոհաննէս պօղոս,
որուն ժամը ամմէն եկեղեցիէն մեծ ըլլա-
լով հանդիսի օրերը աւելի յարմար կըլլ-
լար այնչափ ժողովրդեան բազմութեան,
թէպէտ անանկովալ չէին սղմէր ոչ ներսը
ոչ դուրսի հրապարակը, սրբազան հայրա-
պետին օրհնութիւնը առնելու համար։ Մայի-
սի 19 վենետիկէն ելլալով երբոր հասան
հռոմայուն հողը՝ մէկ լաւ ջուր մը կար
անցնելու, հեռու եղող իշխանները հրամ-
ցուցին մէկ աղվոր շինված տուն մը ելլալ
քիչ մը հանգիստ առնելու համար, մինչվան
որ նաւակները պատրաստըլլին. աս տունս
շինված էր սալերու վրայ որ չէին երևնար,
դիմացէնալ ջուանով կըքաշէին. հոն սրբա-
զան հայրապետը խօսակցելով հանգիստ
առնելով առանց իմանալու, երբոր կըհար-
ցընէր ե՛րբ պիտոր մտնան նաւակներու մէջ
ջուրը անցնելու համար, իրեն հասկըցուցին
որ Ճամփան ըրերեն, ջուրին ան դի դին
անցերեն։

Ասանկ պատուով երթալով երբոր չեզե-
նայէն անցնելու եղավ, որովհետև իր ծը-

նած քաղաքն էր, չէզլէնացիք ալ մասնաւոր ուրախութիւն ցըցուցին, ետքը յուլիսի 13 հասաւ հռոմ, որ քաղաքը լուսաւորելով մեծ ուրախութիւն ցըցընելով նորա առջին: Սրբազան հայրապետը ամսոյն 23 իրեն քարտինալներուն մէկ խօսակցութիւն մը ըրաւ, իրեն ճամփորդութիւնը և ժողովրդեան չինութիւնը պատմելէն ետև ըսաւ: Քանի մը բանի վրայ յովսէփ կայսրը հաւանեցուցինք, քանի մը բանի վրայ ալ յուսանք որ զինքը հաւանեցընենք: Աս յոյս պարապ ելաւ. բայց ետքը տեսանք քիչ մը անցնելէն ետև ինչ ձախորդ հետևութիւններ ելան՝ որ յովսէփ կայսրը ստիպեցին սրբազան պապին դիմել օգնութեան խնդրելու համար, որպէս զի միջնորդ ըլլայ, ճարը գտնայ շտկելու:

Յովսէփ կայսեր զանազան տեղեր ըրած նորոգութիւնները:

Բոէմիայի ու մօրաւվիայի մէջ գեղացիք կամ երկրագործք տէր չէին երկրի, հապա ուրիշ տիրվըտանք ունէին. իսկ գեղացիք որ երկիրը կըբանեցընէին, քիչ մը շահ կամ վարձք կառնէին, որով շատ նեղութիւն կըքաշէին: Ասանկ է նաև եւրոպային շատ տեղվանքները՝ սիջիլիա կղզիէն սկսեալ ինչվան հիւսիսային սառնապատ ծովը. կերևար որ մէջերնին մէկ ապստամբութիւն մը պիտոր ելլար, որուն զօրքերը դէմ կըդընէին, բայց յովսէփ կայսրը կըմտածէր աս բանին արմատը (քէօքը) վերցընել, ու

նանկով այս գերութէ խալըսցուց այն տեղա-
ցի գեղացիները. ասանկալ հրամեց ըլլալ
լեհաստանին նոր առած տեղվանքները, ան-
կէց մեծերուն ուժը քիչցաւ ցածցաւ, ա-
տելի եղավ իրենց յովսէփ կայսրը՝ որոնք
ուրիշներուն աշխատանքովը իրենք կը-
հարստնային, տէրութեան վնասակար կըլ-
լային: Բայց մաճառստանի մէջ գեղացիք
չուզեցին աս ազատութիւնը, մտածելով չըլ-
լայ թէ՝ երկիրը քիչ բերած տարին՝ տի-
րոտանքը զիրենք չպահեն:

Աս գերութէ զատ ուրիշ մէկ գերութիւն մը-
նալ կար լեհի մէջ. մէկ երկրի մը տէր կըր-
նար սպաննել իր գեղացին կամ երկրագոր-
ծը, պատիժ մը չէր քաշէր սպաննելու հա-
մար, միայն մէկ քանի ըստակի մը կըտուժէր
(ճէրիմէ կըքաշէր), աս անիրաւ սովորու-
թիւնը վրայ կեցած է լեհի մեծերուն ազա-
տութիւնը, բայց որ թագաւոր որ ուզեց աս
բանս վերցընել, ատելի եղավ, վտանգի
մէջ ընկաւ. ասանկ էր մաճառին մէջնալ.
հիմա յովսէփ մտիկ չընելով իր նորութի-
ները կընէր, ուրիշներուն ատելութիւնը բա-
նի տեղ չէր սեպէր:

Յովսէփ իմացած էր նաև խորամանկութի-
ները խարդախութիւնները որ դատաւորնե-
րը կընէին, քննութիւնը դատաստան կտրե-
լը կերկընցընէին, ապօրէնց որ՝ երբոր մէկ
դատի (տավայի) մը վրայ երկու վճիռ
միակերպ կըլլայ, ան դատը լմնցած սեպվի,
դատաւորներնալ վեց ամսէն աւելի չկըր-
նան երկնցընել դատաստանը, բայց աս ա-

րէնքը չփոփոխուեցաւ, վասն զի դատաւորնե-
րը՝ փաստաբանները գտան միջոցներ պարապ
հանելու: Նաանկալ օրէնքներ դրաւ հա-
դուստրներու վրայ, պսակի վրայ, բայց այս
օրէնքներուս համար շատ նախատինքներ՝
պարսաւագէտ գրքեր՝ ելան յովսէփին վրայ
Փրանսայի մէջ, սպանիայի և մանաւանդ
իտալիայի մէջ: Յովսէփ կայսրը պատճառ-
կրօնալէին նաև ան կարգաւորութիներուն
որ նաբօլի ու դօսքանա ըրին եկեղեցական
բաներուն վրայօք, մանաւանդ Արքաքինու-
թէ անտանը վերցընելու վրայօք դօսքա-
նայի ու սիջիլիայի մէջէն 1782 մարտի մէջ,
որ Տը դոմինիկոսի ատեանէն դրված էր՝ մա-
նիքեցւոց ու ալպիկեանց աղանդը խափա-
նելու համար. Թէպէտև կընայ ըլլալ որ
յովսէփ մասնակից չէր այս բանիս, հապա
առաջ միլան ըրին այս բանս 1775, անկէց
կարելի է որ օրինակ առին:
Յովսէփ կայսեր ըրած նորութեանց մէջը մէկ-
նալ բերդերը քակելն էր, ամանք իրեն հա-
նեցուցերէին՝ թէ բերդերուն օգուտը քիչ
է՝ խարճը շատ, անանց քակելը աւել օգտա-
կար կըլլայ որ՝ իրենց աւերակները ծախե-
լով՝ կընանք ան բանով աւելի ամրցը-
նել խիստ զօրաւոր բերդերը՝ որ առջի կար-
գի բերդեր էին, ատանկով 1782 շատ բեր-
դեր քակել տըվաւ. 11 բերդ մաճառի մէջ
քակել տըվաւ, 7 բերդ դրանսիլվանիայի
մէջ, 9 դիռօլի մէջ, 2 խրվաթլըխի մէջ,
2 վերին աւստրիայի մէջ. 1 կալիցիայի
մէջ, իսկ ստորին նահանգներուն մէջ ամ-

մէն թերթերը քակել տըլվալ, միայն Լուք-սէնպուրկ, Անվէռսան, ու Նամուրը թօ-ղուց։ Բայց Փրանսզներուն ետքի ծեծին մէջը հասկըցվեցաւ թերթերուն օգուտը, ինչու որ Փրանկսզներուն թերթերը շատ դժարութին արգելք տըվին Նեմցէներուն ստորին նահանգներուն ան կտորը մտնալու՝ որ Փրանսզին ձեռքն էր, իսկ Նեմցէներուն ձեռքի եղած ստորին նահանգները թերթ չունենալով Փրանսզները համարձակ մտան ան կտորը։

## Ուղղափառաց ազատութին գտնալը զանազան Էրկիրներու մէջ. հռոմայու արքեպիսկոպոս դնելը Մոսկովի Երկրին մէջ.

## 1782։

Աս ստոյգ է որ Յովսէփ կայսեր ըրած թոյլտուութիւնը հերետիկոսներուն համար՝ պատճառ եղաւ որ հերետիկոսներ նաւ թոյլտուութին ըրին ուղղափառներուն. ա. Կուստավոս վազա, որ 1523 շվէտի թագաւորը էր եղած՝ արգելըերեր ուղղափառութե յայտնի գործածութինը. անոր համար Սիկիսմոնտոս շվէտի թագաւորը՝ (որ միանգամայն լեհի թագաւոր էր), երբոր ազատութի տըվավ ուղղափառուե, թախտէն ձգեցին 1604. անանկով ուղղափաները մէկ եկեղեցի մը չունէին, միայն ուղղափառ տէրուեց դեսպաններուն ժամը կերթային։ Հիմա շվէտին թագաւորը լոթ-

րան աղանդին գլուխը ըլլալով՝ կուսդա-վոս Գ. 1779 վճռել տուեր էր իշխաննե-րուն՝ որ Շվէտի մէջ թոյլտուութիւն ըլլայ ուղղափառ հաւատքի՝ որ 250 տարիներէ վեր արգելված էր ։ Այս յաջողութիւնը լսա-ծին պէս սրբազան պապը Գ. պիոս՝ հաւա-նութիւն կուսդավոսի առաքելական փոխա-նորդ մը խրկեց Շվէտ՝ օսդէր անունով քա-հանան, հետեւալ թուղթ տըւաւ կուսդա-վոսին տալու. աս փոխանորդը ժողով մը ընելով ըստօքօլմ քաղաքին մէջ՝ չորս հոգի իրեն օգնական առաւ, որոնց մէկը եղաւ թագաւորին եղբարց պաշտօնեայներուն կառավարը, հրաման ելաւ ուղղափառաց եկեղեցի շինելու իրենց ուզածնին պէս ըս-տօքօլմ քաղաքին պալատան (սէրային) մէջ, ազատութիւն տալով որ հոն ամմէն եկեղե-ցական պաշտամունքը կատարեն. շինվելու ատենը ուղղափառաց ժողովատեղի տըրվե-ցաւ հասարակաց պալատան մեծ սրահը ։ աս բաները կըցըցընեն որ՝ Շվէտները ինչ աստիճանի վերուցին իրենցմէ առջի հա-կառակութիւնը ուղղափառութեան դէմ ։ Եկե-ղեցւոյն նաւակատիքը 1784. զատկին օրը ըրաւ վերոյիշեալ փոխանորդը շատ փառա-ւորութեամբ, Շվէտի թագաւորին եղբայրը որ սուտերմաննիոյ դուքս կըսվի՝ հոն ներկայ գտնըվեցաւ ուրիշ Շվէտի մեծերովը, եր-գօղներնալ պալատան երգիչներն եղան, գանձանակ պտըտցընողնալ պալատակա-նացմէ մէկը եղաւ, փոխանորդը իրիկվան ժամուն գովասանք մը քարոզեց Շվէտնե-

րուն ըրած բարերարութեանը վրայ, մանաւանդ Գ. Գուստավոսի թագաւորին վրայ, որուն համար կըսէ թէ՝ Շվէտի նաեւ օտար ազգաց աղէկութիւնը իր վրան ժողվեց Գուստավոս. ամենուն սիրտը գրաւեց իրեն քաշել, իր ատենի մարդիկներուն, նաեւ ետեւի եկողներուն սրտերնին շահեցաւ: Գերմանիայի մէջն ալ՝ ան տեղվանքները ուր որ միայն բռօդեսդանդները կըմտնային՝ հոն ուղղափառներն ալ մտուցին, ասանկ ըրին նաեւ Սաքսոնիայի Վիրդըեմպերկ Ըսդուդկարտ իշխանը, Հասսիա Քասսելին լանտկրավիօն, Պրունսվիքին ու Մեքլեմպուրկին դուքսերը: Ամենէն աւելի Մոսկովի թագուհին Կատարինէն ազատութիւն տըվավ ուղղափառաց, տեսնալով որ Յովսէփ իր դաշնակիցը շատ արտունութի տըվերեր հռոմէներուն որ Մաճառի ու Դրանսիլվանիայի մէջն էին. 1782 յունվ. 17 վճիռ հանեց որ Մոլդովի մէջ մէկ արքեպիսկոպոսական աթոռ մը սահմանվի ամենէն ուղղափառաց վրայ՝ որ Մոսկովի տակն եղած Լեհաստանին մէջ կըգտնըվին. ասոր արքեպիսկոպոսը ընտրըվեցաւ Ըսդանիսլավոս Սիէստրէնջէնվից (1): Ասոր համար Բօլօցքօ Պօնիսլավսքին՝ որ Ճիզվիթի դպրատան վերակացուն էր՝ ու մայր եկեղեցնայ կանոնիկոսը՝ Հռոմ խրկեց որ ուղղափառաց բանին համար խօսալթէ, արքեպիսկո-

(1) Ոմանք կըգրեն Սիէնցօպկեվից :

պոսական աթոռ սահմանէ, նոյն կանոնի-կոմնալ իրեն օգնական եպիսկոպոս ձեռ-նադրէ Մոյլովի մէջ։

Որչափ ալ Ճիզվիթ կային Ճերմակ ռուս-սիային մէջ՝ Մոսկովը թողուց. ուրիշ տեղէ-րէն քշվածներն ալ կանչեց Մոյլով նստե-ցուց, որպէս զի դպրատուն բանան, տղա-քը կրթեն. ուսման սէր ձգեն իր անկիրթ երկիրներուն մէջ. իրենց ջնջվելուն կոն-դակը հրատարակել չտրվավ մոսկովստա-նու մէջ։ Խնդրեց սրբազան պապէն որ՝ Ճիզվիթին կրօնքը մոսկովի երկրին մէջը չխափանվի, այլ ոտքի վրայ կենայ ետեւէ ետեւ յաջորդութեամբ, և հաստատելովը շնոր-հէ անոնց ան եպիսկոպոսական իշխանութիւնը՝ որ սովորութիւն է քարոզչաց շնորհել. սրբա-զան պապը ցըցուց անոր թէ որչափ դժվա-րութիւն կրնար հետեւիլ ասկից սպանիայէն ու ֆրանսայէն դիւացէն։

Աս պատճառով մէկ ընտանեկան թղթակ-ցութիւն մը բացվեցաւ մոսկովին ու հռո-մայու մէջ. Կատարինէն 1783 յունիսի 4 թուղթ մը գրեց սրբազան պապին ըսելով։

» Աս Ճիզվիթները իմ երկրիս մէջը խա-
» ղաղ ու անմեղ կըգտնամ, ամէնէնալ
» յարմար տղաքը ու կոպիտ մարդիկները
» կրթելու, միշտ կըսորվեցընեն քաղաքա-
» վարութիւն, թագաւորի հնազանդութիւն,
» քրիստոնէութեան բարի սկզբունքը. ես մէ-
» կի մը վրայ ինչվան որ յայտնի չտես-
» նամ անօրէնութիւն, չեմ պատժեր չեմ
» հալածեր, ինչ յանցանք որ ուրիշ տեղ-

„ վանք կրձգեն Ճիզվիթներուն վրայ, հոս
„ չենք տեմնար : Խնդրեմալ որ՝ չորս Ճիզ-
„ վիթի շնորհէք իշխանութի դրօշմ տալու
„ բեդրօպուրկի ու մօսքվիայի մէջ, ուր
„ երկու եկեղեցի ուղղափառաց իրենց են
„ յանձնուած : Աս թուղթը սրբազան պա-
պը ցըցուց սպանիայի ու Ֆրանսայի տէր-
ութէ, անանկով յուլիսի 24 պատասխան
գրեց հրաման տալով. քանի մը ամսէնալ
ետև վարշով քաղաքը եղած իր նուիրակին
գրեց որ՝ բեդրօպուրկ երթայ անձամբ խօ-
րաթէ կատարինէ թագուհիին հետ ինչ որ
պիտվական բան կայ քրիստոնէութէ շա-
հու համար : Սանկով սրբազան պապին
գիացէն եկավ գնաց ան նուիրակը՝ որ կըր-
վէր անդրէաս աւքեղդի պրէշիացի. բայց
աս բանիս համար խըղճահարնէրը դայ-
թակղեցան հռոմայուն վրայ, թէ ինչպէս
սրբազան հայրապետը ասանկ հանդիսաւոր
նուիրակ խրկեց մէկ թագաւորի մը որ
յունադաւան էր (1) :

Կատարինէն անանկ պատիւ ցըցուց վերա-
յիշեալ աւքեղդի նուիրակին, ինչպէս որ
սովորութի էր ցըցընել ամմէն թագաւո-
րաց դեսպաններուն. աւքեղդինալ սրբա-
զան պապին դիացէն հանդիսով ընդունեց

---

(1) Թէպէտ ասիկայ նոր բան մը չէր, որովհետև
նաև ժգ. գրիգոր քահանայապետնալ պօնքօմբայնին
1575 մօսքվիա խրկեց բօսսէվինոս մանդուացի Ճիզ-
վիթը Առաքելական դեսպան անունով, որպէս զի
մոսկովին վասիլովիչ թագաւորը միաբանել տայ լէհի
ու վենետիկի տէրութէն հետ պատերազմելու համար :

նոյնէրուընէ անունը կատարինէին ու իր յաջորդներուն համար. իսկ ուղղափառներուն համար մոհլովի արքեպիսկոպոս ձեռնադրեց, որ ըլլայ իբր եպիսկոպոսապետ մօսկով եղած ուղղափառներուն վրայ, որոնց վրայ ուրիշ իրեք եպիսկոպոսալ ձեռնադրեց. ան հանդէսը փառաւորցընելու համար հոն գտնըվեցաւ կատարինէն իր ամմէն ընտանեօքը : Այն բէգըրօպուրկ քաղաքին մէջնալ ուղղափառաց եկեղեցի մը բացաւ, նաւակատիքը ըրավ. հոն գտնըվեցան մեծ դուքսը՝ որ կատարինէին զաւակն էր, նաև իր ընկերը մեծ դքսուհին : Ա-քեգդէն մեծ պարգև առաւ կատարինէէն, ու աս ծառայութեա համար՝ տարիկ մը եւս քառատինալութե պատիւ առավ, պօլօնիա խրկըվեցաւ :

## ԱՍԶԻԱՆ ու փոքրասիա եղած շարժը .

## 1782—1783 :

Առաջ 1782 շարժ եղավ Պրէօնի ու Սպանիա, բայց 1783 սիջիլիա կղզին ու քալապրիայի մէջ անանկ շարժ մը եղավ՝ որ քիչ անգամ անանկ սաստիկ եղած է. աս շարժս կրնայ ըսվիլ որ գետնին երեսը փոխեց, տեղ տեղ չէր ճանչցըվեր, լեռները կըբացվէին կըգոցվէին, խորունկ վիրապներ անդունդներ կըբացվէին. գետերը չորցան, ցամաքը տեղ տեղ ծով դարձաւ, վասն զի ծովը ուռելով բարձրընալով կուգար կըկո-

խեր. քաղքըներ՝ գեղեր՝ կործանեցան, որոնցմէ մէկ քանին պատմենք ։

Փետրվ. 5. 1783 օհարբաթկէն երկու ժամ ետև Մեսսինա քաղաքը (1) խիստ սաստիկ եղած շարժը վեր վեր ցնցելով, անկից ամմէն շէնք կամ կործանեցան և կամ վնասեցան, եկեղեցիներ՝ զանգակատուններ՝ պալատներ (սէրայներ՝) վար ընկան փլան. Քէլօռօ ըսուած ծովուն ծայրը Փէնիքս վառելու բարձր աշտարակ կար նաւերու համար՝ կէսէն աւելի վար ընկաւ, ծովն ալ անչափ ուռեցաւ որ՝ ներս մտաւ, քանդանօ ըսուած լիճ (կէօլ) մը կար, անոր հետ մէկ տեղ խառնըվեցաւ, ամմէն եզերները կոխեց. հին խրճիթներ (խօլիպաներ) կային շինած, ուր նաւու առաջնորդներ (քըլավուզներ) կը բնակէին (2), ասոնց ամմէնուն բնակարանը ծովը առած տարած իրեն ետ քաշվելու ատենը, անոնց տեղը նաւակներ թողուց ցամաքի վրայ, ու տեսակ տեսակ ձկներ ։

Շարժէն ետև սաստիկ փոթորիկ մը եղած անձրևով որ հեղեղի (սէլի) պէս կուգար. քաղքըցիք որ բաց տեղվանք փախեր նաւերքէին՝ շատ նեղութիւն քաշեցին անձրևէն ու հովին սաստկութէնէն, չէյտէքին ուր փախչէին, չունէին ուրիշ հագուստ մը՝

(1) Այս քաղաքս Սիչիլիա կղզիին մէջ Բալէրմօյէն ետև՝ երկրորդ քաղաքն է ։

(2) Հոն մէկ նեղուց (պօղազ) մը կայ որ խիստ վտանգաւոր է, ամմէն նաւ որ հոն կուգան, անոնցմէ մէյ մէկ առաջնորդ կառնեն կերթեն ։

որ վրայի թրջըված լաթերնին փոխեն, անանկ թրջըված սաստիկ հովըուն մէջը կեցան։ Այս որովհետև իրենց հաց ուտելու ատենը ըլլալով ամէնուն տունը կրակ վառած կար, ան կրակին վրայ տախտակները շարժէն ընալով ամէն քաղաքը երիլ սկսաւ, ինչ որ շարժէն մնացած կային հագուստներ՝ գրուածներ՝ տեֆթերներ՝ զարդեր և այլն, ամէննալ իրենց աչքին դիմացը երվեցան մոխիր դարձան։ Նաև չիկարծած տեղ բերդին մէջնալ կրակ ընկաւ, որ խիստ մօտիկ ըլլալով պարութխանային՝ զարհուրելի գոռալով երկինքը ցաթկեց, աշտարակներ կործանեց, շատ զինուորներ ու հազարապետներ սպաննեց։ Գետինը քաղքին մէջ՝ քաղքէն դուրս՝ տեղ տեղ պատռեցաւ, տեղ տեղալ ցածցաւ. ան օրը իրեք ժամ օհարսըկէն ետև ինչվան կէս գիշերը այնչափ շատ կըցնցէր, որ 12. 15 վայրկեան չանցած նորէնոր կըկրկնըրվէր բայց միշտ ուժը քիչցընելով. վաղուան օրը աւելի գոռում մը հանելով անանկ սաստիկ մը ցնցեց որ՝ ինչ մնացած կար՝ վար ձգեց։ Հին մայր եկեղեցին՝ իր մեծ զանկակատունը՝ թագաւորական նաև հրապարակական պալատը (սերայը), հիւանդանոցին մեծ մասը, եպիսկոպոսարանը, իր դպրոցերէցը, դպրոցը, վանքեր, տներ, և անուանի ծովեզերեայ ամֆիթատրոնը որ բալայցադա կըսվէր (1), և մէկ մեծ

(1) Աս չէնքս ամէն նաւահանգստին բոլորակը

զարդ. մինչեւ սիջիլիայի ու ամէն իտալիայի մէջ, ասոնք ամէնը փլցուց։ Երբոր բազմութիւնը ծովեզերքը փախած նստած էին ահով դողով, շարժը նորէն ցնցելով՝ բարձր մեծ լեռան մը գլուխ իր բարձրութենէն ծովը ընկաւ. ծովին մէջը մէկ վիրապ մը բանալով՝ հոն գտնըված երկու նաւը առավ տարավ աներեւոյթ ըրավ մէջի մարդիկներով. ծովին բռնութիւնալ որ պատռելովը ցամաքին վրայ վազեց, ինչ մարդ որ կար ծովեզերքը՝ ինչ անասուն՝ ամէննալ քշեց տարաւ, որը քարերուն զարկաւ, որը ծառերուն, անկեց շատ մարդ կորսըվեցան, որոնք որ ողջ մնալով խալըսեցան, անոնքալ ուրիշ նեղութիւներու մէջ ընկան, անծածք՝ անկերակուր՝ անօգնական մնացած կըտըրքային, չէին կրնար իրարու օգնել։ Շարժին նեղութեան եւ՝ սովը (խըթըլըխը) սկսաւ նեղել, ամենուն ուտելու բան ինչվան հացալ չէին կրնար գտնալ խեղճ մեսսինացիները. թէպէտ շատ ցորեն կար՝ բայց շարժը հասարակաց համբարները՝ առանձին տներուն մահզէնները՝ ամէննալ

---

կըպատըռտեր մէկ մղոնի չափ, չորս խաթ. ամէննալ քառակուսի մերմեռ քարէ շինված. 18 դուռ ունէր՝ որ մեծ մեծ ճամփըներու վրայ կըհանէին. սանկով մէկհատիկ մեծաշէն թատրոն մըն էր՝ որու նմանը չիկար։ Ասիկայ 1622 Ֆիլիպերգոս սավօյայի իշխանը սկսաւ շինել, որ փոխարքայ էր Գ. փիլիպպոսի սպանիայու թագաւորին. մեսսինացոց քովը անչափ հարստութին կար որ՝ ասչափ մեծ շէնքը իրեք տարվան մէջը լմնցուցին։

աւերակի տակ թաղէրէր. Ջաղացքներէն՝ մէկը փլած՝ մէկը աւերակներով լեցուած ըլլալով, ջուրին ճամբաներէն գոցւած, չէին կրնար ջաղացքները բանեցընել, չէին կրնար աղբիւրներէն ջուր գտնալ. անկէց փուռերէն գոցվեցան, հայագործներէն փախան, ամմէն մարդուն տունը ինչ ուտելու կար՝ ամմէննալ թաղված կեցած մնաց։ Աորս դրին վայնասուն, լաց, ողբ, աղաղակ, մէկը հայրը կուլար, մէկը զաւակը, իր եղբայրը, կամ մօտիկ բարեկամները. ան օրվան մեռնօղներուն համրանքը՝ 10 հազարէն աւելի եղան. Թող տուր եաքի մեռածները, մէկը խոցվելէն, մէկը ուրիշ նեղութիններէն, որոնք ամմէնը մէկ տեղ 70 հազար մարդ կորան։ Աւելի նեղութին պիտոր քաշէին՝ թէ որ մօտիկ քաղաքը քադանիա ըսվածը կերակուր չի հասցըներ առանց նաւակներով. ասիկայ եղավ իրենց աւելի օգնութիւնը. անկէց զատ առանձին մարդիկներ իրենց ազգականներուն բարեկամներուն աս դիէն ան դիէն կերակուր ու հագուստ հասուցին։ Բայց շատ անգութ անզգամ մարդիկներալ կային՝ որ ան խեղճութեան ատենը իրենց շահելու ատեն սեպելով, իրենց քաղքըցոց բաները կրգողնային կրթալլէին։

Աս շարժը քալապրիայի մէջալ եղավ ինչվան յոնիական ծովուն ան դին աքքենինեան տեղը, շատ մարդու վնաս տալով։ Մերիծան գաւառին մէջ (քօղօլէդօ գաւառին հետ մէկ տեղ) շարժէն յանկարծ

Երկու լեռ վար ընկան գետը արգելեցին, որ բարձրընալով ուռենալով մէկ մեծ լիճ (կէօլ) մը եղաւ. սաստիկ եղաւ Սինոբօլի բռնած տեղնալ՝ ուր գետ մը արգելվեցաւ. քանիկալ որ ուրիշ պզտիկ ջուրեր որ ապբօմօնդէ լեռներէն կիջնային՝ բէդուայի գետը կըխառնըվէին՝ արգելվելով լճէր եղան: Քուաիագի իշխանին օրբինօ երկիրը որ լեռան մը վրայ էր երկու ձորի (տէրէի) մէջ՝ կէս մը ավըրվեցաւ, կէս մընալ գետին անցաւ. մէկ բերդաքանալ փլցուց, 2500 հոգիէն աւելի անոր տակը մնացին, շատ մարդալ վնասվեցան:

Սէձձիօ որ իր համանուն գաւառին մայր քաղաքն է, ամէն իր շէնքերով գետինը անցաւ, 3 հազար հոգիէնալ աւելի կորսըվեցան: Սէմինառա մարդաշատ քաղաքը գրեթէ ամէն մէջի բնակիչներով աներևոյթ եղաւ, անանկ սաստիկ եղաւ հոն շարժը՝ անանկ մը ցնցեց՝ որ մէկ մեծ գետին մը լեցուն պտղատու ծառերով տեղէն հանեց, երկու մղոնի չափ հեռու տեղ մը ամբողջ տարաւ ձգեց, ամէն վրայի ծառերով, ձիթենիներով, ուրիշ բուսերով, ամենևին իրենց արմատներուն չիդըպչելով, որուն առջի եղած տեղը հըրաբուղխինութեերով լեցուն կեցած է ինչվան հիմա, ուր տեղ խորունկ պատռըված մը կերևնայ քանի մը մղոն երկան: Նաանկալ պակնառա ու սուրբ Եւփիմիա բռնած տեղը շատ վնաս քաշեց, շատ մարդ մեռան կամ խոցվեցան: Գրէառա նօվա բռնած

տեղը բոլորովին կործանեցաւ. 2 հազար մարդէն աւելի կորսուեցաւ, ասանկալ ամբողջ կործանեցաւ Քաղաքնօվօ, ուր մեռաւ անուանի իշխանուհին Կուխմալտի Ձերաչեան, 6 հազար հոգիով իր ժողովուրդին հետ մէկ տեղ։ Երկան կըլլայ ամմէն վնասուած տեղերը գրել, բայց խիստ խեղճ եղավ ըսէլլա անոնց հին ու մարդաշատ քաղաքին դիպուածը. ասոր քովը բերդ մը կար ապառաժ լեռան վրայ՝ ուր որ կընդուտէր ան երկրին ծեր իշխանը՝ Փօլքօ անտօն ռուֆֆօ ըսված, որ ահագին շարժէն փախչելով ծովուն քովը եկավ իր մարդիկներով, քիչ մը վրանները (չատըրները) տակ, քիչմընալ նաւակներու մէջ սոմըվելով. բայց գիշերը ծովը չափէ դուրս ուռենալով կոխելով՝ քանի մարդ որ ծովեզերքը կեցած էին, ուժով մը քաշեց տարաւ իր անդունդը. 1448 հոգի կորսնցուց իրենց իշխանովը՝ որ շատ բարբարոս ագահ ու մարդասպան ըլլալով, իր պատիժը գտաւ ըսին։

Երբոր աս քաղաքացոց խեղճութիւնը լսեց Նաբօլիի Թագաւորը Դ. Ֆէրտինանտոս, շուտ մը ուզեց հոն երթալ՝ որ օգնութիւն հասնի խեղճերուն, բայց աքդօն զօրապետը՝ Թագուհին՝ և ուրիշ արքունեաց մէջի եղօղները թող չտըվին, իր տեղը բինեադէլլի զօրապետը խրկել տըվին շատ մարդիկներով. ասիկայ երբոր հոն հասաւ՝ Թագաւորին տըված ըստակը ան խեղճերուն համար՝ մեծ մասը իրեն քաշեց առաւ. Թող

որ ատկէց անկէց աղքատներէն ըստակ կը-
պահանջէր . ասանկալ իրեն մարդիկները
կընէին , անանկ որ ատոնց ըրած վնասը ա-
ւելի եղաւ քան շարժին ըրածները ։ Իրաւ
է որ թագաւորները պէտք է նային չէ թէ
մինակ աղէկութի̃ ընելու , այլ նաև աղէկ
մարդ ընտրելու՝ որ իրենց ուզած աղէկու-
թիւնը ընեն ։

Ոչ սաստիկ շարժէն ետև մէկ երևոյթ մը-
նալ հետևեցաւ զարմանալի . ամմէն քա-
ղաքրիայի ու սիջիլիայի վրայ մէկ մշուշ (տու-
ման , փուս ) մը սկսաւ երկինքին վրայ ե-
րևնալ՝ որ քշեց վեց ամիս . քալապրիային
սիջիլիային վրայ խիստ թանձր , անկից քա-
նի որ հեռընայիր՝ քիչ մը բարակ , բայց
ամմէն ձերմակ ծովուն վրայ պատած էր ,
սեպտէի պօղազէն ինչվան ստանպօլի պօ-
ղազ իչին . ամռվան բաց պարզ օրերնալ՝
օհարսըկվան ատեննալ միշտ մէկ մշուշ մը
կեցած կերևնար երկինքին երեսը ։ Ու և
ծովէնալ քանի նաւապետներ որ կուգային ,
անոնքալ մեզի կըպատմէին որ՝ ամմէն սև
ծովին վրայ մշուշ մը կայ պատած , որ ա-
ռաջ ասանկ չէր , ասանկալ դունա գետին
վրայ , Ֆրանսային ու ինկիլդէռային վրայ
և այլն ։ Տեղ տեղալ ինչպէս եղաւ վենե-
տիկ , անանկ նոր նոր ձուկներ կըտեսնային ,
որ առաջ ամենևին չէին տեսած մարդիկ
ան տեղվանքները անանկ ձուկ , կերևայ որ
սիջիլիայի ու քալապրիայի ծովերը շարժէն
տակնուվրայ ըլլալով , կամ գէշ ծծմբային
հոտեր հանելով՝ անկէց փախած էին ատ

Ձուկնէրը խաղաղ ծով գտնալու համար ։ Աս շարժը եւրոպային չորս դինալ ծաւալե-ցաւ, նաև ասիա ու ամերիկա թէպէտ թե-թեւ, միայն իսլանտա կղզին անանկ սաս-տիկ եղաւ որ՝ ծովին մէջէն յանկարծ մէկ նոր կղզի մը ելաւ գետնի տակի կրակէն ։

## Խրիմ Թաթարէն կելլայ, Մոսկովին գաւառներէն մէկը կըլլայ·

1782—1783 ։

Շահին կիրայը որ Մոսկովի պաշտպանու-թեամբ Խըրըմի խան էր եղած, շատ խռովու-թիւներու պատճառ եղաւ իր գործքերով. Խըրըմի մէջ սկսաւ եւրոպացոց սովորու-թիւները մուցընել՝ որ խիստ դէմ կուգար տեղացոց, ան քանի որ կամաց կամաց պի-տոր մուցընէր՝ անմտութեամբ ուզեց մէկէն մուցընել։ Աս նորութիւնը ահա պատճառ եղաւ իր կործանմանը. ուրիշներուն սիր-տը բարերարութեամբ առատաձեռնութեամբ ձեռք առնելուն տեղը՝ իրենն քաշել կրնայ-էր, ինքը վաստըկել կուզէր անհնարին ա-գահութեամբ, մէկ մեծաշէն պալատ (սէրայ) մը շինեց Մոսկովի շէնքին կերպէ. ութը ձիով առապայ կընստէր մառէշալի և Ս. վօլօտօմիրեան կարգին հագուստով, որ էր ասպետութեան կարգ. Բէդըրպուրկէն իրեն խըրկըված. Նեմցէի ու պրուշի կրթութիւն (թալիմ) ջանաց խօթել իր զօրացը մէջ. Փրանսայի կերպ հագուստ խօթեց իր կընկ-

Նոր հասնող պուլկաքօֆ մոսկովին դեսպա-նը դըրան հասկըցուց որ՝ շուտ մը միաբա-նին մոսկովին հետ՝ խըրըմին խռովութիւնը խաղաղցընեն, շահին կիրայը նստեցընեն։ Դուռը պատասխան տըվաւ որ եղած դաշ-նադրութեանը կեօրէ ոչ տաճիկը և ոչ մոս-կովը պիտոր խառնըվի, հապա իրենց թող-լու է մէկ խան մը նստեցընել, մոսկովը միայն խանին անկախ ըլլալը պիտոր պաշտ-պանէ, մանաւանդ որ աս վէճս անանկ ժա-ղովրդեան մէջ է, որ երկու դինայ հաւա-տակից են, իրենց չէր իյնար որ խառնըվի։ Աս պատասխանը մոսկովին ուզածը եղաւ. Սամոյլով զօրապետը 20 հազար զօրքով շուտ մը խըրըմ խրկեց, որ եկաւ ապստամբ-ները հալածեց, ոմանքալ բռնեց կախեց, շահին կիրայը նորէն նստեցուց։ 1783 փետրվ. 21. երբոր շատ հակաճառութեն տաճիկն ու մոսկովը մէկ դաշնադրութիւն մը ըրին առուտուրի վրայօք, նոյն ամսոյն 28ին շահին կիրայը տեսնալով որ իր թշնա-միները անդադար կըմտածէին ծածուկ ո-րոգայթի մը մէջ ձգել զինքը, հանդիստով հրաժարեցաւ իր խանութենէն և իր երկիր-ներէն՝ մոսկովին տալով աս թէութեն որ՝ անոր տեղը ինքը երթայ մէկ մոսկովի գա-ւառ մը նստի. տարին 300 հազար ռուպլի (պէշլիք) եկամուտ առնելով. և փոխա-րէն իր երկիրներուն՝ հարուստ քարերով շինված զարդ մը։ Սանկով ահա մարե-ցաւ իշխանութիւնը աս թաթար խանի ցե-ղին՝ որ Ճինկիս խանին մէկ տղէն իջած

ըլլալով՝ 500 տարիի չափ իշխեց խրիմին մէջ։

Ա՛ն ատենը մոսկովի թագուհին 30 հազար զօրքով բօդեմքին իշխանը իր երեսփոխանը խրկեց հոն, որ երթայ տիրապետէ անոր երկիրներուն վրայ. ասիկայ առանց մէկ ընդդիմութիւն մը գտնալու մտաւ պզտիկ թաթարի մէջ, ամէն բերդերու նաւահանգիստներու մէջ պահապաններ դրաւ. քուպանին մէջն ալ մտաւ տիրապետեց, ասանկալ թամանը մտաւ, որ բալլիքն է ու շահաստան քաղաք աղի ձկան առուտուրի համար որ ազախու ծովէն կելլայ։ Ուրիշ զօրքալ խրկեց մոսկովը գարապազար՝ որ պատրաստ կենան՝ պէտք ըլլալու ատենը կանչէն. իսկ ազախու ծովը՝ վէռօնիցան՝ ու քէրսօն՝ պատերազմական նաւեր դրին։ Ա՛ս զգուշութիւնները շուտ մը ընելով մոսկովը, իր իրաւունքը ցուցընելու համար՝ 1783 ապրիլի 8 ասանկ յայտարար թուղթ մը հանեց։ „Մ՚իշտ խռովութիւն ըլլալով աս „թաթարներուն մէջ՝ շատ անհանգստութիւն „կուտային մեր տէրուեը, շատ խարճիալ „պատճառ կըլլային, որոնք պաշտպանե-„լու՝ 15 միլիոն ռուպլիէն աւելի խարճ ե-„ղաւ։ Տաճիկը ընդդէմ դաշնադրութեն „հոն տեղ տեղ իր տէրութիւնը կըբանեցը-„նէր, մանաւանդ թաման կղզիի մէջ, „ուր տեղ մէկ զօրապետ մը խրկեց զօր-„քով, որ դուք տաճկի թագաւորին հպա-„տակն (րայեն) էք ըսելով, շահին կիրայ-„ին խրկած մարդուն գլուխը կտրեց. Ա-

„ սոր համար մեր իշխանութիւնը տակը կառ-
„ նենք Պզտիկ Թաթարը, Խրըմու ցամաք
„ կղզին, Թամանի կղզին, Մինչէն Ղու-
„ պանը“։

Սանկով ան Թաթարը՝ որ ատենօք ծանր հարկը (խարաճ) կառնէր մոսկովէն, հիմա ինքը մոսկովին հարկատու եղաւ, իր միրզաները՝ պէյերը՝ գլխաւոր քաղքըներուն մեծերը՝ քիչ մը անուշութեամբ՝ քիչ մը վախով բռնադատուելով, յուլիսի 20 գացին՝ բօդեմքին իշխանին հաւատարմութիւն ու հնազանդութիւն երդում ըրին. որ իր աղէկ կառավարութիւնը համար առանց մէկ արիւն մը թափելու ամենեւին հնազանդեցուց. ինքն ալ եղաւ միտնջեննաւոր կառավար աս ամէն առած երկիրներուն վրայ։ Սուվարօֆ զօրապետն ալ անանկ ըրաւ վարի քուպանին մէջ թաթարական ժողովրդեանը հետ. անոնց մեծերը՝ ու պաթեր կերայ սուլդանը՝ իր ժողովրդովը որ քուպան գետին աս դի դին կըբնակէին, նաեւ պուճաղ Թաթարին թաթարական օպաները իր տակը առաւ։

Աս տեղվանքները երբոր տաճկին տակն էին՝ 4 միլիոն զուրուշ տարին եկամուտ կըբերէին. մէջի բնակիչները 2 միլիոն ու կէսէն աւելի էին, գրեթէ ամենեւին պատերազմական մարդիկներ, որոնցմէ մոսկովը 60 հազար զօրք հանելով իրեն զօրքը շատցուց։ Սանկով մոսկովը աս ժէ. դարուն ծայրէն սկսեալ օրէօր տեղվանք առնելով շվեդէն՝ լեհէն՝ Թաթարէն՝ ու տաճ

„ լաւով՝ միջնորդ ըլլալը պարապ էր, թէ
„ որ տաճիկը ծեծ ըսկըսի ինծի հետ՝ ան
„ ատենը Փրանսզին միջնորդութիւնը մեզ
„ հաշտեցընելու համար կընդունիմ“ ։

Յովսէփ կայսրնալ Փրանսզի թագաւորին պէս զուրցեց. բայց յայտնի եղաւ՝ թէ որ ծեծ բացվէր, ինքնալ մոսկովին հետ դաշնակից ըլլալուն համար զօրք պիտոր տար մոսկովին, մանաւանդ որ ինքնալ 1783 անձամբ եկերէր մաճառին ու Թրանսիլվանիային սահմանները՝ որպէս զի մնացած բերդերը նայի, ան տեղվանքը զօրացընէ ։ Արզանկտեր յովսէփ տաճկին՝ թէ ինչու նոր տեղվանք ամրցուցերեր պելղրատի մէջ 1739, և 1747 եղած դաշնադրութեց դէմ, այնչափ որ՝ թէ որ տաճիկը մտիկ չընէր, յովսէփ կըսպառնար ծեծ բանալ ։ Աս պատճառովս էր որ յովսէփ հրաժարեցաւ ընդունելու տաճկին դեսպանը՝ որ կարգէ դուրս կուզէր խրկել շնորհաւորելու համար իր բացարձակ տէր ըլլալուն վրայ մօրը մեռնելէն ետև, պատասխանելով տաճկին՝ բաւական է առջի շնորհաւորելը երբոր յաջորդ եղայ կայսեր թախտին, հիմակվան կրկնելը աւելորդ քաղաքավարութիւն էր ։

Յովսէփ շատ կըջանար որ՝ խըրըմ մոսկովին ձեռքը մնայ, ինչու որ խըրըմին նաւահանգիստները առուտուրի խիստ յարմար են իր ժողովուրդին համար, և որովհետև մոսկովը իրեն սիրական դաշնակիցն էր, կիմանար որ իր շահին խափանիչ պիտոր

չըլլար, ինչպէս որ փորձեց լեհաստան բաժ-
նելուն ատենը, մոսկովը ան պատենը նեմ-
ցէին դէմ չիկրցաւ ան բաժինը առնելու՝
որուն մէջը 3 միլիոն աւելի բնակիչ կային
քան մոսկովին բաժնին մէջը։ Ասոր համար
Փրանսայի Թագուհին որ իր քոյրն էր՝
ձեռք առաւ որպէս զի Փրանսայի Թագա-
ւորին խօսք հասկըցընէ՝ Թող տայ մոսկո-
վին խըրըմը առնելու, մանաւանդ Թէ մէջ
մոնայ տաճկին հաւնեցընէ՝ որ աս բանիս
դէմ չիկենայ. ասկից եղաւ որ ստանպօլ
նստող Փրանսզի դեսպանը՝ որ սուրբ բրիէ-
Փու կոմս կըսվէր, սկսաւ աս բանիս վրայ
դուռը համոզել (խանտրմիշ ընել,) ըսե-
լով։ „ Մոսկովը պատրաստ է իր ամմէն
„ ուժը բանեցընել՝ երկան պատերազմով
„ ծեծկըվիլ խըրըմին մէկ կտորը Թող չի
„ տալուն համար. յովսէփ կայսընալ իրեն
„ օգնական ունենալով երկուքը մէկ տեղ
„ 600 հազար մարդ ոտքի վրայ կըհանեն,
„ ամմէն ռումէլիի մէջ եղած տաճկի սահ-
„ մանի վրայ կըփաղեն, մէջերնին կըբաժ-
„ նեն։ Ասոնց մէկ դէմ դնօղ մը կար պրու-
„ շին Թագաւորը Բ. Փետերիքոս, անալ
„ հիմա ծեր ըլլալով ու հիւանդոտ՝ տեղէն
„ չիշարժիր, ասանկով ձեզի մեծ վնաս կըլ-
„ լայ, ուրեմն խելքը աս է որ՝ հիմակվան
„ ատենը դուք ձեզ յարմարցընէք ատենիս
„ պարագայնէրու, ուրիշ ատենի Թողուք
„ վրէժխնդրուԹի ընելու։
Աս պատճառներս աղէկ մը մտածելով տա-
ճիկը՝ տեսնալովալ որ բօղեմքին անուանի

զօրապետը 100 հազար մահկանով պատրաստ կեցած էր, նաեւ նեմչէն իր զօրքը առջև դէտին քովը Թափերէր, որ շուտով կըրնային աս դի դին անցնիլ, իր մէջէնալ չէին պակսէր ապստամբներ, տաղլը բանծները ռումէլիի մէջ, անպակաս խռովութիւններ շամու փաշայութե մէջ, գլուխ քաշել մը մորայ ու պաղտատի մէջ, աս բաներս մտածելով յանձն առաւ խրըրմը թողուլ; որուն շատ դէմ կեցաւ վէզիրը։ Ասանկով 1784 յունվ. 15 կայսրը ու Փրանսայի Թագաւորը միջնորդ ըլլալով հաստատվեցաւ մահկովին առաջարկած դաշնադրութիւը, որուն երեսփոխանը պուլկաքօֆ էր, իսկ տաճկին գիւացէն՝ ձէզայիրլի գափուտան հասան փաշայ և ռէիս էֆէնտին. Թէուհները աս էին։

„ Ա. Հաստատուն մնայ երկուքին մէջը
„ քայնարճըքին դաշնադրութիւը՝ որ եղաւ
„ 1774. և անոր բացատրութիւը որ եղաւ
„ 1779. առուտուրի պայմանադրութիւնը
„ որ եղաւ 1783. միայն երրորդ Թէութիւը
„ քայնարճըքի դաշնադրութե ուրինչ ըլլայ,
„ ուրինչ սեպվի մէջէրնիս ինչ որ գրված է
„ խրըրմին ու պզտիկ Թաթարին վրայ „։
„ Բ. Պզտիկ Թաթարը՝ խրըրմը՝ քուպան
„ Թագաւորութիւը՝ Թամանկ կղզին՝ իրենց
„ տակի եզերներով, քաղքըներով, բերդերով և այլն., տաճկաց եարքը մահկովի Թագուհիին և իրեն յաջորդներուն իշխանութե տակը ըլլան միշտ. մէկ տէրութե
„ մը չիդպանկալ աս բաներս վրայ „։

» Գ. Օղուլին ընդդէմ իր գաւառով տաճ-
» կին տակը մնայ, մէկ տէրութեան մը վրան
» ըլլալէ »։
» Դ. Մոսկովին տէրութիւնը ոչ երբէք բա-
» նեցընէ սա իշխանութիւնը՝ որ թաթար
» խաներըն ունէին Ճէնկիզխանէն ու իր գա-
» ւառին վրայ, որ միշտ տաճկին տակը պի-
» տոր մնայ »։
» Ե. Ռուսական զօրքը անկէց ետքը սահման
» ըլլայ մոսկովին ու տաճկին մէջը. մոսկո-
» վը չիկրնայ իշխանութիւն պահանջել սա
» թաթարներուն վրայ, որ ռուսական զօրքին
» սա դին կրնային սև ծովին կողմը։ Ա-
» զատութիւն հանդիսով հաստատուի
» չորս ամսուան մէջ, կամ աւելի շուտ »։
Այս հաստատութիւնը եղաւ 1784 տարին
11. ճանկովը տիրածին պէս՝ Թուղթ հա-
նեց, ամենայն քրիստոնեաներըն իր նոր առած
տեղվանքը կանչելով, թոյլ տալով ամէն-
նուն որ ազատ առուտուր ընեն ծովու ցա-
մաքի վրայ։

Տաճկին ու սպանիոյին մէջը եղած ճշմարտութեան
խաղաղութիւնը.

1782։

Այերոպ ամերիկայի ծով. նահանգները զատ
տէրութեան մը եղան՝ խիստ քէչցաւ ինկլիզ-
ներուն առուտուրը՝ որ արեւելքցոց հետ կը-
նէին Ճերմակ ծովին մէջ. սա բանս հանկը-
նալով սպանիացին՝ իրենք ուզեց ձեռք առնել

ու առուտուրը, ամերիկային ապրանքները ինքը բերելով տաճկին երկիրը. անոր համար Գ. կարոլոս սպանիային Թագաւորը մտածեց բարեկամութիւն կապել տաճկի Թագաւորին հետ։ Բայց աս բանս սպանիայի տէրութեն դէմ բան էր, ինչու որ քաստիլիայի հին Թագաւորներէն սկսեալ սպանիան միշտ դէմ էր եղած, միշտ ծեծ կըռներ ամէն տաճիկ իշխաններու հետ. անոր համար օրինակ մը չկար, սպանիայի Թագաւոր մը չէր եղած որ՝ օսմանցիին հետ դաշնադրութեն կամ խաղաղութեն Թուղթ մը ընէ, հիմա ասանկ բան ընելով գայթակղութիւն կուտար ամէն սպանիացւոց։

Կարտինալ ալպէռօնին երբոր սպանիայի վէզիրն էր՝ մէկ ծածուկ բարեկամութիւն մը ունեցաւ ստամպօլ, բայց երբոր իր պաշտօնը լմնցաւ, ամէն բանը վերջացաւ, հիմա վերոյիշեալ Գ. կարոլոս Թագաւորը ստամպօլ խրկեց յոհաննէս պուլինի վաճառականը, որ առատաձեռնութեամբ անուշութեամբ ձեռք առաւ ստամպօլին վէզիրը, որպէս զի մէկ դաշնադրութիւն մը ընէ առուտուրի վրայ։ Ուրիշ եւրոպացի ազգերը՝ որ տաճկին հետ առուտուր կընէին, նախանձելով շատ ետեւէ ընկան աս բանս խափանելու՝ բայց պարապ ելաւ, վասն զի 1782 սեպտ. 14 ստորագրեցին աս դաշնադրութեն վերոյիշեալ պուլինի վաճառականը ու վէզիրը, մէկ քանի ամսէն ետեւ հրապարակաւ հաստատեցին։

Ասանկով մէկ մշտնջենաւոր խաղաղութեն

ու բարեկամութիւն մը սահմանեցին սպա-
նիայէն ու տաճկին մէջը աս թէսուինէրով։
Սպանիան թէ ստանպօլ՝ և թէ ամէն ու-
սիայի եւրոպայի ու աֆրիկէի վաճառա-
տեղերը քօնսօլներ կարենայ դնել։ Իր նա-
ւերը ամէն կերպ ապրանքներով կարենայ
խրկել տաճկին սահմանը, վճարելով ինչ
որ ուրիշ բարեկամ ազգերը կը վճարեն։
Մէկ դեսպան մը ունենայ ստանպօլ պա-
տուով նման ուրիշ տէրութիւներու։ Սպա-
նիայէն ուխտաւորները երբոր երուսաղէմ
երթալու ըլլան, նեղութի՟ չքաշեն, այլ
մանաւանդ տաճիկը անոնք պաշտպանէ։
Տաճիկնալ կարենայ իր դրօշակով վաճա-
ռականի նաւերը խրկել ամէն սպանիայէն
նաւահանգիստները, մանաւանդ Ալիքան-
դը, որոնք ընդունէին ինչ կերպով որ սպա-
նիայէն նաւերը կընդունէին տաճկին եր-
կիրը։
Աս բանս աւելի շահաւոր եղաւ սպանիայէն
քան թէ տաճկին, որովհետև տաճկին քիչ
նաւերն են որ Փրէնկիստան կընաւարկեն,
անալ միայն չամլըճացիք, սուլուճացիք։
Իսկ մառսիլիացոց շատ վնասակար եղաւ,
որովհետև առաջ սպանիայէն ապրանքը
միայն իրենք կը տանէին տաճկին սահմանը.
անոր համար Փրանսզները շատ մեղադրե-
ցին ստանպօլ եղած իրենց դեսպանը՝ որ
կըսուէր կոմս Սան բրիէստ, թէ ինչու հող-
չտարաւ ճամփով մը արգելել սպանիայէն
դաշնադրութիւնը։
Ասոր եւսէն եղաւ որ՝ հինգ սպանիայէ

դրութիւն ըլլին մոսկովը ու Էրէկլի խանը՝ որ հաւատարմութեան երդում ըրաւ։ Էրէկլին մոսկովէն օգնութիւն առնելով՝ դաւիթ իշխանին երկիրը փախեց՝ որ իմէրէթին կամ պաշ աչըխին իշխանն էր, որուն տղան Սողոմն շատ ընդարձակերէր իր երկիրը. բայց Էրէկլին զարնըվելով վնասեցաւ։ Դաւիթ իշխանն ալ տեսնալով որ չէր կըրնար երկան ատեն մոսկովին դէմ դնել, միշտ վտանգի մէջ էր, հարկ կըլլար կամ մոսկովը՝ կամ տաճիկը՝ և կամ պարսիկը իրեն օգնութիւն կանչել, օրինակ առնելով Էրէկլի խանէն՝ ինքն ալ բէդըրօպուրկ մարդիկ խրկեց, մոսկովին տէրութեան տակը անցաւ։

Ասկից ետքը եղաւ որ՝ սև ծովին ու կասպից ծովին մէջի եղած պզտիկ ազգերը՝ որ երբեմն պարսից՝ երբեմն տաճկին կըհնազանդէին, օրինակ առնելով Էրէկլի խանէն հանդիսով դեսպաններ խրկեցին, մոսկովին պաշտպանութեան տակը անցան, որպէս զի իրենց օգնէ. անոնք են Չէրքէս, Մընկռէլ, Օս, Կախէթ. ասանկ ըլլին նաև ուրիշ պզտըրտիկ իշխանները կամ պէյերը։ Բայց կենցաղակիրթ շատ գէտներ կըսեն որ ռօմանցովը արդէն 1774 եղած դաշնագրութեանը մէջ աս բանիս համար դնել տըվերէր՝ թէ չէրքէսին բերդերը որ մոսկովը առերէր, իրենց առջի տիրվըրտոյը ձեռքը դառնան աս թէութէ որ՝ տաճիկը մէկ տալը մը չկրնայ պահանջել ոչ տղայ, ոչ աղջիկ, որպէս զի անանկով ազատ մնան

ման երկիրները. Ետքնալ իրենցմէ մոսկովին տանն ինչպէս որ եղաւ հիմա ։

Երբոր ալ խորքմը տեւաւ մոսկովը՝ ան ատենը միտքը դարձուց նոր ճամփայներով իր վաճառականութիւնը ընդարձակելու և շէնցընելու, պարսիկցմէ սկսեալ ինչվան փորԹուկալ, ըստ որում ասկից ետև դունային ու Թուռլային վրայէն՝ և ուրիշ մեծ գետերուն վրայէն կրնար հեշտ (խօլայ) ապրանքներ սև ծովը ինջեցընել, որոնք առանց պտոյտ ու դժուարին ճամփայներով կինջեցընէր ։ Անոր համար նոր նոր ջրանցքներ բանալ տըվաւ ջուրերը իրարու հետ խառնելով, նոր դաշինքներ դրաւ ամէն տէրուԹենց հետ՝ մանաւանդ նեմցէի հետ առուտուրի վրայօք. տաճկին հետալ խօսք կապեց իր նաւերը ազատաբար անցընելու չանախ խալէսիէն ։ Աս միջոցին մէջ յովսէփ կայսրնալ իր դաշնակցին ձեռքովը իր ուզածը ձեռք ձգեց, որ էր ազատ նաւարկուԹի իր դրօշակին իր ժողովրդեան դանա գետին մէջ, սև ծովուն՝ պօղազ իչին՝ և ուրիշ տաճկին ծովերուն մէջ. անոր համար նոր առնըված տեղվանքը նեմցէի քօնսօլներ դրաւ, քէրսօն, սեպաստօբօլի, քէֆէ ու Թաման ։

Եւրոպացիք վաճառականուԹիւը երկրագործուԹիւը երկու հիմ (Թէմէլ) կըսեպեն հարստուԹ. տաճիկնալ խելքով մտածելով ամէնուն Թող կուտայ իր երկրէն շահելու, մէյմը որ անով ան տէրուԹիւնները կըբռնադատէ իրեն բարեկամ մնալ իրբ

թէ իրենց դաշնակից ըլլային, մէյմընալ որ մէկ երկրի մը տէր է որ՝ որչափ շահէին ուրիշ տէրութիւններ՝ անոր շահը ուրիշ ճամփով մը ըստ մասին իրենց կըդառնայ,. ինչպէս որ առաջիններն գրեցինք ։ Միայն թէ սա վաճառականութեան միտքը մոսկովին ու նեմցերին՝ թէ ինչ նախանձ բերաւ մէկ քանի տէրութեան մանաւանդ ինկլիզին տէրութեան մէջ, ետքը պատմենք ։

## Պարսից Վրայ.

## 1760 — 1785 ։

Պարսից երկրին խռովութիւնը չէր դադրած ինչվան հիմա, առանց շահի կամ թագաւորի մնալով ամմէն խան կուզէին թագաւոր ըլլալ, որոնց մէջը զօրաւոր փրթաւ քէրիմ խան, բայց իր աղբարը զէքի խան դժվարելով քէրիմ խանին վրայ եկաւ իսպահան նստաւ ապստամբելու մտքով, անոր համար շատ երթալլէր ժողովուրդը ։ քէրիմ խանը անոր վրայ եկաւ բռնեց իր քովը պահեց ։ անկէց ետքը 1762 շիրազ գնաց քէրիմ խանը՝ հոն դրաւ իր թախտը, ետքը 1776 Սատեղ խանը իր աղբարը խըրկեց պասրայի վրայ՝ որ 13 ամիս պաշարեց ։ մէջինները սովէն ( խըրթըլըխէն ) նեղելով 1777 ապրիլի մէջ իրենց տըվին քաղաքը ։ Քէրիմ խանը մեռաւ 1779 ։ վերոյիշեալ զէքի խանը՝ քէրիմ խանին տղան որ աբուլֆաթ խան կըսվէր՝ իր հօրը տեղը դրաւ,

բայց ինքը կիշխէր ամէնին բանին վրայ. Սա-
տեղ խանը լսածին պէս Քերիմ խանին
մեռնիլը՝ Պասրան Թողուց, Շիրազ գնաց որ
ինքը Թագաւորէ, բայց լսելով որ Զէքին
տիրեր է՝ ինքը Եէզդիտ ու Քիրմանին դին
գնաց: Քերիմ խանին մեռած ատեն որ Ալի-
նաղի կըռուէր՝ Զէքի խանը մեռաւ, ինքը
Թագաւորեց, Սատեղ խաննալ Շիրազ կան-
չեց ու մեծցուց. սա Սատեղ խանը 1781
յանկարծ բռնեց Ալինաղի խանը ու իրեն
երկու եղբայրները՝ ինքը Թագաւոր նըս-
տաւ:

Երբոր լսեց Ալիմուրատ խանը՝ որ Ալինա-
ղի խանէն իշխան էր դըրված Թէվրիզի վը-
րայ, ապստամբեցաւ Սատեղ խանէն, իր
զօրքովը եկաւ Իսպահան առաւ. Իսքէն-
տէրնալ որ Զէքիին տղան էր՝ անոր զօրա-
պետ եղաւ: Ալիմուրատ Շիրազ քաղաքը
պաշարեց, մէջինները սովէն նեղելով դուրս
ելան ծեծկըռուելու. Իսքէնտէր զօրապետը՝
ով որ դուրս ելաւ ջարդեց, անանկով Շի-
րազ մտաւ, Սատեղ խանը իր զաւկըներով
սպաննեց, Քերիմ խանին իրեք տղաքնալ
բռնեց, աչվըներին փորեց: Քանի մը օրէն
ետև Ալիմուրատը Շիրազ մտաւ, որոնց վը-
րայ որ կասկած ունէր՝ սպաննեց. Իսքէն-
տէրին վրայյալ կասկած ըլլալով՝ չըլլայ
Թէ օր մը անիկայ տիրէ, որովհետև ամէ-
նուննալ սիրելի էր ու զօրաւոր իր 23 տարի-
վան կտրիճ, կեղծաւորութիւն իր քովը կան-
չելով առաջ աչվըները փորել տըվաւ, ետ-
քը սպաննեց այն զօրաւորը՝ որուն քաջու-

Թող ամբողջ տանը տայ՝ որ տէր է միլա-նոյ և մանդովայի. Ինչպէս են եպիսկոպո-սութիւնք, աբբայութիւնք, առաջնորդութիւնք, կանոնիկոսութիւնք, ժողովրդապետութիւնք և այլն ։ Որչափ որ ուզեցին Հռոմայու մէջ իրեն դրան պատճառներ ընել՝ ինքը չուզեց, Ինչպէս որ չէր ուզած մէկալ անգամնուն-ալ, այլ իբրև հասարակ մարդ մը կըքա-լէր, բայց Հռոմայեցիք չիհաւանելով իր ը-րած նորութիւններուն՝ խոժոռ աչքով կը-նայէին իր վրայ ։

Ծնունդին տօնը Հռոմ ընելէն ետև յով-սէփ՝ տարիին ետքերը նորէն ելաւ գնաց Նաքօլի, իր քոյրը տեսնալու՝ որ Նաքօլիի Թագուհի էր, մանաւանդ որ ան ատենը մէկալ քոյրն ալ հոն էր եկած որ Պառ-մայի դքսուհի էր ։ Նաքօլիի Թագաւորը Դ. Փերտինանտոս իրեն հետ համարձակ ըլլալով օր մը իր ընտանեկան խօսակցու-թէցը մէջը ասանկ խրատել սկսաւ յովսէփ կայսրը իր ըրած նորութիւնները յանդիմա-նելով քիչ մը խիստ խօսքերով Նաքօլցոց ոճին կէօրէ ։ „ Մեղքընալէս կըդուրցեմ, „ ինչ է աս քաշածներդ . դուն մէկ կեանք „ մը կըվարես որ խիստ դժար է ու անհան-„ գիստ, դժար կըմարսես, դժար կըքնա-„ նաս, կուզես ամմէն բան ընել, քուկին „ պաշտօնեայններդ ալ անհանգիստ կընես, „ քուկին տունդ ալ. դուն մէկ նահատակ „ մընես քուկին կոյր մոլութեան նորութի „ ընելու համար, որով քեզ ատելի կընես „ քու ժողովրդեանդ, անանկ որ՝ երբոր

„ Ճամփայ կելլաս կըհեռըանաս, ամմէն ըքնալ
„ կուրախանամ ։ Ասոր դէմ ես աղէկ կու-
„ տեմ, աղէկ կըմարսեմ, հանգիստ կըքնա-
„ նամ, կըզբօսնում, և անչափ սիրական եմ
„ եղած իմ ժողովուրդիս՝ որ թէ որ Ճամ-
„ փայ ելլալու ըլլայի՝ պէտք էր գիշերանց
„ ելլալ որ՝ իս թող տային հանգիստ ելլա-
„ լու ։ Ես վար չեմ զարնէր քուկին զանա-
„ զան կարգաւորութիւններդ, հապա ար-
„ տորնօք ընելդ կըմեղադրեմ ։

Բայց յովսէփ կայսրը չէր ուզէր իր կար-գադրութեանց դէմ բան լսել, ուզեց նաբո-լիէն ելլալ քալապրիա գաւառը երթալ, անկից սիջիլիային մէսսինա քաղաքը, որպէս զի աչքովը տեսնայ ինչ վնաս որ ըրեր էր հոն շարժը, բայց թագուհին շատ վարպե-տութիւ բանեցընելով զանազան խօսքեր ա-կանջը լեցընելով խափանել տըւաւ, չու-զեց որ հոն երթայ, չըլլայ որ իր հետաքըր-քիր բնութիւնը հասկընայ ինչ բռնութիւ ինչ անիրաւութիւ կընէին հոն բինեադէլլի զօ-րապետը և իրեն տակի եղողները խեղճ ժողովրդեան վրայ ․ որովհետև ան ըստակը որ թագաւորը խրկերէր ան խեղճերուն օգնութիւ ընելու համար՝ ասոնք կուտէին կողոպտէին, կըրակէն աւելի վնաս կըհա-ցընէին, որոնք աքդան վէզիրը խրկած ըլ-լալով կուզէր որ հարստանան ։

Անանկով յովսէփ չկընալով հոն երթալ՝ գնաց բիզա ու լիվուռնա, հոն տեղվանքը ըրաւ բարկենդանքը, անկէց անցաւ ճէնօ-վա, նօվի, բիաչենցա ․ ետքը բառմայի ու

մօտէնայի վրայէն եկաւ միլան, որպէս զի ինչ փոփոխութիւններ որ կուզէր լօմպարտայի մէջ ընելու 'ի գործ դնէ : Մրդէն առաջուց ամմէն հեղինակութի վերցուցերէր կառավարիչն վրայէն, որ իր եղբայրն էր Ֆերտինանտոս կարօլոս անուն, անտալ աս բանիս վրայ նեղելով իր տնով գացեր էր նիցցա բռօվանս գաւառին մէջը, ու դիս ան դին ժուռ կուգար իր տրտմութիւնը փարատելու համար :

Յովսէփ նաբօլիէն դառնալէն ետեւ հռամ խօսակցութի ըրաւ սրբազան պապին հետ առանձին . երբոր իր երկիրը դարձաւ՝ նարէնոր կարգադրութիւններ ըրաւ, որոնց մէկնալ աս էր որ՝ որչափ պատկերներու վրայ զարդեր կային՝ ամմէնն ալ ան տաճարին մէջը ժողվել տրվավ, որ կրօնքի մնտաւկ կըռվէր :

## Լուիզա շվէտ թագուհիին մահը, կուստավոս թագաւորին ճամբորդութիւնը.

## 1781 — 1784 :

Շվէտի թագուհին լուիզա ուլրիկա՝ որ քոյրն էր Բ. Ֆետերիկոսի պրուշի թագաւորին՝ եւ կին ատօլֆոս Ֆետերիկոսի շվէտի թագաւորին՝ 1781 մեռաւ 60 տարվան. ասիկայ խելացի ու ճարպիկ գործունեայ ըլլալով իր երկանը ատենը ինքը կը կառավարէր շատ բանը : Աս թագուհիս շատ առաջ տարաւ շվէտի մէջ գիտութիւնը ու ա-

բուհստը, բայց երբոր իր տղան Գ. Կուստավոս Թագաւորէն՝ ջնջուեցաւ աս Թագուհիս կառավարութեան մէջ խառնըվիլը, անոր համար կընեղէր. տղան իրեն տըվավ միայն չվէտի Բօմէռանիայէն կառավարութիւնը:

Աս տարի զաւակ մը եղավ կուստավոսի չվէտի Թագաւորէն՝ որ 1783 մեռաւ, եռքը ինքնալ կուստավոս Յիէն իյնալով Ֆինլանտիայի մէջ՝ Թեւը կտորեցաւ, որ Թէպէտ ըռընտցաւ, բայց կատարեալ չէր ըռընտցած, ատեն ատեն խիստ խռովուկ կիմանար, բժիշկները իրեն խորհուրդ տըվին բիզայէն ջերմուկները (իլիճաները) երթալու՝ որ իտալիայէն մէջն է: Համիրց ելլալէն առաջ պզտիկ նաւատորմիղ (տանանմա) մը պատրաստեց Ճերմակ ծովուն նաւահանգստներուն համար, մեծ գումար ըստրկի դրաւ չքիի (ըռախիքի) եկամտուտին վրայ հարկաւոր խարճերը լեցընելու համար 25000 ռիալի չափաւ Թղթե ըստակ հանեց, որ շատ վնաս կուտար ժողովրդեան, կառավարութիւնը իր աղքօքը կարօղութին յանձնեց:

Նսանկով Ճամիրայ ելավ իբրև առանձին մարդ մը՝ Հոխոյի կոմս անուն իրեն առնելով. գերմանիայէն անցնելով եկավ իտալիա, Ֆիօռենցա աղվոր քաղաքը քիչ մը կեցաւ, բիզայէն ջերմուկը մտաւ. 1783 հռոմ ու նապօլի յովսեփ կայսէր հետ տեսնըվեցաւ, յովսէփ Թէպէտ կուստավոսին պէս փառաւորութիւն ու շատ մարդ չունէր հետը, բայց յովսեփ իր առատաձեռնութը.

վեհանձնութիւնը՝ ու մեծութիւնը՝ աւելի պատիւ կառնէր, անչափ որ քաղքի անունով մէյմը վէննայի մէջ խաղ մը շինեց Թատրոնի, որուն խորագիրն էր Միէռտօրօս Խագաւոր Վէնէտիկի Պէյ. լեցուն ծաղրաբանութք. ամմէննալ ըսին որ՝ ասիկայ շվէտի Թագաւորին Ճամփորդութիւնը ծաղր ընելու համար էր: Երբոր սրբազան հայրապետին հետ ու Նաբօլըի Թագաւորին հետ տեսնըւեցաւ, իր նոր սահմանած հագուստը հագած էր շվէտի ձեւով, որ ոմանք կըգովէին, ոմանք վար կըզարնէին, նման է ըսելով ան հագուստին՝ որ կերեւնայ սպանիացոց առասպելին (մասալին) մէջը որ կըսուի ՚Քիխչիօթ (1):

Բայց կուստաւոս ուղղափառութեն դէմ չըլլալով հռոմ կեցած ատենը շատ բարեկամութիւն կապեց Գ. պիոս քահանայապետին հետ, և շատ առատաձեռնութի ըրաւ անոր պաշտօնեայներուն. ամմէնէն աւելի ընծայներ տըւաւ երկու քառտինալներուն որ էին պէռնիս ու պուաշի. իսկ սրբազան

---

(1) Աս բանաստեղծական առասպելը գըլուխ կըսեպվի ամմէն ծաղրածու առասպելներուց. անոր համար ամմէն լեզու թարգմանված է, և մէկին ըսածին պէս կրնայ մարդ իր կեանքին մէջ միշտ կարդալ առանց ձանձրանալու անկէ, և անհնարին է կարդալ առանց ծիծաղելու: Բայց աս աւելի պիտոր իմացվի եւրոպացւոց վրայ, որովհետև ասիացոց ճաշակը տարբեր ըլլալով՝ ան ամմէն բանն որ կըծիծաղցընէ եւրոպացիները՝ չիծիծաղցըներ ասիացիները: Ասոր շինողը կըսվի Չերվանդէս սաավէտրա սպանիացի, որ ծնաւ 1546:

քահանայապետին տրուած ընծաներուն մէջ աւելի հաճոյական եղաւ մէկ մեծ ոսկի մետալ մը՝ որուն վրայ խորհրդաւոր դրուագներ կային որ կը ցըցնէին ուղղափառաց Շուէտի մէջ նոր եկեղեցի ունենալը ու նոր ազատութիւն։ Ասոր հետ մէկ տեղ տրուած կուստաւոս իրեք սնտուկ ոսկի ու արծըթի մետալներ, որ ամէն Շուէտի թագաւորներուն՝ ու Շուէտի երևելի մարդիկներուն պատկերներն էին։

Յունիսին սկիզբները 1784 Փրանսա եկաւ, ուր մնաց ինչվան յուլիս, շատ մեծ հանդէսներ ըրին փարէզին մէջ կուստաւոսին համար, որովհետև հին դաշնակից էր Փրանսային, մէկնալէն եղաւ որ՝ օր մը Փրանսայի թագաւորին աղբարը հրաւիրեց կուստաւոս որսորդութիւն երթալու՝ բայց գիշեր մութ ատեն՝ որ ատեն որ չըկրնար ըլլալու, երբոր տարաւ հասուց զինքը մէկ անտառի մը մէջ, հոն ցորեկվան պէս լոյս տեսաւ, վասն զի ամէն ծառերուն վրայ երկերկու մարդ էր հանած՝ ձեռուըննին կերոններ բռնած. անանկով աղէկ որսորդութիւն ըրին, և աղվոր տեսիլք մըն ալ տեսան, անչափ կանանչները բիւրաւոր կերոններով լուսաւորված տեսնալով, բայց կուստաւոսին խելքը միտքը՝ տեսիլքներ զուարճութիւններ տեսնալու ատենն ալ իր շահին համար քան հոգալ էր։ Առաջ աս ըրաւ որ՝ 1772 Փրանսան խօսք տրուած էր ըստակ տալու Շուէտին՝ իբր կարգէ դուրս օգնութիւն, աս օգնութիւնը 1779էն վեր կտրեր էր վեր-

ժէն կոմը չէր խոսար ըսելով թէ՝ Փրանսը
զի Թագաւորը ժղ. լուիզ շատ խարձերու
տակ մտած է պատերազմի համար. կուս-
տավոս անչափ եռանդ ընկաւ որ՝ ան առնե-
լիքին մեծ մասը առաւ, որ էր մէկ միլիոն
ու կէս գուռինեան լիրէ։ Երկրորդ՝ հաս-
տատել տալով ան դաշնադրութիւնը որ նա-
ւարկութեան համար եղած էր Փրանսայի
հետ 1741. անով Փրանսացը շվէտին տալով.
Մէ բարդուղիմէոս կղզին, որ 800 հոգիի
չափ բնակիչ ունի, շատ բամբակ կըբերէ,
բայց մէկ դիրք մը ունի՝ որ արգելված
ապրանքներով հեշտ (խօլայ) առուտուր
կընայ ընել սպանիացոց ամերիկային հետ,
և ամենէն անդիլլեան կղզիներուն հետ, մօ-
տիկ ըլլալով կուատաղուբային։ Շվէտնալ
փոխարէն Փրանսզին ազատութիւ տալով
որ կօէդդէպօրկ կամ կօդդէնպուրկ նաւա-
հանգիստը ազատ վաճառատեղի մը ըլլայ
Փրանսզներուն համար, ուր տեղ ազատա-
բար կարենան Փրանսզները առուտուր ը-
նել իրենց ձեռագործներով փոխանակ վրա-
մարին՝ ուր տեղ ինչվան հիմա կընէին, բայց
պայման դնելով որ՝ երբոր շվէտը դադրե-
ցընէ աս առուտուրը, Փրանսզնալ ետ առ-
նէ վերոյիշեալ կղզին։

Երբոր կուստավոս դարձաւ իր Թախտը
բոռօքօլմ, քաղքըցիք իր դառնալուն յի-
շատակ՝ մէկ քարէ կամուրջ մը շինեցին
ուիդդէրհօլմ ջուրին վրայ 1784. օգոստ։
3. առջի կամուրջին տեղը՝ որ փայտաշէն
էր. փոխանակ անօգուտ բանէրով յիշա-

տակը կեցընելու. Ինչպէս որ ուրիշ տեղեր կընեն կամար կամ արձան կանգնելով, ըն-դօքօլմցիք խելացի փրթելով անանկ բանի մը վրայ խարձեցին, որ թէ կուտավոլոնին պատիւ յիշատակի եղավ, և թէ ամէնն քաղքըրցոց օգտակար պէտք ըլլալու բան։ Կուտավոլո իր երկիրը սկսաւ ամրցընել, իր ծովային ուժը շատցընել. մէկ բաժանոր-դութի (քօմբանիա) մը սահմանեց Ս.բոր-ծոգան հինտիստանէ անունով որ է ամերիկա. ամէնէն շվէտները հրաւիրեց իրեն պէս բա-ժանորդ (ուլթախ) ըլլալու։

Այս որովհետև ազատութե տըվերէր ուղղա-փառներուն՝ 1784 զատկին օրը ըսդօքօլմի մէջ հանդիսով ուղղափառաց եկեղեցի օծել տըվավ։

Տանիմարքային թագաւորին որդն հառաւելաբունիւնը ձեռքը կառնէ, հերըա վրայ բանկերով մեծ հարցը.

1784։

Ինչպէս որ վերը պատմեցինք 1772 քրիս-դիանոս տանիմարքային թագաւորը տկա-րանալուն ըլլալով կառավարութիւնը օրքեւա-րի յուլիա մարիամ թագուհին սկսաւ ընել իրեն ուզած մարդիկներով, աս տարի 1784 ապրիլի 14 տանիմարքայի թագաւորին տղան որ Ֆետերիկոս կըսուէր՝ մեծնալու տարիքը հասած ըլլալով ձամբով մը պա-տրաստութիւն տեսաւ որ իրեն ձեռքը ձգէ

կառավարութիւնը, բայց անանկ դաղտուկ խելացի ճամփով մը հոգաց, որ դուրսէն մարդ չիմացաւ։ Անոր իշխանները ժողվըվերէին վերոգրեալ օրը՝ յայտնեց որ տարիքս լեցված ըլլալով, Թագաւորնալ անկար ըլլալով, ամմէնէն աւելի ինծի կիյնայ կառավարութն մէջ օգնական ըլլալ Թագաւորին, անոր համար Թուղթ հանեց Թագաւորին ստորագրել տըվավ, որ ասկէց ետքը որչափ Թագաւորական հրաման ելլայ՝ Փետերիքոսին իր տղին ձեռքովը ստորագրըվին։

Թագաւորին խորթ եղբայրը՝ որ նոյնպէս Փետերիքոս կըսվէր, շատ ջանաց որ՝ Թագաւորը աս Թուղթիս չստորագրէ, բայց ինքնալ՝ իրեն մայրնալ որ էր վերոյիշեալ Թագուհին՝ Փրիետրիքսու բերդը հեռացուցին որ հօլըդէյնին մէջն է։ Թագաւորը Թուղթին ստորագրեց, տղան Փետերիքոս ըսվեցաւ գործակից հօրը կառավարութեն մէջ. ասանկով Թագաւորնալ տղանալ խալըսեցան որբեվարի Թագուհին ենթարկութենէ՝ որ 14 տարի քշեց։ Նոյնչափ շնորհ ըրին որ՝ վերոգրեալ բերդը ամմէն իր երկիրներով վերոգրեալ Թագուհին պարգեւեցին, թէ որ ուզէ՝ ծախէ, թէ որ ուզէ՝ ուրիշին պարգեւէ, ասանկալ իր տղին Փետերիքոսինալ ուրիշ մեծ երկիր տըվին։ Ասկից ետքը պետոնստորֆ կոմսը խորհուրդի մէջ մտաւ ու վէզիր եղավ, ուրիշ պաշտօնատարներնալ փոխեցին, անոնց մէյ մէկ Թոշակ կապեցին։ Ասանկով

երբոր Ֆետերիքոս տղան սկսաւ կառավարել, շատ աղէկ կարգաւորութիւներ ըրաւ զօրաց վրայ, ու եկամտից վրայ։

Տանիմառքայի տէրութեան տակ մէկ կղզի մը կայ հիւսիսային ովկիանոսի մէջ Իսլանտա անունով, անոր մէջը մէկ լեռ մը կայ Հէքլա կըսուի, որ միշտ կերի կրակ կըհանէ, բայց ատեն ատեն խիստ կըբռընկի, հիմա 1783 եղաւ որ յունիսի մէջ խիստ բռնկեցաւ, անկից շատ եղաւ, որ ատեն ատեն երերցընելով քշեց մինչվան 1784, ապրիլ ամիսը։ Ասանկ բռընկած ատենը՝ հող մը կըվազցընէ իրմէ կրակ կտրած հալած՝ որ կրակէ ջուր մը կերևնայ. շատ օրեր ամիսներ անցնելէն ետև հազիւ կըպաղի. անոր պաղածը քարի պէս կամ զիֆթի պէս կը կարծրընայ, որուն լաւա կըսեն. հիմա աս Հէքլա լեռը անչափ շատ լավա վազցուց իրմէ, որ գետ մը կերևնար, 10 մղոն երկանքը կըքշէր, 2 մղոն լանքը. տաք տաք մոխիրներ երկինքը կըցաթկեցընէր, աս դիս ան դին կըցրցընքնէր։ Աս կղզիին մէջը քաղաք չիկայ, 30 գեղ կայ, գրեթէ ամէննալ ավըրվեցան, ասոր ետևէն սով (խըթլըխ) եղավ, բայց Ֆետերիքոս թագաւորին տղան շատ աղէկ հոգաց անոնց կարօտութիը։

## Լոնտոնին ու Փէքինկին մէջ տարբերութիւնը.

1784:

Ոչ տարաձայնութիւնը չիպատմած որ ապրիլը մէջ սկսաւ, աղէկ իմանալու համար հին տեղեկութիւնները գիտնալու է որ՝ երբոր ստորին նահանգներուն ամմէն մէ գաւառները մէկ Թագաւորի տակ էին, ինչպէս որ եղերեր աղէկ փիլիպպոսէն սկսեալ, որ պուռկօյնաի դուքսն էր, ինչվան Ժ. փիլիպպոս՝ որ սպանիայի Թագաւորն էր, օլանտան (կամ Ֆիլէմէնկը) Ֆռիզլիան, կէլտրիան, և ուրիշ գաւառներ՝ մէկ աւազոտ անբեր երկիր մընէր. աշխըրհիս մեծագոյն հարստութիւնը կըդառնար կուգար Ֆլանտրա ու պրապանդ, ձեռագործներին շատ ըլլալուն համար մանաւանդ բըրդէ ձեռագործները: Անվերսա քաղաքը 1430էն ինչվան 1584, եղաւ եւրոպայի մէջ պինտ երևելի շահաստան քաղաքըներէն մէկը. մէջը 300 հազարէն աւելի մարդ կար, մեծ մասը խիստ հարուստ. 2500 նաւէ աւելի նաւեր կըգտնըվէին իր ընդարձակ ու ապահով նաւահանգստին մէջ: Երբոր 1579 միացեալ գաւառները սպանիային տակէն ելան, չէլտային հիւսիսային գետեզերքին տէր եղան, հոն բերդեր շինեցին որ մաքս (կէօմրիւք) առնեն, քիչ քիչ կտրեցին նաւարկութիւնը, անվերսային ամմէն վաճառականութիւնը գոցեցին՝ որ առջինին շուքը

չինեաց․ ասանկ ընելով սպանիայէն պաշտօնատիրաց խոստութիւննալ վրայ գալով հարիւր տարուան մէջ անվերսան դարձաւ մէկ անապատ մը եղաւ: Երբոր Զ. կարոլոս տէր եղաւ, որ Նեմցէի կայսր էր և միանգամայն սպանիայի Թագաւոր, աս բանս տեսնալով խիստ կըցաւէր, անոր համար խորհրդով անուանի Եւգինէոսի սավօյայի իշխանին՝ 1723 մէկ բաժանորդութի (քօմբանիա) մը սահմանեց վաճառականութի ընելու համար ամերիկայի ու հինտիստանի հետ, բայց ինկլիզ ու Ֆիլէմէնկ վաճառականները շատ նախանձեցան աս բանիս վրայ, շատ աղաղակ վերուցին ինկլիզի Ֆրանսզի Թագաւորին առջին, անոր համար հարկ եղաւ, տարիէ մը ետև կարոլոս վերջացուց աս բաժանորդութիը:

Գուանք իրենց բերդերուն վրայ, ամմէն եւրոպային գաւառներէն աւելի բերդեր ունէին ստորին նահանգներուն գաւառները՝ որ զօրաւոր կերևնային, բայց փորձը 1740ին եղած պատերազմին մէջ ցըցուց որ՝ ութը օրէն աւելի չիկրցան դէմ դնել: Ոստէնտա անուն բերդերնին ժէ դարուն սկիզբը ըսբինօլա զօրապետին ձեռքը ընկաւ երկու տարի պաշարմանէն ետև. ասանկալ անվէրսա բերդը տասվիրեք ամիս պաշարմանէն ետև՝ աղեքսանդր Ֆարնեզեան զօրապետին ձեռքը ընկաւ:

Երբոր 1713 ուտրէխ եղած դաշնադրութեր կեօրէ հարկ եղաւ. Ֆիլէմէնկին վերյիշեալ գաւառները նեմցէին յանձնել,

ուզեց ամրցընել Ֆրանսզին դէմ, որ 1672 վերջին նեղութեան մէջ ձգերէր զինքը, անոր համար մէջ տեղի եղած քաղաքըները ամուր բերդեր չինեց, ասոնք են՝ Նամուր, Դուռնայ, Մէնին, Մօնս, Փուռնէս, Կառնէգօն, Իբրէս, Տէնտերմօնտ, Անվէռսա. նեմցեխնալ պարտք դրաւ որ երկու միլիոն ու կէս դուռուխնեան լիրէ վճարէ, որպէս զի անոնց պահապան զօրքերուն ապրուստ ըլլայ։ Բայց Ֆիլէմէնկները որովհետեւ խիստ կծծի են՝ քիչ մը ատենէն ետեւ մոռցան աղէկ պահպանութիւն ընելու, Թէպէտեւ վերոգրեալ գումարը լման կըպահանջէին. ասանկ անզօր մնալով, 1740ին եղած պատերազմին մէջ՝ Ֆրանսզը (որուն զօրագլուխը սաքսոնիայի մառէշալն էր,) ան ամէն բերդերը առաւ, եւքը 1748 աքվիսկռանա եղած հաշտութիւնը ետ տըւաւ, բայց ամէնը քակված ավըրշտըկված։

Աս բաներս չինայելով 1751 ուզեցին Ֆիլէմէնկները՝ որ կայսրուհին Մարիամ Թերեզինեան հին դաշնադրութիւններին նորոգէ ինկիլիզի պաշտպանութիւնը՝ որ երաշխաւոր (քէֆիլ) եղաւ անոնք նորոգելու հաշտեցընելու, Թէպէտ գործքով ոչ երբէք եղաւ։ Յովսէփ կայսրը տեսնալով որ Ֆիլէմէնկը կըպակսի իր ըրած դաշնադրութէն, ինքնալ ուզեց խալըսելու աս ծանրուէն երկու միլիոն ու կէս վճարելու. իր միտքը հասկըցուց Ֆիլէմէնկին ըսելով որ Թող ետ կանչեն ան բերդերէն իրենց զօրքը. անոնք քիչ մը դէմ կենալէն ետեւ հանդարտու-

Թէ ետ քաշել տըվլին իրենց զօրքը ու Թօ-փերը ։

Յովսէփ կայսրը անձամբ գնաց տեսաւալ որ՝ Ֆիանտրային մէջը լեցուն էին կրօնաւորք, քահանայք, ու մարապետք, վաճառականութիւր բոլորովին ընկերէր, ուզեց որ վերոյիշեալ Տ. կարոլասին իր մօրենական պապուն մտածածը առաջ տանի՝ չելտա գետին նաւարկութիւր բանալով. անոր համար 14 բան պահանջեց ։ Մէյմը՝ որ իր նաւերը ազատ նաւարկեն շելտա գետին վրայ, երթան գան անվեռաս, Ֆիլէմէնկները չիկրնան մէկ տուրք մը ուզել անոնցմէ, չիկրնան նոյնպէս նեմցեր նաւերու մէջ մտնալ նայիլ քննել իրենց ապրանքները, թէ որ ընելու ըլլան՝ մեծ յանցանք մը պիտոր սեպվի կայսեր պատուոյն դէմ. հրամեց վերցընելու ան նաւը՝ որ պահպանուե համար դրերէին շելտա գետին բերանը ։ Երկրորդ՝ կըպահանջէր որ սահմանները որոշվի 1664 դաշնադրութենը կեօրէ, անով շատ քաղքըներ որ Ֆիլէմէնկին ձեռքն էին, նեմցէին ձեռքը պիտոր անցնէին, մանաւանդ մաստրիխ քաղաքը ու բերդը՝ որ օլանտային կամ Ֆիլէմէնկին բալլիքն էր ։ Երրորդ՝ նեմցէն շատ տարվընէ վեր Ֆիլէմէնկներուն համար ծանր խարճերու տակ մտած ըլլալով, ան խարճերուն համար շատ միլիոն ըստակ կըպահանջէր, թէ որ աս խարճերս վճարելու կըլլան, ան ատենը ես խնքիրմէս կըսեմ կըսէր՝ արդարութիւր. ուրիշ ասոր նման բաներ կըպահանջէր ։

Աս վճարելու ձանը՝ իրենց եկամտին քիչնալը՝ և չելլու գետին ազատ նաւարկութիւը՝ որով ամսդրտամին առուտուրը պիտոր խափանվէր՝ անվէրպա պիտոր փոխադրըլվէր, աս ամմէն բանը խիստ ծանր եկավ Փիլեմէնկներուն ականջին ։ Ագահ կծծի ըլլալով չուզեցին ըստակ խարձել. առաջարկեցին որ՝ աս բանիս վրայ խօրաթեն, որպէս զի ատեն ունենան անվերջանալի քննութիւն մը ընելով յաջնեցընել կայսրը . չիմաածեցին որ յավնէփ կայսեր բնութիւը չընդունիր մէկ բանը երկընցընել, այլ ապարածին պէս՝ կուզէր որ գործքով կատարվի ։ Անոր համար կայսեր զօրքը սկսան բռնութեմբ պարծ դնել ինչ որ վեստֆալիա եղած դաշնադրութենէ ետև Փիլեմէնկին ու սպանիային մէջ մէկ կռուտ ու անստոյգ բան մընէր եղած . գացին ասոնք լիլլօ բերդը քակեցին . մասդրիկը քաղքին քով շըղթայ (զինձիլ) կապված կար ձամփու վրայ մաքս առնելու համար, անիկայ կոտրեցին ; կայսեր անունով հրամեցին որ՝ մէկ անցվորէ մը մէկ տուրք մը չիպահանջեն չառնեն, թէ չէ՝ մեծ պատիժ սպառնացան, գունդ մընալ զօրաց հոն մօտիկ կեցուցին ։

Փիլեմէնկները տեսքը պատասխանեցին որ՝ 1664ին եղած դաշնադրութիւը խափանված ոչինչ եղած էր ան դաշնադրութենով որ պառաւիէռա և ուրիշ տեղվանք ետևէ ետև եղան . պարտքին տեղը ըսին մախաուանդ մենք շատ միլիոններ առնելիք ունինք աւս-

դըրիոյ անեէն կամ Նեմցեէն․ ան պատրաստ էին մէկ մասը արդէն ընդունեցերէր իր մայրը մարիամ Թերեզիան ։

## Լեհաստան — Փիլէմէնկեան Ազը ծեծ ուտելը — հալածուելը․

1785 ։

Յովսէփ կայսրը միտքը դըրեր էր վերջապէս Շէլտա գետին նաւարկութիւնը բանալու, որով մէնծ շահ կըլլար առուտուրի իր երկիրներուն համար՝ որ սորին նահանգներուն մէջն էին, անով կըվերջանային ան կռիւները՝ որ Վ․ կարոլոս կայսեր ատենը անչափ նեղութիւն տըվերէին, անոր համար առաջարկեց Փիլէմէնկներուն, որ ամէն բանէ կըհրաժարիմ, չեմ պահանջեր, միայն թէ Շէլտա գետին վրայի նաւարկութիւնը ազատ ըլլայ, առանց տուրք մը տալու՝ գանէ Նեմցեի ու Փիլէմէնկի ժողովուրդին համար ։ Նեմցեի դեսպանը շատ աշխատեցաւ ճար մը գտնալու՝ բայց բան մը չիկրցաւ ընելու, քանի փնտըց՝ բանը աւրըցաւ, մէկ վիճմունքը մէկ ուրիշ վիճմունք մը բացաւ, մէկը չէր ուզեր աս առաջարկութիւնը ընդունիլ, մանաւանդ որ չէին պարկեր հակառակութիւն ցանոնէր ։ Նաեւ Թէպէտ Փրանսան խորհուրդ կուտար Փիլէմէնկներուն խաղաղութիւն ընդունել, բայց Փիլէմէնկները մտիկ չընելով իրենց միացած բերդերուն ապաստանեցին, ինչ նաեւ որ ծովէն մինայ Շէլտա գետէն

վեր ելլայ, առանց վճարելու սովորական
տուրքը, ան նաւը թօփով զարնեն։ Կայսեր
վեզիրնալ քանիից՝ խորհուրդ կուտար յով-
սէփ կայսեր՝ որ աս բանիս ետեւէն շատ չիյ-
նայ, բայց յովսէփ իր մտքինը առաջ տա-
նելու համար՝ հրամեց իր մէկ նաւուն որ
անվերսայէն ծովը անցնի։ Ասանկով Փիլէ-
մէնկները հոկտ. 8։ կրակ ըրին մէկ նեմցեի
մը նաւուն վրայ որ անցնիլ ուզեց, բռնեցին
ան նաւը Փլէսսինկ տեղը տարին. ուրիշ
նաւու մըն ալ ասանկ ըրին՝ որ օսդէնտայէն
անվերսա պիտոր երթար շէլտա գետին
վրայէն։

Աս դիպուածս պատճառ եղաւ որ՝ ինչ խա-
սակցութի կընէին պրուսսել քաղքին մէջը
խաղաղութեան համար՝ ոչինչ եղաւ կորըվե-
ցաւ, ծեծի պատրաստել տըվաւ. շուտ մը
նեմցէն այսէն ետ կանչեց իր դեսպանը
(էլչին), զօրք խրկեց որ վաղէն պրապանդ,
Փիանտրա, ու լիմպուրկ. թղթեր տըվաւ
ամէնուն մանաւանդ ինկիլիզներուն՝ որ
ծովապատակութի (խուրսանտուի) ընեն.
Փիլէմէնկին վաճառական նաւերը բռնեն,
բայց Փիլէմէնկները անչափ յամառեալ
էին՝ որ նոյեմբ. մէջ կապված ջուրերը թա-
ղուցին թէ իրենց երկիրներէն՝ և թէ նեմ-
ցէի տակի եղած երկիրներէն, շատ տեղ
ջուրի տակ կոխել տըվին, իրենց յոյսնալ
Փրանսզին վրայ դնելով անոնցմէ օգնութի
խնդրեցին։ Բայց Փրանսայի թագուհին իր
եղբօրը յովսէփ կայսեր տէր կենալով վար-
պետութենով թագաւորին միտքը կըդար-

Ձրնէր, գաղտուկ խօրաթանկերովալ վէր-ժէն կոմնէն խորհուրդը պարապ հանել կու-տար, անոր համար Ֆրանսայի Թագաւորը՝ Ֆիլէմէնկի դեսպաննին որ օգնութիւն կուզէր՝ պատասխանեց: Ես չեմ կրնար կայսեր հետ հաշտեցընել՝ բայց պատրաստ անանկ բան մը առաջար-կել՝ որ հետս ըլլայ հաշտեցընելու:

Աս ատեն Ֆիլէմէնկները դեսպան խրկեցին նաև Էնկիլիզին ու պրուշին, բայց երկուքն ալ պաղ կեցան. Էնկիլիզը պաղ կեցաւ՝ վասն զի կախորժէր Ֆիլէմէնկներուն ա-սանկ նուաղիլը տեսնալ՝ իր վրէժը առնելու համար, որովհետև անցած պատերազմին մէջ իր թշնամիներուն հետ մէկ եղաւ Ֆի-լէմէնկը: Իսկ պրուշին Թագաւորը չէ թէ միայն պաղ կեցաւ, այլև շատ յանդիմա-նելով պատասխանեց, որովհետև Ֆիլէմէն-կին մէնծը օրանժեան շդատ հալդէրը պրուշին փեսան էր, որուն իշխանութիւնը խիստ ցածցուցերէին Ֆիլէմէնկները, մէկ ալ՝ինչ մը ըրերէին, թէ որ ծերացած չըլլար պրուշին Թագաւորը, ան ատենը ուրիշ համփով պիտոր խօսէր անոնց հետը:

Ասանկով աս երկու տէրութէ յուսահատ-վելով Ֆիլէմէնկները օգնութիւն գտնալու համար՝ իրենց ըստրկով զօրք բռնել սկսան ըզվիցցերիէն ու գերմանիայի պզտիկ իշ-խաններէն, բայց ասոնքալ խիստ կամաց շարժելնուն համար՝ Ֆիլէմէնկին ամմէն ժողովուրդը սկսան զինուոր գրվիլ մանա-ւանդ գեղացիները, որոնք չէին կրնար կայսեր կրթեալ զօրացը դէմ դնել: Եր-

բոր սաանկ մօտիկ էր ծեծ բացվելու մօտա ու շէլտա գետին վրայ, Ֆրանսային Թագաւորը յորդորեց մոսկովը՝ որ իրեն հետ մէկ տեղ միջնորդ ըլլայ հաշտեցընելու. մոսկովը ընդունեց իր միջնորդ ըլլալը, բայց թէ որ չհաշտուվին ըսաւ՝ պէտք է որ ես ալ յովսէփ կայսեր օգնութիւն տամ իմ դաշնակիցս ըլլալուն համար. աս ըսելով շուտ մը պատրաստել տըվաւ 16 նաւ երկու խափախը, Թող տուր ուրիշ պզտիկ նաւերը, մէջնալ լեցուն զօրք ցամաքը հանելու համար Ֆիլէմէնկին դէմ։ Սաանկ շարժեցաւ մոսկովը՝ հագած ըլլալով Ֆիլէմէնկին վըրայ, որ քանի մը տարի առաջ իր խօսքը ոտքի տակ էր առեր երբոր ինքը միջնորդութին ըրաւ ինկիլիզին հետ հաշտեցընելու, անոր համար միշտ յովսէփ կայսեր դին կըտաշէր։

Ֆիլէմէնկ ազգնալ անանկ մէկ սահմանադրութի մը ունի՝ որ պատճառ կըլլայ իրեն խորհուրդը իրեն մտածումը ուշացընելու, ինչու որ շատվոր մէկ տեղ դաշնակից ըլլալով անանկ կամաց կամաց կըշարժին, որ միջնորդ եղօղները կըյոգնեցընեն կըձանձրացընեն։ Ինչ մեծ բան որ ըլլայ՝ օխտը գաւառներուն որոշմանէ կըկախվի, ասոնցմէ մէկ քանին ծովուն դին են, մէկ քանին ցամաքին դին. երբոր կընստին մէկ տեղ խորհրդակցելու՝ չիկրնար ըլլալ որ՝ մէջերնին մէկ տարաձայնութի մը չըլլայ, տարբեր ըլլալով իրենց շահը՝ իրենց միտքը՝ ծովուն դիացիները տարբեր շահ ու մտածում ու-

նին, ցամաքին գիւղացիները տարբեր. անոր համար Փրանսացնալ մերկածնալ ձանձրացեր էին, կուզէին մէջերնէն ելլալ:

Իսկ Յովսէփ կայսրը բարձր ձանով կըպընդէր ըսելով՝ ինչվան որ Փիլէմէնկը երկու մարդ չխորկէ ինծի վենիսա Թողուլթի ուզելու համար ինչ որ ըրին իմ նաւերուս չէլտա գետին վրայ՝ բանի մը մտիկ չեմ ըներ. Թող գան Թողուլթի ուզէն՝ ետքը իմ բերնէս լսեն ինչ բանով որ կրնան հաշտըվիլ: Աս բանս Թէպէտ խիստ ծանր էր Փիլէմէնկներուն՝ բայց խոնարհելով յանձն առին. Յովսէփ կայսրը իր Թախտը նստած, քովը ամմէն մէնծերը շարված, ամմէն դեսպանները հոն կեցած, Փիլէմէնկին երկու մէնծերը եկան Թողութի խնդրեցին կայսրէն: Աս լմնալէն ետև երկու բան կար հարցընելու, մէյմը՝ մաստրիկք քաղաքը որ Փիլէմէնկը կուզէր իրեն պահելու՝ տեղը ինչ պիտոր հատուցանէր. մէյմընալ՝ որ չէլտա գետին վրայ ազատ նաւարկութիւն ինչվան ուր պիտոր հանէր նեմցէի ժողովըրդեան համար:

Աս բաներուս վրայ շատ հակաճառութիւն շատ վիճմունք ըլլալէն ետև՝ մոսկովին ու Փրանսացին մարդիկները ոտք կոխելով վերջապէս 1785 նոյեմբ. 8 Ֆօնդէնէպլօ քաղաքը կամ ըստ այլոց փարէզին քով վէրսայլա պալատին մէջը բարեկամութեան մէկ դաշնադրութիւն մը ստորագրեցին 23 Թէութիւններու վրայ, անկէց դուրսալ ուրիշ իրեք բան սահմանեցին: Մէյմը՝ որ կայսրը տեր

ըլլայ չէլտա գետին վրայ սաֆդինկենէն ինչվան անվէռսա . իսկ Ֆիլէմէնկները անվէռսայէն ինչվան ծովը . բայց ուրիշ դրսեցոց ինչպէս առաջ՝ ամենևին արգելվի՝ որ չիկրնան առուտուր ընել ան գետին վրայ ։ Երկրորդ՝ Ֆիլէմէնկները երկու նոր բերդերը որ շիներէին նոյն գետին վրայ ազատ նաւարկութիւնը արգելելու համար՝ քակեն , և երկու ուրիշ պզտիկ բերդեր տան նեմցերին . նեմցենալ մաստրիխ քաղաքը ուզելէն ետ կենայ ։ Երրորդ՝ ան փլաները որ ջուրերուն կոխելովը եղան՝ և ուրիշ նեմցերին պահանջմունքներուն հատուցում ընելու համար՝ Ֆիլէմէնկը պարտաւորի տալու նեմցերին 9 միլիոն ու կես իրենց Ֆիօրինով ։ Ասոնցմէ զատ՝ շատ տեղեր՝ իշխանութիւներ՝ նաև տալհեմ քաղաքը տրվին, մեկմեկու հետ փոխեցին ։

Ֆիլէմէնկը որ կըսվի նաև Պադավեան հասարակապետութի՝ թէպէտ դրսըվանց խաղաղութիւը ձեռք բերաւ , բայց ներսըվանց ան օրէն ետև իր խաղաղութիւը կորսընցուց , իր կործանման թշուառութե հիմը (թեմէլը) դրաւ ։ Իսկ յովսեփ կայսեր համար կըսեն , թէ որ անիկայ ժդ. լուիզին Ֆրանսզի թագաւորին պէս ըներ՝ որ ձէնավային դուքսը վեց երևելի ատենակալներով իր ոտքը բերել տըվավ, ան ատենը աւելի շահաւոր կըլլար , իր մտքի դրածին կըհասներ ։ Բայց ան ատեննալ յովսեփ կայսեր վրայ ուրիշ հոգեր ըլլալովը կրնայեր որ բանը շուտով լմնցընէ . մէյմը որ դաւան-

տիլվանիայի մէջ մէկ նոր ընդհանուր ապըս-տամբութիւն մը ելերէր, ինչու որ՝ յովսէփ կայսրը այն տեղացի գեղացիները առաջ խալսցուցերէր շատ ծանրութիւններէ նեղու-թիւններէ՝ որ իրենց տիրողները կընէին. այն գեղացիք աս չափս հերիք չսեպելով, իրենց պարտաւորութիւնը ամենեւին չիճանչ-նալով, միաբանեցան իրենց տիրողացը վը-րայ վազեցին, սպաննելով թալլելով աւա-զակութիւն սկսան ընել. նեմցէն անոնց վրայ խրկեց Փապրիս մառեշալը շատ զօրքով, որ ջարդելով փախուց ցրուեց անոնք: Մէկ-մընալ որ՝ տաճիկնալ այն ատենը սահման-ները որոշելու համար նոր խօսք բացերէր նեմցէին հետ՝ ինչպէս որ սահմանված էին առջի դաշնադրութիւններու մէջ, կըվախցը-վէր որ մէկ ծեծ մը բանալու պատճառ չըլ-լայ: Երրորդ՝ որ պրուշին հետ նոր վէճ ելերէր որ վարը պատմենք:

Աս դաշնադրութիւնը խօսք կապեցին նաեւ Փրանսզը Փիլէմէնկի հետ, իրարու երկիր-ները պաշտպանելու, ծեծի ատենալ իրա-րու օգնելու:

### ԻՆԿԻԼԻԶԻՆ ԸՐԱԾՆԵՐԸ ԻՆԿԻԼՏԷՐԱՅԻ ՈՒ ՀՆԴԿԱ-ՍՏԱՆԻ ՄԷՋ.

### 1782—1786:

Ամերիկայի կռուին համար լօրտ նօրթը ինկիլիզի տէրութենէ աչքէն ընկաւ. այն ա-տենը սրտանց հաշտութիւն ուզելով աղէկ

ստիպեցին կառավարութեան պաշտօնեները փա-
խել, բայց հաշտութիւնը Ինկիլիզի աչքին
խիստ անհաճոյ ըլլալով՝ սկսան նախատել
քամահրել պաշտօնատէրները. անոր հա-
մար 1782 հարկ եղաւ ամենքն ալ փոխեցին.
Թագաւորը 1783 իր առջի վէզիրը ըրաւ
անուանի Պիդդը, ասիկայ թէպէտ 26 տար-
կան էր, բայց իրեն քանքարը՝ ազգասիրու-
թիւնը՝ ճարտասանութիւնը՝ շատ վեր կանգնեցներ
քան իրեն հօրը՝ որ Չաթամի կոմս կըսուէր.
Պառլամէնդին վարի մարդիկները՝ որ վա-
րի խուց կամ վարի դաս կըսուի՝ շատ կռիւ-
հանեց ատոր ընտրութեանը վրայ 1784. 1785.
ինչպէս սովորական օգնութիւնը կարեց ցըրու-
վալ, որով մէկ ընդհանուր տրտունջ մը
ընկաւ ազգին մէջ, բայց պառլամէնդին վե-
րի խուցը կամ վերի դասը ու ազգը՝ Պիդ-
դին ընտրութեանը պաշտպան կեցան. Թագա-
ւորն ալ 1784 ան վարի դասը փոխեց, նոր
պառլամէնդ դրաւ, որ ամմէն բանը կար-
գաւորեց.

Իռլանտացոց սիրտը վաստըկելու համար 1783 նոր կարգ մը ասպետութեան դրին Սրբոյն Պատրիկիոսի անունով, բայց Իռլանտացիք նոր նոր պատրուակով (մահանայով) խռովութիւն կըհանէին, որոնք ամմէնը զսպեցին իմաստուն կառավարութեամբ. Իսկ 1785 դաշինք դրին տասը թէութիւնք, շտկեցին ինչ որ առուտուրի վրայօք պէտք էր ըլլալու Ինկիլդեռռայի՝ Սկովտիայի՝ ու Իռլանտիայի Թագաւորութեանցը մէջ, տուրքերն ալ կանոնաւորելով հաստատեցին.

Հինտոստան մալապարին ծովեզերքը ա-
նուանի Հէյտէր ալի խան կար մայսուրին
Թագաւորը՝ որ իրեն քաջութիւնը խելքովը՝
19 Թագաւորութիւն իր տակը առած էր,
շատալ ծեծկըռվերէր ինկիլիզին դէմ Ֆրան-
սըզին հետ մէկ ըլլալով: Ասիկայ 1782 մե-
ռաւ, իր տեղը Դիբբու սահիպը իր տղան
նստաւ 1783. ասալ հօրը պէս սրտոտ էր՝
բայց անոր պէս ոչ խելք ունէր, ոչ գիտու-
թիւն արուեստ. անոր համար ասոր օրը
ինկիլիզները շուտ մը ձեռք ձգեցին առին,
ինչ որ հօրը ատենը կորսնցուցերէին, մա-
րաթաներուն հետալ՝ որ զօրաւոր ու պա-
տերազմասէր ժողովուրդ են Հինտի մէջ,
խաղաղութ̃ի ընելով աւելի յաջողութ̃ի գտան
Հինտոստանի մէջ առաջ երթալու:
Բայց ինկիլիզ ազգին պարտքը վերջի պա-
տերազմէն ետև ինչվան 240 միլիոն կընէ (1)
հասաւ, իսկ ինկիլիզին տարեկան եկամու-
տը 10 միլիոն կընէ կըհանէր. ամերի-
կային ալ ասանկ ապստամբիլը չէր Թողուր
որ ծովու ցամաքի վրայի զօրքը քիչցընէ,
ըստ որում ժգ. նահանգներուն ապստամ-
բիլը կընար ուրիշներունալ չար օրինակ
տալ, ոտք հանել քանատացիները՝ և ու-
րիշ երկիրները, մանաւանդ որ դըրած տուրք

(1) Որ կընէ 480 միլիոն եալտըզ. մէկ եալտըզը 16 ղուռուշ գնելով, կընէ 7680 միլիոն ղուռուշ. և ո-րովհետև մէկ միլիոն ղուռուշը երկու հազար քեսէ կընէ, 7680 միլիոն ղուռուշը կընէ 15360 անգամ հազար քեսէ.

քերնին խիստ ծանր էր, որուն համար մեծ բըլբըլկոց կըլլար ժողովուրդին մէջ. բայց բիդդին խելքը անանկ խելք մընէր որ՝ ժողովուրդին խռովութիւնալ զապեց, պարտաքին համարալ ճարը գտաւ, մէկ նստուկմընալ սահմանեց ըստակ ժողվելու պահելու համար ։

Միայն թէ իռլանտային մէջը չէր պակսեր խռովութիւնը. 1786, Օքօնօռ անունով մէկը ելաւ, իրեն համար կըսէր որ իռլանտայի թագաւորներուն ցեղէն եմ իջած, ատոր ետեւէն շատ մարդ գացին, ամմէն իռլանտան տակնուվրայ ըրին, որոնք հազիւ կըրցան զապել, Օքօնօռը փախչելով խալըսեցաւ ։ Ասանկ պատժեցին ցրուեցին ուրիշ բազմութիւնալ մէկ տեղ միացած, որոնք թագաւորի պէս սկսեր էին հրամմել, թըղթեր հանել ։ Ուրիշ մէկ դիպուած մընալ եղաւ աւելի զարմանալի, պէրպէրի մը աղջիկ Մառկառիտա Նիքօլսօն անուանով խենթեցաւ, աս խենթը միտքը դրաւ որ ինկլիզի թախտին յատուկ ժառանգը ես եմ, անոր համար սպասեց՝ երբոր թագաւորը առապայէն վար իջնալու եղաւ, անանկ ցըցուց որ թագաւորին մուրհակ (արզուհալ) ունի տալ, մօտիկցաւ՝ պզտիկ սուր դանակ մը խօթեց, բայց դիպուածը բերաւ որ՝ թագաւորին լաթերը չանցաւ, մարմինը չխոցվեցաւ, ասիկայ խենթի պէս բռնեցին, ու յիմարանոցը (թիմարխանէն) դրին ։ Ուրիշ կնիկմընալ ասանկ փորձ ըրած ունէր առաջ, բայց թագաւորը խալըսեր էր ։

## Սպանիայէն ըրած կարգաւորութիւնը՝ առնելէ յառ Չորրորդին Կարոլոսի.

## 1776—1785.

Երրորդ կարոլոս սպանիային թագաւորը տառն 1776 մէկ օրէնք մը հանեց ընդարձակ, ուր կարգելէ տղոց կարգըլվիլը առանց հաւանութեան իրենց ծնողաց. ծնօղքներուն ալ պատուէր կըդնէ որ առանց պատճառի չարգելեն իրենց զաւկըներուն կարգըլվիլը: Հռոմայէնալ խնդրեց 1777, որ իրեք նոր եպիսկոպոսական աթոռ սահմանվի ամերիկայի մէջ, շատցած ըլլալով հոն քրիստոնեները:

Ետքը ուզեց կարգաւորել իր թագաւորական յաջորդութիւնը, որովհետեւ ասդուրիոյ իշխանը որ անմիջական յաջորդն էր թագաւորին՝ թէպէտ զաւկըներ ունէր, բայց անոնցմէ մէկ քանիին մատղաշ տարիքին մէջ մեռած էին. և որպէս զի զաւկի պակասութեան համար չըլլայ որ սպանիան կռիւներու մէջ իյնայ, ինչպէս որ աս դարուս սկիզբը ըրնկերեր, մտածեց որ իր երրորդ զաւակը գաբրիէլ անունով կարգէ, որ խելացի բարեսիրտ իշխան մըներ, կարդացողութիւն ունենալով Սալուստիոս հին պատմագիրքը լատին լեզուէ՝ թարգմաներեր քասդիլեան կամ սպանիական լեզուն, անոր համար մարիաննա վիքդօրիան փորթուգալի թագաւորին Ք. պետրոսին աղջիկը հարս առավ,

որուն մայրը փօրթուկալի թագուհին մօտիկ ազգական էր սպանիայի թագաւորին։ Աս ատեն փօրթուկալի թագաւորին երկրորդ տղան ալ յոհաննէս պրականցեան՝ որ պրասիլու իշխանն էր յաջորդ թագաւորութեն՝ սպանիայի թագաւորին աղջիկը առաւ քառլօդդա յովակիմա անունով։ Աս-անկով կրկին և կրկին ազգականութ՟ կապվեցան սպանիայի թագաւորին տունը որ պօռպօնեան կըսվի՝ փօրթուկալին թագաւորին տանը հետ որ՝ պրականցեան կըսվի, մէջերնին հաստատեցինալ որ՝ երբոր մէկին ցեղը հատնելու ըլլայ մէկալին զաւակը գայ անոր թախտը նստի։

Աս. ընելով Գ. կարոլոս սպանիային թագաւորը դուրս հանեց յաջորդութեէն նաբօլիի թագաւորը Գ. Ֆերտինանտոս, որուն կիյնար յաջորդութիւնը՝ գաբրելէն մեծ ըլլալով. կարելի ալ է որ աս բանս ըրավ անոր սիրտը կոտրցընելու համար, վասն զի չէր հնազանդեր։ Կարոլոս իր հայրը կուզէր որ Ֆերտինանտոս սպանիացոց ճամփով նաբօլին՝ կառավարէ, և ոչ նեմցէի ճամփովը՝ ինչպէս որ կըխրատէր տուն կուտար թագուհին մարիամ քառօլինա, որ յովսէփ կայսեր քոյրն էր. կուզէրալ որ հեռըցընէ նաբօլիէն աքդօն զօրապետը՝ որ դանուչչիին մեռնելէն ետև՝ և սամպուքա մառքեզը ըլնելէն ետև՝ որ վեզիր էին, ասիկայ մէկ բացարձակ տէր մըն էր եղած ամմէն բանի վրայ, ու լման բռնակալ մը ամմէնուն վրայ։ Անոր համար կարոլոս հան

խրկեց լաւ քաղաս ըսած մարդը՝ որ հասկըցընէ Ֆերտինանտոսի իր կամքը, բայց Ֆերտինանտոս պատասխան տըվաւ. Որովհետեւ հիմա պզտիկութիւն անցուցի, անկախ եմ, ինչպէս որ իմ խելքս կըկտրէ՝ անանկ պէտք է որ կառավարեմ իմ երկիրս։

Անանկ կտրուկ պատասխանը մեծ պաղութի ձգեց հօրն ու տղին մէջը՝ որ քանի մը տարի քշեց, ինչպէս ունինք պատմելու. աս բանիս համար կըսեն շատ թղթեր գնաց եկաւ Նաբօլիի թագուհիին ու աւստուրիայի իշխանուհիին մէջ, իրարու սիրտ կակղցընելով։

Սպանիային ըրած զանազան բարեկարգութիւնները՝ աւելի վաճառականութէն վրայ։

Կարոլոս սպանիային թագաւորը վերոյիշեալ կարգաւորութիւնը ընելէն զատ՝ զինուորութիւնը շատցուց, ծովարուեստը ինքը թէ նոր հիմնեց սպանիայի մէջ, որով իր թշնամիներուն ահարկու եղաւ. ամմէն նաւահանգիստներուն մէջը սուրհանդակի (քուռուռիէռի) նաւեր սահմանեց. որ որոշեալ ատեն վերի աշխարհէն վարի աշխարհ կերթային կուգային. ան ահագին ընդարձակ ծովով բաժնըված աշխարհները մէկմէկու հետ հաղորդակցութիւն կնէին, անով ամմէն իր գաւառներուն ճամփայ կըբացվէր հարստնալու։ Թող տըվաւ՝ ով որ իր ժողովրդէն ուզէ՝ նաւարկէ, տուրքերը քիչցուց, որպէս զի առուտուրին շահք իր ժո-

ղովրդեան վրայ դառնայ ։ Ասանկով ամմէն ամերիկա հին օրէնքները ձեռք ձգելով նորոգվեցաւ շունչ առաւ. իր ներքին վաճառականութիւնը ծաւալեցաւ անոր հետ սպանիայէն վաճառականութիւննալ՝ ծաղկեցաւ ։

Աս կարոլոսին օրը ամերիկայէն անդադար ապրանք ու բաւական կուգար սպանիա, և որպէս զի ժողովուրդը հասկընայ սիրտ առնէ՝ ամմէն գաւառին մէջ թուղթ հանեց, ելած գացածին հաշիւը (հիսապը) ընելով. գացած ապրանքներուն հաշիւը եղաւ 21 միլիոն, 742 հազար ռիալի բան. եկածին հաշիւը եղաւ 63 միլիոն և իբր 176 հազար ։ Այն ատենը վաճառականի բաժանորդութիւն (օրթախութիւն) սահմանվեցաւ փիլիպպեան կղզիներուն անունով որուն հետ միացաւ քարաքքայի բաժանորդութիւնը. ազգային Թանգարաննալ (պանքա) Սէն կարոլոսի անունով շատ առաջ գնաց, որովհետև մատրիտին արքունիքը շատ առեկցուց նաւարկութիւնը՝ ու ծովային առևտուրը ։

Վաճառականութիւնը աւելի առաջ տանելու՝ շահաւոր ընելու համար սպանիացիք մէկ տեղ մը սահմանեցին Գւինիան կղզիին մէջը՝ որ խաղաղական ովկիանոսին մէջն է. 140 աստիճան հիւսիսային լայնութէ տակը, որ մէջ տեղը կենայ ասիայի՝ մանելիա կղզիի՝ ու աքափուլքօ կղզիի՝ որ ամերիկա է. աս գւինիան կղզիին մէջը բերդ շինեցին, զօրք դրին, մտվընին աս էր որ՝ առ-

կից եօթը Համփորդներէն ով որ ամմէն աշ-
խարհ պտըտելու ըլլար ծովով՝ սպանիացոց
ձեռքէն առնէ իր պիտոյքը իր պաշարը
(զահիրէն) աս դինիան կղզիին մէջը, որ ան-
ծօն անուանի ինկիլիզը Նորկրաւոր դըրախտ
կոչեր էր: Նաև ամերիկայի ժԳ. միացեալ
նահանգներուն հրաման եղաւ որ՝ իրենց
դրօշակով (պայրախով) իրենց նաւերը
համարձակ խրկեն ամերիկա եղած սպա-
նիայի նաւահանգիստներու մէջ. աս բանս
առաջ խիստ արգելած էին սպանիացիք:
Նօ Գ. կարօլօսին օրը եղաւ որ՝ պրուշին
Թագաւորը Բ. Ֆետերիքոս առաջարկեց
մէկ բարեկամական դաշնադրութիւն մը ընե-
լու սպանիայի հետ, ըստ որում Ֆետերի-
քոս, աղէկ կըտեսնար որ՝ իր մէջը ու սպա-
նիային մէջը աղէկ առեւտուր կրնար ըլլալ.
սպանիան կարօտ էր ան ձեռագործներու՝
որ բրուսիայի՝ բօհէմիայի՝ ու շլէզիայի
մէջ կըշինուէին. աս երկիրներնալ կարօտ
էին սպանիայի բուրդին՝ իփեկին՝ գինիին՝
ու եղին: Նաև Ֆետերիքոս կըդիտէր կը-
նայէր որ՝ սպանիան իբր թէ Ֆրանսային
պաշտպանութեան տակը ըլլալով՝ եւրոպային
ընդհանուր բաներու անչափ չէր կրնար
խառնըվիլ, բայց 1777 երբոր լսեց որ՝ Ֆլօ-
րիտա պիանքա կամ մօնինոս կոմսը՝ վեզիր
էր եղած կռիմալտի դքսին տեղը՝ ան ատե-
նը նօսդից կոմսը իր դիւացէն դեսպան խըր-
կեց մատրիտ, որ սպանիային մայր քա-
ղաքն է. հասկըցաւ որ՝ ան վեզիրին կառա-
վարութիւնը սպանիան նորէն ձեռք ձգէր պի-

տոր իր առջի նախագահութիւնը ։ Սպա-նիայէն թագաւորնալ պըտուչի դեսպանը սիրով ընդունեց . Ինքն ալ Պեռլին՝ որ Պը-րուշյին մայր քաղաքն է՝ դեսպան խրկեց, ուր 40 տարիէն աւելի կար՝ որ չէր խրկը-ված ։

### Սպանիայի ու Ճէզայիրի մէջ եղած հաշտը ու դաշ-ինքը .

### 1783—1787 ։

Սս տարիները Ճէզայիրին ու Թունուզին ծովասպատակները (խուրսանները) շատ նեղութի կուտային Սպանիայի նաւերուն՝ անոր ծովեզերեայ տեղերուն, անդադար վրանին վազելով կըթալլէին ։ Անոր համար մէնինոս Սպանիայի վէզիրը ուզելով աս նեղութէն խալըցընել իր ժողովուրդը՝ հասկըցուց Ստանպօլ տաճկի դըրանը, բայց Ճէզայիրցիք Թունուզցիք մտիկ չէին դնէր, 50 տարիէն աւելի կար՝ որ առջի հնազան-դութիւննին վերցուցերէին, հազիւ պզտիկ պարգև մը կըխրկէին Ստանպօլ ։

Հիմակվան եղածէն զատ կըյիշէր Սպա-նիայի թագաւորը 1775ին եղած յաղթըւե-լը անարգանքը՝ որ Ճէզայիրներէն եղաւ ի-րեն, աս անարգանքը նեղութիւը վերցընելու համար՝ ուզեց որ ան քաղաքը թօփով կոր-ծանէ՝ որնոր ապաստան էր եղած ծովասպա-տակներուն (1) անոր համար կարոլոս Թա-

---

(1) Ինչպէս որ ըրերէր ժդ. լուիզը իր նախահաւը ,

գաւառը՝ Ճէզայիրին վրայ խրկեց մետոն պառչէլլօնը՝ որ Ճիպրալդարը պաշարողներ, սոոր նաւատորմիղը (տօնանման) 6 երկու խափախալը նաւ կար, 3 ֆռխաթա, 2 մեծ չէքտիրի, 9 շամպէք, 20 թօփ նետող շալուփա, 20 հավան թօփու նետող շալուփա, 6 ֆիլուքա 8, կրակ ձգող նաւ, ևալ ուրիշ նաւեր։

Յուլիսի սկիզբը 1783 ելավ աս նաւատորմիղը կարթագինէէն՝ ամսուն 29 հասաւ Ճէզայիր, օգոստ. առջի օրը սկսաւ ծեծել, 400 հավան թօփուէն աւելի վրան ձգեց, մէջի դրած գնտակները առաջ կրակի մէջ տաքցընելով, բայց քիչ վնաս տըվավ, որով հետև գուքսէն շատ թօփերով ամրցուցած տեղվանք ունէր չինած՝ հազարաւոր քրիստոնեներ ու հրէաներ բանեցընելով։ Տեղ տեղ քաղքին մէջը իրաւ կրակ ընկաւ. 3000 տունէն մէկ քանիին երվեցան, մէկ քանիին փլան, բայց մէջիններբը շատվոր ըլլալով շուտ մը կըմարեին. ինը օր սաանկ թօփատելէն ետև՝ տեսաւ սպառչէլլօն որ հովը փոխվեցաւ, վտանգաւոր եղանակը վրայ եկավ, բան մը չիկրնային ալ ատոր ընել, նաւերը քաշեց տարաւ սպառչէլլօնա նաւահանգիստը. իրմէ միայն 20 հոգի մեռան, 15 հազիվալ խոցվեցան։ Սպանիացոց ուրախունը աստնց ան-

---

որ հարիւր տարի առաջ 10 հազար հավան թօփու ձգեր էր Ճէզայիրին քաղքին վրայ, անկից Ճէզայիրին տային իրեն մանծերը լուխգին ոտքը խրկերեր թաղուլթի ուղելու։

Հիւսս դառնալուն վրայ՝ եկեղցաւ մէկ ուրիշ ուրախութենով որ եղավ սեպտ. 5, սադուրիոյ իշխանին երկուորեակ (էքիզ) մանչ զաւակ ծնանելով։

Հետեւեալ տարին 1784 օգնութիւն առնելով նաեւ փորթուկալի ու մալթայի նաւերով՝ շատ թօփ նետեցին քերդին ու մէջի տներուն վրայ, բայց բան մը չկրցան ընել, մանաւանդ որ՝ Ճէզայիրցիք ծովին երեսը 300 շալուփաներ շարերէին, ասոնք շարունակ կրակ ընելով՝ թող չէին տար մէկի մը մօտիկնալ։ Կըսէին որ Ճէզայիրցոց մէջը շատ հազարապետներ խառնըված կային բռօվանս գաւառէն ֆրանսայի, ու Ճէզայիրցոց հագուստը հագած անանկ կրկառավարէին. իրաւալ է որ՝ ինկիլիզը՝ Փիլէմէնկը՝ շատ պարութ, թօփ, գնտակ տըվերէին Ճէզայիրցոց. թէ որ եւրոպայի տէրութիւնները իրարու վրայ չինախանձէին, քիչ մը շահի համար ցածութին չիքանեցընէին, ծովապատակներու չօգնէին, եւրոպային Ճերմակ ծովխալ կըխալըսէր ասանց ասպատակութէ։

Ինչ և իցէ՝ տեսնալով սպանիացիք որ աս հեղուալ անօգուտ ելան, յուլիսի 17 թողուցին, դարձան եկան կարթագինէ, միայն թէ Ճէզայիրցոց մէջը մեծ վախ ընկաւ, շատը կուզէին որ՝ բանի մը պառկեցընելով հաշտութիւն ընէին, արդէն օսմանցին ու մաղըրըպին թագաւորը ուզերէին միջնորդ ըլլալ աս բանիս համար։ Յովսէփ մասսարէտ 1785 երրորդ անգամ երեւցաւ Ճէ-

զայրի առջին՝ սպանիայէն դ նաւով ամմենե-նալ երկու խափախը, շատալ ֆուխաթա-ներով, որոնցմէ մէկը հաշտութիւն խօսե-լու դրօշակ էր բացած. անանկով յունիսի 16. ֆրանսզի քօնսօլին միջնորդութը սա-րագրեցին հաշտութե առջի բաներուն, բայց սպանիայի թագաւորը չուզեց հաստատել, վասն զի Ջեզայիրին տային մէջը մէկ թէու-թինալ ան դըրերէր, որ հանգիստ ըլլալու համար սպանիան Ջեզայիրին վճարէ իբր 2 միլիոն ուիալի, կէս մը ըստակ, կէսմընալ Ջեպխանէ, ասիկայ սպանիային համար խիստ ցած բան էր ու ամօթ ։

Այս ատենը մէջինները ջանացին որ՝ գոնէ զինադադար (միւթարեքէ) մը ընեն. աս բա-նիս վրայ շատ վիճմունք ընելէն ետև՝ 1786 յունիսի 14 ընդունեցան, բայց ասոնց ըն-դունիլը չընդունիլը մէկ է, հաւատարմութ չիկրնար ըլլալը. Ջեզայիրին տային երբոր ըրած պարգեները տեսաւ չիհաւնեցաւ, իբր թէ իր ուզածին պէս չէր ։ Ջեզայիրը մաղըրպին հետ մէկ տեղ նորէն վազեցին սպանիային ու փօրթուկալին տեղերուն վը-րայ՝ որ ափրիկէին ծովեզերքը կըգտնըվին, բայց նորէն վռնտըվեցան ։ Երբոր 1787 օրան քաղքին վրայ վազեցին, Ջեզայիրին տայիին մէկ տղան սպանվեցաւ, անկեց ա-ւելի տաքնալով աւելի սկսաւ յարձըկիլ, բայց աւելիալ կոտրտըվեցաւ ։ Սպանիային թագաւորը կուզէր որ՝ նաբօլիի թագաւո-րին համարալ մէկ տեղ հաշտութի ըլլըվի՝ որ իր զաւակն էր, անոր համար երկնցաւ-

ցին խօսքերը՝ բայց չյաջողվեցաւ. սա բա-
նիս համար յոհաննէս Թամամանալ նաբօլլէն
գնաց ափրիկէ, անալ բան մը չկրցաւ
ընել ։

Պարապլուսը որ ձէզայիրին պէս ուժով չէ, քիչ բանով կրկշտանայ, սպանիային հետ հաշտութի ըրավ, որ 1784 սեպտ. 10 հաստատվեցաւ 39 թէութիով։ Բայց թունուզին տայլին հաշտութի չընդունեց, մեծ պարգևներ մանաւանդ թէ հարկ (խարաճ) կրպահանջէր, սա պարպարըշները ան ատենները անանկ յանդգներէին՝ որ տաճկին դրանալ մտիկ չէին ըներ ։ Ինչվան անգամ մը ձէզայիրի տայլին զուրցեց տաճկի դեսպանին, սովորական խարճը չեմ իտար, չեմ վախնար ոչ թագաւորին տէրութենէն, և ոչ իր բարկանալէն ։

Հոլանտայէն նաւերու խրկըվելուն համար պատճառ, մեծ հակառակութիւն ելլալ Գերմանիոյ մէջ.

1784—1787 ։

Երբոր 1783 կարոլոս Թէոդորոս պավիերայի բալատինոս կայսրընտիրը հռոմ եկավ, սրբազան քահանայապետին հետ խօսք կապեց՝ որ նուիրակ խրկելի մօնաքօ պավիերայի մեծ քաղաքը՝ ինչպէս որ քօլօնիանալ ունէր ։ Սոյնկայ թէպէտ պզտիկ բան մընէր, բայց որչափ իշխանաւոր եպիսկոպոսներ կային՝ որ հոգևոր իրաւասութիաննէյին պավիերայի մէջը, սա բանիս դէմ

ելան, ռադիսպօնայի ժողովքին գանկատ
վերուցին, վախնալով որ՝ մէկ ուրիշ նուի-
րակութիւն մըն ալ սահմանելով (որ առաջ
չիկար), չըլլայ որ իրենց եկեղեցական հե-
ղինակութիւնը պզտիկնար։ Այնչափ մեծ-
ցաւ աս բանս որ յովսէփ կայսրը 1784.
հոկտ. 12 հարկադրեցաւ մէկ թուղթ մը
գրելու եկեղեցական կայսրընտիրներու՝ մա-
նաւանդ իր եղբօրը մաքսիմիլիանոսի՝ որ
քօլօնիայի կայսրընտիրն էր՝ ըսելով։ „Ո-
„ րովհետև ինծի գանկատ գրեցին եպիսկո-
„ պոսները աս բանիս համար, և ես ալ պա-
„ րտկան եմ պաշտպան կենալու գերմա-
„ նիայի ամէն եկեղեցական իշխանութեց,
„ չեմ ընդունիր նուիրակը՝ եթէ ոչ իբրև
„ սոսկ պաշտօնեայ մը հռոմայու արքու-
„ նեայը՝ որուն կինայ հոգալ քաղաքական
„ գործքերը, կամ ան գործքերը՝ որ անմի-
„ ջապէս կըվերաբերին սրբազան պապին՝
„ իբրև գլուխ ընդհանուր եկեղեցւոյ, բայց
„ թող չեմ տար որ՝ մէկ իրաւասութիւն
„ մը բանեցընէ եկեղեցական գործքերու
մէջ։

Ասանկով Զօլիօ անուն եպիսկոպոսը եկավ
մօնաքօ քաղաքը նուիրակ նստավ, բայց
ատեան չիկրցաւ բանալ, որպէս զի ուրիշ
եպիսկոպոսներուն իշխանութեցը մէկ պակ-
սութի մը չըլլայ, որովհետև աս բանիս շատ
դէմ կեցան եկեղեցական կայսրընտիրները՝
մակօնցային՝ դրևէվէրիին՝ ու քօլօնիային՝
նաև սալցպուրկոյ արքեպիսկոպոսը՝ (որ
գերմանիայի եպիսկոպոսաց գլուխն է,)

վիւրցպուրկին՝ ֆրէյզինկային՝ ռատիսպո-նային՝ ու բասսաւիային եպիսկոպոսները։ Ոչ բաւական հերիք չըլլալով չորս վերոյի-շեալ գլխաւոր եկեղեցական իշխանները, Էմս ըսուած տեղը՝ որ քօլօնիայի կայսրըն-տրութեան մէջը մէկ պզտիկ տեղմընէ՝ 9. 10 մղոն հեռու քօլօնիայէն, մէջլիսները ըլ-թուան, հոն իրենց մարդիկը խրկելով 1786 մէկ ժողով մը ըրին միաբան ըլլալու հա-մար, թէ ասկէց ետքը ինչպէս աւելի հաս-տատութիւ կարենան միաբան դէմ դնել աս բանիս, թող չիտան որ գերմանիայի մէջ ասկէց ետքը տեղ մը նուիրակ դրվի, կոպարաւորել ուզելով սրբազան պապին հեղինակութիւնը որ ունէր գերմանիայի եպիս-կոպոսներուն վրայ ընդդէմ տրիտենդեան ժողովքին, գերմանիայի դաշնադրութեան, ու հին սովորութեանց. սրբազան պապը մէկ հա-սարակ եպիսկոպոսի մը տեղ դնել էր ասե-կայ, իսկ զիրենք իբր գլուխ։

Երբոր հռոմ լսեցին աս ժողովս՝ շատ նե-ղեցան, վասն զի աս մեծ արքեպիսկոպոսնե-րուն միտքը ան էր որ՝ հռոմայուն և իրենց տակի եղած եպիսկոպոսներուն իշխանութիւնը պզտիկցընեն, որպէս զի իրենց իշխանութիւնը մեծնայ. ինչ կանոններ որ հրատարակե-ցին՝ ամմէնն ալ առնըված են ֆեպրոնիոսի դատապարտեալ գրքէն. բայց ատնք ուրի-շին հօգևոր իշխանութիւնը իրենց քաշել ու-զելով, քիչ մը ատենէն ետև իրենց ժամա-նակաւոր իշխանութիւններն ալ կորսնցուցին։ Սրբազան պապը մէկ զօրաւոր պատասխան

մը տրվավ առ չորս արքեպիսկոպոսներուն․ պատմութիւններէն ցըցընելով թէ ինչ իրաւունք ունի Հռոմայ աթոռը Նուիրակութեանց վրայ ։ Պրուսիոյ Թագաւորն ալ թէպէտ ուղղափառ չէր՝ բայց 1787 մայիսի 14 անոնց կարծիքին դէմ վճիռ հանեց, որ իր երկրին մէջի եղած ուղղափառները՝ եկեղեցական բաներու համար թող Հռոմ դիմեն և Հռոմայու Նուիրակներուն ։ Անոնց ուրիշ դէմ գրողներուն ալ եղան Հռոմայու դիւացեն՝ որոնցմէ մէկը եղավ ռօվարելլա եպիսկոպոսը, որ երկան գրեց քահանայապետին ընդհանուր իշխանութիը ցըցընելու համար․ իսկ Սօլտարդի անունով դոմինիկեան կրօնաւորը խիստ տաքցած գրելով չափը անցուց, շատ պարսաւական խօսքեր զուրցեց ան ժողովքին եպիսկոպոսներուն դէմ, անոր համար գերմանացիքն ալ մէկ սաստիկ պատասխան մը գրեցին իրեն, վկայութիւն կանչելով փարէզ եղած սօռպօնի ճարտաբան-
ներուն շատ գործքերը ։

Ուրիշ եկեղեցական կարգաւորութիւններ ալ եղան գերմանիայի զանազան շրջանակներու մէջ, ինչպէս որ վերը գրեցինք․ կայսերական ժողովքով թոյլտուութիւն եղաւ երկու բռօդեստանդ աղանդներու լութերի ու կալվինի․ սովորութիւն ալ եղավ որ եկեղեցական ապրանքները եկամուտ կապեցին ան թագաւորական ցեղին տղոցը՝ որ եկամուտ մը չունէին․ չափաւորութիւն դրին անոնց բաներուն՝ որ իրենց աւելորդութիւնն երևցաւ ։ Մանկով մակօնցային կայսրընտիրը

գաղտուկ հաւանութեամբ կայսեր վճռեց որ՝ ժողովներուն սահմանացը կեօրէ անիրաւ ու ապօրինաւոր սեպվի շատ տեղին եկամուտը կապել մէկ տեղի մը՝ մէկ մարդու մը, բայց եթէ ան անձը խիստ երեւելի մարդ ըլլայ, կամ մեծ արդիւնք մը ունեցած ըլլայ. և այն անօրինմունքը որ ճամփով մը հռոմայէն առերնն աս բանիս համար՝ ոչինչ սեպվին, ինչվան որ չիքննրվին եպիսկոպոսական ու աշխարհական դատաստաններէն, որովհետեւ շատ հեղ սուտ պատճառներով անարժանները իրենց կըքաշեն այն եկամուտը բաշխողին մօքին դէմ:

Նոյն կայսրընտիրը աշխարհական կղերիկոսաց համարաւ թուղթ մը հանեց ըսելով: „ Շատ ատեններէն վեր է՝ գերմանիայի մէջ „ եկեղեցականներ կըգտնըվին, որ թէպէտ „ հազիւ կարդիւնաւորին մինակ մէկ տեղին „ թոշակը (էօլէֆէն, կելիրը) առնելու՝ „ բայց երկու իրեք տեղին թոշակը իրենք „ կառնեն, իրենք կըքաշեն, հռոմայէն հեշտ „ (խօլայ) ներում առնելով աս բանիս հա- „ մար, անանկով շատ մարդիկ զրկեալ կը- „ մնան ապրուստէն՝ որոնք աւելի արժանի „ են քան մէկալնոնք“: Աս բանիս համար քառտինալ միկացցին որ վիեննայի արքեպիսկոպոս էր, և միանգամայն մականուն ունէր վաքչիայի եպիսկոպոսութեն, յովսէփ կայսրը հրաժարել տըվավ անկեց, որ հարուստ եպիսկոպոսութիւն մընէր մանճառի մէջ, հրամայելով որ հերիք ըլլայ իրեն

վենետայէն եպիսկոպոսութէ եկամուտը՝ թէ֊
պէտ անչափ հարուստ չէր։

Պավիեայի մէջ 1786 հոկտեմ. 11. նոր աղանդաւորաց տեղ մը կոխեցին, որ կըսվէր Յ[illegible]· իրենց մատեանները (քիւթիւկները) ձեռք ձգեցին, ինչ որ մոլար վարդապետութի կըգրէին կըսորվեցընէին մէջը՝ անոնք ամմէնը դուրս հանեց պավիեւային արքունիքը, երկու հատոր գիրք նեմցերի լեզուով տպեց, ամմէն եւրոպայի տէրութեանց խրկեց։ Նս աղանդս հանօղը եղավ վայսհաւրդ մէյմը որ ինկօլշդատ քաղաքը օրէնք դաս կուտար. 28 տարվան երիտասարդ, ամմէն չարութէ մէջ ընկղմած, բայց սատիկ կեղծաւոր, տակէն խապցօղ, բարակ նենգագործ, շըջահայեաց և միանգամայն յանդուգն, ամմէն չարագործութէ վազօղ. իր աղանդը եղավ մէկ ընկերութի մը խիստ գաղտուկ. մտնօղը աստիճան աստիճան վեր կըհանէին, ամմէն մէկ աստիճանի մէջ անած անտէր ըլլալ կըսորվեցընէին, թէ֊ որ մէկը խղճմտանք ընէր, ալ առաջ չէին տանէր։ Սորվեցուցածնին սակում կըբերէ լռողին, ջնջօղ է ամմէն կարգ՝ կանոն՝ օրէնք՝ կառավարութի, վարքը՝ հաւատքը ավրօղ, մարդը լման անասնոյ պէս ընօղ. ուրիշը զըկելը՝ յափշտակելը օրինաւոր կըսեպէ. գաղտուկ պահելը ատոնց հիմը (թէմէլը), ըլլալով՝ կըյորդորէ ինքիր զինքը սպաննել ծածուկը դուրս չիհանելու համար։ Նսոնց ծածուկը դուրս չէր ելլար, բայց տէրութէ հրամանովը իրենց բարեկա֊

իրենք ալ եղբայր էին, իբրև աւստրիոյ տանը վրէժխնդրութիւն մը ըրած սեպել տալով. երրորդ իմացուաւ որ՝ պրուսիոյ Թագաւորին ընտրուած եպիսկոպոսը պիտոր ըլլար տուվալ բիրավ անուն քահանան, որ շատոնցմէնէ բօցտամ կրընակէր. ասիկայ Թէպէտ գիտուն մարդ էր՝ բայց հռոմայի կարծիքներուն դէմ էր ։

Աս պատճառներս լսելով պրուսիոյն Թագաւորը՝ ինքն ալ լուռ կեցաւ, բայց ուղղափառներուն համարձակ ազատութիւն կուտար, անանկ որ պրանտէմպուրկ գաւառին մէջ՝ բօմէռանիայի մէջ՝ մակտէպուրկ, ալպէրշթատ, և արևելեան բրուսիայի մէջ ուղղափառներուն աւագերէցները կըհոգան ուղղափառ զինուորները. ասոնք իրենց իշխանութիւնը կառնեն հիլտեսհէյմին իշխանաւոր եպիսկոպոսէն՝ որ կըսուի հիւսիսային եպիսկոպոս, ըստ որում իրեն իրաւասութիւնը կըտարածուի ամէն ուղղափառներուն վրայ՝ որ բողոքեստական իշխանաց երկիրներուն մէջն են, եւրոպային հիւսիսային դին, միայն թէ շվէտին ու մոսկովին երկիրը չիխառնըվիր ։

Քանի տեղ որ առաւ պրուսիոյն Թագաւորը Բ. Ֆրետերիքոս պատերազմելով և կամ դաշնադրութիւն ընելով, ուղղափառներէն չորս մեծ Թեմ իր իշխանութեան տակը անցան, պրէզլաուին Թեմը՝ որուն տակն են շլէզիային ամէն ուրիշ եկեղեցիները, քուլմին, վառմիային, ու քույավիային Թեմերը ։ Պրէզլաուին եպիսկոպոսը շաֆկօց

կոմսը՝ որովհետև 25 տարվընէ վեր քշված էր, քորեպիսկոպոսներէն մէկը անոր տեղը կըհոգար:

Լեհաստանը բաժնըվելէն ետև՝ վառամիայի եպիսկոպոսը պէռլին գնաց՝ որ պրուշի Թագաւորին. հետ տեսնըվի, հոն աղաչեցին իրեն որ՝ օծէ ուղղափառներուն երկրորդ եկեղեցին. օծման հանդէսը ըլլալու ատենը՝ պրուշի Թագաւորին ամմէն ընտանիքը հոն ներկայ գտնըվեցան: Աս եկեղեցնայ քովնալ 1782 մէկ դպրատուն մը շինվեցավ, վերակացութիւ մէկ Փամինկացի խաթունի մը հարպքամբ ըռլված տունէն. աս խաթունս ընկեր էր ու կենակից ան իշխանուհույն՝ որ կին էր հէնրիքոսի՝ պրուշի Թագաւորին եղբօրը:

Աս ամմէն բանը աղէկ կըցըցընեն՝ որչափ ազատութիւն համարձակութիւն տրված էր ուղղափառաց պրուշի երկիրներուն մէջ:

Պաշէնտան փոխել ոսկերուն համար սուրբին նահանգիներուն հետ՝ նոր հանգստութեան նէլոտ Գերմանիայի մէջ.

1785:

Ինչպէս որ վերը պատմեցինք, Թէպէտ 1783ին սկիզբները վէռասալիա՝ որ փարէզին քովն է՝ հաշտութիւն եղավ նեմցէին ու Փիլէմէնկին մէջ, բայց 1785 յուլէփ կայսրը բան մը առաջարկել սկսաւ, որ շատ կռիւներու պատճառ պիտոր ըլլար: Աը-

տեսնար յովսէփ որ Ստորին նահանգները՝ որոնք նաև Պելճիքա կըսվին՝ շատ հեռու էին իր երկիրներէն ու բաժնըված, շատ խարճի տակ զինքը կըձգէին, պէտք էր իրեն մէկ արքունիք մը պահել պըտուսելը քաղքին մէջը. որովհետև զանազան նահանգ զանազան օրէնք ու արտօնութիւներ ունէին՝ ամէն մէկ դիպուածի մէջ նորութիւն կըպահանջէին. աս թող տուր՝ մէկ երկիրմընալ էր՝ երբոր Փրանսզներուն հետ նեմցէն ավըրվելու ըլլար՝ շուտ մը կընային Փրանսզները ներս վազել առնել՝ ըլլալով մէկ բաց երկիր մը. Ասոր ամէն բանը մտածելով յովսէփ կայսրը՝ ուզեց որ ձգէ աս երկիրը, անոր տեղը պավիէրան առնէ, որով ամէն դունիա գետին վրայ կիշխէր, իր ամէն սահմանները մէկ տեղ կըկպչըներ, միատամի մէկ երկիր մը կըլլար. իր իշխանութիւնաւ կըտարածէր ամէն հարաւային գերմանիայի վրայ մէկ ծարէն մէկալ ծարը, բաց ՚ի քանի մը ազատ քաղքըներէն ու պզտըտիկ իշխանութիւներէն. իր թևը կըտարածէր ռէնօ գետին վրայ՝ սև ծովին՝ ադրիական ու միջերկրական ծովին վրայ, թրեստէ ու դօսքանան ունենալով, սահմանակից ըլլալով Փրանսայի՝ լէհի՝ ու մոսկովին հետ։

Ասոր համար ուզեց պավիէրային դքսութիւնը՝ որուն մեծ մասը մարիամ թերեզինա կայսրուհին տըվերեր բալադինու կայսըրընտրին, ամէնը ինքը առնէ, անոր տեղը կայսըրընտրին տայ ստորին նահանգները։

Այս փոփոխութիւնը լէհրպախ կոմսին ձեռքովը առաջարկեց ծերունի կայսրընտրին՝ որ կըսուէր կարոլոս Թէոդորոս, և տէր էր պաւիէռայու և բալատինու,. համկըցընելով ինչչափ կըմեծնար իր ցեղը պաւիէռան փոխելով ստորին նահանգներուն հետ, կըրնար ալ Թագաւորի անուն ունենալ Թէ որ ուզենար։ Ստորին նահանգները պաւիէռայէն աւելի հարուստ էին ու բարեբեր, մէջինները աշխատասէր։ Պաւիէռային պինտ աղէկ քաղքընները մօնաքօ, տօնավէրդ, ինկօլշդատ, վար են ստորին նահանգաց քաղքըններուն քովը որ կըսուին պրուսէլ, կանտ, լօվանիօ, անվէրսա, պռուճէս, օսդէնտա։ Ստորին նահանգներուն ժողովուրդը շատ էր, 2 միլիոն ու կէս մարդ կար մէջը, իսկ պաւիէռային ժողովուրդը չէր անցներ քան 1 միլիոն ու 800 հազար։ Ստորին նահանգներուն եկամուտը առանց խարճի 10 միլիոն ֆիօրին կըբերէր տարին, պաւիէռայինը՝ հազիւ 8 միլիոն, որովհետև 1776 աղէկ մէկ կտորը կայսրընտրին ձեռքէն դուրս ելաւ։ Ստորին նահանգները ունին աղէկ նաւահանգիստներ ովկիանոս ծովուն վրայ և մանիքա նեղուցին վըրայ, որոնցմէ ֆիանտուան ունի նաւահանգիստներ ինկիլդէռռային դիմացը, որով օր մը կըրնար ծովեզերեայ տէրութենց հետ մէկ արքենի Թագաւոր մը ըլլալու։

Այս բաները լսելով Թէոդորոս 1785 յունվ. 15, միտքը դարձաւ, ուզեց պաւիէռան ստորին նահանգներուն տեղը փոխել. Ճար-

տասանութի մը զօրաւոր պատճառներով զուրցըրված շատ բան փոխել կուտայ։ Բայց աս դաշնադրութիւնս աղէկ հաստատելու համար՝ պէտք էր որ նաև տիւ բօնդին դքսին հետ որ էր Զ. կարոլոս, և մաքսիմիլիանոսին հետ՝ որ իր եղբայրն էր, խօսք կապէն, հաւանութի առնեն, ինչու որ կարոլոս Թէոդորոս կայսրընտիրը զաւակ չունենալով ասոնք պիտոր ըլլային իրեն ժառանգը։ Այս որովհետեւ յովսէփ կայսրը դեսպան (էլչի) մը չունէր տիւ բօնդին դուքսին քով, ռօմանցօֆին մօսկով կոմսին յանձնըրվեցաւ որ խօսի դուքսին հետ ու հաւնեցընէ, վասն զի աս ռօմանցօֆը մօսկովի դիւանէն դեսպան էր խրկըրված երկու շրջանակներուն մէջը՝ որ էին վերի ու վարի ռէնօ. մօսկոմնալ խիստ կապված ըլլալով յովսէփ կայսեր հետ՝ անոր ուզածը խիստ սիրով կընէր։ Ռօմանցօֆը գնաց դուքսին հետ խօրաթեց ցըցընելով որչափ աղէկ բան պիտոր ըլլար՝ թէ որ բալադինու ցեղը բարեկամաբար ինքիր կամքովը աւստրիոյ տանը կամ նեմցէին տայ վերի ու վարի պավիէռան, վերի բալադինան, լուչէմպէրկին լանկռավութիւնը կամ իշխանութիւնը, նէօպուրկին ու սուլցպախին դքսութիւնը։ Ասոնց տեղը իրեն առնէ ամմէն աւստրիական ստորին նահանգները, անոր հետ մէկ տեղ 10 միլիոն ֆիօրինը, որ օլանտայէն առնելիք կայ առնելու. ասկէց զատ կայսրընտրին 3 միլիոնալ տովլի տեղը փոխելուն համար. աս ամմէն երկիրներնալ

պուակօյնայի թագաւորութիւն անուանելով՝ կայսրընտիրը անկէց ետքը թագաւոր ըսուի :

Աս խօսքերս խիստ անուշ եկան դուքսին՝ մանաւանդ թագաւորական անունը, բայց ինչ որ կընէր՝ մէկ կոմս մը ունէր իրեն խորհրդական հօֆֆէնֆելտ անուն, առանց անոր հարցընելու բան մը չէր ըներ, առաջ անոր հարցուց : Աս կոմսը՝ կամ որ իրեն աղէկ չերևցաւ աս փոխփոխելը, կամ որ՝ ոմանց ըսածին պէս պրուսի թագաւորին լրտեսն (չաշուտն) էր, իրմէ եկամուտ կապած ունենալով, շուտ մը մարդ խրկեց պէռլին, պրուսի թագաւորին հասկըցուց : Աս լսածին պէս պրուսիին թագաւորը Բ. Ֆրետերիքոս՝ խիստ դժարցաւ, տեսաւ որ իր վերջի ըրած պատերազմին օգուտը պարապ պիտոր երթար, որուն համար անչափ յոգներեր, անչափալ խարճ ըրեր էր, իմացաւ որ՝ անօգուտ պիտոր ըլլար նաև ան աշխատանքը՝ որ քիչ մը առաջ քաշեր էր բալադինեան ցեղին ձեռքը մնալու համար պավիէրան. Հասկըցաւ որ՝ աս բանս շատ շահաւոր պիտոր ըլլար նեմցերին՝ որուն ամմէն մէկ շահիլը մեծնալը՝ իրեն մէյ մէկ խոց կըլլար, մէյ մէկ մեծ վնաս կըսեպէր : Ասոնք մտածելով մէկ շրջաբերական թուղթ մը հանեց գերմանիայի մէջ, գրգռելով գերմանիային մեծ իշխանները որ աս բանիս դէմ ըլլան, ցըցընելով քանի վնասակար բան պիտոր ըլլար ասիկայ :

,, Թղթին մէջը առաջ կըպատմէ. Ինչպէս

„ պաւիէռային կայսրընտիրը մեռնելէն
„ ետեւ որ կըսուէր յովսէփ մաքսիմիլիանոս՝
„ Նեմցէն ուզեց վարի պաւիէռան իրեն
„ առնել ան դաշնագրութ̃ը՝ որ 1778 յունվ.
„ 3 ըրեր էր բալադինօի կայսրընտրին հետ,
„ որ էր յաջորդ մեռնող կայսրընտրին,
„ բայց տիւ բօնդին դուքսը ու ինքը սըրտու-
„ շին թագաւորը աս բանին դէմ կեցեր-
„ էին: Շատ վիճմունքէն ետեւ՝ 1779
„ մայիսի 13՝ եղած դաշնագրութ̃ ոը դէջէն
„ քաղաքը եղաւ, Նեմցէն հրաժարեցաւ իր
„ ամմէն ժառանգութ̃է պաւիէռային վրայ.
„ անոր տեղը պաւիէռային չորս գաւառը
„ առաւ, որ 1 միլիոն ու կէս ֆիօրին եկա-
„ մուտ կըբերեն տարին. անոր ութերորդ
„ թէութ̃ը մէջ պարտաւորեց զինքը Նեմ-
„ ցէն՝ որ պաշտպան կենայ պաւարեան բա-
„ լադինայի ցեղին, որուն յայտնի արը-
„ ըրուած է որ իր երկիրը ուրիշի չիտայ:
„ Հիմա Նէմցէն նորանց կուզէ փոխել աս
„ երկիրը՝ Ֆրանսան ու մօսկովը մէջ խառ-
„ նելով. առանց մէկ խօսքի մը մէջ խառ-
„ նելու պրուսը ու գերմանական ժողովը,
„ որոնք մասնակից ու պաշտպան ըլլալով
„ դէջէն եղած դաշնագրութ̃ը, իրաւունք
„ ունին խառնըվելու. տիւ բօնդին դուքսն
„ ալ նորէն աս բանին դէմ կըկենայ, իս
„ պրուշի թագաւորսալ կըյորդորէ որ դէմ
„ կենայ: Կըսեն որ 1714 պատէնին մէջ
„ եղած դաշնագրութ̃ը՝ պաւարեան բա-
„ լադինեան տունը ունի իշխանութիւն մը
„ թէութ̃ը կեօրէ ուզածին պէս փոխել

գաղտուկ հաւանութեամբ կայսեր վճռեց որ՝ ժողովներուն սահմանացը կեօրէ անիրաւ ու ապօրինաւոր սեպվի շատ տեղին եկամուտը կապել մէկ տեղի մը՝ մէկ մտրդու մը, բայց եթէ ան անձը խիստ երևելի մարդ ըլլայ, կամ մեծ արդիւնք մը ունեցած ըլլայ. և ան անօրինմունքը որ ճամփով մը հռոմայէն առերեն աս բանիս համար՝ ոչինչ սեպվին, ինչպէս որ չիքննըվին եպիսկոպոսական ու աշխարհական դատաստաններէն, որովհետև շատ հեղ սուտ պատճառներով անարժաննէրը իրենց կըքաշեն ան եկամուտը բաշխողին մօքին դէմ։

Այն կայսրընտիրը աշխարհական կղերիկոսաց համար ալ թուղթ մը հանեց ըսելով։ „Շատ ատենէն վեր է՝ գերմանիայի մէջ „եկեղեցականներ կըգտնըվին, որ թէպէտ „հազիւ կարդինաւորին մինակ մէկ տեղին „թոշակը (էօլէֆէն, կելիրը) առնելու՝ „բայց երկու իրեք տեղին թոշակը իրենք „կառնեն, իրենք կըքաշեն, հռոմայէն հեշտ „(խօլայ) ներում առնելով աս բանիս հա„մար, անանկով շատ մարդիկ զրկեալ կը„մնան ապրուստէն՝ որոնք աւելի արժանի „են քան մէկայնոնք“։ Աս բանիս համար քառտինալ միկացցին որ վիեննայի արքեպիսկոպոս էր, և միանգամայն մականուն ունէր վաքչիայի եպիսկոպոսութէ, յովսէփ կայսրը հրաժարել տըվավ անկեց, որ հարուստ եպիսկոպոսութիւն մընէր մաճառի մէջ, հրամայելով որ հերիք ըլլայ իրեն

վեննային եպիսկոպոսութեան եկամուտը՝ թէպէտ անչափ հարուստ չէր։

Պավիեւայի մէջ 1786 հոկտեմ. 11. նոր աղանդաւորաց տեղ մը կոխեցին, որ կըսուէր Յ[illegible]ըներու իրենց մատեանները (քիւթիւկները) ձեռք ձգեցին, ինչ որ մոլար վարդապետութեան կըգըրէին կըստորվեցընէին մէջը՝ անոնք ամմէնը դուրս հանեց պավիեւային արքունիքը, երկու հատոր գիրք նեմցէի լեզուով տպեց, ամմէն եւրոպայի տէրութեանց խրկեց։ Սոյն աղանդոյս հանօղը եղաւ վայսհաւպտ մէյմը որ ինկօլշտատ քաղաքը օրէնք դաս կուտար. 28 տարվան երիտասարդ, ամմէն չարութէ մէջ ընկղմած, բայց սաստիկ կեղծաւոր, տակէն խաղցող, բարակ նենգագործ, շըջահայեաց և միանգամայն յանդուգն, ամմէն չարագործութէ վազօղ. իր աղանդը եղաւ մէկ ընկերութի մը խիստ գաղտուկ. մտնօղը աստիճան աստիճան վեր կըհանէին, ամմէն մէկ աստիճանի մէջ անած անտէր ըլլալ կըստորվեցընէին, թէ որ մէկը խղճմտանք ընէր, աւտուաջ չէին տանէր։ Սորվեցուցածնին սակում կըբերէ լսողին, ջնջօղ է ամմէն կարգ՝ կանոն՝ օրէնք՝ կառավարութի, վարքը՝ հաւատքը ավրօղ, մարդը լման անասնոյ պէս ընօղ. ուրիշը զըրկելը՝ յափշտակելը օրինաւոր կըսեպէ. գաղտուկ պահելը ասոնց հիմը (թէմելը), ըլլալով՝ կըյորդորէ ինքիր զինքը սպաննել ծածուկը դուրս չիհանելու համար։ Սոնց ծածուկը դուրս չէր ելլար, բայց տէրութեան հրամանովը իրենց բարեւ

գիրները բանալով հասկցան, ետքը ալ
աղէկ հասկցան իրենց մատեանները կար-
դալով. իմացան որ շատ տարածվերեր պա-
վլիկէուայի մէջ, ու շատ երևելի անձինք մէջն
եկին մտած, որոնց գլխաւորներէն ո՛րը փա-
խան, ո՛րը քշվեցան, ո՛րնալ պատժըվեցան
պավլիկէուայի մէջ։ Բայց փախչօղները ու-
րիշ տեղվանք պաշտպաններ գտնալով ան
տեղվանքները սկսան սերմանել իրենց ա-
նօրէնութիւը ։

Պրուշէ Թագաւորին խնդիրքը հռոմայէն ։

Ես ատեններս պրուշին Թագաւորը Է. Ֆե-
տերիքոս խնդրեց սրբազան պապէն՝ որ նոր
եպիսկոպոս մը դնէ մինտէն քաղքին մէջը,
որպէս զի ան գաւառները որ վէստ-Ֆալիայի
մէջ ունէր՝ ամմէն կերպով բաժնէ քօլօ-
նիայի կայսըրնտրին հոգևոր իրաւասութէ,
վասն զի խիստ դէմ էր իրեն տեմնալ որ՝
մէկ աւտըրիշ տան իշխան մը իր ժողովուր-
դին վրայ իշխէ ։ Բայց հռոմ չիկատարեց
պրուշի Թագաւորին խնդիրքը իրեք պատ-
ճառի համար, մէյմը՝ որ մէկ Թեմ մը
կտրել պզտիկցընել առանց իր եպիսկոպո-
սին հաւանութեանը՝ դէմ էր կանոնական
օրինաց ընդհանրապէս նայելով, դէմ էր
նաև նեմցէի եկեղեցնայ արտօնութեանց.
երկրորդ՝ կըմտածէր որ՝ աս ընելով չըլլայ
Թէ սրդողցընէ քօլօնիային կայսըրնտրը,
կայսրը, ու դօյչըանային մեծ դուքսը, որոնք

իրենքնալ եղբար էին, իբրև աւստրիոյ տանը վրէժխնդրութիւն մը ըրած սեպել տալով. Երրորդ իմացուաւ որ՝ պրուշի Թագաւորին ընտրըված եպիսկոպոսը պիտոր ըլլար տուվալ բիրավ անուն քահանան, որ շատոնցմընէ բօցտամ կըբնակեր. ասիկայ Թէպէտ գիտուն մարդ էր՝ բայց հռոմայի կարծիքներուն դէմ էր։

Ըս պատճառներս լսելով պրուշին Թագաւորը՝ ինքնալ լուռ կեցաւ, բայց ուղղափառներուն համարձակ ազատութիւն կուտար, մանաւանդ որ պրանտեմպուրկ գաւառին մէջ՝ բօմէրանիայի մէջ՝ մակտեպուրկ, ալպէրշթատ, և արևելեան բրուսիայի մէջ ուղղափառներուն աւագերեցները կըհոգան ուղղափառ զինուորները. ասոնք իրենց իշխանութիւնը կառնեն հիլտեսհէյմին իշխանաւոր եպիսկոպոսէն՝ որ կըսուի հիւսիսային եպիսկոպոս, ըստ որում իրեն իրաւասութիւնը կըտարածուի ամմէն ուղղափառներուն վրայ՝ որ բռօդէսդանդ իշխանաց երկիրներուն մէջն են, եւրոպային հիւսիսային դին, միայն թէ շվէտին ու մոսկովին երկիրը չի խառնըվիր։

Քանի տեղ որ առաւ պրուշին Թագաւորը Բ. Ֆետերիքոս պատերազմելով և կամ դաշնադրութիւն ընելով, ուղղափառներէն չորս մեծ թեմ իր իշխանութեան տակը անցան, պրեզլաւուին թեմը՝ որուն տակն են շլէզիային ամմէն ուրիշ եկեղեցիները, քուլմին, վարմիային, ու քույավիային թեմերը։ Պրեզլաւուին եպիսկոպոսը շաֆկօց

կամքը՝ որովհետեւ 25 տարվընէ վեր քշված էր, քորեպիսկոպոսներէն մէկը անոր տեղը կըհոգար։

Լեհաստանը բաժնըվելէն ետեւ՝ Վարմիայի եպիսկոպոսը Պէռլին գնաց՝ որ Պրուշի Թագաւորին. հետ տեսնըվի, հոն աղաչեցին իրեն որ՝ օծէ ուղղափառներուն երկրորդ եկեղեցին. օծման հանդէսը ըլլալու ատենը՝ Պրուշի Թագաւորին ամմէն ընտանիքը հոն ներկայ գտնըվեցան։ Աս եկեղեցւոյ քովնալ 1782 մէկ դպրատուն մը շինվեցավ, վերակացութեամբ մէկ Ֆամինկացի խաթունի մը ծախքամբ ըրված տունէն. աս խաթունս ընկեր էր ու կենակից ան իշխանուհւոյն՝ որ կին էր Հէնրիքոսի՝ Պրուշի Թագաւորին եղբօրը։

Աս ամմէն բանը աղէկ կըցըցընեն՝ որչափ ազատութիւն համարձակութիւն տրված էր ուղղափառաց Պրուշի երկիրներուն մէջ։

Պաւիէրան փոխել ուզելուն համար կայսրին Նահանգներուն հետ՝ նոր հաշտառութիւն կըլլայ Գերմանիայի մէջ.

1785։

Ինչպէս որ վերը պատմեցինք, Թէպէտ 1783էն սկիզբները Վէռսալիա՝ որ Փարէզին քովն է՝ հաշտութիւն եղավ Նեմցեին ու Ֆիլէմէնկին մէջ, բայց 1785 Յոսեփ կայսրը բան մը առաջարկել սկսաւ, որ շատ կռիւներու պատճառ պիտոր ըլլար։ Աս-

տեսնար յովսէփ որ Ստորին Նահանգները՝ որոնք նաեւ Պելճիա կըսուին՝ շատ հեռու էին իր երկիրներէն ու բաժնըված, շատ խարճի տակ զինքը կըձգէին, պէտք էր իրեն մէկ արքունիք մը պահել պրուսսէլլ քաղքին մէջը. որովհետեւ զանազան նահանգ զանազան օրէնք ու արտօնութիւններ ունէին՝ ամմէն մէկ դիպուածի մէջ նորութիւ կըպահանջէին. աս թող տուր՝ մէկ ալ կիրմընալ էր՝ երբոր Ֆրանսզներուն հետ նեղցեն ավըրվելու ըլլար՝ շուտ մը կընային Ֆրանսզները ներս վազել առնել՝ ըլլալով մէկ բաց երկիր մը. Աս ամմէն բանը մտածելով յովսէփ կայսրը՝ ուզեց որ ձգէ աս երկիրը, անոր տեղը պավիէրան առնէ, արով ամմէն դունա գետին վրայ կիշխեր, իր ամմէն սահմանները մէկ տեղ կըկպցըներ, միաստանի մէկ երկիր մը կըլլար. իր իշխանութիւնալ կըտարածէր ամմէն հարաւային գերմանիայի վրայ մէկ ծարէն մէկալ ծարը, բաց 'ի քանի մը ազատ քաղքըներէն ու պզտըտիկ իշխանութիւններէն. իր թեւը կըտարածէր ուէնօ գետին վրայ՝ սեւ ծովին՝ ադրիական ու միջերկրական ծովին վրայ, թրեստէ ու դօսքանան ունենալով, սահմանակից ըլլալով Ֆրանսայի՝ լեհի՝ ու մոսկովին հետ։

Անոր համար ուզեց պավիէրային դքսութիւը՝ որուն մեծ մասը մարիամ թերեզինա կայսրուհին տըվէրէր բալատինու կայսրընտրին, ամմէնը ինքը առնէ, անոր տեղը կայսրընտրին տայ ստորին նահանգները։

Այս փոփոխութիւնը լէհրպախ կոմսին ձեռ-
քովը առաջարկեց ծերունի կայսրընտրին՝
որ կըսվէր կարոլոս Թէոդորոս, և տէր էր
պավիէրայու և բալադինու,. հասկըցընե-
լով ինչչափ կըմեծնար իր ցեղը պավիէրան
փոխելով ստորին նահանգներուն հետ, կըր-
նարալ Թագաւորի անուն ունենալ Թէ որ
ուզէնար: Ստորին նահանգները պավիէ-
րայէն աւելի հարուստ էին ու բարեբեր,
մէջինները աշխատասէր: Պավիէրային
պինտ աղէկ քաղքընները մօնաքօ, տօնա-
վէրդ, ինկօլշդատ, վար էն ստորին նահան-
գաց քաղքընրուն քովը որ կըսվին պրու-
սէլլ, կանտ, լօվանիօ, անվէրսա, պրու-
ճէս, օսդէնտա: Ստորին նահանգներուն
ժողովուրդը շատ էր, 2 միլիոն ու կէս մարդ-
կար մէջը, իսկ պավիէրային ժողովուրդը
չէր անցնէր քան 1 միլիոն ու 800 հազար:
Ստորին նահանգներուն եկամուտը առանց
խարճի 10 միլիոն ֆիօրին կըբերէր տա-
րին, պավիէրայինը՝ հազիւ 8 միլիոն, որով
հետև 1776 աղէկ մէկ կտորը կայսրընտրին
ձեռքէն դուրս ելավ: Ստորին նահանգնե-
րը ունին աղէկ նաւահանգիստներ ովկիա-
նոս ծովուն վրայ և մանիքա նեղուցին վը-
րայ, որոնցմէ ֆիանտրան ունի նաւահան-
գիստներ ինկիլդերայէն դիմացը, որով
օր մը կրնար ծովեզերեայ տէրութեանց հետ
մէկ արգէնի Թագաւոր մը ըլլալու:

Այս բաներս լսելով Թէոդորոս 1785 յունվ.
15, միտքը դարձաւ, ուզեց պավիէրան
ստորին նահանգներուն տեղը փոխել. Ճար

տատամսութիւն մը զօրաւոր պատճառներով զուրցըլված շատ բան փոխել կուտայ։ Բայց աս դաշնադրութիւնս աղէկ հաստատելու համար՝ պէտք էր որ նաև տիւ բօնդին դուքսին հետ որ էր Ե̅. կարոլոս, և մաքսիմի-լիանոսին հետ՝ որ իր եղբայրն էր, խօսք կա-պէին, հաւանութիւն առնելն, ինչու որ կարո-լոս Թէոդորոս կայսրընտիրը զաւակ չունե-նալով առանց պիտոր ըլլային իրենն ժառան-գը։ Նու որովհետև յովսէփ կայսրը դես-պան (էլչի) մը չունէր տիւ բօնդին դուք-սին քով, ռօմանցօֆին մոսկով կոմսին յանձնըվեցաւ որ խօսի դուքսին հետ ու հաւնեցընէ, վասն զի աս ռօմանցօֆը մոս-կովի դիւանին դեսպան էր խրկըված երկու շրջանակներուն մէջը՝ որ էին վերի ու վա-րի ռէնօ. մոսկովն ալ խիստ կապված ըլլա-լով յովսէփ կայսեր հետ՝ անոր ուզածը խիստ սիրով կընէր։ Ռօմանցօֆը գնաց դուքսին հետ խօրաթեց ցըցընելով որչափ աղէկ բան պիտոր ըլլար՝ թէ որ բալադի-նու ցեղը բարեկամաբար ինքիր կամքովը աւստրիոյ տանը կամ նեմցէին տայ վերի ու վարի պավիէռան, վերի բալադինան, լուչէմպէրկին լանկռավիութիւնը կամ իշխա-նութիւնը, նէօպուրկին ու սուլցպախին դուք-սութիւնը։ Ասոնց տեղը իրեն առնէ ամմէն աւստրիական սորոյին նահանգները, անոր հետ մէկ տեղ 10 միլիոն Փիօռինը, որ օլան-տայէն առնելիք կայ առնելու. ասկէց զատ կայսրընտրին 3 միլիոնալ տըվի տեղը փո-խելուն համար. աս ամմէն երկիրներնալ

պուակօյնայի թագաւորութիւն անուանե-լով՝ կայսրընտիրը անկէց ետքը թագաւոր ըսուի :

Աս խօսքերս խիստ անուշ եկաւ դուքսին՝ մանաւանդ թագաւորական անունը, բայց ինչ որ կընէր՝ մէկ կոմս մը ունէր իրեն խոր-հրդական հօֆֆէնֆելտ անուն, առանց անոր հարցընելու բան մը չէր ըներ, առաջ անոր հարցուց : Աս կոմսը՝ կամ որ իրեն աղէկ չերևցաւ աս փոխփըուտելը, կամ որ՝ ումանց ըսածին պէս պրուշի թագաւորին լրտեսն (չաշուտն) էր, իրմէ եկամուտ կա-պած ունենալով, շուտ մը մարդ խրկեց պէռլին, պրուշի թագաւորին հասկըցուց : Աս լսածին պէս պրուշին թագաւորը Բ. ֆետերիքոս՝ խիստ դժարցաւ, տեսաւ որ իր վերջի ըրած պատերազմին օգուտը պարապ պիտոր երթար, որուն համար անչափ յոգ-ներեր, անչափալ խարճ ըրերեր, իմացա-ւալ որ՝ անօգուտ պիտոր ըլլար նաև ան աշխատանքը՝ որ քիչ մը առաջ քաշերեր բալադինեան ցեղին ձեռքը մնալու համար պավիէռան. հասկըցաւալ որ՝ աս բանս շատ շահաւոր պիտոր ըլլար նեմցէլին՝ որուն ամմէն մէկ շահիլը մեծնալը՝ իրեն մէյ մէկ խոց կըլլար, մէյ մէկ մեծ վնաս կըսեպեր : Ասանք մտածելով մէկ շրջաբերական թուղթ մը հանեց գերմանիայի մէջ, գրգռելով գերմանիային մեծ իշխանները որ աս բանին դէմ ըլլան, ցըցընելով քանի վնասակար բան պիտոր ըլլար ասիկայ :

„ Անգլթին մէջը առաջ կըպատմէ. ինչպէս

„ պաւիէռային կայսրընտիրը մեռնելէն
„ ետեւ որ կըսուէր յովսէփ մաքսիմիլիանոս՝
„ նեմցէն ուզեց վարի պաւիէռան իրեն
„ առնել ան դաշնադրութ̃ը՝ որ 1778 յունվ.
„ 3 ըրեր էր բալադինօի կայսրընտրին հետ,
„ որ էր յաջորդ մեռնող կայսրընտրին,
„ բայց տիւ բօնդին դուքսը ու ինքը պրու-
„ շին Թագաւորը աս բանիս դէմ կեցեր-
„ էին ։ Շատ վիճմունքէն ետեւ՝ 1779
„ մայիսի 13՝ եղած դաշնադրութ̃ որ դէշէն
„ քաղաքը եղավ, նեմցէն հրաժարեցաւ իր
„ ամմէն ժառանգուէ̃ պաւիէռային վրայ.
„ անոր տեղը պաւիէռային չորս գաւառը
„ առավ, որ 1 միլիօն ու կէս ֆիօրին եկա-
„ մուտ կըբերեն տարին. անոր ութերորդ-
„ թէութէ̃ը մէջ պարտաւորեց զինքը նեմ-
„ ցէն՝ որ պաշտպան կենայ պավարեան բա-
„ լադինայի ցեղին, որուն յայտնի ապրա-
„ պըրված է որ իր երկիրը ուրիշի չիտայ ։
„ Հիմա նեմցէն նորանց կուզէ փոխել աս
„ երկիրը՝ ֆրանսան ու մոսկովը մէջ խառ-
„ նելով, առանց մէկ խօսքի մը մէջ խառ-
„ նելու պրուշը ու գերմանական ժողովը,
„ որոնք մասնակից ու պաշտպան ըլլալով
„ դէշէն եղած դաշնադրութէ̃ը, իրաւունք
„ ունին խառնըվելու. տիւ բօնդին դուքսն-
„ ալ նորէն աս բանիս դէմ կըկենայ, իս
„ պրուշի Թագաւորն ալ կըյորդորէ որ դէմ
„ կենամ։ Կըսեն որ 1714 պատէնին մէջ
„ եղած դաշնադրութ̃ը՝ պավարեան բա-
„ լադինեան տունը ունի իշխանութիւն ժը̃
„ թէութէ̃ը կեօրէ ուզածին պէս փոխել

„ իր երկիրը. բայց հին դաշնադրութիւնները
„ կըցըցընեն որ՝ աս փոխելը կիմացուի մէկ
„ պզտիկ երկրի մը վրայ, մէկ քանի գաւա-
„ ռի մը վրայ, չէթէ մէկ մեծ կայսրըն-
„ տրութէ երկրի վրայ, որ ոսկի կոնդակին
„ կարգադրութեները կեօրէ՝ և վէստֆալեա
„ եղած հաշտութեները կէօրէ՝ չըլլայ պիտոր
„ ասանկ փոփոխութի, որովհետև ասիկայ
„ ամմէն կայսրընտրաց սահմանադրութիր՝
„ և կայսերութեն դաշնակցեալ դրութիւնը
„ կըսայ ավրել: Թէև ընդունինք որ պա-
„ տէն եղած դաշնադրութիր թոյլ կուտայ
„ պավիէռայի տանը մէկ կտոր մը երկիր
„ փոխելու՝ բայց դէջէնին մէջի դրված ու-
„ թերորդ թէութիր վերցուց աս թոյլտու-
„ ութիր, ասանկալ ան պայմանադրութիր՝
„ որ իրենց մէջը ըրին բալադինեան կայսր-
„ ընտիրը ու տիւ բօնդին դուքսը՝ վերցուց
„ ան թոյլտուութիր, ըստ որում անոր մէ-
„ ջը նորոգեցին բալադինեան տանը պայ-
„ մանները՝ որ եղած էին 1766, 1771, և
„ 1774. իսկ ան պայմանները՝ անայլայլակ
„ (մէշըութէ) ըրին իրեն ամմէն երկիրնե-
„ րը մշտնջենաւորապէս հաստատեցին ան
„ ցեղին հին պայմանադրութիր՝ որ եղած
„ էր 1329 բավիայի մէջ, որով կըպարտա-
„ ւորին ան ցեղին ամմէն մէկ մարդը չօտա-
„ րացընել իրենց երկիրը:
„ Հիմա որովհետև դէջէն եղած դաշնա-
„ դրութեները պաշտպան են պրուշին թագա-
„ ւորը ու սաքսօնիային կայսրընտիրը՝ Փը-
„ րանսային ու մոսկովին միջնորդ ըլլալովը,

» կը հետեւի որ՝ մէկ փոփոխութիւն մը չի կըր-
» նար ըլլալ առանց ատոնց՝ առանց գեր-
» մանական իշխաններուն հաւանութեան ,
» մանաւանդ որ՝ պավիէրային ընդարձակ
» ու բարեբեր երկիրը աւստրիոյ տանը վրայ
» անցնելով, աւստրիական տունը կըլլայ
» մէկ միապետութիւն մը քառակուսի խիստ
» մեծ , որով գերմանիային հաւասարակըշ-
» ռութիւնը կըկորսուի, կայսերական իշխաննե-
» րուն ազատութիւնը ու ապահովութիւնը կը-
» վերցըվի ։ Աւստրիոյ տունը թող յիշէ որ՝
» ինքը ծովեզերեայ տէրութեանց խօսք տը-
» ված պավիէրա եղած դաշնադրութեանը
» մէջ 1715 և 1751 , ատորին նահանգնե-
» րուն մէկ կտորը չի տալ անանկներուն՝ որ
» իր ցեղէն դուրս են ։
» Հիմա ես պրուսի թագաւորս որովհետեւ
» առաջ պատերազմեցայ փոփոխութիւն մը
» չըլլալու համար , աս բանսալ դէջքէն ե-
» ղած հաշտութիւնը հաստատեց , աս պա-
» տերազմելովս իրաւունք մը վաստըկեցայ
» դէմ դնելու ամմէն պավիէրային փոփո-
» խութեանը որ կրնայ ըլլալու ։ Առանկով
» հիմա կառաջարկեմ, թող ինծի հետ մէկ
» ըլլան գերմանիայու ամմէն իշխանները
» մէկ տեղ մէկ դաշնադրութիւն մը ընեն
» հետեւելով վեստֆալիա եղած դաշնա-
» դրութեանը, որպէս զի պաշտպանեն կայսե-
» րութեան սահմանադրութիւնը. ամմէն մէկ
» իշխաննալ ապահով մնան իրենց երկրին
» վրայ մէկ փոփոխութիւն մը չըլնելու ։ Աս
» դաշնադրութիւնը մէկիմը մնասելու համար

» չըլլար, այլ գերմանիայի սահմանադրու-
» Թիւը աւելի հաստատելու համար ։

Պրուսը կը գրգռէ նոր դաշնաւորութիւն մը ընել
փոքր Գերմանիոյ մէջ.

1785 ։

Այս միջոցիս մէջ Բ. Ֆետերիքոս պրուսին թագաւորը կընայեր մէկ հրամայողական մեծութիւն մը ձեռք ձգել գերմանիայու կայսերուն իշխանացը մէջ, աւելի զօրանալու համար անոնք կ'ըսէր, ինչ կարծէք՝ յովսէփ կայսրը մէկ բնական ներհակութիւն մը ունենալով ամմէն եկեղեցականաց դէմ՝ միտքը ան է որ՝ գերմանիայի մէջ որչափ եկեղեցական իշխանութիւններ՝ եպիսկոպոսութիւններ՝ աբբայութիւններ կամ՝ ամմէննալ պիտոր աշխարհական ընել տալ, անով գերմանական հին սահմանադրութիւը բոլորովին տակնու վրայ ընէ ։ Այս որովհետեւ աչքով նինալ կրտեսնային որ յովսէփ կայսրը իր երկրին մէջը շատ ասանկ փոխփոխութեններ կընէր, անկէց իրաւ իրենց վրայալ վախ կուգար. բայց Ֆետերիքոս որչափ որ խօսքով ամմէնը կը գրգռէր, այնչափալ կիմանար որ՝ չունէր ան ուժը իր ուզածը առաջ տանելու համար, որովհետեւ չունէր մէկ զօրաւոր դաշնակից մը ։

Ան ատենը իր վէզիրին տեղն էր պարոն հէրցպէրկը, ասիկայ կատարեալ տեղեակ ըլլալով ամմէն գերմանական իշխաններու

պատմութեանը՝ տեսնալովալ իր Թագաւո- րին տրտմութիւնը մռմռուքը, մէկ խօսակ- ցութէ մը մէջ պատմեց իրեն ըսմալքալտա եղած անուանի դաշնակցութիւնը, որ 1530 բողոքէսդանդ իշխանները ըրին, և 1537 նորոգեցին Ե. կարոլոս կայսեր դէմ, որ ամմէն եւրոպա դողացուց. աս պատմելով կըյորդորէր որ հիմաալ ինքը անանկ ընել- տայ, Փետերիքոս առջի բերանը անչափ չի- հաւնեցաւ, բայց ետքը մտածելով հաւնե- ցաւ։ Ասոր դրգռելովը գերմանիայի կայ- սերութէ իշխանները յիշեցին ուրիշ դաշ- նակցութիւնները՝ որ իրենց առջինները ա- տեն ատեն ըրերէին մէջերնին՝ կայսեր ա- հաւոր իշխանութիւնը չափաւորելու համար, ասոնք յիշելով իրենքալ օրինակ առին ը- նելու։

Աս բանիս մէջ պրուսի Թագաւորին հետ միաբանեցան պրունսվիքին դուքսը, սաքսօ- նիային ու հաննօվերին կայսրընտիրները, մակօնցային կայսրընտիրը՝ որ էր արքե- պիսկոպոս, վէյմար սաքսօնիային դուքսը. ետքնալ պզտիկ իշխանները եկեղեցական ու աշխարհական. ասանկալ հասսիա քաս- սէլին լանտկռավիօյի (իշխանին) յաջորդ- նալ մէկ եղավ մեռնող հօրը հետեւելով։ Աս գերմանական միաբանութիւնը վճռուե- ցաւ պէռլին յուլիսի 23։ Պրուսին Թագա- ւորը բանը ուժովցընելու համար՝ սեպտ. մէջ 80 հազար զօրք ոտքի վրայ հանեց չվէյտնիցի ու պրուսի մէջ. ինքնալ անձամբ հոն գնաց մեծ զօրապետներով, ուր շատ

երեւելի անձինքներ ու հազարապետներ ժողվըրդեան Փրանսայ, մոսկով, ինկիլիզ, և սաքսոնացիներ : Բայց քօլօնիան՝ դուքսերին՝ մեքլեմպուրկ՝ վիրդեմպերկ՝ սալիզպուրկ՝ սաքսոնիա կողման, վիսպուր Փրէյսինկան՝ և ուրիշ իշխաններ՝ յայտնապէս չուզեցին միաբանիլ ան դաշնակցութենը, ցըցընելով. ինչպէս ան բանը՝ որ աղէկ է և ընելու է ատեն մը, աղէկ չըլլար ուրիշ ատեն մը. գիտէինալ որ՝ պրուշին բասծը մինակ իր չափը նայելէն առաջ կուգար, հասարակի բարին իրեն պատրուակ (մահանայ) կըներ : Ասանկով աս միաբանութիւնը պարապ ելաւ, ամմէն իշխան ետ կեցան, օտարին կուվին մէջը չուզեցին մտնալու (1) :

Սոփկայ յովսէփ կայսեր եղաւ մէկ նոր սըր-

---

(1) Ասիկայ առջի անգամը չէ՝ որ կըխօսվի պավիէռային ցեղին վըրայ անցընել աւստրիական ստորին նահանգները. 1703 Փրանսային թագաւորը Ժդ. լուիզ ուզեց Ե. փիլիպպոսէն սպանիայի թագաւորէն, որ ստորին նահանգները կամ պէլճիկան տրվի է, մաքսիմիլիանոսի կայսրընտրին, որ Ա. լէոբոլտոս կայսեր փեսան էր, եաքը մեծ զօրագլուխ եղաւ Փրանսզներու, (ան ատենը ստորին նահանգները սպանիային տակն էին) : Աս բանս 'ի գործ դրին, տէր ընելով կայսրընտիրը մեծ մասին վերոյիշեալ երկիրներուն. Փրանսզնալ ան երկիրներէն իրեն առավ լուշէմպուրկը, շառլըռուա, նամուր : Աս բանս ըրին իբր վարձահատոյց ըլլալու համար ան երկան ծառայութեանը՝ որ պավիէռային կայսրընտիրը ըրավ Փրանսայի ու սպանիայի համար՝ նեմցէին դէմ. բայց աշխըրքիս գիտուածը ըրավ որ նոյն ստորին նահանգները ամբողջ անցան Գ. կարոլոս նեմցէ կայսեր ձեռքը, ան կերպով ինչ կերպով որ 200 տարիէն աւելի մնացերեր սպանիային ձեռքը :

տանջող մը, խիստ բարկացաւ աս նոր դաշնակցութեն խօսքին վրայ՝ որ պրուշի թագաւորը կառաջարկեր նեմցեի իշխաններու, երբոր մեկ ուրիշ կայսր մը. մոսկովի թագուհին ալ Բ. կատարինէն դժարցաւ ան կծու խօսքերու վրայ՝ որ պրուշին հանած թղթին մեջը կային. ան խօսքերը կերեւար որ իրեն դեմ գրուած էին, անոր համար ինքն ալ ամմէն իր դեսպաններուն (որ գերմանիայի զանազան իշխաններու քովը կային), մեկ թուղթ մը գրեց օստերման կոմսին ձեռքովը՝ որ փոխանորդն էր դիւանագրին. ցրցընելով մեջը իր դժարելը ան սուտ ձայնին վրայ՝ որ իր դաշնակցին յովսեփ կայսեր վրայ կըձանձընեին, թե գերմանիայի սահմանադրութիւնը չուզեր պահել, գերմանական իշխաններուն ազատութիւնը կըջանայ վնասել: „Աս ձայներս որ
„ պրուշեն կելլայ կըտարածուի, ուրիշ բան
„ չէ կըսեր՝ որ մեր երկուքիս նեմցեին ու
„ մոսկովին դաշնադրութիւնը իրեն խիստ
„ դեմ գալով կուզէ ամմենուն թշնամի
„ հանել, որ աս կապս քակէ աւրէ մեկ
„ վախճանի մը համար՝ որ հիմա կըլլեմ,
„ եաքը երբոր ատենը գայ՝ պիտոր հռչա-
„ կեմ ամմենուն: Հիմա ամմէն իշխան ա-
„ պահով մնան՝ որ ես ոչ երբեք պիտոր
„ խառնըվիմ, կամ ձեռք՝ օգնութիւն տամ
„ անանկ բաներու՝ որ հիմակվան գերմա-
„ նիայի վիճակը աւրող ըլլան„:

Ասանկ թուղթ մըն ալ քաւնից իշխանը՝ որ յովսեփ կայսեր վեզիրն էր՝ ղրկեց իր դես-

պաննէրուն 1785 յունիսի 23. դանկտելով ան խօսքերուն վրայ՝ որ պրուշին Թագաւորը գրերէր իր հանած Թղթին մէջը, ցըցընելով ինչպէս ամմէնն ալ զրպարտութի էին, սուտ խօսքեր էին. ետքը կառաջարկէ որ՝ գերմանական սահմանադրութիը պաշտպանելու համար՝ ամմէն գերմանիոյ իշխանները Թող մէկ ըլլան նոր կապով մը կապվին կայսեր հետ. աս բանիս համար գերմանիայու իշխաններէն հաւանութի առէք, Թող իրենց կարծիքը յայտնի զուրցեն, արդեօք իրենց գլխուն հետ կըմիանա՞ն կըկապվի՞ն՝ որ է կայսրը, Թէ պրուշին առաջարկած դաշնակցութիը կընեն։

Կայսերական իշխաններէն աւելի պավիէռայի ժողովուրդը շփոթեցաւ, երբոր լսեցին Թէ կայսրընտիրը մօնաքօ քաղաքը ու՛ր որ կընստէր՝ պիտոր ձգէր՝ մանհէյմ քաղաքը պիտոր ելլար երթար. տակնուվըրայ եղան, աս բանիս համար աղերսագիր (արզուհալ) մը տըվին, ան ալ պատասխանեց. „Իրաւ է, առաջարկեցաւ ինծի պա-
„վիէռան փոխելու ստորին նահանգներու
„հետ, բայց մէկ հիմնական (Թէմէլլի)
„բան մը վճռըված չէ՝ Թէ որ ըլլալու ալ
„ըլլայ, պավիէռայի ժողովրդեան վնասա-
„կար բան մը պիտոր չըլլայ.

Յովսէփ կայսրն ալ տեսնալով որ ասչափ շփոթութի հակառակութի ելավ, իր մտքի դրածէն ետ կեցաւ, անանկով պատերազմելուն տեղը Թղթով լմնցուցին բանը։

## Տանձքա քաղքին վրայ.

## 1784—1785։

Պրուշի Թագաւորին միտքը անչափ դէմ կենալուն՝ աս էր որ, չէր ուզէր ամենեւին աւստրիոյ տանը մեծնալը, թէ որ մեծնալուալ ըլլայ՝ կընայէր որ ան ատենը ինքնալ մէկ քան մը փրցընէ, ինքնալ մեծնայ։ Իր աչքը խիստ բացած էր տանձքա քաղքին վրայ, որ Լեհերուն մէկ հասարակապետութին մըն է Հանսէատիքա ըսված, շահաստան քաղաք մը ուր շատ առուտուր կըլլայ, եւ հին պաշտպանութեանը տակ, վիստուլա գետին բերանը պալտիկ ծովին վրայ, ուր կըլլայ քէնհըրխպարին առուտուրը, եւ հին բաժանումը չեղած 1772էն առաջ խիստ ծաղկած քաղաք էր, ցորեն, տախտակ, մեղրը մոմ ամմէն տեղ կըխրկէր, բայց իրեք տարիէն վեր իր առուտուրը խիստ քիչցերէր։ Աս քաղաքս պրուշը կուզէր իր տակը առնել, բայց գիտէր որ առանց կայսեր հաւանութեան չէր կրնար ըլլալ, մանաւանդ առանց մոսկովին հաւանութեանը, որ ամմէն հիւսիսային բաներուն մէջը կըխառնըվէր, անոր ձեռքովը կըդառնային. թէ որ աս երկուքը տանձքա առնելու հաւանութիւնը տային, պրուշնալ աչք կըդնէր պավիէռային փոխելուն վրայ, հոգը չէր ըլլար ամենեւին գերմանիային հասարակշռութիւնը կորսուելուն վրայ. բայց մոսկովին խիստ դէմ էր որ՝ մէկը տանձքայի վրայ խառնըվի, Ֆի-

լեմքնկնալ տանիմառքանալ առ բանիս դէմ կըլլային ։

Երբոր պրուշը տէր եղաւ բօմէռէլիային, վառամիա, քուլմ շրջանակներուն, մաքսատուն (կէօմրիւք) մը դրաւ վիսդօլա գետին վրայ ծանր տուրք կապելով ամմէն նաւակներուն վրայ՝ որ ան գետով ապրանք կըտանէին տանձքա քաղաքը. ինքը պրուշը սաստիկ ծանր տուրք կառնէր լեհի ապրանքէն, իսկ ինքը տանձքայոցմէ կըպահանջէր՝ որ իր ամմէն ապրանքները ազատ անցնին. աս էր պատճառը ան դանկատնէրուն՝ որ տանձքացիք ամմէն եւրոպայի առջին կըդանկտէին ։

Լեհին պաշտպանութիւնը միշտ տկար ըլլալով ու իրենց մէջը անմիաբան, չէր կրնար բան մը ընել պրուշին դէմ. 1784 թուին հոն հասաւ որ՝ պրուշը զօրք խրկեց ինչվան տանձքային դուռը, քաղաքը պաշարեց, տանձքացիք ճար չունենալով ան քիչ զօրքը որ ունէին՝ վտանգաւոր տեղվանքը դրին, նեղցէին ու մոսկովին մարդ խրկեցին օգնութիւն ուզելով ։ Կեմյէն իր հաւանութիւնը ծածուկ ձեռքի տակէն խրկեց մոսկովին. մոսկովեան իր միջնորդութիւնը մէջ ձգելով 70 հազար զօրք խրկեց քուռլանտիայի դին, 24 ալ նաւ, 8 ֆռախաթա, որ բրուսիային ծովեզերքին վախ ձգէ. ատանցմէ քանի մը նաւ 1785 յունիսի մէջ քռօնշթատէն ելան քօբբէնհայկ գացին, իբր թէ միաբան տանիմառքայի նաւերու հետ՝ որ իրենց դաշնադրութեանը կեօրէ մոսկովին պէտոր տայր ։

Ասչափ զօրութիւը ցըցընելէն ետեւ հրատա-րակեց որ՝ ինչ որ պիտոր առաջարկեմ հաշ-տըվելու համար ուշացուցածին պէս պըրու-շը՝ Թշնամութի պիտոր սեպեմ, պատերազմ պիտոր սկսիմ։

Ասանկ ուժը ասանկ կտրուկ խօսիլը տեսա-ծին պէս պրուշին Թագաւորը՝ որոշեց հաշ-տութիւը ընդունիլ մոսկովին պաշտպան կե-նալովը, ինչու որ իր ոտքին ցաւը անընդու-նակ կընէր զինքը պատերազմելու. իսկ իր եղբօրը Հենրիքոս իշխանին յանձնել զօրքը՝ չէր համարձակեր, գիտէրալ որ ինքիրմէ չունէր ուժ մոսկովին ու Նեմցէին դէմ դնելու։ Պուանք մէկալ տէրութենց, Ֆրան-սան ցըցուց որ՝ ոչ պրուշին առնելը կուզէր և ոչ մոսկովին, քանի մը նաւ պատրաս-տեց պալթիկ ծովը խրկելու. Ֆիլէմէնկն ալ որտանց մտերիմ դաշնակից ըլլալով Ֆրան-սային հետ՝ յայտնի հրատարակեց որ իմ նաւերս ֆրանսային նաւերուն հետ մէկ տեղ կըխրկեմ տանձքային սահմանադրու-թիւը՝ կացութիւը՝ անփոփոխ պահելու հա-մար, որովհետեւ Ֆիլէմէնկը իր ապրուս-տին մէկ մեծ մասը տանձքային նաւահան-գստէն կըհանէր։

Աս բաներս տեսնալով պրուշին Թագաւո-րը Ֆետերիքոս՝ գրեց շվետի օրքեվարի Թա-գուհիին որ իր քոյրն էր՝ աս յիշելու խօսքս։ Մ՚ն Բառդ (1), [illegible]

(1) Բառդ բառը Ֆռէնկի լեզուի մէջ իգական սեռի ըլլալով. ան լեզուի կըյարմարցընէ իր բանը։

ու ոլիմպեան խաղերուն՝ որ յունաստան կըլլըվէր․ զանկակատուն մը կայ՝ որուն Ճարտարապետը իր վարպետութիւնը ցըցը-նելու համար՝ յատուկ կամքովը ծուռ շի-շինեց, 18 ոտնաչափ իր գլուխը ծռած ըլլալով իր հիմանը (թէմէլին) նայելով անանկ ծուռ կեցած է ան բարձրը աշտա-րակը բազմութ՟ե քարէ սիւներու (տիրեկ-ներու) զարդարված՝ չիփլչիր։ Ասոնք և ասոր նման զարմանալի բաները տես-նալով գացինք Ֆիօռէնցա գեղեցիկ քաղա-քը, որուն գեղեցկութեանը վրայ զարմա-նալով առտնօք շվէտի թագաւոր մը՝ ըսաւ․ այս քաղաքը լուր օրերը գոցելու է, միայն տօն օրերը բանալու է։ Գնացինք Բարմա, Դուռին, ու Միլան․ ամէն տեղ իրենց հա-մար շատ հանդէսներ ուրախութիւններ կը-նէին․ որովհետև ան ատեննալ իդալեան ջատոնցվընէ ծեծ տեսած ըլլալով, մէկ դըրախտ մը կըլլանէր, խիստ առատութ՟ե հանգստութ՟ե մէջ էր։

Յովսէփ կայսրը լսելով ասոնց Ճամփորդու-թիւնը, ինքն ալ նորէն Ճամփայ ելաւ լօմ-պարտիա երթալու՝ որ Միլանին գաւառն է. Թէպէտ շատ զբաղմունք ունէր՝ բայց չէր յոքնէր աշխատանքէ, ամէն բանին կուզէր խելք հասցընելու։ Վերոյիշեալ Նաբօլիին թագաւորը ու թագուհին մայիսի մէջ Ման-դուա հասան, Գոէ ըսված տեղը տեսան, որ առտնօք Վոնծակա ըսված ցեղին զուար-ճութ՟ե տեղն էր, մէջը զարմանալի քաշված-ներով զարդարված, որուն քաշօղը յուլիոս

ու ոլիմպեան խաղերուն՝ որ յունաստան կըլլըվէր․ զանկակատուն մը կայ՝ որուն ճարտարապետը իր վարպետութիւնը ցըցընելու համար՝ յատուկ կամքովը ծուռ շիներէ, 18 ոտնաչափ իր գլուխը ծռած ըլլալով իր հիմանը (Թեմելին) նայելով անանկ ծուռ կեցած է ան բարձրը աշտարակը բազմութիւ̃ քարէ սիւներու (տիրեկներու) զարդարված՝ չիփլչիր։ Այսոնք և ասոր նման զարմանալի բաները տեսնալով գացին Ֆիօռէնցա գեղեցիկ քաղաքը, որուն գեղեցկութեանը վրայ զարմանալով ատենօք շվէտի Թագաւոր մը՝ ըսաւ․ աս քաղաքը լուր օրերը գոցելու է, միայն տօն օրերը բանալու է։ Գացին բառմա, դուռին, ու միլան․ ամէն տեղ իրենց համար շատ հանդէսներ ուրախութիւններ կընէին․ որովհետև ան ատեններ իտալիան շատոնցվընէ ծեծ տեսած չըլլալով, մէկ դրախտ մը կընմանէր, խիստ առատութեն հանգստութեն մէջ էր։

Յովսէփ կայսրը լսելով ասոնց ճամփորդութիւնը, ինքնալ նորէն ճամփայ ելավ լոմպարտիա երթալու՝ որ միլանին գաւառն է․ թէպէտ շատ զբաղմունք ունէր՝ բայց չէր յոքներ աշխատանքէ, ամէն բանին կուզէր խելք հասցընելու։ Վերոյիշեալ նաբօլին թագաւորը ու թագուհին մայիսի մէջ մանգուա հասան, Պէ ըսված տեղը տեսան, որ ատենօք Վոնծակա ըսված ցեղին զուարճութեն տեղն էր, մէջը զարմանալի քաշված նկարով զարդարված, որուն քաշօղը յուլիօս

Հռոմայեցի կըսվէր, աս տեղին քաղաքը (1) Հինկ Թագաւոր մէկէն տեսաւ ժողվըված իր մէջը, որովհետև նաև լէօբոլտոս դօսքանային մեծ դուքսնալ (որ յովսէփ կայսեր եղբայրն էր), հոն եկած էր շատ թագաւորազուն մարդիկներով:

Երբոր Նաբօլիին Թագաւորը Ճէնօվա գնաց՝ յովսէփ ու լէօբոլտոս շատ երկան բարակ խօսակցութի ըրին մէջերնին, ետքը երկուքնալ ելան միլան գացին, կառավարութիը քննեցին, ժողովրդեան աղերսագիրները (արզուհալները) առին: Աս խօսակցութեան մէջ երկու եղբայր հաստատեցին իրենց մէջի եղած դաշնադրութիը՝ որ յունվ. 31. ըրերէին, թէ աւստրիական լօմպարտիայի մէջ եղած ժողովուրդը՝ դօսքանայի մէջ օտարական չիսեպվին, վայելեն ան ամմէն իրաւունքը ապրանքի ու երկրի վրայ՝ ինչ որ կըվայլեն բուն դօսքանցիքը. սաանկալ դօսքանցիք լօմպարտիայի մէջ օտարական չիսեպվին, նոյն իրաւունքները ունենան: Աս բանիս դէմ ինչ օրէնքներ եղած են առաջ՝ ամմէննալ խափանվին, ինչպէս նաև ան օրէնքն ալ խափանվի, որ կապսպըրէ ժառանգողին տեղը կամ բնակարանը փոխել, երբոր իրեն ընկած ժառանգութիը օտար տեղ է:

Հին սովորութիւն մը կար՝ ով որ կայսեր

---

(1) Աս տեղս ան ատենը խիստ շէն էր, հիմա Ֆըրանսային խառնվըլութէ նաև շատ խեղճ է:

առջին ըլլալը՝ պէտք էր ծունկ չոքել (1), յովսէփ կայսրը քննելով աս սովորութեան ակիզբը՝ թուղթ հրաման հանեց, որ ասկէց ետքը մէկը ծունկ չի չոքի կայսեր առջին, ծունկ չի չոքօղնալ յանցաւոր չի սեպվի, պատճառ բերելով որ՝ չի վայլեր մարդուն տալ ան երկրպագութիւնը՝ որ միայն այ կը-վայլէ: Ասանկ մարդավարութեան վրայ՝ յով-սէփէն առաջ Բ. կատարինէն մոսկովի թա-գուհին աղէկ օրինակ էր տըված, որ 1785 յուլիսի 14 թուղթ հանելով հրամմեց ամէ-նէն մոսկովի մէջ ու պզտիկ թաթարի մէջ եղօղներուն՝ թէ ասկից ետքը երբոր խա-սին՝ կամ թուղթ գրեն թագաւորին, գի-րենք Խոլոպ չի կանչեն, հապա Հպատակ (րայէ) կանչեն:

Կատարինէին սէրը ժողովրդեան վրայ աւե-լի կերևնար յատուկ հոգ տանելովը անոնց

---

(1) Կըսեն որ դիոկղետիանոս կայսրը ասիացոց մե-ծութիւնը սովորութիւնը ուզելով մոցընել, առջինը ե-ղավ աս կերպ երկրպագութիւնը խօթեց. իրեն յա-ջորդները աւելի շատցուցին, մանաւանդ ստանպօ-լու կայսերները, որոնց ուժը քանի որ կըտկարա-նար, անչափավ աւելի մեծարանք աւելի խոնարհու-թին կըպահանջէին իրենց ժողովրդէն: Աս սովորու-թիւնը կայսերներէն անցաւ թագաւորներուն մէջ, նաև զանազան իշխաններու մէջ՝ որ մազըրդներուն առնոր կիշխէին սպանիա եղած մէյ մէկ թագաւո-րութեան վրայ, սպանիայէն մտաւ գերմանիայի մէջ երկու եղբարներուն ձեռքովը որ կայսր եղան, և կըսվէին Ե. կարոլոս, ու Ֆ. Ֆէրտինանտոս. անանկ որ վիեննայի մէջ ուտելնին՝ հագվիլնին՝ ամէն բա-ներնին ըսպանիացոց պէս եղավ, թէպէտ և նեմցէ-ները սպանիացոցմէ բան մը չունէին:

պղտիկ տղոցը ու աղջիկներուն վրայ. ա-
ռանցմէ շատ տղաք իր դարպասը (սէրայը)
կտանէր, ինչ ազատութիւն որ կըպահվէին
իշխանապետն իր թոռները, անոնքալ ա-
նանկ կըպահէր, մեծ մօծ կանչել կուտար
զինքը, անոնց տղայական խաղերովը կըզ-
բաղէր կըխանդաղատէր սէր գութ ցըցը-
նելով:

Պրուշէ Թագաւորէ Բ. Ֆետերիկոսին մահը, իրեն
բնութիւնը.

1786:

Աս Թագաւորներուն ըրածը լսելով պըրու-
շին Թագաւորը Բ. Ֆետերիկոս՝ ինքնալ ա-
նանց հետևեցաւ. որովհետև չէր ուզէր որ
աս երկու դաշնակցեալ կայսերքը նեմչէն ու
մոսկովը մեծութիւն մը գովասանք մը ունե-
նան, ինքնալ արգելեց ամմէն դըրսի նշան-
ները երկրպագութեան, ասանկ գրելով իրեն
կօերց զօրապետին: „Ատոնցմէնէ կու-
„ զէի վերցընել, նկատումը (սայգը) կընէի
„ որ՝ ուրիշ Թագաւորներուն պատճառ չը-
„ տամ գանկտելու. առջինը ըլլալով վերը-
„ ցընել մէկ սովորութիւն մը՝ որ ընդհանրա-
„ պէս արմատացեր է„: Բայց ուրիշ դիւա-
ցէնալ անանկ խիստ հպատակութիւն են-
թարկուն կըպահանջէր իր ժողովրդէն, որ
երբոր մէկ լռթեամբ քարոզիչ մը մովսէս
մարգարէին խօսքովը ուզեց անիկայ խրա-
տել ատ բանին վրայօք, Ֆետերիկոս ա-

ասանկ պատասխան տըվավ։ „Մօ՛վսէս իրեն
„իսրայէլացիները կըկառավարէր, ինչպէս
„որ իրեն աղէկ կերեւնար. ես ալ իմ պրուս-
„ները կուզեմ կառավարել՝ ինչպէս որ ին-
„ծի աղէկ կերեւնայ։

Այս անուանի Թագաւորս Ֆրետերիքոս թէ-
պէտ ոտնացաւէն խիստ կընեղէր, բայց իր
տկարութիւնը չինայելով՝ ձիու վրայ շատ
կընստէր զօրաց հրամմելու համար. ասանկ
հրամմելով կարգաւորելով պէռլին՝ մակտէ-
պուրկ՝ և շլէզիա եղած զօրքին վրայ՝ բաց
տեղը կենալով՝ օդը (հավան) իր ծերութենը
մինաս տըվավ. երբոր բօցտամ դարձաւ՝
մէկ չոր հազ մը առավ զինքը 1785. ա-
սանկ որ ան ձմեռը չկրցաւ ընտանեաց
քովը երթալ՝ բարեկենդանը հոն ընել՝ ինչ-
պէս որ սովոր էր։ Երբոր իր բժիշկը Սել-
լէ անունով յայտնի ըրաւ իրեն՝ թէ աս
տկարութիւնը կընայ փոխվիլ՝ կուրծքի ջրգո-
ղութի (սըսխայութի) դառնալ, իրեն խիստ
դէմ եկավ. զիմմէրմանն անուանի բժիշկը
իրեն քով կանչեց հաննօվէրէն, ան կացու-
թիւը հասաւ՝ որ 1786 մարտի մէջ յուսա-
հատեցաւ իր կեանքէն. պրունսվիքի որբե-
վարի դքսուհիին թուղթ խրկելով՝ մէջը աս
բանս գրեց։ „Էկաւ ատեն, պէտք է որ
„ծերերը տեղ տան երիտասարդներուն՝
„որպէս զի ամէն ծնունդ աշխարհ մտնան,
աշխըրհիս խաղը իրենք ալ խաղան։

Բայց ասանկ ալ ըլլալով կառավարու-
թեան բանն ալ չէր ձգեր կըհոգար՝ ինչպէս
թէ ողջ ըլլար. իրեն հինկ մարդ ունէր

խիստ սիրական՝ շվերին կամքը որ մեծ ա-
խոռապետ (պիւյիւք միրահօռ) էր, հերց-
պերկ վեզիրը, կօերց գօրագլուխը, բինպօ
կամքը, և լուքքեզինի մառքեզը, երբոր
բան չէր ունենար՝ առանց հետ կըխօրա-
թէր: Երբոր իր ջրգողութիւնը խիստ երևան
ելավ, իրեն եկեղեցականներէն մէկը չէր
համարձակեր քովը երթալու, գիտնալով
որ չէր ուզեր. աս բանս իրեն ժողովուրդին
մեծ գայթակղութի՛ տըվավ. միայն կըսեն
որ՝ մօրավեան եղբարք կամ Ուսսիդ բը-
վածները՝ համարձակեցան իրեն թուղթ մը
ղրկեցին, որուն մէջը կըյորդորէին յաւի-
տենական կեանքին հաւատալ. ասոնց պա-
տասխան՝ Ֆետերիքոս իր դիւանադպրին
ապսպրեց որ՝ քաղաքավարութեամբ գրէ ան
բարի մարդիկներուն, որովհետև դեռ չէր
իրենց միտքը:

Ան ատենէն հասաւ իր ջրգողութիւնը՝ որ
ուռած ըլլալով չէր կրնար մահճի (տէօ-
շէկի) մէջ պառկիլ, աթոռի վրայ կընստէր,
հոնալ ինքիրմէ չէր կրնար շարժիլ, թէպէտ
խիստ սաստիկ ցաւ ունէր՝ բայց ամենևին
մէկ նշան մը ցաւի չէր ցըցըներ, հանդարտ
երես ցըցընելով քովինները հետ ուրիշ
բաներու վրայ խօսակցութիւն կընէր, խե-
լացի խօսքերով թղթեր գրել կուտար:
Իր կեանքին մէջը ոչ երբէք այնչափ յա-
ժարական ու հեղահոգի եղած էր, այն-
չափալ խելքը վրան, որչափ որ եղավ
իր ետքի օրերը. օգոստոսի 14 հաց ուտե-
լէն ետև՝ երեք ժամէն աւելի խօսեցաւ

շվէտի թագաւորին քաջութ̃եցը վրայ, որ կըսվէր կուստավոս ատոլֆոս, ասանկալ աս դարուս երևելի զօրապետներուն ըրածին վրայ, որ կըսվին վալլէնստէյն, թիլլի, եւգինէոս իշխան, լավտօն, սօլթիքօֆ, սուվարօֆ ։ Ասօղները կարծեցին որ դէպ 'ի ողջութ̃ի կերթայ աս չափ երկան խօսօղը, բայց քիչ մը անցնելէն ետև՝ լեզունալ զգայարանքներնալ բոլորովին կապվեցան, նոյն տարին 1786 օգոստ. 17՝ մեռաւ, 74 տարվան ու կէս, 46 տարի թագաւորելէն ետև. մեռնելէն ետքը տասը օր անցաւ բօցտամին եկեղեցնայ մէջ թաղվեցաւ, ուր որ կընստէր սովորաբար ։

Բայց իր յիշատակը ամենևին չիթաղվեցաւ, այլ աս դարուս պատմութ̃եր մէջ մէկ զարմանալի յիշատակ մը թողուց իր ըրածներով ։ Աս անուանի մարդս չափահասակ էր, զօրեղ՝ աւելի իր չարքաշութ̃իը կըպահէր իրեն ուժը, աղէկ կուտէր՝ բայց օրը մէկ ժամ մը միայն՝ մաճառի ու դօվքանայի գինի խմելով խիստ չափաւոր, իր սեղանին ամմէն խարճը իբրև 24 հազար ֆիօւրինի կըհանէր տարին. իր հագուստը՝ մահիճը (տէօշէկը՝) ամենևին պարզ, միայն սպանիայի քթախոտը շատ կըխմէր, յանկարծակի կաթուածէ պահօղ սեպելով ։

Աս Ֆետերիքոս շատ գործողութ̃եց մէջ աշխըրհիս աղէկ օրինակ տըվավ բարոյականութ̃ե, իրեն օրինակին թագաւորներ ունեցաւ աշկերտ, որոց մէջը մէկնալ Բ̃. յավսէփ կայսըրը էր ։ Նղավ աշխարհաշէն,

իմաստուն կենցաղակիրթ, վարպետ պատերազմող, փիլիսոփայ, օրէնսդիր, պատմագիր, նաեւ բանաստեղծ. իր բարեգործութեանց մէջը կը փայլէ ազգասիրութիւն, բարեկարգութիւն, քաջագործութիւն, ուսումնասիրութիւն. իր անձին վրայ կը փայլէ կանոնաւոր վարմունք, զգաստութիւն, կենցաղակրթութիւն, գործունէութիւն՝ որ ամենեւին պարապ կենալ չգիտեր, ճարպիկութիւն, արիութիւն, չարքաշութիւն, ժուժկալութիւն, ձախորդութեանց մէջ մնալ անշփոթ երկայնմտութիւն, անոր համար Մեծ Ֆրեդերիկոս ըսուեցաւ։ Այնչափ էր իր ազգասիրութիւնը՝ աշխարհաշինութիւնը՝ որ պատերազմներէն հանգիստ մնացած ատենը 1745էն ինչվան 1756, բոլորովին զբաղեալ էր իր երկիրը շէնցընելու, արուեստները՝ գործարանները ծաղկեցընելու. ան երկիրներուն մէջ՝ որ անապատի պէս էին՝ 600 գեղի չափ նոր շինեց, չոր անբեր տեղվանքը՝ կամ լճային ճախին (ճիմճիմէ) երկիրները՝ բարեբեր երկիր ընել տուաւ։ Երբոր նորէն դադրեցաւ եօթնամեան պատերազմէն 1763էն ինչվան 1768, նորէն հոգ տարաւ իր աւերշտորկած գաւառները շտկելու, եկամուտը զօրքը ոտք հանելու, անատենը այլ աւելի աղէկ շտկեց իր ամէն բանը՝ քան ինչ որ էր եօթնամեայ պատերազմէն առաջ, պրուշին թագաւորութիւնը իբր թէ նոր ոտք հանեց, եւրոպայի զօրաւոր թագաւորութեանց կարգը անցուց. անոնց հետ հաւասարցընելով ան իշխանութիւնը՝ որ քիչ մը առաջ թագաւորութեան անուանը

չունէր. Եւրոպային ամէն մեծ գործողու-
թեանց որ թագաւորութեանց մէջը կըլլային,
ինքնալ պէտք էր որ խառնըլվէր. նոր գեղ-
րանք չինեց, նոր ժողովուրդներ բերել
տըվավ իր երկիրը, նոր գործարաններ
(քերխանայներ) բացաւ, նաւարկութիւնը
հեշտ ընելու համար ջրէ ճամփայներ բա-
նալ տըվավ, որոնց գլխաւորը եղավ պռօմ-
պերկին ջրանցքը՝ որ վիստօլա գետը կըկըրա-
յընէ օտեր գետին հետ. 412 նոր մաքսա-
տուններ (կէօմրիւք) սահմանեց իր ամէն
երկրին մէջ. շատ ըստակ տըվավ իրեն ազ-
նուականներուն՝ որ երեսէ ձգած երկիրնե-
րը բանեցընել տան. ամէն տարի գրեթէ
3 միլիոն ֆիօրին կըխարճէր իր երկիրնե-
րը՝ քաղաքները՝ շէնցընելու, ինչ որ պէտք
է՝ հնարելու: Ֆրեդրիկ լեհին կտորը առաւ-
ան կտորը Արեւմտեան պրուս կոչեց, իսկ
իրեն առջի պրուսին երկիրը Արեւելեան
պրուս կոչեց. լեհին կտորովը բացաւ մէկ
նոր վաճառականութիւն մը պալթիկ ծովուն
վրայ:

Ֆրեդրիկ իր հայրը մեռաւ, աղէկ կառավա-
րուած թողուց իր երկիրը, ու 70 հազար
զօրք, բայց աս Ֆետերիքոս տակէ տակ
շատցընելով հասուց 160 հազար հոգի. զի-
նուորներուն մէկ նոր կրթութիւն մը
հնարեց՝ որ մէկ թագաւոր մը չունէր; ա-
նանկ կրթութեն հետավ մէկ կուրակերպ
հնազանդութիւն մը խօթեց զինուորացը մէջ.
Ֆետերիքոս ըլլալով անուանի եւզինեկու
զօրապլխին աշկերտը, ամէն զինուորութե-

որ ան կատարելութեան ծայրը հասուց որ՝ անկից օրինակ առնին ամմէն եւրոպայի թագաւորները ։ Մինչեւ ան եօթնամեայ պատերազմին մէջ գործադրութիւն օրինակ ցըցուց թէ ինչպէս պէտք է զինարուեստը բանեցընել, որոնք առաջները կարդացիք, ուր մինակ ինքը Ֆետերիքոս նեմցէին ամմէն զօրացը դէմ՝ Ֆրանսզին՝ մոսկովին՝ շուէտին՝ սաքսօնիային՝ ու գերմանիայի կայսերութեանը դէմ դըրավ անանկ վարպետ կարգաւորութեամբ՝ խոհեմութեամբ՝ մեծահոգիութեամբ՝ անանկ պաղտնի զօրութեամբ մը, որ ետեւի եկողներուն կարելի է որ անհաւատալի երեւնայ ։

Աս Ֆետերիքոսէն եղավ դըրեթէ՝ որ եւրոպայի մէջէն փափկասիրութիւնը վերցըվեցաւ ընդհանրապէս, մէկ չարքաշութիւն մը մտաւ. տեսնալով անանկ թագաւորին չարքաշութիւնը ու քաջագործութեան սէրը՝ սկսան իրենց թուլամորթութիւնը ձգել, կորովութիւն ձեռք առնել, մեծեր իշխանները իրենց զաւակները ինչպէս որ մարդու կըվայլէ՝ անանկ կըրթել սկսան, խեղճեպցած շփացած մեծցընելը վերուցին, որ է մէկ ընդհանուր պակասութիւն մը մեր ազգին մէջը հնցած. քիչ մը հարստութիւն ունեցօղները տղաքնին անանկ խեղճեպցած կըմեծցընեն որ չի վայլէր մարդու, շատ փորձանք կըբերէ իրենցալ՝ ծնողացնալ. հիմա անանկ շփացած մեծցընելը մէկ իշխանազուն եւրոպացիի քով չես տեսնար ։ Մէկ զարմանալի խոհեմութիւն մընալ ունէր իր քաջագործութեանց

մէջը՝ որ ինքնահաւան յանձնապաստան չէր ըլլար, ինչպէս որ շատ քաղաքագործներու վրայ կըտեսնըվի ։ աս դարուս սկիզբը տեսանք շվէտին քաղաքագործ մը, կարօլոս թագաւորը յանձնապաստան ըլլալովը՝ անանկ փորձանքներու մէջ ձգեց զինքը՝ որ ամմէն զօրքը կոտրած, ինքնալ տաճկին քով փախած, հազիւ ողջ մնաց ։ դարուս ետքը տեսանք պօնափառդէն իրեն յաջողուենը վրայ յանձնապաստան ըլլալով բըրելով խորհրդականներու մտիկ չընելով գրեթէ 300 հազար իրեն ընտիր զօրքը մոսկովին սառուցներուն (պուզերուն) մէջը ձգելով, իբր թէ իրեն ձեռքովը սպաննել տըվավ ։ զինքնալ խորունկ ովկիանոսի մէկ կըղզի մը մէջ քշել տըվավ ։ բայց աս ֆետերիքոս դարուս մէջ տեղերը այնչափ քաղաքագործութեանց մէջը՝ մանաւանդ եօթնամեայ պատերազմին ատենը՝ ասով խելացի փրթաւ որ՝ թէպէտ բաղդաւոր եղավ չորս դիացէն յաջողութիւն գտնալով, բայց ամէնեւին իր բաղդին չապաւինեցաւ, ծեծ բացվելուն առջի օրը ինչ վախ ինչ կասկած որ ունէր թըշնամիներէն, ինչվան ետքի օրը աչքին առջին ունենալով կըզգուշանար, շըջահայեաց կըլլար, ամօթալ չէր սեպէր իր պակսութիւնը երեւան հանել ինչպէս որ առաջնեըը պատմեցինք, խոստովանելով թէ եօթնամեան պատերազմին մէջ եսալ ամմէնք-սալ զինարուեստին մէջը սխալեցանք, միայն հէնրիքոս իմ եղբարս և լավտոնը չսխալեցան, անանկով եղավ որ՝ ասանկ պատե-

Հռոմայեցի կըսվէր, ու տեղին քաղաքը (1) Հինկ Թագաւոր մէկէն տեսաւ ժողվըված իր մէջը, որովհետեւ նաեւ լէոբոլտոս դօսքանային մեծ դուքսնալ (որ յովսէփ կայսեր եղբայրն էր), հոն եկած էր շատ Թագաւորազուն մարդիկներով։

Երբոր Նաբօլին Թագաւորը Ճէնօվա գնաց՝ յովսէփ ու լէոբոլտոս շատ երկան բարակ խօսակցութի ըրին մէջերնին, ետքը երկուքնալ ելան մէյմէն գացին, կառավարութիը քննեցին, ժողովրդեան աղերսագիրները (արզուհալները) առին։ Աս խօսակցութեան մէջ երկու եղբայր հաստատեցին իրենց մէջի եղած դաշնադրութիը՝ որ յունվ. 31. ըրեր էին, Թէ աւստրիական լոմպարտիայի մէջ եղած ժողովուրդը՝ դօսքանայի մէջ օտարական չիսեպվին, վայելեն ան ամմէն իրաւունքը ապրանքի ու երկրի վրայ՝ ինչ որ կըվայլեն բուն դօսքանցիքը. ասանկալ դօսքանցիք լոմպարտիայի մէջ օտարական չիսեպվին, նոյն իրաւունքները ունենան։ Աս բանիս դէմ ինչ օրէնքներ եղած են առաջ՝ ամմէննալ խափանվին, ինչպէս նաեւ ան օրէնքն ալ խափանվի, որ կապսպըրէ ժառանգողին տեղը կամ բնակարանը փոխել, երբոր իրեն ընկած ժառանգութիը օտար տեղ է։

Հին սովորութիւն մը կար՝ ան որ կայսեր

---

(1) Աս տեղս ան ատենը խիստ շէն էր, հիմա Ֆըրանսային խառնվելէ եւ շատ խեղճ է։

առջին ելլար՝ պէտք էր ծունկ չոքիլ (1), յովսէփ կայսրը քննելով աս սովորութեան սկիզբը՝ թուղթ հրաման հանեց, որ ասկէց ետքը մէկը ծունկ չիչոքի կայսեր առջին, ծունկ չիչոքօղնալ յանցաւոր չիսեպվի, պատճառ բերելով որ՝ չիվայլեր մարդուն տալ ան երկրպագութիւը՝ որ միայն այ կըվայլէ ։ Նմանկ մարդավարութէ վրայ՝ յովսէփէն առաջ ՟Բ. կատարինէն մոսկովի թագուհին աղէկ օրինակ էր տըված, որ 1785 յուլիսի 14 թուղթ հանելով հրամմեց ամէ մէն մոսկովի մէջ ու պզտիկ թաթարի մէջ եղօղներուն՝ թէ ասկից ետքը երբոր խօսին՝ կամ թուղթ գրեն թագաւորին, գիրենք Կ՚ւերի չիկանչեն, հապա Ռըպոտ (րայէ) կանչեն ։

Կատարինէին սէրը ժողովրդեան վրայ աւելի կերեւնար յատուկ հօգ տանելովը անանց

---

(1) Կըսեն որ գիոկղետիանոս կայսրը ասիացոց մեծութիը սովորութիը ուզելով մոցընել, առջինը եղավ աս կերպ երկրպագութիը խօթեց. իրեն յաջորդները աւելի շատցուցին, մանաւանդ ստանդպօլու կայսերները. որոնց ուժը քանի որ կըտկարանար, անչափ աւելի մեծարանք աւելի խոնարհութի կըպահանջէին իրենց ժողովրդէն ։ Աս սովորութիւնը կայսերներէն անցաւ թագաւորներուն մէջ, նաեւ ղանաղան իշխաններու մէջ՝ որ մաղըրըղներուն առենը կիշխէին սպանիա եղած մէյ մէկ թագաւորութէ վրայ, սպանիայէն մնաւ գերմանիայի մէջ երկու եղբարներուն ձեռքովը որ կայսր եղան, և կըսվէին Ե. կարոլոս, ու Ա. Ֆէրտինանտոս. անանկ որ վիեննայի մէջ ուտէլնին՝ հագվիլնին՝ ամմէն բաներնին ըսպանիացոց պէս եղավ, թէպէտ և նեմցէները սպանիացոցմէ բան մը չունէին ։

պղտիկ տղոցը ու աղջիկներուն վրայ․ ա-տոնցմէ շատ տղաք իր դարպասը (սէրայը) կառնէր, ինչ ազատութիւն որ կըպահվէին իշխանազուն իր թոռները, անոնք ալ ա-նանկ կըպահէր, մեծ հոն կանչել կուտար զինքը, անոնց տղայական խաղերովը կըզ-բաղէր կըխանդաղատէր սէր գութ ցըցը-նելով։

Պրուսի թագաւորի Բ․ Ֆետերիկոսին մահը, իրեն բնութիւնը․

1786։

Մը թագաւորներուն ըրածը լսելով պրու-շին թագաւորը Բ․ Ֆետերիքոս՝ ինքնալ ա-նոնց հետեւեցաւ․ որովհետեւ չէր ուզեր որ աս երկու դաշնակցեալ կայսերքը նեմցէն ու մոսկովը մեծութիւն մը գովասանք մը ունե-նան, ինքնալ արգելեց ամմէն դրսի նշան-ները երկրպագութեան, սաանկ գրելով իրեն կօերց զօրապետին։ „Շատոնցմէնէ կու-„զեի վերցընել, նկատում (սայգը) կընէի „որ՝ ուրիշ թագաւորներուն պատճառ չը-„տամ գանկտելու․ առջինը ըլլալով վեր-„ցընել մէկ սովորութիւն մը՝ որ ընդհանրա-„պէս արմատացեր է„։ Բայց ուրիշ գիա-ցէնալ անանկ խիստ հպատակութիւն են-թարկութիւն կըպահանջէր իր ժողովրդէն, որ երբոր մէկ լոթեան քարոզիչ մը մովսէս մարգարէին խօսքովը ուզեց անիկայ խրա-տել աս բանին վրայօք, Ֆետերիքոս ա-

տանկ պատասխան տըւաւ: „Մովսէս իրեն
„ Իսրայէլացիները կըկառաւարէր, ինչպէս
„ որ իրեն աղէկ կերեւնար. ես ալ իմ պրուշ-
„ ներս կուզեմ կառաւարել՝ ինչպէս որ ին-
„ ծի աղէկ կերեւնայ:

Նոյն անուանի Թագաւորս Ֆետերիքոս Թէ-
պէտ ռամնացուէն խիստ կընեղէր, բայց իր
տկարութիւնը չինայելով՝ ծիու վրայ շատ
կընստէր զօրաց հրամմելու համար. տանկ
հրամմելով կարգաւորելով պէռլին՝ մակտէ-
պուրկ՝ և շլէզիա եղած զօրքին վրայ՝ բաց
տեղը կենալով օդը (հաւան) իր ծերութը
վնաս տըւաւ. երբոր բօցատամ դարձաւ՝
մէկ չոր հազ մը առաւ զինքը 1785. ա-
նանկ որ այն ձմեռը չիկրցաւ ընտանեաց
քովը երթալ՝ բարեկենդանքը հոն ընել՝ ինչ-
պէս որ սովոր էր: Երբոր իր բժիշկը Մէլ-
լէ անունով յայտնի ըսաւ իրեն՝ թէ աս
տկարութիւնը կրնայ փոխուիլ՝ կուրծքի ջրգո-
ղութի (սըսխայութի) դառնալ, իրեն խիստ
դէմ եկաւ. զիմմէրման անուանի բժիշկը
իրեն քով կանչեց հաննօվէրէն, ան կացու-
թիւը հասաւ՝ որ 1786 մարտի մէջ յուսա-
հատեցաւ իր կեանքէն. պրունսվիքի որբե-
վարի դքսուհիին թուղթ խրկելով՝ մէջը աս
բանս գրեց: „Եկաւ ատեն, պէտք է որ
„ ծերերը տեղ տան երիտասարդներուն՝
„ որպէս զի ամենքն ծնունդ աշխարհ մտնան,
աշխըրհիս խաղը իրենքալ խաղան:

Բայց տասնեկալ ըլլալով կառաւարու-
թեան բաննալ չէր ձգեր կըհոգար՝ ինչպէս
թէ ողջ ըլլար. իրեն հինգ մարդ ունէր

խիստ սիրական՝ Շվէրին կոմսը որ մեծ ա-
խոռապետ (պրուսիոյ միրահօռ) էր, հերց-
պէրկ վէզիրը, կօերց զօրագլուխը, բինդօ
կոմսը, և լուքքեզինի մառքեզը, երբոր
բան չէր ունենար՝ առանց հետ կըխօրա-
թէր: Երբոր իր ջրգողութիւնը խիստ երևան
ելաւ, իրեն եկեղեցականներէն մէկը չէր
համարձակէր քովը երթալու, գիտնալով
որ չէր ուզեր. աս բանս իրեն ժողովուրդին
մեծ գայթակղութի տըվաւ. միայն կըսեն
որ՝ մօրավեան եղբարք կամ Սասիդ բա-
վածները՝ համարձակեցան իրեն թուղթ մը
երկեցին, որուն մէջը կըյորդորէին յաւի-
տենական կեանքին հաւատալ. ասոնց պա-
տասխան՝ Ֆրետերիքոս իր դիւանադպիրին
ապսպրեց որ՝ քաղաքավարութիւն գրէ ան
բարի մարդիկներուն, որովհետև դեռ չէր
իրենց միտքը:

Ըն տարիճան հասաւ իր ջրգողութիւնը՝ որ
ուռած ըլլալով չէր կրնար մահճի (տեղ-
շէկի) մէջ պառկիլ, աթոռի վրայ կընստէր,
հոնալ ինքիրմէ չէր կրնար շարժիլ, թէպէտ
խիստ սաստիկ ցաւ ունէր՝ բայց ամենևին
մէկ նշան մը ցաւի չէր ցըցըներ, հանդարտ
երես ցըցընելով քովիններուն հետ ուրիշ
բաներու վրայ խօսակցութիւն կընէր, խե-
լացի խօսքերով թղթեր գրել կուտար:
Իր կեանքին մէջը ոչ երբեք այնչափ յա-
ժարական ու հեզահոգի եղած էր, այն-
չափ խելքը վրան, որչափ որ եղաւ
իր ետքի օրերը. օգոստոսի 14 հաց ուտե-
լէն ետև՝ իրեք ժամէն աւելի խօսեցաւ

շվէտի թագաւորին քաջութեանցը վրայ, որ կըսվէր կուստավոս ատօլֆոս, ասանկ ալ աս դարուս երեւելի զօրապետներուն ըրածին վրայ, որ կըսվին վալլէնստէյն, թիլլի, եւգինեոս իշխան, լավտօն, սօլթիքօֆ, սուվարօֆ: Լսողները կարծեցին որ դէպ 'ի ողջութեան կերթայ ասչափ երկան խօսողը, բայց քիչ մը անցնելէն ետեւ՝ լեզուն ալ զգայարանքներն ալ բոլորովին կապվեցան, նոյն տարին 1786 օգոստ. 17՝ մեռաւ, 74 տարվան ու կէս, 46 տարի թագաւորելէն ետեւ. մեռնելէն ետքը տասը օր անցաւ բօցտամին եկեղեցնայ մէջ թաղվեցաւ, ուր որ կընստէր սովորաբար:

Բայց իր յիշատակը ամենեւին չիթաղվեցաւ, այլ աս դարուս պատմութեանը մէջ մէկ զարմանալի յիշատակ մը թողուց իր ըրածներով: Աս անուանի մարդս չափահասակ էր, զօրեղ՝ աւելի իր չարքաշութեանը կըպահէր իրեն ուժը, աղէկ կուտէր՝ բայց օրը մէկ ժամ մը միայն՝ մնձաւի ու դօզքանայի գինի խմելով խիստ չափաւոր, իր սեղանին ամէն խարճը իբրեւ 24 հազար ֆիօռինի կըհասնէր տարին. իր հագուստը՝ մահիճը (տեօշէկը՝) ամենեւին պարզ, միայն սպանիայի քթախոտը շատ կըխմէր, յանկարծակի կաթուածէ պահօղ սեպելով:

Աս ֆետերիքոս շատ գործողութեանց մէջ աշխարհիս աղէկ օրինակ տըվավ թագաւորական բարոյականութեան, իրեն օրինակին թագաւորներ ունեցաւ աշկերտ, որոց մէջը մէկն ալ Բ. յովսէփ կայսրը էր: Եղավ աշխարհաշէն,

իմաստուն կենցաղակիրթ, վարպետ պա-
տերազմող, փիլիսոփայ, օրէնսդիր, պատ-
մագիր, նաև բանաստեղծ. իր բարեգոր-
ծութեց մէջը կը փայլէ ազգասիրութի, բա-
րեկարգութի, քաջագործութի, ուսումնա-
սիրութիւն. իր անձին վրայ կը փայլէ կան-
նաւոր վարմունք, զգաստութիւն, կենցա-
ղակրթութի, գործունէութի՝ որ ամենևին
պարապ կենալ չէյտեր, ճարպիկութի, արիու-
թի, չարքաշութի, ժուժկալութի, ձախորդու-
թեց մէջնալ անշփոթ երկայնմտութի, անոր
համար Մեծ Ֆէտէրիկոս ըսուեցաւ: Այնչափ
էր իր ազգասիրութիը՝ աշխարհաշինութիը՝
որ պատերազմներէն հանգիստ մնացած ա-
տենը 1745էն մինչև 1756, բոլորովին զբա-
ղեալ էր իր երկիրը շենցընելու, արուեստա-
ները՝ գործարանները ծաղկեցընելու. ան
երկիրներուն մէջ՝ որ անապատի պէս էին՝
600 գեղի չափ նոր շինեց, չոր անբեր տեղ-
վանքը՝ կամ լճային ճախին (ճիմճիմէ)
երկիրները՝ բարեբեր երկիր ընել տուաւ:
Երբոր նորէն դադրեցաւ եօթնամեան պա-
տերազմէն 1763էն մինչև 1768, նորէն
հոգ տարաւ իր աւերշուրկած գաւառները
շտկելու, եկամուտը զօրքը ոտք հանելու,
անատենը ալ աւելի աղէկ շտկեց իր ամմէն
բանը՝ քան ինչ որ էր եօթնամեայ պատե-
րազմէն առաջ, պրուշին թագաւորութիը
իբր թէ նոր ոտք հանեց, եւրոպային զօրա-
ւոր թագաւորութեց կարգը անցուց. անանց
հետ հաւասարցընելով ան իշխանութիը՝ որ
քիչ մը առաջ թագաւորութե անուն

չունէր. Եւրոպային ամէնէն մեծ գործողու-
թեանց որ թագաւորութեանց մէջը կըլլային,
խնքնալ պէտք էր որ խառնըվէր. Նոր գեղ-
րամք չինեց, նոր ժողովուրդներ բերել
տըւաւ իր երկիրը, նոր գործարաններ
(քէրխանայներ) բացաւ, նաւարկութիւնը
հեշտ ընելու համար ջրէ ճամփայներ բա-
նալ տըւաւ, որոնց գլխաւորը եղաւ պռօմ
պէրկին ջրանցքը՝ որ վիստօլա գետը կըկըպա-
յընէ օտէր գետին հետ. 412 նոր մաքսա-
տունններ (կեօմրիւք) սահմանեց իր ամէնէն
երկրին մէջ. շատ ըստակ տըւաւ իրեն ազ-
նուականներուն՝ որ երեսէ ձգած երկիրնե-
րը բանեցընել տան. ամէնէն տարի գրեթէ
3 միլիոն ֆիօրին կըխարճէր իր երկիրնե-
րը՝ քաղաքըները՝ շէնցընելու, ինչ որ պէտք
է՝ հնարելու: Ֆրետօր լեհին կտորը առաւ
ան կտորը Արեւմտեան պրուշ կոչեց, իսկ
իրեն առջի պրուշին երկիրը Արեւելեան
պրուշ կոչեց. լեհին կտորովը բացաւ մէկ
նոր վաճառականութիւն մը պալթիկ ծովուն
վրայ:

Ֆրետօր իր հայրը մեռաւ, աղէկ կանոնա-
ւորած թողուց իր երկիրը, ու 70 հազար
զօրք, բայց աս Ֆետերիքոսը ետեւէ ետե-
շատացընելով հասուց 160 հազար հոգի. զի-
նուորներուն ալ մէկ նոր կրթութիւն մը
հնարեց՝ որ մէկ թագաւոր մը չունէր, ա-
նանկ կրթութենէ հետալ մէկ կուրակերպ
հնազանդութիւն մը խօթեց զինուորացը մէջ.
Ֆետերիքոս ըլլալով անուանի Եւգինեոս
զօրապետին աշկերտը, ամէնէն զինուորու-

տը այն կատարելութեան ծայրը հասուց որ՝ անկից օրինակ առին ամեն Եւրոպայի թագաւորները ։ Մինչեւ այն եօթնամեայ պատերազմին մէջ գործադրութեամբ օրինակ ցըցուց թէ ինչպէս պէտք է զինարուեստը բանեցընել, որոնք առաջինները կարդացին, ուր մինակ ինքը Ֆրետերիքոս Նեմցէին ամ-մէն զօրացը դէմ՝ Ֆրանսզին՝ մոսկովին՝ շը-վէտին՝ սաքսօնիային՝ ու գերմանիայի կայ-սերութեանը դէմ դըրավ անանկ վարպետ կարգաւորութեամբ՝ խոհեմութեամբ՝ մեծահոգիութեամբ՝ անանկ պաղտնի զօրութեամբ մը, որ ետեւի եկօղ-ներուն կարելի է որ անհաւատալի երեւ-նայ ։

Աս Ֆրետերիքոսէն եղավ դըրեթէ՝ որ Եւրո-պայի մէջէն փափկասիրութիւնը վերցըրվեցաւ ընդհանրապէս, մէկ չարքաշութիւն մը մտաւ. տեսնալով ասանկ թագաւորին չարքաշու-թիւնը ու քաջագործութեան սէրը՝ սկսան իրենց թուլամորթութիւնը ձգել, կարծրութիւն ձեռք առնել, մեծեր իշխաններ իրենց զաւկըները ինչպէս որ մարդու կըվայլէ՝ անանկ կըրթել սկսան, խեղեպցած շփացած մեծցընելը վերուցին, որ է մէկ ընդհանուր պակասութիւն մը մեր ազգին մէջը հնցած. քիչ մը հարստութիւն ունեցօղները տղաք-նին անանկ խեղեպցած կըմեծցընեն որ չի-վայլէր մարդու, շատ փորձանք կըբերեն ի-րենցալ՝ ծնողացնալ. հիմա անանկ շփացած մեծցընելը մէկ իշխանազուն Եւրոպացիի քով չես տեսնար ։ Մէկ զարմանալի խոհե-մութիւն մընալ ունէր իր քաջագործութեց

մէջը՝ որ ինքնահաւան յանձնապաստան չէր ըլլար, ինչպէս որ շատ քաջագործներու վրայ կըտեսնըւի. աս դարուս սկիզբը տեսանք Շվէտին քաջագործ ԺԲ̃, կարոլոս Թագաւորը յանձնապաստան ըլլալովը՝ անանկ փորձանքներու մէջ ձգեց զինքը՝ որ ամմէն զօրքը կոտրած, ինքնալ տաճկին քով փախած, հազիւ ողջ մնաց. դարուս ետքը տեսանք պօնափարդէն իրեն յաջողուենը վրայ յանձնապաստան ըլլալով՝ բըրելով խորհրդականներու մտիկ չընելով՝ գրեթէ 300 հազար իրեն ընտիր զօրքը մոսկովին սառուցներուն (պուզերուն) մէջը ձգելով, իբր թէ իրեն ձեռքովը սպաննել տալով. զինքնալ խորունկ ովկիանոսի մէկ կղզիի մը մէջ քշել տալով. բայց աս Ֆետերիքոս դարուս մէջ տեղերը այնչափ քաջագործութեանց մէջը՝ մանաւանդ եօթնամեայ պատերազմին ատենը՝ ասով խելացի փրթաւ որ՝ թէպէտ բաղդաւոր եղաւ չորս դիացէն յաջողութիւն գտնալով, բայց ամմենէին իր բաղդին չապաւինեցաւ, ծեծ բացվելուն առջի օրը ինչ վախ ինչ կասկած որ ունէր թըշնամիներէն, ինչվան ետքի օրը աչքին առջին ունենալով կըզգուշանար, շրջահայեաց կըլլար, ամօթալ չէր սեպեր իր պակսութիւնը երևան հանել ինչպէս որ առաջնե-րը պատմեցինք, խոստովանելով թէ եօթնամեան պատերազմին մէջ եսալ ամմէնքսալ զինարուեստին մէջը սխալեցանք, միայն հենրիքոս իմ եղբարս և լավտօնը չիսխալեցան, անանկով եղաւ որ՝ ասանկ պատե-

բնազմական մարդը՝ իր Թագաւորական մահ-
ճին մէջը մեռաւ, և ոչ ուրիշներուն պէս
փորձանքներու մէջ։ Երբոր իր զօրքը քաւ-
ցընելու ըլլար՝ խիստ կարտորար, շուտ մը
մէկ տեղէ մէկալ տեղ կըտանէր, բայց բան
մը ընելու ըլլար՝ չէր արտորար. առաջ ա-
ղէկ մը կըմտմտար՝ ետքը կընէր, ընելու
ատեննալ չէր շփոթէր, որչափ ձախորդ-
երթար՝ սիրտը չէր կոտրէր, երկայնմտութիւն
արիութիւն առաջ տանիլը կընայէր։
Ինչ ըսեմ, Թագաւորելու կառավարելու
խելքը՝ զօրագլխի վարպետութիւնը՝ փիլի-
սոփայի վարմունքը՝ աս մարդս միացուց իր
վրայ. իրաւ է որ՝ հռոմայեցոց պատմութիւնը
շատ կարդալով բարի օրինակ առնելու
համար՝ անոնց պատմած երևելի մարդիկ-
ներուն աղէկութիւնը իր վրայ ժողվեց,
շիպիոնին իմաստութիւնը՝ Փապիոսին խո-
հեմութիւնը՝ Հաննիպալին ճարպիկութիւնը։
Կուռն Ռօլլէնը կըկարդաս, մէկ դի կըձգես
ըսելով, բիբլինոս սանկ է եղեր, դարքվի-
նիոս նանկ է եղեր, ինծի ինչ որ կարդամ,
վաստակ մը չիբերեր. բայց գիտցիր որ՝ Փե-
տերիքոս անանկ գրքերը կարդալով, ըս-
տակ վաստըկելու ճամփան շտկեց, եկա-
մուտներնալ շատցուց։ Ամէն եւրոպացիք-
ալ որ՝ ատեն մը աղքատ էին, հիմա հին-
տիստանին հարստութիւնը եւրոպիա բե-
րին, ըստըկով լեցվեցան, պատճառը աս է
որ՝ առաջ պատմութիւններ կարդալով
խելք սորվելու ետևէ ընկան, որովհետև
խելքն է որ ըստակ կըբերէ, չէ թէ ըստա-

կը՝ խելք. մանաւանդ հռոմայեցոց պատմութիւնը անանկ խելք կըսորվեցընէ որ՝ տղակուցմէ ինչվան ծերութիւն եւրոպացոց ձեռքն է։ Ստակ վաստըկելու ճամփուն առջի բանն է՝ ազգասիրութիւն, եղբայրսիրութիւն՝ մէկմէկու հանիլ՝ մէկ մէկու օգնել, բարեկարգութիւն, չափաւորութիւն, ճշդութիւն որ փարթամութիւնը (սալթանաթը) ձգել կուտայ, արիութիւն՝ գործունէութիւն՝ որ ամենևին պարապ կենալ թող չիտար, թէ որ վաստըկի մը ճամփայ գոցվի, ուրիշ ճամփու մը ձեռք կըզարնէ և այլն. ահա հռոմայեցոց պատմութիւննալ լման ասոնք կըսորվեցընէ օրինակներ տալով գործքով չէթէ խօսքով, որոնք ռօլլէնին մէջը գրված են։ Ասոնց հետևելով եւրոպացիք հարստացան, ասոնց հետևելով նաև Փետերիքոս՝ վերի զուրցած կատարելութիւնները վաստըկեցաւ. իր ազգը՝ իր երկիրը շէնցուց պայծառացուց չէթէ մինակ դուրսէն շտկելով, այլ նաև գրով։ Օրը՝ հինկ ժամ միայն կըքնանար Փետերիքոս, մնացած իր ատենը ամէնը կարգաւորած բաժնըված էր կառավարելու, մուրհակներ (արզուհալներ) կարդալու, անոնց դատաստանը կտրելու, զօրաց զօրապետաց կրթուն (թալիմ) տալու, թագաւորներու և իր իշխաններու թուղթ գրելու, թուղթ առնելու, ատենալ ունէր որոշած կարդալու հետ ըլլալու, երաժշտութիւն բանեցընելու, բարեկամաց հետ տեսնըվելու։ Իրեն օրինակ առնելով թուգիտիտէս ու բօլի-

պիոս հին պատմագիրները, ամենէն աւելի յուլիոս կեսար հռոմայեցին՝ (որ զօրապետ ու կեսար էր, բայց միանգամայն իր յիշատակարանը վարպետ կերպով գրած ունէր,) Ֆետերիքոս շատ կարդալով՝ ինքնալ անկից օրինակ առավ իր գործքերուն պատմութիւնը գրելու, նաև իր ցեղին (սօյին) պատմութիւնը շինելու. որովհետև առաջ միայն քանի մը անպիտան ժամանակագրութիւններ կային նեմցեներէն ու լատիներէն, որոնցմով գրիգոր Լեդի բովածը՝ պատմութի մը շիներեր սուտը ճշմարտին հետ խառնելով. աս տեսնալով քովի եղած կարդացող մարդիկը՝ տեսնալով և Ֆետերիքոսին ըրածները՝ որոնցմով պրանտէմպուրկեան ցեղին անունը անանկ պայծառանալ սկսաւ՝ որ ոչ երբեք անանկ անուն էր հանած, շատ յորդորեցին զինքը աս ցեղին պատմութիւնը շինելու որ չէր ծանօթ. Ֆետերիքոսալ պարոն հերցպերկին յանձնեց յարմար նիւթերը ժողվելու. անոնցմով եսկէ ետև պատմութի մը շինեց Ֆրանսզերէն իր առջինններուն վրայ. որուն խորագիրն է, Յիշատակարան պրանտէնպուրկեան ցեղին պատմութեան: Օրէնքի գիրքմընալ հանեց, ուրով կռուարար մարդիկներուն սանձ մը դրավ. դատերը (տավաները) երկնցընելը դադրեցուց. աս օրէնքի մատեանը (քիւթիւկը) 1747ին շտկել ընդարձակել տրվավ անուանի օրինագիտին քօքչէյա սամուէլին, որ իրեն մեծ դիւանադպիր էր ընել տրված: Մաքքեավէլլի անունով

օրինագիր մը կայ իտալացի որ խիստ օրէնք-
ներ կը սորվեցընէ, անոր գրքին դէմն ալ շի-
նեց Փետերիքոս 1740ին։ Ճ՛առեր ալ ունի
շինած նաև բանաստեղծութի, որոնցմէ մէկ
բանաստեղծութինալ է պատերազմի արուես-
տին վրայ։

Ասանկ պատերազմական մարդը կը գտնար
ատեն այսչափ գրքեր հանելու, ինչու որ՝
Փետերիքոսին սէրը կարդացողութեան վրայ
այնչափ էր որ՝ ծանր գործքեր աշխատելը
զբաղմունքներ իրեն արգելք չէին ըլլար
բանասիրական գործքերու հետ ըլլալ, բա-
նաստեղծութեան պարապիլ Փրանսզի լե-
զուով. ինչ բանի վրայ ըլլար՝ կրնար մէկէն
ան խնդրին վրայ խօսիլ պատրաստութիւն
չիտեսած, ինչ պատմութիւն ինչ առակներ
որ կարդացեր էր, աղէկ միտքը պահած ու-
ներ, տեղին կեօրէ կը բերէր կը յարմարցը-
նէր, այնչափ անուն էր հանած՝ որ՝ Հիւսի-
սային Սողոմն ըսվեցաւ, թէ որ թագաւորա-
կան զբաղմունք չունենար, կերևար որ երե-
ւելի մատենագիր պիտոր ըլլար՝ աղէկ ալ
բանաստեղծ։ Ասոր օրինակը կարդալով
մէկ առանձին չարշըցի մարդ մը, չըսէ որ՝
ատեն չունիմ ետևէ իյնալ գրաբառ լե-
զուն հասկընալու, որուն հերիք է երկու
իրեք տարի. չըսէ որ՝ գիրք կարդալը ու-
սումը՝ ըստակ չիբերեր, ինչ ետևէ իյնամ.
Փետերիքոս ըստըրկի համար չէ՝ հապա ինքը
մարդ ըլլայ, ինքը զմայլի, անոր համար ա-
տեն կը գտնար կարդալու հետ կըլլար։
Վերոյիշեալ գործքերէն զատ՝ մեռնելէն

եւ Ֆետերիքոսին զանազան գրուածնե-
րը դուրս հանեցին 1788 պէռլին, 10 հա-
տոր. որոնց մէջը իր թշնամիները խիստ կը-
կարեն վար կըզարնէ, իսկ զինքը խիստ կը-
գովէ. ասիկայ միշտ Ֆրանսզի լեզուով կը-
գրեր կըխօսէր, իր Նեմցէի լեզուն չէր սի-
րեր չէր բանեցըներ որ՝ միայն զինուորնե-
րու խօրաթելու ատեն:

Բայց ատանկ մարդը անչափ աղէկութիւն ունեցող, ուրիշ դիւցազներէնալ շատ պակ-սութիւն ունեցաւ. բնութիւն դժգամնող (Թի-Թիզ) ըլլալով հօրը հետը՝ իր կնկանը հե-տալ խաղաղ չիկեցաւ. չէր ուզեր որ մէկը իր հրամանին դէմ զուրցէ, մէկ դժուարու-թիւ մը հանէ, փառասէր էր, մտմտալով որ եւրոպայի մեծ բաներու խառնըրվելու համար՝ պէտք էր շատ զօրք ունենալ, շատ ստակ, անոր համար իր ամմէն բաղձանքը աս երկու բանիս վրայ դրեց. շատ խորա-գէտ էր ու հետաքրքիր ուրիշ տէրութեանց բաները խորհուրդները իմանալու. շատ հեղ մեծ սէր մեծ պատիւ կըցըցըներ դես-պաններուն՝ միայն բերաններէն բան մը առ-նելու համար: Թագաւորները ծաղր կը-նէր կծու խօսքերով նաեւ գրուածներով, մանաւանդ Եղիսաբեթը Մասկովի թագու-հին:

Ամմէն հաւատքի թոյլտուութիւն կուտար իր երկրին մէջը նաեւ ուղղափառներուն, կը-սէր Ֆետերիքոս որ քալվինները ինծ կըպաշ-տեն իբր իրենցմէ վար բան մը, լութերանները՝ իբր իրենց հաւասար մը, միայն ուղղա-

փառանքներն են՝ որ ամ իբրև իրենցմէ գերա-
դոյն կըպաշտեն. անոր համար ուղղափառ-
ները իրենց աւելի հաւատարիմ ժողովուրդ
կըսեպէր. Եկեղեցականաց ապրանքներն չե-
դպաւ, միայն շլէզիայի՝ ու իր տակի եղած
լեհաստանին մեծ եկեղեցականաց եկա-
մուտները առաւ ըսելով թէ խիստ հա-
րուստ էին։ Հրէաներուն խիստ երես
տըվավ, ինչպէս որ ամսդըրտամ ու ալի-
կուռնա ազատուն ունին՝ անանկալ պրու-
շիոյն երկրին մէջ շատ համարձակութին ու-
նեցան. Թագաւորական զարպխաններ՝ եկա-
մուտի՝ թիւթիւնի կամ պուռնօթիի գոր-
ծարաններու վրայ հրեաներէն դրավ. մէկ
անուանի հրեայ մը կար եփրեմ անունով
ուզեց ազնուական երկիր մը առնելու՝
թող չըտըվավ, բայց թող տըվավ անորալ
ամէն հրեաներուն ուրիշ կալուածներ
կամ տուներ առնելու. մէնտէլսօն անու-
նով հրեայ մը կար՝ որ նեմցեւի մէջ խիստ
երևելի կարդացողներէն մէկը կըսեպվէր,
թող տըվավ պրուշի քաղքըցի գրվելու։
Միայն փռամազոններուն համարձակութին
չըտըվավ, իրենց խորհուրդը պաղտուկ պա-
հելը՝ ֆետերիքոսին մեծ կասկած կուտար,
որուն հետևեցաւ նաև Բ. յովսէփ կայս-
րը։ Աստեղագիտութէ դուշակութեցաւ
կըհաւատար ֆետերիքոս, թէպէտ դուր-
սէն վար կըզարնէր. խիստ հետաքրքրուն
բըռավ տեսնալու մէկ դուշակութէ գիրք մը՝
որ պահված է կըսէին Լեհնին հին վանքի
մէջ, նման դուշակուէ յովակիմ աբբային,

կամ ան գուշակութենէ որ կըսվի Նօստրատամուս ։

Բայց իր մեծ պակսութիւնը ան եղաւ որ ամենեւին ընջահաւատ մէյմընէր. իրեն պէս անհաւատներուալ երես կուտար, հետերնին կըթղթակցէր, ինչպէս են ալանպէր, էլվէցիուս, վօլթէր, որ կըխրատէր կըսեն զինքը ամմէն հաւատքի քահանայները ջնջելու, բայց Ֆետերիքոս մտիկ չէրաւ. միայն թէ Ֆրանսայի անհաւատներուն երես տալով շատ պատճառ եղաւ անոնց յառաջանալուն. կերեւայ որ՝ չէյտէր իրենց ամմէն միտքը, որոնք կըջանային չէ թէ միյնակ աստուած չընդունելու, այլ նաեւ ոչինչ թագաւոր ընդունելու ։ Իսկ որովհետեւ հաւատք չունեցողը խղճմտանքալ չունենար, խղճմտանք չունեցողնալ իրեն ներհակ գործքեր կընէ, բարոյական գործքերու մէջ հակասականներ կըխառնէ, Ֆետերիքոսալ ասանկ ըլլալով մէկ դիեն գութ կըցըցընէր ժողովրդեան վրայ, մէկալ դիաշէն անգութի պէս կըվարվէր, ինչ որ խօսք կուտար՝ չէր պահեր, իր դաշնադրութիւններնալ որ չէզոք տէրութեանց հետ ըրերէր՝ չէր բռնէր, ան սկզբան վրայ երթալով որ կըսվի Ուժն է պէտքէ օրէնք ։ Ինքը մաքքիավէլլիին խստութենը դէմ գրեց, ինքը նոյն խստութիւնները բանեցուց զանազան տեղ նաեւ գերմանիայի ու սաքսոնիայի մէջ, որ անապատ դարձուց. սուտ ըստակ բաժնեց ժողովրդեան. վերջապէս ինքը խղճմտանք չունէր, բայց կուզէր որ՝ ամմէն

իր ժողովուրդը հպատակները (ռայէները) խղճմտանք ունենան, իրեն խիստ հնազանդ-մնան. բանսարկութիւնը առանց խղճմտանքի իբր գործիք մը կըբանեցընէր իրեն բանին առաջ երթալու համար։

[illegible] մէջ [illegible] [illegible] նահանգներուն մէջ եղած խռովութիւնը Յովսէփ կայսեր հետ.

1786։

Յովսէփ կայսրը ինչ կարգադրութիւն որ կընէր քաղաքական և եկեղեցական՝ միտ-քը աս էր որ՝ ժողովրդեան աղէկութիւն ըլլայ, բայց ժողովրդեան մէջ օրէօր դժգոհանքը կըշատնար, պաղութիւն կիյնար. իրեն միտա-ծածները մեծ մեծ բաներ էին, աղւոր կերեւնային, բայց ան մեծ բաներն էին՝ որ վտանգաւոր կըլլային, ու գործ դնելը դժ-ւարին. իր իշխանութեանը մէջ շատ տարբեր ժողովուրդներ ունէր, որ տարբեր կառա-վարութեան կերթային, իր բաղձանքը աս էր որ՝ տարբեր կերպերը վերցընէ, ամէնն ալ մէկ կառավարութեան մէկ վարմունքի տակ խօթէ, իր ամէն երկիրը միակերպ մէկ կանոնաւորում մը ունենայ։ Ան է աղւոր մտածմունք՝ ու կառավարութիւնը հեշտ ընող (խօլայցընող). բայց պատմութիւնը կըսորվեցընէ որ՝ ասանկ ուզողներ շատ ե-կերեն աշխարհիս վրայ, որոնք որ ասանկ բանի ձեռք զարկերեն՝ շատ խռովութիւնե-րու մէջ ընկերեն, ետքը դեռ աս գտերեն՝

որ խաղաղութիւնը պահելու համար (որ ամէն բանէն վեր է), ամէն ազգ՝ ամէն ժողովուրդ՝ իրենց սովորութեանը մէջ թողուն. ինչու որ՝ աս նորութիւնս ներհակ կուգայ տարբեր ազգերու, տարբեր սովորութիւններու և ունակութիւններու, որ այնչափ տարբեր ժողովուրդ իրարու դէմ ունին. աղէկը ան է՝ որ ամէննալ թողվին իրենց սորվածին մէջ, չփոխվին իրենց արտօնութիւնները՝ իրենց սահմանադրութիւնները՝ որ իրենց առջինները, իրենց դաշնադրութիւնները, և ատէնը ընել ոչվերէն:

Յովսէփ կայսրը եկեղեցական բաներու մէջ աւելի կուզէր խառնըվիլ շտկել. բայց ասիկայ եր նիւթ մը աւելի վտանգաւոր, կրնար չափը անցնիլ ու խղճմտանքի դպչիլ: իր վեզիրը քաունից իշխանը որ երևելի եր փիլիսոփայութե ու կենցաղակրթութեան մէջ՝ շատ բանի կըյորդորէր յովսէփ կայսրը ընելու, բայց միանգամայն իր առջին կըդընէր վտանգները՝ որ կրնային հետևիլ. յովսէփ միշտ աղէկութիւնը մտածելով որ կըրնային առաջ գալ՝ և ոչ երբեք ձախորդութիւնք, միանգամայն իր ուժին ապաւինելով որ ան ատենը 300 հազար զօրք ոտքի վրայ պատրաստած ունէր, կուզէր որ իր ըսածը առաջ երթայ. ամէն ընդդիմութիւնները միտքը դըրերէր ոտքի տակ առնել:

Իր մէկ ժողովուրդը որ խիստ կըտարբերէր ուրիշներուն կառավարութիւններէն՝ եր սա-

րին նահանգներուն ան կտորը՝ որ իր տակն
էր, կըսվէր նաև Պելճիա, ըստ մեզ Բեգ-
գիա. ասոնք ինչպէս որ իրենց արտօնու-
թիւններով նեմցեին տակը անցան, ասան-
կալ խիստ վրէժխնդիր էին որ պահվին ան
բաները: Արբօր զատվեցան Ֆիլէմէնկնե-
րէն հերետիկոսութե մէջ ընկնելուն պատ-
ճառովը՝ աս սաորին նահանգները կամ
պելճինները խիստ յարեալ մնացին ուղղա-
փառ հռոմէական եկեղեցույն՝ գրեթէ ամ-
մէն ժողովուրդէն աւելի. կայսեր ըրած
նոր կանոնաւորութիւը խիստ դէմ եկավ
պելճիններուն կամ բեղգացոց, որոնց սիր-
տը արդէն ավըրված էր կայսեր ըրածին
վրայ, որ իրենց երկիրը կուզէր պավիէ-
ռայէն հետ փոխել:

Նոր ըրած կարգաւորութիւնները ասոնք են,
սաորին նահանգները ինը շրջանակ կամ
նոր գաւառ բաժնել, նոր օրէնք ու նոր ոճ
կամ կերպ բռնել քրէական ու քաղաքա-
կան յանցանքներու համար, տուրքերու
վրայալ նոր կանոն դրաւ, որոնց վրայ ինչ-
վան ան ատեն իրենց դատաւորները կը-
խառնուրվէին. եկեղեցական բաներու վրայ
երկու տարին հեղ մը թեմական ժողով
սահմանեց, ան ժողովին մէջը ժողովրդա-
պետ քահանաները վիճակ ձգելով որոշեն
ինչ որ պէտք է որոշելու. ամմէն եղբայ-
րութիւներ՝ հարուստ աբբայութիւնները ու
վանքեր վերցուց, թափօրները՝ ուխտա-
գնացութիւնները արգելեց, միայն մարմնոյ և
արեան տօնին թափօրը թողուց, մէկ թա-

փոքր մնաւ հրաման տրվաւ երբոր որ Ե-
պիսկոպոսը ուզէ Թափոր ելլալու հարկաւո-
րութիւն մը համար՝ ինչպէս ըսեմ անձրեւի
համար. Թափորներուն մէջ քնար զարնել
(չալղը չալել), պատկեր խաչվառ տանիլ,
արուեստաւորաց (էսնաֆներուն) նշաննե-
րը տանիլ (ինչպէս որ կընէին,) ատոնք ամ-
մէնը արգելեց, եղբայրութիւնները վերցուց։
Բայց ամմէն բանէն աւելի իրենց դէմ ան
եղաւ որ լովանիոյ համալսարանին մէջ՝
(որ խիստ երեւելիներէն մէկն է ա̃ծաբա-
նութեան գիտցէն), ամմէն վարպետները՝
վերակացուները՝ ու վարդապետութիւնները
փոխեց, նոր վարպետներ դրաւ, որոնց
վարդապետութիւնը հեռու ըլլալով իրենց
աւ-ջիններէն՝ ամենեւին հաձոյ չեղան, քա-
նի եպիսկոպոսական դպրոցներէց կայսեր հոն՝
գոցեց, ամմէնը ժողվելով մէկհատիկ դպրո-
ցերէց ըրաւ ընդհանուր. մէջի աշկերտնե-
րը չիհաւանելով իրենց նոր վարպետներուն
վարդապետութեն՝ որ շիտակ ուղղափա-
ռական չէին, գանկատ վերուցին իրենց
մեծաւորներուն ու եպիսկոպոսներուն, եր-
բոր մտիկ չըրին՝ սկսան բռնութի ընել, մէ-
ջի բաները սպատուհաններէն վար նետել։
Բրուսէլ քաղքէն զօրք եկան վրանին՝ հա-
զիւ ատոնք զսպեցին, աշկերտներէն երսուն
հոգի բանտը դրին. շատ եպիսկոպոսներ՝
կամ այլ ուրիշ եկեղեցականներ մըր քշե-
ցին, մըր բանտը դրին, որպէս զի վախցը-
նեն նոր կարգադրութիւնները բռնել տան,
բայց անով աւելի կատղեցաւ ժողովուրդը.

Ուրիշ մէկ դիպուածմըն ալ եղաւ սրբա-
զան պապին Վիեննա գալէն քիչ մը առաջ.
Էյպէլ անունով մէյմը մէկ պարսաւագիրք
մը հաներեր սրբազան պապին դէմ, որուն
վրայ սրբազանը գանկատելով Բ. Յովսէփ
կայսեր՝ կայսրն ալ արգելերէր ան գիրքը.
Հռոմայ դատապարտելով իր վճռին քանի
մը օրինակները 1786 խրկեց պրուսէլ
նստող իր նուիրակին, որ պէլճիքային մէկ
քաղաքն է, որպէս զի ան օրինակները
խրկէ Ֆիլէմէնկ ու Ինկիլդէռռա, որոնց
վրայ ալ աս նուիրակը կըխառնըվէր. քանի
մը օրինակալ մալինեսի արքեպիսկոպոսին
ձեռքը անցան։ Աս պզտիկ բանը խռա
դէմ եկաւ Յովսէփ կայսեր նոր կարգա-
դրութենը, որ հրամայերեր թէ՝ դուրսէն
եկած թուղթ մը չհրատարակվի, ինչվան
որ աշխարհական կառավարէն հրաման չել-
լայ, նուիրակը զինքը արդարացուց, բայց
իրեն հրաման եկաւ ութն օրվան մէջ պր-
րուսէլ քաղքէն դուրս ելլալ, իսկ տասնը-
չորս օրվան մէջ ամմէն աւստրիոյ ստորին
նահանգներէն՝ կամ որ նոյն է պէլճիքայէն.
Մալինեսին արքեպիսկոպոսին յանդիմանու-
թին տըրվին, Նամուրին եպիսկոպոսին եկա-
մուտը առին, վանքի մը մէջ քշեցին։

## Ստորին նահանգներուն յառաջադրութիւնը ելլելուն համար խռովութիւնը Հոլլանտայ.

## 1787 — 1788 :

Յունվ. 1. 1787 յովսէփ կայսրը ստորին նահանգներուն մէջ նոր խորհուրդ սահմանեց ընդհանուր կառավարութեան, նոր կարգ դատաստաններու, ինչպէս որ էին ուրիշ աւստրիական կամ նեմցեի երկիրներու մէջ, անկէց աւելի եղաւ ընդհանուր խռովութիւնը, որովհետև ասով բոլորովին կը փոխէր ան գաւառներուն կառավարութեան կարգը, և նոր բաժանմունք կընծայէր գաւառներուն մէջ: Պրապանդին իշխանները ապրիլի 17 մէկ եղան բողոք վերուցին թագաւորական կառավարներուն՝ որ աւստրիական կամ նեմցեի ստորին նահանգները կըկառավարէին, թէ աս հրամանս կըջնջէ մեր արտօնութիւնները, ոտքի տակ կառնէ ան երդումը՝ Սւրախալէ ճոսփ ըսւած՝ որ կայսրը կընէ երբոր ազգը դուքս կըդնէ զինքը պրապանդին վրայ: Ան կառավարները՝ որ էին արշիդքսուհի Քրիստինան յովսէփ կայսեր քոյրը, և իր ընկերը ալպերդոս սաքսօնեան դէքէն՝ ասանկ պատասխան տալով խաղաղցուցին իշխանները, մենք կախ կըթողունք, 'ի գործ չենք դներ ինչվան գրենք կայսեր, նայինք ինչ պատասխան կուգայ. բայց ժողովուրդը անմնալով ան վերակացուները (որ աս փո-

փոխութիս պիտոր ընէին), վանքի մը մէջ ժողով կընէին, գնաց վրայ հասաւ, Թղթեր-նին նայելով իմացաւ որ աս կախ Թղթու-ները ամմէնը դրօշվանց էին, կարծելով որ զիրենք խաբելու համար կընեն՝ խիստ կատղեցան, հարկ եղաւ որ արէմպէրկ դուքսը երևնայ ամմէն եկեղեցականներով, բայց իրենք չխաղաղկեցան, զէնք առնե-լու պատրաստըվեցան ։

Յովսէփ կայսրը ան ատենը խըրըմին քեր-սոն քաղաքը ըլլալով քանիից իր վեզիրը (որ արդէն միշտ խրատ կուտար յովսէփ կայսեր նորութի չընել ատորին նահանգնե-րու մէջ,) հաստատեց կառավարիչներուն ըրածը, որ էր կախ Թղթու բաները՝ իմա-վան որ կայսրը իմանայ՝ նոր հրաման մը հանէ. երբոր յովսէփ իմացաւ, քերսոնէն արտորնօք Ճամփայ ելաւ եռ դառնալու, Լէմպէրկ որ կըսվի նաև Լըվով հասածին պէս, մերժեց ոչնչացուց իր վեզիրին կախ Թող տալը, հրամմեց որ վիեննա գան Թա-գաւորական կառավարիչները, որ էին առ-չիդուքսուհի քրիստինան իր քոյրը, և պէլ-Ճիօյօզօ կոմսը, որ ան գաւառներուն կա-ռավարութենը երեսփոխան էր, նաև իշ-խաններուն ու գաւառներուն նուիրակնե-րուն հրամեց գալու՝ որպէս զի խորհուրդ ընեն, աղէկ եղանակ մը գտնան գործ դնել տալու ։ Աս բանիս վրայ շատ զարմացան պէլճիքային իշխանները, կարուկ խօսքերով հակըրցուցին Թագաւորական կառավար-ներուն որ ինչ չարիք կընան հանել, բայց

երբոր նորէն զօրաւոր Թուղթ եկաւ կայսերմէն՝ որ զիրենք վեննա կըկանչէր, շատ մը ճամփայ ելան վերոյիշեալ արշիդուքսուհին ու երեսփոխանը, վաթսուննալ նուիրակ. իշխանները ապսպրեցին աս նուիրակներուն առաջ իրենց հնազանդութիւնը ցըցընել յօժարակ կայսեր, ետքնալ հասկըցընել որ՝ ամմէնքսալ ետ չենք կենար մեր արտօնութիւնները պաշտպանելու:

Երբոր պէլճիքայէն 60 (ըստ ոմանց 66) նուիրակները ճամփայ ելան վեննա երթալու՝ յօժարակ կայսրնալ իր նուիրակները պէլճիքա կըղրկէր, որ էին 60 հազար զինուոր. աս զինուորները լուքսէմպուրկէն՝ Ֆրիպուրկէն՝ և ուրիշ տեղերէն գալով պաշարեցին պրուսսէլ քաղաքը: Իշխանները զօրաւոր Թուղթ տըվին կայսեր աղաչանքի, որ աս նորութիւններս չընէ, կայսրը միշտ հաստատուն կեցաւ իր միտքին վրայ, միայն թէ պէլճեան նահանգներուն արտօնութիւնները հաստատելու խօսք տըվաւ թէ որ իշխաններնալ քանի բան կայ որ կառավարութեան կարգադրութեան ներհակ է, ան բաները վերցընեն. իշխանները շուտով ետ դառնալով սկսան գործ ընելու, բայց լօվանիոյ համալսարանին փոփոխութեանը վրայ՝ ու ընդհանուր մէկ հատիկ դպրոցներէց ընելուն վրայ՝ շատ դէմ կեցան. ամմէն բանէն աւելի իրենց արտօնութեանը դէմ աս բանս կըսեպէին: Կայսեր դիւանէն կըբռնադատէին որ հնազանդին. մէկ անգամմընալ 1788 յայտնի հրամանաւ բացին դպրոցներէ-

ցը, բայց աշկերտներէն մէկն ալ չիգնաց. Թօփէր տարին լավանիս, պահապանողին խորհուրդը կամ ատեանը մէկ տեղ մը ժողվեցին, զինուորներով պաշարեցին բնե-լով, ասկից չէք կրնար ելլալ, ինչվան որ չէ հնազանդիք նոր կարգադրութեն կայսեր, բայց բազմութիւն ժողովրդեան մէկ եղան մէնծ հրապարակին մէջը՝ սկսան զինուորները քարկոծել, զինուորներն ալ ժողովուրդէն զարկին սպաննեցին: Իշխանները հաւանութի տըվին կայսեր հրամանը կատարելու, համալսարանին վերակացուն ու վարպետներէն շատը քշեցին, որոնք ետքը թէպէտ կանչեցին բայց չեկան. անանկով ան ծաղկեալ համալսարանը ու դպրոցներէցը անապատ մնաց. ան ատենվան խաղաղինալ տուտ եղավ, վրէժխնդրութն կրակը սրտերնուն մէջը կըվառէր:

Ետքը օր եղավ որ՝ յովսէփ կայսրը զղջաց իր ըրած նորութիւներուն վրայ, ինչպէս որ պիտոր պատմենք, որբազան պապը միջնորդունեց որ՝ պելճացոց սիրտը ինջեցընէ. բայց շատ ուշ իմացաւ թէ աղէկ է եղեր ծերերուն խրատը մտիկ ընել, քան թէ իր մտքի դրածին հետևիլ:

## Սպանիայի Թագաւորին ըրած շինութիւնները, նորոգութիւնները, հանրօգուտ գործերը.

Ան ատենն որ՝ Նեմցեի մէջ յովսեփ կայսրը նոր նոր կարգաւորութիւն կընէր, Սպանիայի մէջնալ երրորդ Կարոլոս Թագաւորը կընէր, բայց աս տարբերութիւնս ունէին որ՝ յովսեփ կայսեր ըրածներուն շատը խռովութիւն կըհանէին, իսկ Կարոլոսին ըրածները ուրախութիւն կըբերեին: Աս մեծագործ Թագաւորս միշտ բաղձալով որ իր հայրենիքը ու Թագաւորութիւնը շէնցընէ փառաւորցընէ, իր գանձը բացաւ, շինութիւններ ընելու՝ ուսումներ ծաղկեցընելու խարճեց, որոնցմէ մէկ քանիին վերը պատմեցինք, մէկ քանինալ հոս պատմենք:

Տեսնալով Կարոլոս որ հին պատերազմները՝ Թշնամիներուն մանաւանդ Մուղրի արաբներուն յարձակմունքը՝ շատ աւրըշտըկեր էին քակերեին հասարակաց ճամփաները. հին հռոմայեցոց մեծագործութիւնը ձեռք առնելով՝ ամմէն գաւառներու մէջ շինել շտկել սկսաւ, լեռները վար առնել տըլվալ, դաշտերը ձորերը (օվաները տերեները) բարձրըցընել տըլվալ, հեղեղատները (տերեին ջուրերը) ճամփաները չավրելու համար՝ անոնց ուրիշ ճամփաներ բացաւ. գետերուն Թումբ շինեց եզերքնին (քենարնին) բարձրըցընելով, վրանին կամուրջներ (քէօփրիւներ) շինել տըլվալ անո-

ցուդարձի․ Ջրանցքներ բանալ տըւաւ մէկ ջուրը մէկալ ջուրին հետ խառնելով, որ նաւերը ջուրին վրայէն բերելով բեռները՝ առուտուրը հեշտ (խօլայ) ըլլայ․ որոնց մէջ ամէնէն երեւելի եղաւ արակօնային ջրանցքը՝ որ սառակօցցայի մօտիկ է, աս ջրանցքը որուն վրայ հազարաւոր մարդիկ բանեցան՝ անքաւ ըստակ խարձելով բանալ տըւաւ․ կինջնայ ասիկայ ան ճամփէն՝ որ մատրիտէն միլլէֆլօռէս նաւահանգիստը կըտանի դօռնէռօ լեռան տակէն․ անանկով սպանիային մէջ տեղէն անցնելով ճերմակ ծովը ովկիանոսին հետ կըկպցընէ, խիստ դիւրութի՛ն կուտայ վաճառականներուն ամէնէն կերպ ծանր բեռ իջեցընելու․ Նաւահանգիստները նորոգել տըւաւ․ Թերսանէները ճէպխանէով ու ամէն կերպ զէնքերով լեցուց։

Սիեռռա մօռէնա ըսուած անապատները կային՝ ուսկից ճամփորդները կըսոսկային անցնելու՝ բնակարան աւազակներու ըլլալուն համար, աս աշխարհաշէնը կարոլոս հոն տեղւանքը նոր նոր գաղթականներ ժողովուրդներ բնակեցուց շէնցուց։ Մատրիտ սպանիային Թագաւորանիստ քաղաքը առաջ մէկ խառնափնդոր խեղճ քաղաք մընէր, կարոլոս նոր շէնքեր շինել տալով վարպետաբան ճարտարապետութեան կանոնին կեօրէ, եւրոպային աղւոր քաղքըներէն մէկը ըրաւ։ Նոր նոր հասարակաց դպրատուններ, ճեմարաններ, համալսարաններ, մատրիտի մէջ եւ ամէն իր

երկրին մէջ՝ ծըր նորոգեց , ծըր նոր հիմնեց, ինչ որ տգիտուէ մնացած կար՝ շտկեց։ Տպագրութիւն հարկաւոր արուեստը որ սպանիա իր կոպտութենը մէջ անհոգ թողուցած էր՝ աղուորցուց։

Ուսումը և ուսումնականքը խիստ կըմեծարէր, առատաձեռնութ. կըքաջալերէր. տընկարանները և բնալուծութիւնը (քիմիականութիւնը) շատ ծաղկեցուց, թէպէտ երաժշտութիւն ու նկարչականութիւն դէմ չէր ինչպէս որ կըձանձրանէին, բայց ուզեց սանձ մը դնել իր արքունեացը մէջ՝ որ ան դիւ ծայրը անցնելով կըսիրէին երաժշտական երգերով խաղեր խաղալ կամ քոմէտիա, օրինակ կըբերէր իր մեռած եղբօրը Կ. Ֆէրտինանտոսի սաստիկ մոլեալ կիրքը՝ որ ասանկ տեսարաններու ունէր։ Ամէն վարպետներ որ սպանիա կերթային լեզուներ սորվեցընելու՝ գալեան, ֆրանսզ, ինկլիզ, նեմցէ ու մաճառի լեզուներ, ամէնմնալ աղէկ ապրուստ կըգտնային կարոլոսին օրը։ Գեղեցիկ ըսված արուեստներնալ ծաղկեցուց, իսկ ինքը անանկ աղէկ ճանչցող էր արուեստներուն ձեռագործները՝ որ իր ամէն երկրին մէջը չէկար անոր պէս աղէկ հասկըցող. ինքնալ պղնձի վրայ սըրբազան պատկերներ կըփորէր։ Խիստ կըպատուէր պատկերհանութեան արհեստը, սիրտ կուտար, վարձ կուտար. ասկէց եղավ որ ռափայէլ մէնկս պատկերհանին յարգը (խըյմէթը) աղէկ ճանչցաւ, արուն քաշվածները երբոր նաբօլի էր՝ առե-

նալով իր առջի պատկերհանը ըրավ, շատ պարգևներ տըվավ իր կենդանութե ատենը, և թէպէտ մէնկանալ շատ հալածում քաշեց՝ ինչպէս որ հասարակօրէն կըպատահի վարպետ մարդիկներուն, բայց կարոլա անոր մեռնելէն ետևալ շատ բարեբարուն ըրավ իրեն տանը, որուն քաշված պատկերները անուանի են. ասանկալ քամծնա անունով վարպետ փորողին շատ բարերարութի ըրավ կարոլաս։

Սերջապէս սգանիայի մէջ ինչ գիտութի կամ գեղեցիկ արուեստներ սորվելու բաներ կան, ինչ ձեռագործներու գործարաններ (քերխանաներ), ամմէնն ալ ատ Ֆ. կարոլոսին արդիւնքն են։ Ինչ ալ գեղեցիկ բան կըլլայ աշխըրհիս վրայ՝ երբոր հարստութե հետ կըմիանայ մեծագործութե և բարերարութե առաքինութիը։

## Փիլէմէնկէն ու պրուշէն մէջէ եղած պառա- խռովութիը.

## 1783 — 1786։

Մէկ նոր գժտութի (խըռխըռ) մը սկսաւ ան տարվանս մէջ 1783 Ֆիլէմէնկէն ու պրուշէն մէջը երկու բանի համար. մէյմը որ Ֆիլէմէնկը նոր տուրք եվելցուց ամմէն նաւերուն վրայ, ինչ նաւ որ իրեն նաւահանգիստները կըմըտնային, որպէս զի ըստակ ժողվէ, իբր պարտքը վճարէ որ վերջիշեալ պատերազմին պատճառովը ը-

րավ, խաղաղութեան ատենն ալ շատկեկ զօրք տակի վրայ պահէ, հիմա պրուշը չէր ուզեր որ՝ աս եվելի տուրքը իրեն նաւերը վճարեն ։ Փորձը սորվեցուց Ֆիլէմէնկին՝ որ իրեն հարստութիւնը առանց ուժի բանի մը չէր իգար, երբոր քովը իրմէ ուժով զօրաւոր տէրութիւններ ունի՝ որոնց մէկը զինքը մէկ դի կըքաշէ, մէկալը՝ մէկալ դի ։

Երկրորդը աս էր որ՝ Ֆիլէմէնկը շդատ հալդէալին՝ այսինքն իր գլխաւորին իշխանութիւնը քիչցուցերեր, պատերազմի համար խորհուրդ կամ առեան մը կար՝ անիկայալ վերցուցերեր, հոն եղած օռանժեան տան նշաններնալ՝ զէնքերնալ՝ հաներեր ։ Աս տարաձայնութիւնը շդատ հալդէալին վրայ շատ հնուցմէ սկսած պատճառներ ունէր, բայց նոր պատճառները ասոնք են. առջի պատճառը գանկտելու Ֆիլէմէնկի իշխաններուն աս էր որ՝ շդատ հալդէալը ցամաքին զօրքը դէշ կըկառավարեր. 1784էն սկսեալ ինչ վճարք որ տըվին կըսէին զօրաց համար՝ մէջէրնին մէկ աղէկ զօրք մը չիգտանք պատերազմելու համար. խիստ շատ հազարապետներու (ուֆֆիցիալներու) համար վճարք կառնէր մէնէ, ետքը իմացանք որ կըսէին այնչափ հազարապետ չիկայ եղեր, եղածներնալ գրեթէ ամմէննալ դըրսեցի. առկէց զատ զինուորական պաշտօններնալ կըծախեր, ով որ շատ կըվըճարեր՝ անոր կուտար. իսկ իր շդատ հալդէալեան ցեղին մարդիկներուն՝ ձրի (պատէհավայ) կուտար իբրև արդիւնաւոր մար-

գիւղերու, Փիւլէմէնկի հասարակապետութենէ
մարդիկներու չէր խօսար ։

Աս յանցանքները ու ալ աւելի կըձգէին վօլֆէնպուտտէլ իշխանին վրայ, որ կըսվէր լուիզ եռնեստօ դուքս պրունզվիկի, շդատ հալդեռին և ինկիլիզի Թագաւորին քեռին էր, Փիւլէմէնկինալ Փելտ մառեշալն էր ։ Աս բաներուս համար իշխանները ուզեցին որ՝ շդատ հալդեռը հրաժարի իր իշխանութէն, խոստանալով որ իրենք առջինին պէս իր եկամուտը (կելիրը) վըճարեն իրեն ։ Աս յանցանքսալ կըձգէին ասոր վրան որ՝ որովհետև միանգամայն կառավար էր պօրիզը դուքսին՝ երբոր Այա քաղաքը նստող իշխանները մէկ սուրհանդակ (Թաթար) մը խրկեցին սահմանագլուխ բերդերը զօրաց համար՝ ասիկայ ինքիրմէ բռնեց արգելեց ան սուրհանդակը ։ Բայց աս բաներս պահանջօղ՝ միայն երկու գաւառներն էին, այսինքն՝ օլանտան ու
Փրիզիան ։

Ասոնց մտիկ չընելով օրանժեան շդատ հալդեռը՝ իրեն արդիւնքները կուզէր յիշեցընել տալ՝ որ քառասուն տարվան մէջը ըրերէր Փիւլէմէնկ ազգին վրայ. մէջերնին շատ մտնօղներ եղան որ շտկեն, մանաւանդ մեռնօղ պրուսին Թագաւորը Ե. Փետերիքոս՝ շատ հեղ մէջ մտաւ յիշեցընելով իշխաններուն ծրչափ շահաւոր կըլլար պաշտպանելը օրանժեան տունը իր մօտիկ ազգականը, ասանկալ վերջոյիշեալ լուիզ իշխանը որ իր կնկանը Թագուհիին եղբայրն էր,

կը յորդորէր նոյն պրուշին Թագաւորը՝ որ շըդատ հալըդեալը առաջուցմէ ինչ իշխանութին ու արտունութին ունէր՝ անոնք ամմէնը իրեն դարձընէ Փիլէմէնկը ։ Նոր վրայ առաջ մէկ Թուղթ մը խրկեց ընդհանուր իշխաններուն աղէկ բարեկամական խօսքերով, բայց չորս ամիս համբերելէն ետեւ՝ տեսնալով որ պատասխան մը չիտրվին, կըրկին գրեց սպառնալով․ որուն մէկ գոռոզ կերպով մը պատասխանեցին՝ Թէ դրսի տէրութին մը չունի իրաւունք մեր սահմանադրութենը խառնըվելու, իսկ պարսաւագետ գըքերուն համար՝ որոնց վրայ պրուշը կըգանկտէր՝ ըսին որ՝ որովհետեւ մեր հասարակապետութենը մէջ ազատութին տրված է տպագրութեն, անկեց դուրս բան չիկայ եղած, բայց Թէ որ չափէ դուրս բան մը ըլլայ, ան ատենը կընայինք որ զսպենք ։ Նանը ասանկ լըսնալով շահ մը չեղավ․ շըդատ հալըդեալին դէմ եղողները աւելի կատղեցան, Թէպէտ եւ իշխանները անչափ դէմ չէին ։

Մէկ հասարակապետութե մը մէջ՝ որ ազատութիը իրեն հիմն (Թէմէլ) դըրեր է, հարկաւորապէս ան ազատութիը (որ է քէֆինէ շարժիլը՝) մէջերնին ասանկ տարաձայնութին ու գժտութին (խըրխըռ) կըբերէ, ամմէն խոհեմութիը կըհեռըցընէ ։ Նո աստիճանը հասաւ Փիլէմէնկին երկպառակութիը (Փըռխան), որ մայիսի 29 Փիլէմէնկին քաղքըներուն մէջը երկու դի բաժնըվերէին․ մէկ դիի եղողները կըսվէին

ճիշդ Հասարակապետական կամ Հայրենասէր, մէկալ դին եղօմներ՝ Սդատ հալդէութեան. ասոնք իրենց վրան նշան մը (քօքքարտա) դրին Թուռունճի գունով, որ ծովային զինուորները ու հազարապետները կըկրէին վրանին՝ երբոր Սդատ հալդէռը ծովու վրայ մեծ զօրագլուխ եղած ճամփայ կելլար։ Անկից իրարու մէջ կռիւ ելավ, արիւն եղավ, երբեմն մէկ քաղաքը՝ երբեմն մէկալ քաղաքը զօրք կըխրկէին որ զսպեն, ան զօրքերնալ իրար կըջարդէին. մէկը մէկ դին՝ մէկալը մէկալ դին պաշտպանելով, մինչվան իրեք դի բաժնըվեցաւ Ֆիլէմէնկը, մէկը՝ Սդատ հալդէռեան, մէկալը՝ ազնուապետական, երրորդը՝ ռամկապետական։

Ասով խիստ գէշ կացութեան մէջ ընկաւ Ֆիլէմէնկին հասարակապետութիւնը, պրունզվիքին դուքսը մառէշալը անչափ աչքէ ընկերէր՝ որ ժողովուրդը խաղաղկելու համար ինքիրմէ ետ կեցաւ հրաժարեցաւ իր պաշտօնէն, Ֆիլէմէնկի երկրէն դուրս ելավ, պրունզվիքին երկիրը գնաց, անկից աքվիսկռանա։ Սդատ հալդէռը 1785 մէկ շրջաբերական Թուղթ մը հանեց, գրելով ընդհանուր իշխաններուն՝ որ տարաձայնութիւնը և ըստըրկին պակսութիւնը պատճառ եղան ամմէն չարեաց ու ձախորդութեանց՝ որ անցած պատերազմի մէջ եղան. կըյորդորէր ժողովուրդը՝ որ իրենց մէջի տարաձայնութիւնը վերջացընեն, հասարակապետութիւնը ծաղկեցընեն. բայց որովհետև աս

գրքովս խիստ յայտնի երևան կելլար ամենոց պակսութիւնը, թող չիտըլլին որ յայտնի հրատարակվի իբրև ապստամբական գիրք սեպելով, հապա իբրև առանձին գիրք մը՝ թող տըլլին որ տպվի, և ան կերպով հրատարակեցին։ Ու իրաւ որ աս գրքեն ետև աւելի կատղեցան շդատ հալդեռին դէմ ըսելով որ՝ ասանկ ընելով բացարձակ տէրութիւն կուզէ իրեն քաշել. խիստ դէմ եղողները՝ Ֆիլեմենկին ծովեզերեայ նահանգները էին, իսկ ցամաքի դին եղած նահանգները՝ իր դին էին. ասանկ եղաւ որ՝ շդատ հալդեռը վերջապես չիդիմանալով այս քաղքեն դուրս ելաւ, Փրիզիա եզրը կվէլտըրիա գնաց, հոն 100 ըսված իր ամըռվան զուարճալի տունը նստաւ. անկից օգնութիւն խնդրեց մեռնօղ պրուշի Թագաւորէն որ իր քեռին էր. անիկայալ երկու գիր գրեց, մէկը օլանտայի ու վէսֆրիզիայ իշխաններուն, մէկալը ընդհանուր իշխաններուն, քաղաքավարական բայց զօրաւոր խօսքերով յորդորելով որ շդատ հալդեռին իշխանութենը չիդպչին, որ իր ծնողքեն ժառանգած ունէր, ինչպես եղառաջ՝ ասանկ պահեն։ Բայց Փրիզիայի ու օլանտայի գլխաւորները ասոր ներհակը ընելով 1786 վերուցին շդատ հալդեռին վրայէն ան իշխանութիւնը՝ որ այսի մէջի եղած պահապան զօրաց վրայ ունէր՝ թէպէտ դժուարութեամբ, ըստ որում 19 հագիէն՝ ինը հոգի շդատ հալդեռին դին էին, տասը հոգի միայն դէմ. որով աս վճիռը

ոչ էր ընդհանուր ամէն դաւաճաններու վճիռ։

Պրուշը Ինկիլիզը տեսնալով որ Փիլէմէնկը ամէն իշխանութէ կուզէ զրկել Շդատհալդէրը՝ միայն անունը թողուլ, յայտնի հասկըցուցին ընդհանուր իշխաններուն՝ թէ իրենք պաշտպան պիտոր կենան իրենց ըրած ամէն անիրաւութեցը դէմ։ Բայց Փիլէմէնկը վերժէն կոմսին ապաւինելով որ Փրանսայի վէզիրն էր՝ ամէն սպառնալիք քամահրեց, ուզեց որ Շդատհալդէրութիւնը ջնջէ, ինչպէս որ Փրանսզնալ կուզէր՝ իմացընելով Փիլէմէնկներուն, թէ ձեր ներսի բաներուն ոչ ես կըխառնըվիմ, և ոչ ալ կըթողում որ՝ ուրիշ տէրութիններալ խառնըվին։ Փիլէմէնկը իր յոյսը ասով կըդրացընէր որ՝ ինչպէս քիչ մը առաջ Փրանսան կռնակ կեցաւ հիւսիսային ամերիկայի ապստամբներուն՝ անանկալ իրենց կռնակ կըկենայ, որով իրենքալ կրնան դէմ կենալ վերոյիշեալ տէրութեց Պրուշին ու Ինկիլիզին, մանաւանդ որ՝ 1785 Նոյեմբ. 8 Փիլէմէնկն ու Փրանսզը մէկ տեղ դաշնադրութի ըրած ունէին մարտավար ու մատտապահ։ Նիվիդ ըսված տեղնալ Փրանսըզի զօրքեր կային՝ որ Փիլէմէնկի հայրենասէրներուն միշտ սիրտ կուտային մովրնին դրամնին առաջ տանելու յաղթելու։ Բայց ամերիկայի ապստամբները ամէննալ մէկ սիրտ մէկ հոգի ըլլալով Փրանսզին օգնութիը շատ ըրավ իրենց, իսկ Փիլէմէնկը չէր մտածէր որ՝ իրեն ներսի դին փըլթ-

թած էր, քանի որ երթար՝ նորէնոր թըշ-
նամութի կելլար մէջերնին, ֆրանսայլին օգ-
նութիւնը ինչ կրնար ընել իրենց. առաջ
ինչպէս որ ազնուապետութիւն ուզողները
շատ հալդէռլին դէմ էին, հիմայ ռամ-
կապետութիւն ուզողները ազնուապետ-
տուէ դէմ եղան: Սկսեց նոր ժողովուրդ-
ելան Ազատ ըսվողներ, զէնք առին, առջի
քաղաքը որ տասնկ ապստամբութէ դըրա-
շակ (պայրախ) բացաւ՝ ուդըրէք քաղաքը
եղաւ որ աթոռ էր յանսենեանց, անոր
հետեւեցաւ պզտիկ քաղաքը Միհ. ասոնց
պաշտպան կեցան մօտիկ եղած քաղքընե-
րը՝ որ իրենց դատաւորները վար ձգեցին,
նորէն դատաւորներ դրին իրենց ուզածին
պէս, քիչ մը ատենի մէջ 50 հազար զօրք
հանեցին օլանտայի մէջ. մէկալ նահանգ-
ները որ անկար էին ժողովուրդը զսպելու՝
լուռ եղան: Նօրմանտամ, ուդըրէք, ան-
ժէյմ, լէյտէն, եւ ուրիշ քաղքըներուն
մէջը շատ վրդովմունքներ (արպէտէ) ելան
ժողովուրդին ու զինուորներուն մէջ, որոնք
չիկրցան զսպելու. եւ գիտես թէ ասոնք ե-
ղան մէկ գէշ օրինակ մը՝ որոնց քիչ մը ա-
տենէն ետեւ հետեւելով իրենց դրացի եղող
ֆրանսզ ազգը, իրենց մէջնալ տասնկ ը-
նել սկսան, մէկ քաղաք մէկալ քաղքին
հետ կըհակառակէր իմին իրաւունքս աւելի
մեծ է ըսելով, եւ մէկ դատաւոր մէկալը
դատաւորին դէմ բան կըհրամմէր:
Մէկ մեծ վէճմըլնալ օխտը նահանգներու
մէջ ան էր որ՝ չէին ուզեր իրենց ընկած

խարձը նաւերուն համար վճարելու՝ որ 33 նաւ էին, ըսելով անոր վճարքը աղէկ համեմատութիւ չափով չէին ձգած գաւառներուն կեօրէ, ասկից շատ խռովութի ձգեցին, ապստամբութի յորդորեցին, նաև տաքցընող գրգռիչ գրքեր դուրս հանեցին ։ Աս անկարգութենց ճար ընելու համար՝ օգոստոսի մէջ Փիլէմէնկին 80 քաղքըներէն 80 մարդ ժողվըվեցան ամստըրտամի մէջ, խօսք դրին որ՝ ամմէնքնալ մէկ կարծիք ըսեն, սահմանադրութիւը ամբողջ պահել տան ․ իրենց խօսք դրածը գրի վրայ անցուցին, Փիլէմէնկին ամմէն նահանգներուն մէջը պըտըտցուցին՝ որ ճշմարիտ հայրենասէր եղօղները անոր ստորագրեն ։

Ուդրեքին ու օլանտային մէջի եղած Ազատ ըսվօղները աս բանիս ստորագրեցին, պինտ ետքը միացած ազատ եղօղներուն նուիրակները լէյտէն քաղքին մէջը ժողովեցան, հոն որոշեցին որ՝ իրենցմէ ինը մարդով մէկ ժողով մը սահմանեն վերտէն քաղքին մէջը՝ որ օլանտայի և ուդրեքի սահմանակից է․ մէկ աղերսագիր մընալ տըվին օլանտայի ու վեսֆրիզիայի իշխաններուն, շատ վար դարնելով շդատ հալդէրը, Թշնամի հայրենեաց կանչելով, մէկ օձ մինչև ըսելով որ մեր ներսի դին կըմեննծնայ, կամ մէկ նոր Ալպա դուքս մը է․ խօսք դրին ալ որ՝ զէնք առնեն դէմ դնեն ամմէնուն՝ որ Թըշնամի են քաղքըցիներուն ։

Ասանկով ճար ընելուն տեղը՝ քաղաքական պատերազմ բացվեցաւ, կվէլտօրիա նահանգ

դին երկու պզտիկ քաղաքըները Էլպուրկօ ու Հաղդէմ ըսուած՝ որ ռամկապետական էին, իրենց նահանգին ուրիշ քաղաքըներուն դէմ ելան ։ Կվէլտրիային իշխանները շըտապ Հալդեռին վրայ վազեցին տապըպրելով որ զօրքով զսպէ անոնք, որովհետեւ ինքն էր ընդհանուր հրամանատար. իսկ սա երկու քաղաքը Օվէռիսսէլին մօտիկ քաղաքըներէն՝ և ուրիշ ազատ ըսվօղներէն՝ օգնութիւն կանչեցին ։ Բայց տեսնալով որ իրենց օգնութիւն չիգար, հապա անոր ներհակ զօրք կուգար զիրենք զսպելու՝ Էլպուրկին մէջի եղօղները ամբողջ քաղաքը մէջի բաներով թողուցին, Քամբէլ քաղաքը փախան, որ Օվէռիսսէլին ամուր քաղաքն է, իսկ Հաղդէմ քաղքին մէջի եղօղները դէմ կեցան, երկու դիմացէնալ շատ մարդ ջարդըվելով տանքալ թողուցին քաղաքը փախան, որ մտնօղները թալլեցին ։

Սա բանիս վրայ տաքնալով օլանտային իշխանները՝ գրեցին կվէլտրիայի իշխաններուն՝ քամահրելով իրենց ըրածը, շըտապ Հալդեռինալ գրեցին սպառնալով, եթէ համար ուզելով իրմէ. զօրքին հրամեցին որ՝ պատրաստ կենան, ուր որ խրկեն՝ հոն երթան. բայց սա զօրքը իժիր կըկանչէին՝ Կեցցէ օրանժեան տունը, որ էր շըտապ Հալդեռին տունը ։

## Նոր Թագաւոր նստաւ Պրուսիոյ վրայ.

## 1786:

Պրուսիոյն Թախտը նստող եղաւ Ֆրետերիքոս Կուլիելմոս Բ. եղբօրորդի Բ. Ֆրետերիքոսին, երբոր անիկայ 1786 մեռաւ՝ անիկայ նստաւ իբրև իր ժառանգը, մեռնող Թագաւորը Ֆրետերիքոս անիկայ չէր սիրեր, մանաւանդ խստութիւն կըվարուէր իր հետը, բայց անոր խստութիւնը պատճառ եղաւ որ Կուլիելմոս աղէկ չարքաշութիւն սորվեցաւ, աղէկ ուսում, ու զինուորական գիտութիւն երևելի վարպետներու տակ:

Անիկայ առաջինները ուզեց Ֆրետերիքոսին կերպը պահել. զօրապետները ու նախարարները (ռիճալները) կանչեց ու՛ր տեղ որ Բ. Ֆրետերիքոսին մեռելը դրած էր, ըսաւ իրենց: „Ա՛ծ իս դրաւ կառավարել „աս միապետութիւնը, և թէպէտ ես չեմ „կրնար իմ նախորդիս պէս անուանի ըլ„լալ, բայց միշտ հաստատական հանգստու„թիւնը պիտոր նայիմ, բարեկարգութիւն ընե„լու հոգ տանիմ նաև պզտիկ բաներու „մէջ, և քաղաքական հաւասարակշռու„թիւնը ջանամ պահելու՝ որ ամենքն տէրութիւն „կուզեն“:

Մեռնող Թագաւորին երկան ու աշխատալը ծեծերը՝ խարճը ու ծանր տուրքերը՝ ձանձրացուցերէին պրուսիոյն ժողովուրդը, հիմա կըյուսային որ աս նոր Թագաւորին

օրը աւելի հանգիստ արդար կառավարութիւն մը վայելեն որովհետեւ ասանկ կը խոստանար, իր խոստմունքին վրայ ալ կեցող մարդ էր, գիտէր որ՝ խոստանալը ու չիպահելը աւելի անվայել բան մընէր թագաւորի՝ քան թէ մասնաւոր առանձին մարդու մը: Իրեն առջի արդարութիւնը աս եղաւ որ՝ մէջլէնպուրկի դուքսին դարձուց իրեն ապրանքները, որ իրմէ առջի թագաւորը վերցուցերէր փոխ առնելով. մատրապազներէն շատը վերուց, զինուորներուն խստութիւնը թեթեւցուց, անկար զինուորներուն ալ հոգ տարավ, գեղացիներուն տուները զինուորներ նստեցընելը արգելեց, հազարապետներուն անկարգութիւնը որ պարտք կընէին իրենց անառակութեան համար՝ զսպեց, նեմցերէն խօսիլը նորէն մտուց թէ իր արքունեացը մէջ՝ և թէ ճեմարաններու մէջ, որովհետեւ իր նախորդին ատենը փրանսըզերէն խօսիլը մտեր էր. հաւատքի ազատութիւնը հաստատեց, քօլօնիա նստող նուիրակին ապսպրեց որ՝ իրաւասութիւնը գործ ածէ իր երկրին մէջ եղող ուղղափառներուն վրայ: Իր նախորդին կտակը կատարեց որ շատ բան թողուցերէր իր ազգականներուն ու բարեկամներուն, մեծ հանդիսով (ալայով) անոր թաղումը ընելէն ետեւ՝ քէնիկսպերկ գնաց, հոն թագաւոր պսակուեցաւ:

## Պրուշին թագաւորը զօրք կըխրկէ Ֆիլէմէնկին, շտատ հալտէրը իր տեղը կըդնէ ․

## 1787 ։

Մարդս ինքիր խելքովը շատ բան կըմտածէ, կըսկըսի կերպ կերպ բաներու ձեռք զարնել, մանաւանդ հին բաները փոխելու, նոր բաներ մտցընելու որ ամմէնէն վտանգաւոր է, բայց աշխարքիս դիպուածն է որ ամմէնուն վրայ կիշխէ, ամմէն բանը կըփոխէ ․ Բ․ Ֆետերիքոսին պրուշի թագաւորին մահը՝ վերժէնին Ֆրանսայի վեզիրին մահը՝ Ֆրանսայի եկամուտին պակասը՝ ասոնք ամմէնը մէկ տեղ գալով Ֆիլէմէնկին մտածածը բոլորովին փոխեցին ։ Երեք տէրութին պրուշը ինկիլիզը Ֆրանսան իրենց մէյմէկ կերպ շահ ունէին Ֆիլէմէնկին բանին խառնըվելու, իրեքնալ մէկ եղան շտատ հալտէրը տեղը դրին, որովհետեւ նոր պրուշին թագաւորին քոյրը շտատ հալտէրին կնիկն էր՝ մեռնող թագաւորէն աւելի աս բանիս ետեւէ ընկաւ ․ յատուկ դեսպան մը խրկեց հայա քաղաքը սպառնալով թէ որ իմ էնիշտէս նորէն իր հայրենական իշխանութենը վրայ չըհանէք, զօրքս կըխրկեմ, ապստամբները կըպատժեմ, եւ կըդնեմ անիկայ իր իշխանութենը մէջ ։ Աս ըսելով ինկիլիզին հետ միացաւ, որ անալ խիստ կուզէր աս բանս, որպէս զի Ֆիլէմէնկին կապը որ ունէր Ֆրանսային հետ քակէ, իր

Հետը կապէ զՖիլէմէնկը ինչպէս էր առաջ
100, 150 տարւընէ վեր:

Օլանտային իշխանները կամապաշտութն ըրին չհնազանդեցան, իսկ ընդհանուր իշխանները կըյորդորէին մտիկ դնելու. վէսֆրիզիա նահանգնալ որ առաջ մէկ էր օլանտա նահանգին հետ՝ անալ դարձաւ օլանտայէն բաժնըվեցաւ: Բայց երբոր դուքողութիւնը մարդուն որտին վրայ կըտիրէ՝ անխնելք խօսքեր զուրցընել կուտայ. օլանտացիք Ֆրանսզին յուսալով գուծողում մը պատասխան տըվին: „Ան է որ մէկ դիւացէն „պրուշին զօրքը օլանտա մտնայ՝ մէկալ „դիւացէնալ Ֆրանսզին զօրքը կըմտնայ. և „ան ատենը մենք շդատ հալդեար ապըս-„տամբ ու Ֆիլէմէնկի թշնամի կըհրատա-„րակենք ըսին„: Ասանկով քաղաքական պատերազմը մէջերնին աւելի ծաւալեցաւ. մեծ մասը նահանգներուն և գրեթէ ամմէն ժողովուրդը կըթըված զօրքով շդատ հալդէուին դէմ եղան, շատ զօրք կըձգէին կըփախչէին օլանտայէն. նաև ամբողջ գունդերենց թօփերով մնտուկներով շդատ հալդէուին դէմ անցան ըսելով. „Մենք եր-„դումնիս միայն օլանտա նահանգին իշ-„խաններուն չըրինք, հապա ամմէն Ֆիլէ-„մէնկի նահանգներուն մէկ տեղ, ու շդատ „հալդէուին, որովհետև անիկայ էր ընդ-„հանուր զօրագլուխ„: Ֆրանսզնալ մէկ դեսպան մը խրկեց որ օլանտային ու շդատ հալդէուին մէջի տարաձայնութիւնը շտկէ, բայց 1787 փետրվ. մէջ աս երկու դես-

պանծներնալ ծանուցին որ՝ ամմէն խօսք պա-
րապ է, միայն զօրքով կրնայ ասոնք խո-
նարհեցրնել։

Ան ատենը պրուշին Թագաւորը իր դես-
պանը ետ կանչեց, և իր քրօջը որ շդատ
հալդեռւին կնիկն էր՝ ապսպրեց որ ելլայիր
հանգիստ կեցած տեղէն՝ մէկ պատրուակով
(մահանայով) մը հայա քաղաքը երթայ
ուսկից ելած էր, որպէս զի իրենն դիրի եղօղ-
ները սիրտ առնեն։ Շդատ հալդեռւին
կինն ալ իր եղբօրը հնազանդելով ծպտեալ
(Թէպտիլ) կերպով մը նիմէկայէն ճամփայ
ելաւ հայա երթալու, բայց խռովութեան
ատեն ըլլալով դատաւորները պահապան-
ներ դրերէին սահմանագլուխ տեղվանքը.
յունիսին 28. Ճամփան օլանտա նահանգին
զօրքը արգելեցին աս իշխանուհին. ինչ որ
ըսաւ՝ Թող չտրվին առաջ երթալու. մէկ
չօրապաձի մը որ տամնապետ էր եղած շատ
քամահրանքի խօսքերալ զուրցեց։ Իշխա-
նուհին ալ նիմէկա դարձաւ, անկէց իր ձե-
ռագրով Թուղթ գրեց ամմէն նահանգնե-
րուն պահանջելով պատժելու ան հալա-
բապետները՝ որ զինքը ասանկ կերպով ար-
գելելով ետ դարձուցին, ասանկալ Թուղթ
գրեց հասկըցուց ինկիլիզի ու պրուշի Թա-
գաւորին։

Քանի մը օրէն ետև պրուշի Թագաւորին ե-
րեսփոխանը եկաւ պահանջելով ընդհանուր
իշխաններէն որ պատժվին ով որ խօսքով
ու գործքով անիրաւութի ըրաւ պրուշի Թա-
գաւորին քրօջը. ընդհանուր իշխանները ա-

սոր պատասխան տուին ։ „ Մենք հասարա-
„ կապետութեան սահմանադրութեանը կեօրէ
„ չենք կրնար մասնաւոր նահանգներուն
„ բանին մէջը խառնուիլ . աս բանս միայն
„ օլանտայի նահանգին իշխաններու կիյնայ
„ ընել „ ։ Իսկ օլանտայի նահանգին իշխան-
ները պատասխանեցին ։ „ Մենք հրամեր-
„ ենք՝ ծով որ գայ նիմէկայէն՝ կամ կէլ-
„ տրիայի ուրիշ տեղերէն՝ թող չքտան ,
„ ներս չիմացընեն . հիմա ան հազարապետ-
„ ները որ մեր հրամանը ճիշդ պահեցին՝
„ վարձատրելու արժանի են՝ չէ թէ պատ-
„ ժելու . մանաւանդ վախ կար որ՝ իշխա-
„ նուհին հայախին մէջ երեւցածին պէս՝ մէկ
„ նշան մը ապստամբութեան չըլլար , որ շատ
„ հալըդէուին դին եղողները կըմտածէին
„ հանելու , անոր համար չխտենք ըսին
„ ինչ բանով ինչ կերպով հատուցում
„ ընենք աս բանիս մէջ պրուշի թագաւո-
„ րին „ ։

Ասանկ համարձակ պատասխանելը աղէկ՝ բայց անոր է որ՝ ինքը ուժ զօրութիւն ունենայ , և իր մէջնալ միաբանութիւն ըլլայ , բայց Ֆիլէմէնկը երկու բաննալ չունենալով պրուշին թագաւորին փնտռած առիթը աս խօսքերս եղան . լսածին պէս շուտ մը հրամեց կարոլոսի պրունզվիքի դուքսին որ իր մեծ զօրագլուխն էր , որպէս զի 60 հազար զօրքով երթայ , օլանտայի նահանգը իր տակը առնէ , և ուրիշ նահանգներնալ շատ հալըդէուին հնազանդեցընէ . իրենցալ մէկ թուղթ մը խրկեց 12 թեւութե

առաջարկելով, թէ շդ՚ատ հալդեւոյն իրա-
ւունքը իրեն դարձընեն մանաւանդ ընդ-
հանուր զօրագլխութը, նոր դատաւորներ
դնեն որ տարաձայնութիւնը կռիւը քննեն
կտրեն, թող տան որ թագաւորները մէջ
մտնան շտկեն. իշխանուհին ալ հրաւիրեն
որ գայ իրենց նահանգը։ Սա թղթիս վրայ
օլանտային իշխանները այսչափ միայն որո-
շեցին որ՝ երկու մարդ խրկեն պէռլին, որ-
պէս զի զիրենք արդարացընեն ինչ որ ըրին
իշխանուհիին. ան ատենը սեպտ. մէջ պրու-
շին միայն 20 հազար ընտրըված զօրքը ա-
ռանց մէկ հարցընելու մը մտան կվէլտրիա,
հոն բարեկամի պէս զասոնք ընդունեցին,
ինչ որ պէտք էր իրենց տըվին. ետքը օլան-
տային վրայ սկսան յարձըկիլ, ան տեղա-
ցիները խիստ քիչ կըցան ասոնց դէմ դնել,
որովհետեւ օլանտային զօրքը յարձըկելու
յարմար էն քան թէ դէմ դնելու։ Յոյսեր-
նին Ֆրանսային օգնութեանը վրայ դնելով
անհոգ կեցերէին զիրենք զօրացընելու,
չէին յիշեր որ՝ մարդս ինքիր զինքը պիտոր
նայի, ինքիր աշխատանացը վրայ յոյսը պի-
տոր դնէ, չէ թէ ուրիշին խոստմունքնե-
րուն վրայ. թող որ օլանտացիք իրենց մէ-
ջը միշտ զանազան կարծիքներով բաժնը-
ված ըլլալով մէկ որոշ բան մը չէին կրնար
վճռել, ամմէն կարծիքնին մէյ մէկ արդելք
կըգտնար։ Մարդ խրկեցին զանազան տե-
ղեր որ ծովուն ջուրը թող տան, ինչպէս
որ ըրերէին ժդ. լուիզին Ֆրանսային թա-
գաւորին ատենը՝ բայց չեղավ, կամ որ չու-

դնեցին իրենց արտերը ջուրի տակ կոխնել տալ, կամ որ չկրցան այն տեղվանքը ջուրը թողուլ, գետերուն ջուրը պակսած ըլլալով ծովուն ջուրնալ ցածցած, բայց թէ որ կարենային ընել՝ թշնամին չէր կրնար ամենևին առաջ գալ։

Փրանսզը նեղիլ ցըցուց պրուշին զօրաց մնալուն վրայ օլանտայի մէջ, բայց պրուշին թագաւորը իր քրոջը հատուցում ընելու իրաւունքը կըպահանջէր. ուր որ իր զօրքը կըմտնար՝ ուրիշ բան չէին ըսեր՝ բայց եթէ առջի կարգը կուզենք որ հաստատվի, և որոնք որ իրենց դէմ չէին կենար, մէկ վնաս մը չէինիտար. իսկ օլանտային զօրքը պրուշին զօրաց մօտիկնալը լսածնին պէս՝ կըփախչէին. ուդրէք և ուրիշ քաղքըներ իրենց դռները բացին, հայա քաղքին մէջը միայն ան նուիրակները մնացին՝ որ շդատ հալդեւին դին էին, որոնք մէկ նուիրակ մը իրկեցին՝ շդատ հալդեւը ու իշխանուհին հրաւիրեցին նորէն հոն իրենց տեղը գալու։ Ասանկով շդատ հաէլդուը պրուշին խրկած զօրքովը զօրացաւ, յաղթանակելով դարձաւ եկաւ հայա, իրեն հետ մէկ տեղ հարուստ քաղքըցիները ու վաճառականները մէկ եղան. առջի մտածածնին ամէննալ պարապ ելլավ, առջի պատիւը ու իշխանութիւնը որ կուզէին վերցընել՝ նորէն ձեռք ձգեց. նոր իշխաննէր ընտրեց իրեն, և թէ որ սրտաա մէյմը ըլլար՝ ան ատենը բացարձակ թագաւոր կըլլար Փիլէմէնկին վրայ, բայց աշ-

խըրքէս դիպուածը ետքի ատեններս ընկե֊
տըրվավ։

Մ՝իայն ամսդըրտամ քաղաքը՝ ուր որ 300 հազար հոգի կային ան ատենը՝ պինտ կեցաւ իր մտքին վրայ, ուզեցաւ դէմ դնել, բայց պրուշները ամմէն քովի եղած քաղաքները ու գեղերը առին՝ ծանր տուրքի տակ ձգելով, անանկով ամսդըրտամ մնաց պաշարված, պրուշի քանակին (օրտուին) նուիրակներ խրկեց հաշտութի խօրաթելու, բայց իրենց ըրածը իշխանուհիին դէմ միշտ կըջատագովէին։ Պրունզվիքին դուքսը հրամեց անոնց որ՝ քաղաքը տան, իշխանուհիին դէմ կեցողները պատժըվին, ուրոնք որ ամմէն անկարգութենց պատճառ էին եղեր՝ պաշտօնէ վար ձգեն, երբոր ամսդըրտամցիք չուզեցին կատարելու, սկըսաւ քաղաքը սաստիկ թօփոտել, կրակէն ու տովէն (խըլթըլըխէն) նեղելով, ան ատեննիալ յամառեալ կեցերէին, բայց երբոր պրուշին զօրքը մօտիկ էին յարձըկելով ներս մտնալու՝ ան ատենը ամսդըրտամը տըվին. թէ որ յարձակմամբ առնէին՝ քաղաքը պիտոր թալլէին, որուն մէջը անթիւ համբարներ (մահսէններ) կային, մէջերնին անքաւ գանձ աշխըրհիս չորս դիհացէն ժողվըված։ Ան խենթ սրտոտները որ ուզեցին դէմ դնել, առջինը եղան փախչելու, որովհետեւ միայն վաճառականութի ու շահասիրութիւն գիտէին՝ չէ թէ պատերազմիլ։ Հայրենասէր ըսվօղները ու շդատ հալըդէուին խիստ դէմ եղօղները ամմէնը

փախան կէս մը Նեմչէի տակի եղած սառ-
րին նահանգներուն մէջ, կէսմըն ալ Ֆրան-
սա, ուր աղէկ ընդունելութիւն գտան։

Պրուշնէրը Ամսդրտամ մտածնին պէս՝ շատ միլիոն ֆիօրին առին ծեծին խարճին համար, քաղքըցոց զէնքը առին, ամմէն պաշտօնակալնէրը դատաւորնէրը իրենց պաշտօններէն ձգեցին. ամմէն տեղ շդատ հալգէուին՝ նշաննէրը դրին, և որոնք որ իշխանուհիին Ճամփան արգելեցին, ապսպրեցին որ երթան խոնարհութեամբ ծունկ չոքելով իրմէ թողութիւն առնեն, իրենց ըրած սխալը խոստովանելով. վՃռեցին Նեմցէի զօրք պահել ըստրկով խաղաղութիւն պահելու համար, և ան ատենը 3 հազար պրուշի զօրք թողուցին։ Ինչ դաշնադրութիւն որ ըրերէին Ֆրանսզի Թագաւորին հետ աւրել տրվին, առաջարկեցին ընդհանուր իշխաններուն որ պրուշին և Ինկիլիզին հետ մարտապահ դաշնադրութիւն մը ընեն, Ինկիլիզնալ խօսք տրվավ որ՝ Ֆիլէմէնկին ըրած սխալը կըներեմ. սխալը աս էր որ՝ առչափ երկան ատեն բարեկամութեամբ կապված ըլլալով, առանց մէկ պատճառի մը իրեն թշնամի եղավ, աս դաշնադրութիւն 1788 հաստատվեցաւ։

Սանկով պրուշը իր իշխանութիւնը տարածեց օխտը միացեալ նահանգներու վրայ՝ որ է Ֆիլէմէնկը, թէպէտ և խիստ քիչ ատեն քշեց այսինքն՝ օխտը տարի։ Ուր որ շատվոր կիշխեն, և մէջերնին միաբան չեն, եօքերնին ասանկ կըլլայ։ Բայց որչափ

ուղղափառ որ կային Ֆիլէմէնկին երկիրը՝ ամենուն ալ կուխուխ մէջը չխառնըվեցան, ապստամբներուն հետ չմիաբանեցան, անոր համար ասկէց ետքը ընդհանուր իշխանները շատ ծանր տուրքերէ ազատեցին ուղղափառները, ժամ մը չունէին՝ հրաման տըվլին որ ժամէր շինեն իրենց։

## Յովսէփ կայսեր կարգաւորութիւնը փորձէ եւ օրէնքէ վրայ.

## 1786։

Յովսէփ կայսրը կերպ կերպ բաներ կըմտածէր տուրք ժողվելու վրայ, շատ մարդ շատ կերպեր ճամբայներ կըսորվեցընէին իրեն, մէջերնին ան կերպը հաճոյ եղավ իրեն որ՝ իր աւստրիական երկրին մէջ ինչ կերպ գետին կըգտնըվի՝ ամէննալ համրանքի տակ առնէ, ամէնքնալ չափէ, անոնց ամմենուն համեմատ տուրք մը ձգէ մշտնջենաւոր։ Ասանկով հազարաւոր մարդիկ համրել սկսան քանի անտառ կամ վարուցան եղած գետիններ կան, քանի արտ (Թառլա) պարտէզ, դաշտ, լեռ, լիճ (կէօլ). շատ խարճ ընելէն ետև ալ չափելուն համար, շատ ամիսներ անցնելէն ետև՝ իմացաւ յովսէփ կայսրը որ իր մտածածը պարապ էր, դրած մարդիկներնալ չէին կրնար չափել, որովհետև ուրիշներուն մէջնորդութիւններով անանկ մարդիկներ խրկեցին չափելու՝ որ անփորձ մարդիկներ էին.

հազիւ 18 տարվան տղաքներ, երկրաչափութիւնը քանի մը ամիս միայն սորված ըլլալով։

Ան առենը յովսէփ աս կերպը թողուց, ուրիշ կերպով մը չափը առնել հրամեց, բայց աւստրիացիք ու մանձառները շատ դանկտեցան թէ առջի չափելուն և թէ աս երկրորդ չափելուն առենը, անոնց կամքը կատարելու համար վերջացընել տրված չափելը։ Յովսէփ կայսեր բնութիւնը աս էր որ՝ մէկ բան մը ըսկըսելու ըլլար՝ կընայեր շուտ մը լմընցընելալ, որպէս զի ուրիշ բան մը ըսկսէր։

Նաև օրէնքի վրայ ուզեց որ՝ ամմէն իր ըրած օրէնքները մատեան մը գիրք մը շինէ, ինչպէս որ մեռնող պրուսիին թագաւորը իր պզտիկութէ առենը ըրերէր. շատ դանկատ լսած ունէր յովսէփ դատաւորներուն վրայ, որ խիստ կուշացընեն դատը (տավան) կտրելու, շատ խարճ կառնեն. Վիեննայի մէջ անանկ դատեր (տավաններ) կային որ՝ քառսուն տարվընէ վեր չէին կտրըված. բացարձակ տէր եղածին պէս յովսէփ՝ ան օրէն կրջանար աս բանիս ճար ընել, անանկալ կարգաւորել ուզեց որ՝ քանի դժարին դատ ըլլայ՝ դոնէ տարին չանցնի։ Աս օրէնքին մատեանը շինելու ժողվելու համար՝ յանձնեց Մէկէս անուն խորհրդականին, որ խիստ կարդացող ու խելացի մարդ էր, անալ վեց ամիս չիքշեց որ լմնցուց, բայց տեղ տեղ տարակուսական ու մութ բաներ ըլլալով՝ բացատրութիւն

ուզեց ժողովուրդը. կայսրն ալ բացատրու-
թիւը տրուած փոխելու յօժարութ ցըցուց,
որովհետև իր միտքը աս էր որ՝ ամմէն բան
շիտակ ըլլայ, ժողովրդեան աղէկութ ըլ-
լայ։

Նանկով պրուշի թագաւորէն աւելի ա-
ղէկ օրէնքներ հանեց, որ շատ բանի մէջ
շատ մարդ կըգովէր, ինչպէս մէկն ալ ան
էր որ՝ գեղերը կամ ան տեղվանքը ուր որ
ժողովրդապետական եկեղեցիներ շատցուց,
նոր հիւանդանոցներ շինեց, ողորմութեան
տունկներուն աւելի եկամուտ կապեց,
մաշտոցը նեմցէի լեզու թարգմանել տը-
վավ, որպէս զի մկրտութիւը՝ պսակը՝ վեր-
ջին օծումը՝ նեմցէի լեզուով ընելով ժողո-
վուրդը հասկընայ, առաջ լատին լեզուով
կըլլար։ Ըստակներու վրայ ալ կարգաւո-
րութ ըրավ, որչափ մաշված ըստակ կային՝
հալեց նորէն թափեց, ոսկի ըստակներուն
աժողչէքը վեր վերցուց, որովհետև սպա-
նիանալ՝ ֆրանսանալ՝ սավոյանալ՝ ձինիվիզ-
նալ՝ հռոմալ՝ աժողչէքնին բարձրըցուցեր-
էին, հասկըցաւ որ ամմէն աւստրիական
երկրին մէջ քալած ոսկիէ ըստակը 66 մի-
լիոն ֆիօրինի կըհաներ, քալած արծըթէ
ու պղնձէ ըստակը 140 միլիոն ֆիօրինի
կըհաներ, թղթէ ըստակները 20 միլիոնի,
ասանկով կայսեր ժողովրդեան մէջ ամմէն
քալած ըստակը 226 միլիոն ֆիօրին էր։
Յովսէփ կայսեր մէկ կարգաւորութիւնալ
եղավ զանազան ժողովքներուն վրայ, որ
աշխարհականները իրենց մէջը հնարերէին,

կըսվէին լիպեռի մուռատօռի, որ ըսել է Ազատ պատ հիւսողներ. կամ ֆռանք մէսօն, ուսկից եղած է ֆռամասօն անունը, ըսել է Ազատ տանէր։ Ասոնց ժողովքներուն վրայ աչք դրցված էր, միայն ան ժողովքները արգելված էին՝ որոնց բանը չէր հասկըցվէր, հիմա իմանալով որ՝ վերջը չէալ ժողովներնալ մէջէրնին կերպ կերպ կըքամծնըվէին, որոնք խռովութի հանեցին շլէզվիգ, պավիէրա, ու պրանտէնպուրկ դաւառին մէջ Լուսաւորեալ կոչելով զիրենք, ատոնց կայմ մը դըրաւ յովսէփ, որպէս զի հասարակաց հանգստութիւնը չաւրեն։ Ասոր համար 1786 յուլիսի 11. ապսպրեց որ՝ ուրիշ տեղ ամենևին մէկ ժողով մը չըլլայ, բայց եթէ մայր քաղքընները՝ կամ երևելի քաղքընները, որովհետև առաջ ինչվան գեղերուն մէջնալ կըլլային։ Ամէն գլուխ ըսաւ ան ժողովներուն՝ զուրցեն ան տեղացի եղած դատաւորներուն ինչ օր՝ ինչ ատեն որ կըժողվըվին, գիշեր ատեն ժողվըվիլը ամենևին արգելեց, ամէն մէջի եղողներուն անունները գրել տալ ապսպրեց, նաև անոնց որ կըմտնին կամ ժողովքէն կելլան։ Աս կանոնները դէմ ըլլալով Ֆըռամասօններուն՝ որ իրենց բանը առաջուցմէ վեր ծածուկ ըլլալ և գիշերը ժողվըվիլ կուզէին, կամաց կամաց քիչցան։

## Փարէզին մէջի խռովութեանը ներգործանքին մը համար.

## 1785:

Ոչ գլուխը չըսկըսած կարդա մէյմը ինչ որ յառաջաբանութեան մէջ ըսերենք թէ ինչպէս մարդուս բարոյական կիրքերն են՝ որ զանազան գործողութիւններ չիկարծած դիպուածներ հանել կուտան աշխըրքիս մէջ՝ մանաւանդ կնկան ձեռքով, որովհետև հոս ունիս տեսնալու զարմանալու մէկ առանձին մարդու փարթամութեն ագահութեան կիրք մը միայն ինչպէս չիկարծած նորէնոր գործողութիններ հանել տըվավ, ամբողջ թագաւորութին մը տակնու վրայ ըրավ:

Փարէզի մէջ մէկ խաթուն մը կար Վալուա անունով, ասիկայ մէկ աննշան մարդու մը զաւակ էր. երբոր ութը տարվան էր՝ դերձակի (թէրզիի) մը կին ողորմութեն համար իր քովը առավ, ասոր Վալուա՝ մականունը պատճառ եղավ որ մէկ հարուստ խաթուն մը իր պաշտպանութեը տակ առավ, վասն զի անանկ կըհուշակէին որ հին վալուա թագաւորական ցեղէն է ինջած, Բ. հենրիքոսի տնէն, աս պատճառով արքունիքէննալ (սէրայէն) քանի մը հազար լիրէ տարին եկամուտ կապեցին, ետքնալ էվելցուցին, խղճալով մեղքընալով վրան՝ թէ թագաւորական ցեղէ ինջած աղքատ-

մընէ, Լինչնալ մէկ անուշ վարմունքով մը՝ խորամանկ կերպով մը՝ աղէկ գիտէր Թագաւորին ընտանեաց աչքը մտնալ, մանաւանդ Թագուհիին. ասիկայ ետքը մօդդըլված ազնուականի մը հետ կարգըլվելով անկէց Մօդդ Հալըռա ըսվեցաւ։

Նոյն ատենը փարէզին մէջը քառտինալ մը կար ռօհան անունով՝ որ Թագաւորական տոհմութիւն բաժնօղ էր, ասիկայ անչափ հաճոյ չէր Թագաւորին ու Թագաւորագուն իշխաններուն իր տկար կառավարութենը համար; անոր համար շատ կըպտըտէր մէկ ճար մը գտնալու անոնց աչքը մտնալու։ Վերոյիշեալ մօդդ վալուան որովհետև քառտինալին հետ աղէկ կըտեսնըվէր, և ուրիշ մեծամեծներուն խօսքը անցուկ կըցըցընէր զինքը, քառտինալին յոյս կուտար որ զինքը պիտոր աչք խօթէ հաճոյացընէ, Թագաւորական արքունիքէն սուտ մուտ խօսքեր (խապարներ) կըբերէր իրեն համար աղէկ, որպէս զի քառտինալէն պարգևներ առնէ։

Նոյն միջոցիս մէջ երկու ճէվահիրճի պօհմէր ու պասսանժ անունով մէկ տեղ բաժանորդ (օւթախ) եղած փարէզին մէջ՝ մէկ կերտանըլըխ մը ձեռք ձգերէին պռիլլանդի քարերով շինված շատ սուղ բան, ասիկայ չփկընալով ծախել ոչ Ինկիլթէռաւ, ոչ օլանտա, ուզեցին Փրանսայի Թագուհիին ծախել մէկ միլիոն ու 600 հազար Փռանքքի, բայց Թագաւորը չուզեց առնել, ուրովհետև խաղնան խիստ նեղութեան մէջն

էր ։ Ոս բանս լռելով վերոյիշեալ մօդդ վա-
լուա խաթունը՝ ուզեց մէկ վարպետութիւն
մը իրեն ձանկը անցնել ան քարերը, ին-
չու որ թէպէտ հերիք եկամուտ ունէր
ինչպէս որ ըսինք, բայց երիկ կնիկ կուզէին
զիրենք մեծ հարուստ երեւցընել, փառ-
թամութէ կրցըրցընէին՝ որուն ըստակ չօգ-
տէր, միշտ կարօտութեն ու պարտքի մէջ
կըթթապըլտըրկէին ։

Ան ատենը մէկ անուանի մոլորեցուցիչ մը
ելածէր քալիօստրօ անունով, որ իրեն ճա-
ռատօղ (լաֆազան) լեզուովը եւրոպային
շատ երեւելի մարդիկները խաբերէր, որուն
վրայ քառտինալնալ վարկում (իսթի-
պար) առերէր, անիկայ սորվեցուցած էր
մօդդ վալուային մարդ խաբել ։ Օր մը
գնաց աս մօդդ վալուա խաթունը ճէվա-
հիրճիներուն ըսաւ որ՝ թագուհին կուզէ կէր-
դանլըքը առնել, բայց գաղտուկ կուզէ որպէս զի
թագաւորը չիմանայ. անոնք աս խօսքին հաւա-
տացին՝ գիտնալով որ թագուհին հետ կը-
տեսնըվէր, բայց կէրտանլըխը ձեռքը տա-
լու չիհաւատացին ։ Ան ատենը մօդդ վա-
լուան մտածեց քառտինալը ձեռք առնե-
լու ; գնաց խորամանկութի անոր ըսավ որ՝
թագուհին խիստ կըբաղձայ ան կէրդանլըխը առնե-
լու, բայց թագաւորէն գաղտուկ ըլլալու համար՝
յանձնեց որ դուն քէզի առնես, աս բանս ընելով,
առնելով թագուհիին աչքը կըմտնաս ։ Միամիտ
քառտինալը սիրով յանձն առնելու եղաւ
աս գործքս որպէս զի թագուհին հաճոյա-
նայ, բայց հաւատարմութե համար մէկ ձե-

ռազիր մը ուզեց ունենալու Թագուհիէն. ասոր ալ ճարը գտաւ աս խաբեբայ կնիկը, գնաց մէկ սուտ Թէմէսիկ մը գրել տըվաւ Թագուհիին անունովը ասանկ ստորագրըված, Մարիամ Անդուանէդդա. որուն գիրնալ կըլմանէր Թագուհիին գրին. մէջը կերտանըլխին գինը գնելով զինքը կըպարտաւորէր որ չորս անգամէն վճարէ գինը: Կառտինալին միտքը որ միայն Թագաւորին ու Թագուհիին կըջանար հաճոյանալու, առանց քննելու կնկան ձեռքով բան տեսաւ, որոգայթի մէջ ընկաւ. գնաց ճէվահիրճիներուն ստուգեց որ՝ իրաւ Թագուհին է կերտանըլխը ուզողը, անոնք ալ քառտինալին հաւատալով անոր յանձնեցին, քառտինալնալ տըվավ մօդը վալուային, ապսպրելով որ Թագուհիին ձեռքը տայ:

Երբոր աս հնարագործ կնիկը բաղձանքին հասաւ, ասանկ մեծ եղուզակութիւն (տօլանտըրճիութիւն) գլուխ տարաւ, իր էրկանը հետ մէկ տեղ կտոր կտոր քակեց կերտանըլխը, քիչ մը Փրանսա՝ քիչմընալ Փիլէմէնկ ծախել տըվավ. իր էրիկնալ Լօնտռա խրկեց, որպէս զի մէկ կտորնալ հոն Ինկիլթէռա ծախէ: Երբոր հասաւ առջի անգամուան վճարքին ատենը՝ ճէվահիրճին կուզէր քառտինալէն 400 հազար լիրէ, ինչպէս որ խօսք դրեր էին ամմէն անգամուան աչափ վճարելու. քառտինալնալ կըսպասէր որ Թագուհին խրկէ իրեն աչափ ըստակ, բայց մէկ ձայն ձուն մը չէր ելլար

Թագուհիէն ։ Ինկան խորամանկութիւնը չէր ըմբռնար, մօդդ վալըուան քարտինալին առաջարկեց որ աս անգամուն ինքը վճարէ, բայց որովհետև չունէր այնչափ վճարելու՝ նորէն եկավ Թագուհիին դիմացէն ըսաւ որ՝ հիմա չեմ կրնար վճարել. 30 հազար լիրէ միայն կուտամ որ՝ ան ըստըկին շահը տաս ճեվահիրճիներուն, ըսես անոնց որ քիչ մը ատեն սպասեն ։

Այն ատենը քարտինալը շփոթութեան մէջ ընկաւ, կասկած գնաց իր խաբէութեան վըրայ, մօդդ վալըուան ուրիշ ոլորակ մը բանեցընելով ապահովցուց քարտինալը ըսելով որ՝ Թագաւորին հետ քեզ տեսցընեմ, իր բերնովը քեզի պիտոր ըսուցէ աս խօսքերս, բայց որովհետև Թագաւորէն գաղտուկ մեր բանը՝ գիշեր ատեն Վերսայլին պարտէզին ըսուած անտառներուն մէջը պիտոր տեսնըլնէ։ Այս նենգաւոր շատագէտ կնիկը գնաց մէկ ուրիշ խաթուն մը գտաւ օլիվա անունով, որ դէմքովը հասակովը քիչ մը կըմանէր Թագուհիին, առանց հասկըցընելու իրեն թէ Թագուհի պիտոր ձևանաս, իրեն աս չափ ապսպրեց քարտինալին ըսելու թէ ինչ որ քեզի ըսուցեր է մօդդ վալըուան բանին համար՝ ամենևին հաւատարիմ, ըրէ, երանի ես։ Օլիվա խաթունը որ բանին ամենևին տեղեակ չէր թէ ինքը հոն Թագուհի կըձևանայ քարտինալին աչքին՝ երբոր խօսք դըրված գիշերը աս չափ բանը զուրցեց քարտինալին՝ հնարագէտ վալըուան չըլլայ թէ քարտինալին հետ խօսքը երկնցընելով մազը ծակվի, մէկէն կանչեց Թագաւորական նամ

որ ներսէն մօրդ վարպետ կոմսուհին՝ ինծի ցցուց թա-
գաւորին թուղթը ու բանիս համար, ես ալ իրեն մէկ
հաճոյական ծառայութիւն մը ընելու համար՝ ծանու-
ցի։ Ան ատենը թագուհին խօսեցաւ ըսաւ,
Ի՞նչպէս հաւատացիր որ ես քեզ անանկ բանի մը մէջ
խօթեմ, որ ամենեւին քեզի չի վերաբերեր, որովհետեւ
անցած ատեն է որ քեզի հետ չեմ խօսած. Ի՞նչ-
պէս ալ կըլլայ որ ես մէջ քեզը անանկ մէկ բանի մը
խօթեմ, որ իմին մէկ ծառայութիւն մը մէջը չէ։ Ար-
ձանչեամ ըսաւ ուստան որ խաբեցիր, հրամա-
նոցներդ մէկ աղէկ ծառայութիւն մը ընելու համար մը-
ջը մտայ, անոր խոստովանութիւնը չիմացայ, ոխա-
ցեայ։

Թագաւորը իր գրած թուղթը ցըցուց, ան-
նուշութեամբ խօսիլ սկսաւ որ ամենէն բանը
ղուրցէ, և որպէս զի աւելի համարձակու-
թիւն ունենայ ուրիշ խուց մը խօթեց, հոն
թղթի վրայ գրելով հասկըցուր ինծի ըսաւ
ամենէն բանը. ուստի կէս ժամ մը հոն կե-
նալով իր գրածը ցըցուց, որ մութ խօսքեր
էին անհասկընալի։ Ան ատենը թագաւորը
հրամեց որ իր առջևէն երթայ, իր պաշտպա-
պաններուն մենծը որ կըսվէր Վիլլըռուա
դուքս իրեն կանչեց, ան ատենը ուստի
հասկընալով որ գլխքը բանտը պիտոր դնել-
տայ, թագաւորին ոտքը ընկաւ աղաչեց որ՝
քիչ մը ատեն տայ իրեն ան օրվան չնորհ-
քին համար՝ որ էր վերափոխման տօնը,
Փրանսային համար օր ուրախութեան, որով-
հետև աս տօնս է պաշտպան Փրանսային։
Թագաւորը պատասխան չտալով դար-
ձաւ գնաց, պարոն պրէզըտէվիլը իր տեղը

տարաւ, հոն իր ամէն Թուղթերը կնքեց ։ Ետքը պահապաններուն մեծը իր դարպասը (սերայը) տարաւ՝ անկից պաստիլիա բերդը [1]. Թագաւորը կարգէ դուրս պառլամէնդին յանձնեց որ աս կերտանելոյն բանը քննէ, դատաստանը կտրէ, իրեն ցըցընէ։ Բայց Հռոմ ասանկ բանտը դնելուն համար քարտինալը՝ շատ գանկատ գրեց Ֆրանսայի Թագաւորին ։

Պարտատուներուն ժխտութիւնը, պատիժը, ու կնկան դատախին չարութիւնը ։

1786 ։

Քննութիւնը երկան քշելով՝ ինչպէս հետևեալ տարին 1786 մայիսի 31 լմնցաւ, ան օրը իր վճիռը ելաւ ամէն բան յայտնի ըլլալով. օլիվա խաթունը իր բերնովը խոստովանեցաւ որ՝ մօդդ վալուա խաթունին խօսքովը վերսալիայի պարտիզին մէջ քարտինալին զուրցեց ան խօսքերը Թագուհին ձևանալով որ ինքը չէր գիտեր, վիլլետ մէկ մը խոստովանեցաւ որ՝ վալուային զուրցելովը մէկ Թեմէսիկ մը գրեց գիրը նմանցընելով։ Նոյն յայտնի եղաւ որ մօդդ վալուան էր աղջի պատճառը աս ամէն անօրէնութեան, միաբան ըլլալով ան վերոյիշեալ անօրէն-

---

(1) Աս բերդս ժող. լուիզիին ատենը չինուեցաւ, երեք հարիւր տարուան մէջ եղաւ բանտ անանց որ՝ Թագաւորութեան դէմ յանցանք (սուչ) կընէին։

մարդուն հետ՝ որ կրակէր քալքօտղաօ կոմս, խաբեբայ՝ զրախօս՝ (լաֆազան) մէյմը, որ քէչմը բնալուծութեան (քիմիաձիութեան) արհեստը գիտէր, զանազան լեզու կըխա-բաթէր, ամմէն բանէն աւելի խիստ վար-պետ էր անփորձ մարդիկները խաբելու, ու-րուն վրայ եռքը երկան ունինք խօսելու: Փորձըված բան է որ՝ մեծերը քովերնին զրախօս զարմացուցիչ մարդիկ կունենան՝ որով կըխաբվին: Ըսինալ որ՝ աս քալիօ-գօօն մօդդ վալուաին հետ մէկ տեղ խօսք դրերէին քառատինալ ուօհանը մեռցընելու՝ որպէս զի իրենց չարութիւը երևան չելլայ. Նորկու ինկիլեզ վաճառականներնալ վե-կայութիւ տըվին օր մօդդ վալուաին էրիկը իրենց ծախեց կերտանըլխի քարերուն մէկ կտորը:

Նոյն ատենը փարէզ ժողվըված էին Փրան-սայէն երևելի եկեղեցականքը՝ մէկ կանոն-աւոր տուրք մը տալու համար. աս եպիսկո-պոսները հանկըրնալով ուօհան քառատինալին բանը՝ ուզեցին որ իրենք կտրեն անոր դա-տաստանը, Փրանսայէն եկեղեցնայ արտօ-նութեը կեօրէ՝ որ աշխարհական դատաւո-րի թող չըտար եկեղեցականի մը դատաս-տան կտրելու. քանի մը եպիսկոպոս ամմէ-նուն դիրացէն գացին թագաւորին հասկը-ցընելու. թագաւորը մտիկ դրաւ լսեց՝ բայց պատասխան մը չըտըվավ: Եպիսկոպոսները հռոմայ քահանայապետինալ հասկըցուցին աս բանը՝ սուրհանդակ (թաթար) խրկե-լով, հռոմալ իրենց պէս զուքցեց, ինչ պա-

նէ ), անաւ վրայէն առաւ, նաև իր ամենէն իշխանութենէն մերկիկ թողուց, իր արքայութեան տեղը քշեց, որ կրավէր Ճ էզ տեօ, շատ հեռու փարէզէն. վիլլէդը Նև օլիվան նորէն բանտը դրին, քալիօստրօն քշեցին ապապրելով որ՝ իրեք օրէն փարէզէն դուրս ելլայ, իսկ երեք ամսէն՝ ամբողջ Ֆրանսայէն։ Ետքը քննել սկսան վալուա կնկան ցեղը՝ մէկ նշան մը չիգտան թագաւորական ցեղէն ըլլալու, անոր համար յունիսի 11 'ի գործ դնել տըվին վերօգրեալ պատիժները, թէպէտ և ինքը կատաղաբար աղաղակ կըվերցընէր, կըբողոքէր, կըգանկատէր թէ անարգանք կուտան իր թագաւորական ցեղին. վերօգրեալ պատիժները տալէն ետև դատապարտեցինան որ ինչվան մեռնի երթայ՝ Սալբէդրիէ ըսված բանտը կենայ, ուր որ անզգամ (եարամազ) կնիկները կըդնէին։

Աս դատաստանս երբոր լսեց յովսէփ կայսերը՝ որովհետև ինքը շատ խելացի էր ասանկ դատաստաններու մէջ՝ կըսեն որ չիհաւնեցաւ, ըսելով՝ պէտքը չէր երևան հանել ան բանը՝ որ պէտք է լռութեան տակ պահել, գոցել, ետքը մէկ ուրիշ պատրուակով (մահանայով) մը վար իջեցընել ու հեռացընել ռօհանը առանց յայտնի ընելու ամենուն պատճառը. ան ատենը աշխարհ առիթ չէր ունենար այնչափ խենթութեան խօսքեր զուրցելու, նախատելու, և ոչ կազէթա շինօղները անչափ պատմելու՝ մնտռելու՝ չարաչար վատահամբաւելով մեծաւանք թագուհին։

Բայց օռլէանսին դուքսը ու իրենց հետեւող-ները ընտանի տալով մօդդ. վալուան բան-տէն փախուցին, մէկ անուանարկ գրօղիմը-նալ ընտանի տալով. գէշ զայթակղական գրուած մը հանել տուին, որուն խորագիրն էր Ճշմարտակարան Ջատագովութիւն մօդդ. վալուա կոմսուհւոյն, ու գրքին մէջը երեւ-ցած մարդիկներուն անունը խիստ կըկտրէր, չարաչար վար զարնելով մեծ զայթակղու-թիւն ձգելով ժողովուրդին մէջ։ Ասկէց զատ անգուա օռլէանսին դուքսը անդադար կըպըրտըտէր որ՝ Փրանսային մեծերուն մէ-ջը ատելութիւն ձգէ թագաւորին դէմ, մեղա-դրելով որ ինչու քառտինալ ռօհանը բան-տը դնել տըվավ, շատալ աշխատեցաւ որ բառլամենդը անիկայ բանտէն ազատէ։ Մ`էկ դիտացէն աստանկ կընէր, մէկալ դիտա-ցէնալ աստր դէմ ամմէնուն կըսէր, ինչ ա-մօթ բան է՝ Փրանսային գլխաւոր ատեանը բառլամենդը՝ որ թագաւորը ջատագովե-լու համար դրված է, յանդգնեցաւ յայտ-նի արձըկել ան քառտինալը՝ որ թագաւո-րը անչափ բարկացուց, ու ընելով տակէն շատ կըխաղար որ քառտինալը քշվի, բառ-լամենդը անարգըվի, իր վճիռը ոչնչացը-նելով։

Աս բաներուն մէջ ամմէն իր միտքը դիտա-ւորութիւնը ան էր որ՝ հակառակութիւն ցանէ Փրանսայի մէջ, թագաւորին ու թագու-հւոյն դէմ գրգռել տայ. աղէկ կըսէ Ղիր-թաններ նեմցէ մատենագիրը մը։ „Փարիզ-„ցոց առջի նշանն է դիւրահաւատութիւնը,

„ Թէպէտ փարէզցիք կըպարծին որ ար-
„ թուն ու զգաստ ենք, բայց ինչ ափեղցը-
„ փեղ խօսքեր կըզրուցըվին կըպատմը-
„ վին, չեն տարակուսիր վրան կըհաւատան։
„ Սուտը ճշմարտի տեղ անցընելու փարիզ-
„ ցոց առջին՝ հոս կըկայանայ որ՝ համար-
„ ձակութի՞ ըսես ան սուտը „։ Եւ իրաւ որ
աս մէկ կէրտանլըխի մը տօլանտըրճիուհիը
սուտերով անչափ մեծցաւ Ֆրանսզներուն
մէջ՝ որ մէկ մեծ Թուական մը եղաւ Ֆրան-
սայի պատմութեը մէջ. Ետքի ատեններ-
սալ Ֆրանսային ազգային ժողովը աղէկ
ճանչնալով ազգին դիւրահաւատ բնութիւնը՝
ասանկ սուտերով իրեն վաստըկեցաւ ամ-
մէն Ֆրանսային ժողովուրդը. ինչ որ ու-
զեց՝ սուտերով հաւատացուց իրենց։

Թագաւորը աս տարի ամենէն եկեղեցական-
քէն որ ժողվըվէրէին մէկ երդում մը ու-
զեց, տուրքերնալ ուզեց եվելցընել, բայց
Ֆրանսայի եկեղեցականք 1755էն սկսեալ
կամաւոր տուրք տալու համար 154 միլիոն
լիրէ պարտքի տակ ընկած էին, տարին
հարիւրին հինգ շահ վճարելով, երդումը
կախ Թողուցին ինչվան որ տասվերկու հօ-
գի բաւլամէնդին մէջէն իրենց կարծիքը
տան աս բանիս վրայ, իսկ տուրքը եվել-
ցուցին։

Սոյն տարվանս մէջ 1786. օգոստ. Ֆրանսզը
ու Ինկիլիզը մէկ տեղ դաշնադրութին ըրին
առուտուրի վրայօք. Ֆրանսզը Ինկիլդե-
ռա տանի իր գինին, ցքին, (ըռախի), ու
ձեռագործներ. Ինկիլիզնալ Ֆրանսա բերէ

իր ձեռագործները՝ զէնքերը՝ պիտուան՝ որ է գարեջուրը ։ Աս բանս ըրին երկուքնալ իրենց շահին համար, բայց Ֆրանսային համար վնասակար եղաւ ։

Ֆրանսային ուրիշ անկարգութիւնները .

1787 ։

Աս տարեններս Ֆրանսա մէկ Թմրութէ մը մէջ էր ընկած, ինչպէս որ կըլլայ ամմէնուն որ անկարգութեանց մէջ կըթապլտըկին, չեն իմանար իրենց կործանումը՝ որ իրենք իրենց ձեռքովը կընեն, ասանկ Ֆրանսային ընդհանուր Թմրութէն՝ չարագործները օրէօր կըշատնային իր մէջը, որոնք յայտնի Թագաւորուէ դէմ հաւատքի դէմ կըքարոզէին ու կընէին ։ Ընկերեցականք աս բանիս վրայ կըծանուցանէին Թագաւորին, նաև խելացի մատենագիրները կըգրէին կըզգուշացընէին, բայց Թագաւորը գիտես Թէ մէկ կուրուէ մը մէջ ընկած ըլլալով լուռ կեցած էր, Թող կուտար ամմէնուն ։ Յիզվիթներնալ վերնալէն ետև՝ իրենց տղաքնին աղէկ կըԹօղնէր սորտանց նայօղներ չունեցան, այլ վարպետներէն որը իրենց վարձքը առնել կընայէին, ծրնալ չարագործ նոր աղանդներուն մտքովը էին, ասանկով ամմէն տղաք ավրելով կըմեծնային ։

Աս տարեններս պավլիկեայէն քշված լուսաւորելոյ աղանդաւորներնալ ( որոնց վրայ

վերը պատմեցինք), Փրանսա Թափեցան, իրենց աղէկ պաշտպաններ ունենալով հոն՝ յարմար տեղ գտան, սերմունք ձգեցին, ուսկից ծնան ժաքօպէնները՝ որ Փրանսա տակնու վրայ ըրին։ Այնպէս շատ յաճախ խմբերէն Փրանսայի մէջ Մընղծ կամ Մօ-ռնեան, ըսուած ժողովքներ, որ իբր Թէ մէկ ձիւղմընեէին Լիղէոի կամ Նըղոփ մասոնա-դոններուն հետ՝ որ վերը յիշեցինք. այս չա-րաժողովները աղվոր մը ցըցընելու համար Լըֆիոփեան օտէլէ կըսուէին, իբր նման ըլլա-լով իսկս կուռքին ժողովներուն, որ հին ատենը կըլլար եգիպտոս, կամ նման հին աթենաս եղած էլէվսեան կուռքին, բայց ի-րօք աւելի նմանութիւն մըներ պաքքանալի ըսվածներուն՝ որ կռապաշտից ատենը հռոմ կըլլար, երբը բօղղումոսի բղեշխութեան ատենը վերցըվեցաւ։ Աս ժողովները վե-րոյիշեալ քալիօստրօ կոմսը Ալղօգաս ըս-ված սիջիլիացիի մը հետ մէկ տեղ եգիպ-տոսէն (մըրէն) փարեզ բերին ինչպէս որ կըսէին, որոնք ամմէն մոլութիւ անառակու-թիւն կընդունէին, տարբեր էին ան ժո-ղովքներէն՝ որ ինքիրենմէն անմեղ էին, տեղ տեղ աչք գոցելով Թող տըվերէին։ Բայց աս փարիզին չար ժողովքներուն մէջ սուտ կատակներ կըշինէին, սուտ Թէմէսիկ-ներ, Թիւն (դեղեր) կըշինէին հարուստ մարդիկները դեղելու մեռցընելու համար, որպէս զի իրենց սուտ կամ իրաւ ժառանգ-ները ժառանգեն, ինչպէս որ կըլլար պուին-վիլյէն մառքիզային ատենը ժդ. Լուիզի

Թագաւորին օրը․ ու ամէն բանը ծածուկ կընէին, ու օւլէմանսին դուքսին պաշտպանութենը տակ կընէին, որ գլուխ՝ վարպետ՝ և կառավարող կըլլար քանի կերպ ժողով

որ կըգտնըվէր Փրանսայի մէջ։

Նարեկարգութե՛ վրայ եղող դատաւորները շատ հեղ պատմեցին տեղեկութի տըվին Թագաւորին՝ որ օւլէմանսին դուքսը ինչվան իր կնիկը դքսուհին ան ժողովքին մէջը խօթեց, բայց դքսուհին ինչպէս նաև ուրիշ իշխանուհիք մէկ անգամ մը տեսնալով անոնց անօրէնութիւնը՝ սոսկալով զարհուրելով ետ կեցան։ Միռապօ ըսված անուանի մարդն ալ գրուած մը ունի, մէջը երկան կըխօսի աս ժողովքներուն վրայ, որ կըսվին Սէֆիրոթեան տունք, Լուսաւորեալք, կամ Մարտինեանք․ ասոնք դուրսէն կըցըցընեն կըսէ որ մտվընին եղբայրսիրութիւն ընել է, ու բարձր ուսմունքներ սորվիլ, բայց անհաւատութի կըսորվեցընեն, հպատակութիւնը կըվերցընեն, ամէն տէրութիւնը ջնջել կուզեն, ամէն կառավարութիւնը իրենց ուզածնին կերթէ կըջանան կարգաւորել։ Ասանկ կըգրէ միռապօն՝ որ տարիէ մը ետև ինքն ալ անոնց ճամփան գնաց․ բայց աս ժողովնները իրենց ամէն անօրէնութեան խորհուրդները ամէն մարդու՝ ամէն ժողովքներու՝ չէին յայտներ․ մէջի եղողները առաջ կըքննէին՝ ետքը իրենց հետ միաբանել կուտային, խոստանալով իրեն անանկ բան ընելու՝ որ կարօտութի չքաւորութի չիքաշէ, որ է առջի նշանը սատանայական

ժողով ըլլալու. անիկայ սկզբանէ վեր մեծ-նալ ինչվան ա̃ծանալ խոստանալովը խա-բեց ադամ, եւ ինքնալ նոյնպէս մեծութիւն հարստութեան խոստանալովը խաբել ուզեց տէրն մեր։

Բայց ինչ ներհական գործքեր՝ որ մար-դուս աւելի խելացի ըսվածնալ աշխարհիս մէջ կընէ, կըսխալի, կուրութեան մէջը կե-նայ. քիչ մը առաջ տեսանք որ՝ վերուցին հօգեւոր եղբայրութիւնները՝ ընկերութիւնները՝ վանական միաբանութիւնները՝ աւելորդ սե-պելով ասոնք, որ խափանիչ էին չար միա-բանութիւններ հանելու, հիմա անիրաւ մար-դիկները համարձակութիւն գտան, անոնց տեղը իրենց չար միաբանութիւնները տնկե-ցին, որ չէթէ միայն ա̃յ դէմ՝ հապա նաեւ թագաւորներու դէմ օկսան քարոզել, բայց կըլլան։ Ճիզվիթներուն ժողովը վերու-ցին զրպարտելով իբր թէ անոնք թագա-ւորները սպաննել կըստովեցընէին, հիմա աչք կըդոցեն երես կուտան անանկ չար ժո-ղովներու՝ որոնց միտքը իրաւցընէ թագա-ւորները սպաննել էր։ Աս ամէն բանը ընդհանրապէս ծանօթ էր արքունեացը. թագաւորը լուիզ ժզ̃. կերեւար որ կուզէր արգելել աս ժողովները, բայց կառավարքը մանաւանդ նէքէրը դէմ կըդնէր ըսելով թագաւորին։ „Օռլէանսին դուքսը որով „հետեւ խռովարար մէյմընէ, աղէկ է որ՝ „ասանկ խենթ ու մենթ պարապ բանէ-„րու զբաղի, իր անուննալ պատիւնալ „ժողովուրդին առջին ավրըվի„։ Թագա-

ւորը դիւրահաւան. մէյմը ըլլալով լռեց, չէր իմանար որ ան պարապ ըսված բանն էր որ՝ քիչ մը ետեւ իր գլուխը պիտոր ուտէր ։

Օր մը Օռլէանսին դուքսը յանկարծ խեղքը փչելով Թագաւորին եկավ հրաման խնդրելու որ Ճամփայ ելլայ, մըսըլը երթայ, անկից շամ, հալէպ, իզմիր, ստամպօլ, կարելի է զինքը Ճանչցընելու համար հոն եղած իրեն չարաժողով եղբարներուն, որ կըսվէին Ռոզքռուա եղբայրներ, կամ Սէն Յոհաննի տամպլիէներ ։ Թագաւորը լուռ ժպ. պատասխան տըվավ ։ „ Ռուսկին մօլութիւներդ „ (խույերդ) գիտցըված են դրեթէ ամ„ մէն եւրոպայի ազգին, հիմա կուզես որ „ ամմէն աշխարհ, ամմէն ազգի մէջ քու „ անունդ ավրես վատահամբաւես, քե„ զիալ ամօթ, ամմէն Ֆրանսզ ազգինալ „ ամօթ „ ։ Աս ըսելով Թագաւորը կռնակը դարձուց ։ Օռլէանսին դուքսը որ չարագործութէն մէջ Թաթխըված մարդ էր դժոխային կատաղութ. լեցուած, աս խօսքիս վրայ աւելի կատղեցաւ, ան օրը երդվընցաւ իր վրէժը առնելու Թագաւորէն ։

Ֆրանսային խառնակչին բաց ելլալը, խառնակութիւնը ․

1787 ։

Աս տարիներս Ֆրանսային եկամտուտին անկարգութիւնը օրէօր կըշատնար, չէր Ճանչցըվէր ոչ եկածը ոչ գացածը, ամմէն մարդ.

կրնայէր որ ինքը շահի թէեւ հասարակու-
թիւը վնասվի, արքունիքէնալ շատ ըստակ
ասոր անոր կուտային տարին, եւ որովհետեւ
շատ մարդալ կար՝ որ կուզէին կառավա-
րութիւը փոխելու, ասոնք տակէն կըքանդէին
որ աւելի գէշի տանին բանը։ Եկամուտի
վրայ շահապ իշխան (տէֆթէրտար էֆէն-
տի) դրված էր 1776 նէքէր ձինէվրացին,
որ մեծ համարում ունեցաւ աւելի ան հա-
շուէգրովը (տէֆթէրովը՝) որ 1781 յունվ.
մէջ հանեց, ուր կըցըցընէր թէ ֆրան-
սային տարեկան եկամուտը կըհասնէր 500
միլիոն, իսկ խարճը կըհասնէր 450 միլիոն.
անանկալ ցըցուց որ ֆրանսան շուտ մը
կրնայ փոխ ըստակ առնել պատերազմին
համար՝ որ ան ատենը կըլլար ամերիկայի
ապստամբներու պատճառովը։ Բայց կամ
նէքէրին հաշիւը (հիսապը) մեծապէս սխա-
լերեր, կամ որ քանի մը տարիէն ետեւ ֆը-
րանսային եկամուտին ալ ճար չէր ըլլար.
անկից նէքէրը անանկ ալեկոծում մը մէջ
ինկաւ՝ որ չգիտեր ինչ ճար ընէ. մէկ քանի
դեղ մը ցըցուց որով քիչ մը ճար կրնար
ըլլալ, մէյմը՝ քիչցընել թոշակը եկամու-
տը՝ որ աս ու ան կառնէին, մէյմընալ չա-
փաւորել անհամեմատ խարճը՝ որ կըլլար
թագաւորական տունը պահելու համար,
բայց աս բանով որովհետեւ շատ մարդու
սիրտ կըխոցվէր, խիստ շատ թշնամի ելան
նէքէրին դէմ, անանկ որ՝ օրլէանսին դուքս-
նալ չիկրցաւ պաշտպանել, հարկ եղաւ
նէքէրին պաշտօնէն ելլալու. անիկայ ե-

ղավ առՋի անգամ իր պաշտօնէն ելլա-
լու։

Նէքէրին տեղը եկամուտից վրայ շահապ իշխան եղավ Ժօլի Փլիւուեան, ասիկայ ուզելով որ խազնան ըստակ մնայ՝ որովհետև բոլորովին չորցերէր, նորէն ոտք հանեց քառասունրութը ընդհանուր հարկապահանջները (տուրք ուզօղները) որոնք իր նախորդը վերցուցերէր, վասն զի ասոնք ժօլին 30 միլիոն վՃարեցին նորանց՝ զիրենք տեղէրմնին կեցընելու համար, ասանկով ժօլին նորէն սկսաւ ժողովուրդէն փոխ ըստակ առնել։ Ասոր համար ժողովրդեան զանկատը օրէօր շատցաւ ժօլինին նաև սառդէնին դէմ, որ պատերազմի դիւանագիր ըլլալով բանակին ու նաւատորմղին (ուտուին ու տօնամնմային) աղէկ եկամուտը ինքը կերերէր կըսէին։ Ան ատենը թագաւորը եկամուտի վրայ շահապ իշխան դրավ Օռմէսօնը՝ որ խիստ արդար մարդ էր ու խելացի, բայց տարին չլինցած՝ տեսնալով ասիկայ որ շտկըլվելու բան չէ՝ հրաժարեցաւ իր պաշտօնէն, ասոր տեղը քալօնը դրին, բարակ մտքով մէկմը՝ բայց աս մարդս պատՃառ եղավ կըսէն՝ որ Ֆրանսային կործանումը շուտով եղավ։

Ինչ որ դնենք՝ իրաւ է որ՝ եկամուտին անկարգութիւը ասոր օրը խիստ շատցաւ, Թոշակները՝ որ ասոր անոր կըտրվէին թագաւորէն՝ գրեթէ 100 միլիոն հասան տարին։ Թող որ՝ թոշակ առնօղներուն շատը՝ որպէս զի մշտնջենաւոր ընեն՝ քալօննին հետ

խօսքը մէկ ընելով՝ անանկ կըձեւացուցանէին՝ իբր թէ թագաւորական խաղնային մէկ կալուած մը կամ ընտրելի գլուխ (սերմայէ) մը փոխ տըվերին, որուն շահը կըհաւասարէր անչափին՝ որչափ որ իրենք թոշակ կառնէին տարին. աս կերպ բանեցընելովնին իրենք մէկ առնելիք մը ունեցած կըլլային թագաւորուն վրայ որ կրկնապատիկ եռապատիկ շատնալով կանցնէր իրենց ետեւի եկողներուն ձեռքը։ Նայէ՛ ինչ յափշտակութիւն, ինչ ներքին կործանում երբոր մէկ տէրութեան պաշտօնատէրերը ուտող կըլլան, եւ թագաւորը թմրած մնացած կըլլայ։

Աս ատեններս էր որ թագաւորը ԺԴ. Լուիզ՝ ժողովուրդին հանգստութեանը նայելով՝ ինչ որ տանջանք կուտային թագաւորական յանցանքները քննելու ատենը՝ վերցուց. հրամմեց որ բանտերը աւելի առողջ տեղ դնեն՝ աւելի հանգիստ. իր տանը խարճը ինչ որ օրը կըլլար՝ շատ քիչցուց. ինչ մեծութիւն փարթամութիւն կըլլար՝ կտրեց, անոր համար 400 հոգի իր ծառայութենէն դուրս հանեց։ Նոյն յունվ. 11. մոսկովի հետ դաշնադրութիւն մը ըրաւ առուտուրի վրայօք։

## Փրանսայի խռովութեան պատճառը։ Երեւելներուն համար ժողովքը Երեւելին.

1787։

Ամերիկայի պատերազմը որ վերը պատմեցինք՝ անանկ սոսկալի խարճի մէջ ձգեր էր Փրանսան՝ որ ինչ դեղ կընէին, ինչ որ կը ժողվէին, ամենն ալ կը հատցընէր կը չորցընէր, որովհետեւ հազար միլիոնէն աւելի խարճ ընել տուեր, ազգին քով կարողութիւն չէր մնացած նորէն տուրք տալու։ Տուրք ժողվելնին ալ աղէկ կարգ չունէր. եկեղեցականները տուրք չէին տար ազատ ըլլալով, բայց կամաւոր ընծայի անունով այնչափ տուրք տուեր էին եկեղեցականք՝ որ պարտքի մէջ խոթուեր էին, ազնուականներն ալ ազատ էին տուրքերէն, իրենց գետինները կալուածները դուրս հանած էին. ամենէն ծանրութիւնը հասարակ ժողովրդեան վրայ ինկած էր։

Այս որովհետեւ հարկ էր բան մը ժողվել՝ մտածեցին որ՝ քանոնին տեղը ինչպէս որ սովորութիւն էր ան ատենը Փրանսա՝ ամենն դաս մարդու առանց զատելու՝ իրենց գետիններուն վրայ ընդհանուր տուրք մը ձգեն, աս բանիս համար ալ ժողովներ սահմանեն, որոնց մէջը գտնուէին եկեղեցականք, ազնուականք, քաղքցիք, ու ռամիկ ժողովուրդ։ Ան է որ Փրանսացիներուն մէջ խառվարարներ չըլլային՝ որ եկամուտին հաս-

նիլը կըփնտռէին պատճառ բռնելու խռովութիւն հանելու համար՝ կարելի է որ առով ճառ մը ըլլար, բայց աս բանս իրենց եղավ առջի դուռը խռովութիւն ապստամբութիւն հանելու ։ Քալօնը 1787ին սկիզբները ցըցուց հաշիւը (հիսապը) որ 93 միլիոն լիրէ պակսերեր, և որպէս զի իր անունը աւրել չիտայ՝ երևան հանեց տօքը ինչ որ խոհեմութիւը կըցըցընէր գոցելու, ըսելով թէ պակսածը 93 միլիոն չէր, հապա 110, կամ ըստ ոմանց 140 միլիոն լիրէ, անոր համար նէքէրին ըրած հաշիւը սխալերէր կըսէր. իսկ նէքէրը ամմէնուն առջին կըզրուցէր որ՝ թէ որ քալօնին ըրած հաշիւը իբրև ճիշդ ընդունիք, պէտք էր քալօնը պատժել, որուն համար ամմէննալ կըսէին որ կերող է. փոխ ըստակ առնել չէր ըլլար՝ որովհետև ամմէնը իմացերէին խազնային խեղճութիւը, մէկը չէր ուզեր փոխ ըստակ տալ, թող տուր որ բառլամէնդնէրնալ չէին ուզեր փոխ ըստակ առնել, հարկ էր տուրք ձգել, տուրքով ժողվել ։

Անոր համար որոշեցին մեծ ժողով ընել. որ իրենց լեզուով կըսեն Նօթապլներու ժողովն այսինքն նշանաւորները, ասոնք են թագաւորազունք, կալուած ունեցողներ, բառլամէնդներուն գործակալները, եկեղեցականներուն և մեծ քաղքըներու նուիրակները, դուքսերը, բարի ըսված իշխաններ, խորհրդականներ ևն ։ Ասանկ ժողով ուրիշ անգամներնալ եղած են, 1558, 1596, 1617, 1626, բայց միշտ անպտուղ են եղած, ինչ-

պէս որ աս անգամանունալ ոչ միայն անպտուղ եղաւ, այլ նաև առջի հիմ (Թէմէլ) ձգելը եղաւ Փրանսային ու Եւրոպային կործանմանը։ Աս նօտապլներուն կամ նշանաւորներուն ժողովը 1787 փետրվ. 22 ժողվըվեցաւ. Քալօննը առաջարկեց ժողովքին իր կարծիքը, համոզելով որ աս ճամբով ամէն բան կըշտկըվի, բայց որովհետև Քալօննին դէմ թշնամիներ կային՝ ինչու ինքը եղաւ պատճառ նէքէրը վար ձգելու՝ անոր համար իր ըրած հաշուին վրայ վէճ հանեցին, իրեն ըրած առաջարկութիւնները մերժեցին, անկէց Թագաւորին հարկ եղաւ հանել անիկայ իր պաշտօնէն, Քալօննալ տեսնալով որ՝ ամէննալ զինքը կատեն կանիծեն, ապրիլի 20 ձգեց փախաւ Ինկիլդէռա, իրեն հետ տանելով իբր 2 միլիոն լիրէ, որ Թագաւորական սնտուկին մէջը կար։ Իր տեղը նստաւ Լօմէնի պռիան դալօսային արքեպիսկոպոսը՝ որ ամէնէն աւելի հակառակեցաւ Քալօննին առաջարկութեցը, ջանաց անի վար ձգել՝ ինքը անոր տեղը անցնիլ, պարծելով թէ ինքը յարմարութի ունի, բայց իր խելքը շատ վար էր անկէց։

Ասանկով խազնային բաց ելլալը յայտնի ըլլալով՝ տրտունջը Փրանսայի մէջ շատցաւ, գրգռօղները չիդադրեցան, ինչվան մեծ խռովութե կրակը բռնկեցաւ որ վարը պատմենք։ Նշանաւորներուն ժողովը չուզեց տուրք ձգել տալ կալուածոց վրայ, ուրիշ տուրք առաջարկեց որ արքունիքին

հաճոյ չեղավ, անոր համար շատ հակաճա-ռութիւն, ամբաստանութիւն, քննութիւն ըրե-լէն ետև՝ մայիսի 25 քակվեցաւ ժողովը անպտուղ, ան 140 միլիոնին պակսութիւնը մնաց անանկ։

Սա տարի յունիսի 19. ժզ. լուիզին թա-գաւորին երկրորդ զաւակը մեռաւ։

## Պոլսէին մէջը տօպրավէնէտիկցոց հետ, Իտա-լիայէ մէջ եղած շարժերը.

## 1784—1789։

Սովորութիւն էր որ՝ Նաբօլին մէկ զինուո-րական կառավար մը կ'ընտրէր տօպրավէ-նէտիկ կամ որ նոյն է՝ Ռակուզա, բայց 1784 չընդունեց սա կառավարս, Նաբօլի-նալ տաքնալով սա բանիս վրայ՝ ամմէն ա-ռուտուրը տօպրավէնէտիկցոց հետ կտրեց, անոնց ապրանքնալ որ՝ Նաբօլիի նաւերուն մէջն էին՝ ամմէննալ առավ. սանոց մէջ՝ մտան ըսպանիայի թագաւորը ու կայսրը՝ ընդունել տըվին տօպրավէնէտիկցոց ան կառավարը։

Մերը պատմեցինք 1783ին եղած շարժը սիջիլիայի ու քալապրիայի մէջ, բայց ան շարժը ատեն ատեն եղավ նաև 1784 և 1786, որ ծաւալեցաւ նաև կուպպիօ, դէու-նի, նառնի, ըսբօլէդօ; ու ռիմինի, ուր խիստ սաստիկ եղավ 1786, դեկտ. 25. շատ տներ՝ ժամէր՝ ուրիշ շէնքեր փլուց, տասավերկու հօգիավ սպաննեց, քշեց սա

շարժը ինչպէս 1787 մարտ ամիս։ Նաբօլիի Թագաւորը ըստակէն զատ արուեստաւոր-ներ խրկեց քաղաքրիա, որ փլփլկած տե-ղերը շինեն, բայց տանց շինածները նորէ-նոր շարժեր վրայ գալով կըփլցընէին․ 1784 նոյն Թագաւորը խնդրեց սրբազան պա-պէն՝ որ աւերված վանքերուն ապրանքը՝ աս խեղճերուն օգնելու համար բանեցընէ, որուն հրամանն տրված սրբազան պապը, բայց պաշտօնատէրերը սակէց համարձա-կութի առնելով շատ նեղութի տվին նաև չաւերված վանքերու, անանկ որ կրօնաւոր-ները աանց ապրուստի մնացին․ և որով-հետև ասոնք միշտ եկեղեցնոյ իրաւասու-թեց կըդպչէին, շատ գանկատ կըգրէր սըր-բազան պապը Թագաւորին, բայց ճար չէր ըլլար, ինչպէս որ Նաբօլիի Թագաւորը հռոմ գալով 1785, սրբազան պապին հետ խօսքաթելով, քիչ մը կախ մնացին բանե-րը։ Բայց շարժը 1789 փետրվ. 5. նորէն սկսաւ քաղաքրիայի մէջ, որ ինչպէս մարտ՝ ատեն ատեն կըցնցէր կերերցընէր, քանի նոր չէնքեր որ կային ուէձձիօ ու մօնդէ լէօնէ՝ որ է ափւած լեռ, ամէնը փլցուց, քադազելլօ քաղաքնալ մեծ մասը փլաւ. նոյն տարվանը մէջ, հարիւր մարդ կորսվեցան, Թող տուր խոցվածները, նոյնպէս եղավ Սէ՞ գերեղմանն (իտ". Սան սեբօլքրօ) ըսված գեղը։

Շարժին հարուածէն զատ՝ տեղ տեղ ի-դալիայի մէջ ջուրէնալ շատ փորձանք քա-շեցին. գեվէրէ կամ տիբերիս գետը, ա-

տիձէ ու պռէնզա գետերը դուրս պոռթ-քալով շատ տեղվանք կոխեցին, մեծ վնաս տըվին։ Ասիրիշ զարհուրելի դիպուածներ-ալ պատահեցան 1780 անքօնա ու քօռ-ֆու, աղէկ հոգ չտանելով պահապաններին՝ անքօնային պարութխանան բռնկեցաւ. իսկ քօռֆուի մէջ պարութի վրայ աշխատող-ները՝ թօփերը լեցընողները՝ փայտէ չէ-քիձներ բանեցընելուն տեղը՝ երկըթէ չէ-քիձներ բանեցուցին, անկէց բռնկեցաւ, աս տեղվանքը բռնկելով երկինքը ելլալով մօտիկ եղօղ տներուն պատերնալ փլան, ճամբերնալ կոտրտեցան, հարիւր մարդու չափալ մեռան։

Պիստօյայի մէջ խառնակութիւն եկեղեցական զարդարութեանց համար.

1786—1787։

Պ՝իսչըի շիպիոն եպիսկոպոսը մէկ թեմա-կան ժողով մը ըրաւ 1786, մէջը անանկ ածաբաններ ժողվեց՝ որ քիչ ուղղափառու-թիւն ունէին, աս ժողովը նոր վճիռներ ը-րաւ որ լօթաանի ու քալվինի բաներ էին, պատկերները ու շատ մասունքները եկե-ղեցնայ մէջէն դուրս հանել, երևելի ա-ղօթքները փոխփոխել, ևն։ Աս եպիսկո-պոսը քիչ մարդ ունէր իր դին բայց տէ-րութիւնը պաշտպան էր, իսկ մէկալ ժողովա-կանաց՝ բռնութիւ ու սպառնալեօք ընել տըվին, ով որ դէմ կըկենար՝ շատ մեծ

վախի մէջ կենար. ժողովը լմննալէն ետեւ ժողովականք իրենց ընդդիմութիւնը ցըցուցին, անոր համար որը քշվեցաւ, որը բանտը դրվեցաւ։

Նաեւ 1787 դօսքանայի(ն) մեծ դուքսը ազգային ժողով ընել տըվավ, որուն մէջը գտնըրվեցան իրեք արքեպիսկոպոս, տասնըչորս եպիսկոպոս. բիստօյայի եպիսկոպոսի դէմն եղողները յանսենեանք ըլլալով ծածուկ ոլորակներ կըբանեցընէին՝ որ ուղղափառաց դէմ բաներ սահմանել տան, բայց երկու եպիսկոպոսներէն զատ որ իրեն դէմն էին, մնացածները ամմէնը ուղղափառութեան վրայ կեցան, անանկ մէկ բան մը չըրին՝ որ հաւատքի ու եկեղեցնայ կանոններու դէմ ըլլայ, միայն քանի մը նոր կարգադրութիւն ըրին օրինադրութէ վրայօք, անալ դօսքանայի դուքսը շատ չըդժարցընելու համար։ Բայց ժողովքէն ետեւ տէրութիւնը ինքիրմէ շատ նոր կարգաւորութիւններ ըրաւ, ինչպէս կերեւնայ ռիչչի եպիսկոպոսին դրդելովը՝ խորհրդովը. զոր օրինակ՝ մէկը կրօնաւոր չըլլայ, քահանայ չըձեռնադրըվի առանց տէրութեան հրամանի. ով որ իր սահմանէն դուրս ուզենայ երթալ, ուրիշ տեղ կրօնաւոր ըլլալ, անիկայ ծանր տուրք տայ. ով որ եկեղեցական եկամուտ ունի, անտեղէն դուրս չըկըրնայ ելլալ. աս բաներէս զատ՝ հռոմայու նուիրակին ատեանը վերցուց Փիօռէնցայի մէջէն, սանկալ պատկերներու վրայ՝ թափօռներու վրայ՝

տօներու վրայ՝ նոր նոր կարգաւորութիւններ ըրաւ։

Օր մը երբոր բուրդօ քաղքին ժամերուն դռներուն վրայէն կըվերցընէին ան քարե-րը՝ որոնց վրայ գրած կար Ներողութիւն լիակա-տար, ժողովուրդը վախնալով չըլլայ թէ ուիչ չի եպիսկոպոսը Սը Չինդօլային մա-սունքնալ վերցընէ, ինչպես ուրիշ շատեր վերցուցերեր, վազեցին սեպտ. 26. զան-կակները զարկին որ մարդ ժողվըվի. գե-ղացիներուն բազմութիւնալ եկան եպիսկո-պոսարանը մտան, որչափ բան որ ունէր ե-պիսկոպոսը տանը մէջ՝ իր գրուածներնալ իր պատկերնալ հրապարակին մէջը ձգեցին երեցին, կանոնիկոններնալ բռնադատեցին որ Սը Չինդօլային մասունքը դուրս հանեն, թափոր ըլլան։

Դոսքանային մեծ դուքսը աս բաներս լսե-լով խիստ նեղեցաւ, իրեն բարեկամ խե-լացի ատենակալ մը ունէր յանդիմանեց՝ ինչու որ խորհուրդ տըվերեր իրեն զինուոր-ներուն մեծ մասին Չամփայ տալու. իսկ ան ատենակալը աղէկ պատասխան տըվաւ ի-րեն ըսելով։ „Տէր իմ, գիտնալով դօսքա-„ նայի ժողովրդեան հնազանդ բնութիւնը՝ „ խորհուրդ տըվի զինուորներուն Չամփայ „ տալու համար, և իրաւունք ունէի տա-„ լու, բայց ձեր տէրութիւնը ան ատենը խօսք „ մը չիթացաւ չըսաւ՝ որ պատկերներու „ խաչելութիւններու հետ կռիւ պիտոր բա-„ նաք, որ եսալ գիտնալով ուրիշ խոր-„ հուրդ մը տայի։ Ինչ որ ինծի համար՝ եր-

„բոլոր պատկերները՝ խաչելութիւնները՝ համ-
„դիստ խաղաղ կըպահեն մէկ ժողովուրդ-
„մը, ան ատենը իրենցը չօգտելու ըլլայ,
„խաղնայլին մէջնալ որչափ կամնէ, կըհա-
„նեմ իրենց կուտամ։

Ըս բանէս ետքը ուրիշ չի եպիսկոպոսը վախ-
նալով ապահով չխեպելով չէր նստեր ոչ
քուադօ, ոչ բխոդօյա, և ոչ Փիօուենցա,
այլ ձմեռը բիզա կընստէր, ամառնալ մէկ
գեղ մը։

Տաճկին ու ծովեզրին Պէլէ Իշխանութը ծարգապետին
պարծանքով, չէյլ ծանօթութին նոր աղանդը.

1785։

Սև ծովէն սկսեալ ինչվան կասպից ծովը՝
կովկասու լեռներուն և իր շրջակայ սահ-
մաններուն մէջը կըբնակին զանազան ազ-
գեր, որ կըսվին Անկուել, Չէրքէս, Օս,
Իմէրէթ կամ Աչըխպաշ, Կախէթ, Կիւր-
ջի, Վրարթլ. ասոնք ամմէնեալ հնուցմէ
վեր սովորութիւն ունէին մարդ ծախելու,
հայրը իր տղան ու աղջիկը կըծախէր, եղ-
բայր իր եղբայրը. անսով մեծ առուտուր կը-
նէին. իրենց մեծ վաստակնին աս տղաքնին
մանաւանդ աղջիկնին ծախելն էր; առաջ
պարսից կըծախէին, ետքը տաճկին։

Ըրբոր աս երկիրներուն վրայ մօսկովը խառ-
նըվիլ սկսաւ ուղղակի կամ անուղղակի՝
մէջինները յորդորելով արգելեց մարդ ծա-
խելը. տաճիկ վաճառականները որ շատ

վաստակ ունէին աս առուտուրէն՝ գանկատ վերուցին ստամպօլ դուռը ։ Պոռուռնալ աս տարիին եւքերը ախլցխայի փաշային ապապըրեց որ՝ լեզկիներուն հրաման խրկէ՝ որպէս զի աս երկիրները վազեն, ու տղաք աղջիկ քաշեն առնեն իրենց ծախելու համար, ասկից եղավ որ լեզկիները բնաւորութ̃ի սորված յափշտակելու թալլելու, զանազան ատեն աս ազգերուն վրայ վազելով շատ գերի յափշտակեցին բերին ։ Լեզկիներուն յափշտակութ̃ը մինակ կիւրճիսթան ու իր քովի երկիրները չկեցաւ, հապա նաև վերի ու վարի չէրքէզնալ վազեցին, որոնց գլխաւորները յիսուն տարիէն վեր իրենց կամքովը մոսկովին տակը ձգերէին զիրենք, հաւատարիմ մնալու համար երդումըրերէին. իրենց երեւելի ցեղերէնալ պատանդ տրված ունէին Պըրզկար բերդին մէջը, որոնք ամմէն տարի կըփոխէին (1) ։ Սաանկ տերունի ունենալով մոսկովը չէրքէսին վրայ՝ իրեն Պօքէլի անուն զօրապետը շատ զօրքով հոն խրկեց, որպէս զի թող չտայ լեզկիներուն վազել ոչ չէրքէս, և ոչ ուրիշ վերոյիշեալ երկիրները ։

Սօ բանիս վրայ զանազան փաշայներէն գանկ

---

(1) Յոհաննէս վասիլովիչը երբոր աժտերխան առաւ, չէրքէսնալ առաւ, մոսկովի դաւանանքը հոն խօթեց, թէմրուք ըսված իշխանին տղան ու աղջիկը ընդունեցան, քոյրը որ քրօզիա կըսվէր՝ ցարին հետ կարգըրվեցաւ, անով Չէրքէսի իշխանաւըրվեցաւ ։

վատ եկեալ տասնապօղ դուռը, որովհետեւ մարդագերիին մեծ առուտուրը կտրուեցաւ. դուռը հրաման խրկեց ախլցխայի փաշային՝ որ օգնութի ընէ լեզկի Թաթարներուն, ուրիշ Թաթարներնալ գրգռելով մէկ տեղ երթայ զարնէ մոսկովին նոր եկած զօրքը: Նոյնց յարձակումը աւելի գրգռեց սիրտ տըվավ մէկ նոր աղանդապետ մը՝ որ ան դիերը նոր էր ելած Շէյխ մանսուր անունով. ասոր համար ոմանք կըսեն որ Հինդուստանի պրամին (կամ քուրմ) մընէր, ուրիշները կըսեն որ լամային [1] քուրմերէն էր, իսկ ոմանք թէ ասիկայ մէկ խումպարաձի մընէր բրէմօնդէցի, ետքը Ճէզայիր գնաց հաւատքը ուրանալով տաճկըցաւ: Ինչ և իցէ՝ աս մարդս մարգարէի անուն ունենալով թաթարներու մէջ շատ ընդունելութի գտաւ, երեւելի եղաւ. ամէնքնալ կըյորդորեր մոսկովին վրայ վազելու, կերպ կերպ յուռութուլունքներ (համայիլներ, նուսխաներ, թըլըսըմներ) կըշինէր, կըբաժնէր, ըսելով ասոնք գաղտուկ զօրութի մը ունին, ով որ վրան տանի՝ ծեծի մէջ զէնքը սուրը թուրը չիկրնար խոցել: Նոյնչափ տարածվեցաւ իր անունը մանաւանդ ան երկիրները՝ ուր քուպան և թերէք գետերը կանցնին, ինչվան ծունկ չոքելով ասիկայ կըպատուէին հոն տեղս եղօղները. իրեն խօսք տըվլին՝ ուր որ ինքը երթալու

---

(1) Լամա կըսվի Դիպեդ աշխարհին մեծը՝ որ Հնտստանին գըրացի տէրութիմընէ:

ըլլայ՝ իրենք ալ եռալէ զատ․ ասանկով քիչ մը ատենի մէջ 40 հազար մարդ ժողվեց գլուխը, Մոսկովացիներուն վրայ գնաց։

Մոսկովը հոն ունէր 20 գունդ ոտաւորաց զօրք, 10 գունդ ձիաւոր զօրք․ այսչափ զօրք-նալ ցրուերէր պահպանելու համար՝ սև Ծովէն ինչվան կասպից ծովը (գիլան տէնկ-զի), որոնք քիչ քիչ աս դին ան դին զար-նըվելով տկարացերէին, անանկ որ շատ գունդ զօրաց մէջը՝ հազիւ մնացերէին 500 հոգի, անոր համար Պօզէլի զօրապետը ետ քաշել տըվավ զօրքը Քըզլար բերդին տա-կը, որոնց վրայ Թաթարները կատաղութը յարձըկելով 800 հոգիի չափ Մոսկովներէն կոտորեցին։ Աս միջոցին մէջ մէկ յայտարար թուղթ մը երևան ելավ բէգդրօպուլըկին մէջ տաճկերէն գրված, որ լեզկիներուն ըրած թշնամութիւնը կիւրճիներուն և քովի եղած ազգերուն դէմ՝ վար կըղարնէր ըսելով․ „Ան ամմէն Թաթարները անկախի պէս „էին տաճկէն, անոր համար պարապ էր „թէ որ Մոսկովը աս բաներու վրայ տրտմըն-„ջար, աւելի հեշտ էր Մոսկովին անոնք „զսպել քան թէ տաճկին․ աս բաներուս „պատճառանալ նոյն ինքը Մոսկովը եղած „էր, որովհետև ինքը պատճառ եղավ „որ բռնութեամբ անկախ ընել տըվավ „ան Թաթարները „։ Աս խօսքերս շատ հեղ ըսվերէր գուար՝ րէիս էֆէնտին Մոսկովի դեսպանին հետ խօսաթելու ատենը։

Աս ատեններս Հրաման եկավ բէգդրօպուլու-

կէն Սբրաքոյին մոսկով զօրապետին, որ իր ամմէն զօրքը առնէ, կիւրճիսթանի իշխանին քիչվոր զօրացը հետ խառնելով՝ Թաթարներուն ետեւէն վազէ, մինչ մարդ մինչ անասուն որ յափշտակեր տարերեին՝ խալըսցընէ. ատոնց օգնութիւն խրկըվեցաւ նաև ձիաւոր զօրք, և 10 գունդ (բուլք) խազախներու, աս զօրքը Թաթարներուն վրայ վազելով երկու հազարէն աւելի գերի ըրին, որոնք մոսկով ու կիւրճի գերիներուն հետ փախեցին. Նաճէլ գնդապետն ալ 7 հազար զօրքով վերոյիշեալ մանասուրին վրայ վազեց գետի մը քով, շատ զօրք կոտրեց հոն.

Մոսկովին ուզած խնդիրները փաշէն, փաշին պատասխանը.

1786.

Նոյ տարի օգոստ. 10. տոմարով եղած մոսկովին դեսպանը Պուլկաքօֆ՝ աս Թուղթս ցըցուց վէզիրին, որուն մէջը ասանկ էր գըրված. „Շատ հեղ մոսկովը ուզեց որ տա-
„ճիկը զսպէ լէզկիներուն ըրած ապստա-
„կութիւնը (չարխայութիւնը) ու յափշտա-
„կութիւնը. տեսնալով որ շատ կուշանայ՝ ու-
„զեց որ ախլցխայի փաշան որ խորաման-
„կութեամբ ձեռք տըված օգնեց լէզկինե-
„րուն, դուռը պատժէ, թէ որ պատժե-
„լու չըլլայ՝ ան ատենը մոսկովը իրաւունք
„կունենայ պատժելու, որ պատճառ կըլ-

„ լայ երկու տէրութեանցս մէջ՝ մոսկովին ու
„ տաճկին մէջ թշնամութիւն ձգելու „։
Քանի մը օրէն ետեւ դուռն ալ սաստիկ պա-
տասխան տըվավ։ „ Որովհետեւ տաճկին
„ ու մոսկովին մէջ որչափ դաշնադրութիւն
„ որ եղած են, մէկ խօսք մը եղած չըկայ
„ կիւրճիսթանի խանին կամ իշխանին վը-
„ րայ, ինչպէս կրնայ դանկտիլ մոսկովը թէ
„ ինչու համար ախլցխային փաշան օգնութ
„ տըվավ լեզկիններուն վազելու անպատա-
„ կելու վերայիշեալ իշխանին երկիրը, ինչ-
„ պէս մեզ կըսեպէ պատճառ բարեկամու-
„ թիւնիս կտրելու։ Աս բանիս վրայ ամե-
„ նեւին մէկերնիս չենք կրնար դանկտիլ, թէ
„ որ դանկատելու պատճառ մընալ ըլլայ՝ ու-
„ նէլի տաճկին դաւար իրաւունք ունի
„ դանկատելու մոսկովին խաբէբայութեանը
„ վըրայ, որ մեզի հպատակ եղած կիւրճիներն
„ իշխանը՝ մինչեւ գլուխ քաշել տըվավ ապըս-
„ տամբեցուց, որպէս զի անով իրեն դին
„ քաշէ տաղխսթանը ու ատրպէյճանը,
„ չըպահեց քայնարճըքի դաշնադրութեանը
„ առջի թէւութիւր 1774 եղած, ուր տեղ
„ խօսք դըրվեցաւ թէ մէկ անիրաւութիւն կամ
„ թշնամութիւն գործք մը չըցըցընենք։ Ասոր
„ համար ախլցխային փաշան պատժելը չըլ-
„ լար՝ ինչվան որ անոր յանցանքը յայտնի
„ չըցըցվի, բայց թէ որ մոսկովը արդարու-
„ թիւր մէկ դի ձգէ, տաճկին սահմանները
„ թշնամութեամբ կոխէ, տաճիկնալ կըհար-
„ կաւորի բռնութեան դէմ բռնութիւն ցը-
„ ցընել։

Աս խօսքիս վրայ քանի մը շաբաթ անցաւ, պուլկաքօֆ աս թեւութիւններս առաջարկեց դրան ընդունելու, որպէս զի ամմէն թշնամութեան առիթները վերնայ ։ ա. Տաճկին դուռը միայն մոսկովին վերաբերեալ ճանչնայ կիւրճիստանը ու քովի երկիրները։ բ. Ռուսով դադրեցընէ լեզկիներուն նաև ապազաններուն յափշտակութիւնը թշնամութիւնը՝ որ կիւրճիններուն դէմ կընեն։ գ. Ինչ հակառակութի որ կըլլըվի գըլլպուրուն եղած աղէհանքի (Թուզլայի) համար՝ բարեկամաբար թող շտկէ ։ դ. Վառնայի մէջ մոսկով քօնսօլ մը նստի, ինչպէս որ շատ հեղ խնդրեր է մոսկովը։ ե. Մեծ պատրաստութի պատերազմի որ տաճիկը կընէ ցամաքի ու ծովի վրայ, ինչ պատճառով կընէ՝ թող ըսէ ։ զ. Ուլահ պուղտանցոց չարչարանքը դադրեցընէ՝ որ կըլլայ իրենց պէյերուն պատճառովը ։

Ասոնց ամմէնուն մէկիկ մէկիկ ասանկ պատասխան տըվաւ դուռը ։ ա. Կիւրճինները միշտ տաճկի տէրութեան տակը մնացած են, և ոչ երբէք մոսկովին ։ բ. Լեզկիները անկախ են, դուռը իրաւունք չունի անոնց զէնքերնին վար ձգել տալ ։ գ. Աղէհանքին բանը կընայ բարեկամաբար շտկըվիլ, հերիք է որ մէկ մոսկով թարգման մը դրվի, և մէկ պաշտօնակալ մը տաճկի դրան դիմացէն ։ դ. Դուռը կընար թողուլ մոսկով քօնսօլ մը նստելու վառնայի մէջ, թէ որ երկըրցիքը դէմ չըլլանէին, և որովհետև վառնա մէկ վաճառականութիւն մը տեղ չէ, ու-

րիշ քանդակ մը կըցըցընէ տաճիկը նստելու՝ որ աւելի շահաւոր կըլլայ։ Ե. Տաճիկին դուռը զինքը կըդնէ իր պաշտպանութեր համար, ինչպէս որ սովորութիւն է ամմէն Եւրոպայի ազգութեացը, առանց մէկ թշնամութէ նշան մը տալու։ Է. Աւլահ պաւղտանի պէյերուն համգստուէր աւելի տաճկի շահէն կընայի քան թէ մասկովին. ասոր համար տաճիկը հող կըտանի աս բանին վրայ։

Ասիոյէին մարտը վաճառականութէ վրայ, և Ինկիլիզին [illegible]։

Տաճկին պատերազմը չյաջողած՝ ասոր պատճառները համարըցընելու է, ինչու որ տաճիկը մինակ ինքիրմէ չեղավ որ աս պատերազմը բացաւ, հապա մեծ գրգռիչ ունեցաւ իրեն Ինկիլիզը. Ինկիլիզինալ գրգռելը Մոսկովին դէմ ասոր համար եղավ որ՝ մէյմը Մոսկովը Ինկիլիզին հետ առեւտուրը կտրեց, Փրանսզին հետ բացաւ. մէյմընալ Ինկիլիզը վախցաւ որ՝ Մոսկովը Խրըմը՝ Կիւրճի ազգերը՝ Թաթարները առնելով մէկտեղ աս էր որ Հնդուստան երթալու նոր ճամբայ մը բանայ ցամաքի մէջէն. Հնդուստանու ապրանքները աս ճամբով ինքը բերէ Եւրոպա, ան ատենը խիստ մեծ վնաս կըլլար Ինկիլիզին։

Հիմա առջի բաներէն սկսելով պատմել, գիտնալու է որ՝ Ինկիլիզը առաջ խիստ բարե-

կամ էր Մոսկովային, ինչու որ մինակ իրենք առուտուր ընելով Մոսկովային հետ՝ իրմէ մեծ շահ ունէր, ու քանիս մէջ միշտ մնալու համար՝ Մոսկովային օգնութիւն ըրաւ ան ծեծերին մէջ՝ որ եղաւ Է. սուլդան Մուստաֆային հետ, իսկ երբոր 1780 ինկլիզին հետ կըռիւ կընէին Փրանսըզը, սպանիան, ու Փելէմէնկը՝ ամերիկացոց համար, (որ վերը երկան պատմերենք,) Մոսկովը տեսնալով որ աս տէրութիւնները իր չէզոք ըլլալը չինայելով իրեն նաւերնալ կըբռնէին կառնէին մանաւանդ ինկլիզը։ Անոր համար զինուալ չէզոք մնալու համար ընդհանուր դաշնադրութիւն մը ըրաւ, (որ նոյնպէս վերը պատմած ենք), ան դաշնադրութեան հետ միացան փորթուկալը, սպանիան, Փրանսըզը, նաբօլին, Փիլէմէնկը, պրուսիա ու նեմցէն, շվէտնալ տանիմարքանալ նաւեր պատրաստեցին, որ պէտք եղած ատենը Մոսկովային հետ միանան։

Աս դաշնադրութիւնը խիստ անհաճոյ եղաւ ինկլիզին, որովհետեւ 200 տարիէն ի վեր զինքը մեծ ծովու վրայ թագաւոր կըսեպէր, աս մեծութենէս ետ չիկեցաւ եւ ոչ ԺԷ. Լուիզին ատենը՝ որ Փրանսային զօրաւոր թագաւորը եղաւ. Հիմա Մոսկովային աստանկ մեծնալ մը՝ ծովու վրայ միաբանիլ մը՝ իրեն պզտիկնալ կըսեպէր, շատ խռովելով աս բանիս համար՝ ապերախտ կըկոչէր ըզՄոսկովը. եւ թէպէտ ան ատենը աչք գոցելը ազէկ սեպեց, բայց ամէնքը կըսէին որ՝ ինկլիզքը մէջը մեծ վրէժխնդրութիւն մը պա-

տոր ընէ ասոր վրայ ։ Այս իրաւ զուրցած-նին պէտ թէպէտ բարեկամացան մէկ տեղ՝ բայց հիմա պատմենք պատճառները՝ որ աս երկու տէրութեանց մէջ տարաձայնութն տհա-

Ճուռթն ձգել տուին ։

Ասկէ ետեւ գործքերուն հանդիպեցան՝ որ աւելի պաղեցուցին մէկզմէկ. մէկը ան էր որ՝ իրենց մէջի եղած հին դաշնադրու-թիւը առեւտուրի վրայօք լմնցաւ 1785. նո-րէն սկսան խօսիլ մէջերնին նորոգելու հա-մար. կուզէին թէութիւնները աւելի լաւ-ճամբու մը բերել, բայց ասոր վրայ շատ դէմ արգելքներ կըգտնային ։ Ինչու որ Ինկիլիզին բառլամէնդը հաշիւ (հիսապ) ընելով կըգտնար որ աս առեւտուրէն մաս-կովէն մեծ շահ կըլլար, Ինկիլիզին վնաս. մէկ միլիոն կինէէ ինքը կըկորսնցընէր, ըստ որում մասկովէն խիստ շատ ապրանք կեր-թար Ինկիլդերրա, քան Ինչ ապրանք ու ձեռագործ որ Ինկիլդերրայէն կուգար մասկովստան. իսկ աս վնասը քանի երթար՝ շատնար պիտոր կըսէին զանազան պատ-ճառներու համար. մէյմը վերոյիշեալ չէ-զոքութեան համար, մէյմընալ նոր կարգաւո-րութեց համար՝ որ մասկովը ետեւէ ետեւէ ըրաւ եկամուտներու վրայ. եւ երրորդ՝ ան օրէնքին համար՝ որով մասկովը արգելեց որ՝ իր երկրէն ելած ապրանքները ուրիշ տէրութեան նաւերը չտանին, միայն մասկովի նաւերը դուրս տանին ։ Աղէ որ նայելու ըլ-լանք, աս կարգաւորութիւններուն օրինակը առաջ Ինկիլիզը բռնած իրեն անուանի

Հրովարտակովը նաւարկութեան վրայ, որ շատ
հեղ նորոգուեցաւ ու հաստատուեցաւ. Գէ-
մն մոսկովեան իշխաններին տուած օրինակին
հետեւեցաւ: Բայց աս մոսկովեան արգելքը՝
և յանկարծ կայսեր արգելքը՝ որ աս ատեն-
ներս ինքնաւ արգելեց՝ որ դուրսի ձեռա-
գործները իր երկիրը չմտնան, ամէն ու
աւատուր ընող տէրութեանց աւելի վնաս
ստպեցին իրենց, քան թէ առջի պատե-
րազմերուն կորուստը, ինչոր համար շատ
դանակար ըրին թէ մոսկովեան՝ և թէ նեմ-
ցերն, մանաւանդ իշխանը՝ բայց անօգուտ,
վասն զի իրենց ժողովուրդին և իրենց խաղ-
նային օգուտը կըմտածէին, չէ թէ օտար
տէրութեանց օգուտը:

Ասկէց զատ՝ բէդրօպուրկ նստող Փռանսը-
զին դեսպանը որ կըսվէր Սէկիւր կոմս, բը-
դէմքին իշխանին սիրտը բոլորովին իրեն էր
քաշեր, բօդէմքինին ձեռքովը հանեցուց
կատարինէ թագուհւոյն՝ որ 1784ին ետքէ-
րը Փռանսայի հետ առուտուրի դաշնա-
դրութիւն մը ըրաւ (1), (թէպէտ ետքը Փը-
ռանսայի խռովութիւնը պարապ հանեց տը-
վաւ). Աս դաշնադրութեան միայն ձայնը եօ-
քի աստիճանի կատղեցուց՝ ինկիլիզները, ու
անոնք որոշեցին բացարձակ վրէժ առնելու
մոսկովէն, ինչվան երեսը տալ սկսան կա-
տարինէին իրենց երեսփոխանին ձեռքովը՝

(1) Ոմանք կըյիշեն 1787. յունվ. 11 եղած դաշ-
նադրութիւն Փռանսայի ու մոսկովի մէջ առուտուրի
վրայօք:

որ բէդրօպուրկ էր, բայց կատարինէն ա-
ռանց որոգողելու մը ասանկ պատասխան
տըւաւ: „Սրբաղձամ բարեկամ ըլլալ կը-
„ կ'ուզիմ՝ բայց չէ գերի ըլլալ, միշտ պատ-
„ րաստ եմ նորոգելու հին առուտուրի կա-
„ պը, ան խօսքերով ինչ որ առաջ եղած
„ էր „: Բայց Ինկիլիզները կուզէին ան
դաշնադրութիւնը փոխելու, աւելի արտօ-
նութիւններ առնելով իրենց համար, որոնց
մոսկովը հաւանութիւն չէր տար:

Ինկիլիզներուն առջի վրէժ առնելնին եղաւ
Փիլէմէնկին մէջը խռովութիւն հանել. անով
զատեցին Փիլէմէնկը Փրանսայէն դաշնա-
դրութեն կապէն՝ ինչպէս որ վերը պատմե-
ցինք, և եռապատիկ կապեցին պրուշի նոր
Թագաւորին հետ: Ամէն բանէն աւելի՝
Ինկիլիզներուն վաճառականները խիստ
վախ ունէին որ՝ մոսկովը ազատութիւն ձեռք
ձգելէն ետև իր նաւերը համարձակ անցը-
նելու ստամպօլի ու չանախ խալէսիէ պօ-
ղազէն, և խըրըմին ու դամանին վրայ տէր
ըլլալէն ետև, հինտիստանի առուտուր մը
կընանայ ցամաքի ճամփով որ աւելի կարճ
կըլլայ և աւելի անվտանգ՝ քան թէ իրենց
ըրած ովկիանոսի ճամփան. ան ատենը և
ընոնցը կըգոցվէր՝ ինչպէս որ վենետիկցոց
ճամփան գոցվեցաւ երբոր փօրթուկալցիք
նոր ճամփայ գտան: Մոսկովին միտքը ա-
սանկ ըլլալու նշաններն ալ կըտեսնային որ՝
կատարինէին հրամանովը նոր նոր ջրէ ճամ-
փաններ կըբացվէին սև ծովուն ու կասպից
ծովուն մէջ եղած ցամաքին վրայ, ինչ դե-

տէր, ինչ լճեր (կէօլէր) որ կային հոն տեղվանքը՝ մէկ մէկու կը կապցընէին, որպէս զի երկու մեծ ծովը իրարու խառնեն, եւ ծովէն ինչվան կասպից ծովը նաւեր գան երթան ։

Տե՛ս հիմա ինչ բաղձանք, ինչ ցանկութիւն վաճառականութեան վրայ. աս գլուխը կարդալով կիմանաս ուժը ան խօսքերուն՝ որ գրեցինք ներածութեան մէջ, թէ ինչեր կընէ շահասիրութեան ու վաճառականութեան ոգին աս ԺԸ, դարուն մէջ. որմէք աղէկ կըլլայ թէ որ հիմա նորէն դառնաս, աչքէ անցընես կարդաս ։

## Հինտիստանի ճամբու վրայ ։

Մոսկովյին միտքը Հինտիստանի նոր ճամփայ մը բանալուն վրայ աղէկ հասկընալու համար՝ պէտք է հին տեղեկութիւնները գիտնալ։ Առաջ Հինտիստանին ապրանքը երկու ճամփով կուգար աս տեղվանքս. մէյմը՝ ծովու ճամփով ասանկ. առաջի նաւերը Հինտին ապրանքները մանաւանդ պահարները կառնէին պապիւլմանտէլ նեղուցէն կը մտնային Սուէյիշ տէնիզը, (որուն հիները Կարմիր ծով կըսեն), կը բերէին Սուէյիշ քաղաքը, անկէց ցամաքով կը բերէին իսքէնտէրիէ, որ իրեք օրվան ճամփայ է. անկից վենետիկի նաւերը կը բերէին եւրոպային ամմէն տեղը կը բաժնէին։ Մէկ ճամփայ մըն ալ կար ցամաքէ՝ որ Հին-

տի երկիրներէն կուգար ինչվան կասպից ծովը (տճ. Գիլան տէնիզի), անկէց տօնաւիս կամ Թէն գետը, անկէց սև ծով, և ծովէն ստամպօլին պօղազը ևն:

Երբոր 1501 փօրթուկալցի անուանի նաւապետը՝ որ կըսվէր վասքօ կամա, ափրիկէին պինտ հարաւային քիթը անցաւ, որ կըսվի Հրուանդան բարեյուսոյ, նոր ճամփայ մը ցըցուց, անկից ետքը ովկիանոսէն բերել սկսան հնտին ապրանքը, թէպէտ աս ճամփան երկան ու վտանգաւոր է. 24 հազար մղոն չափ ընել պէտքը կըլլայ երթալ գալու համար. բայց փօրթուկալցիք աս ճամփով շատ վտանգներ քաշելով տէր եղան հնտին ան ծովեզերքին՝ որ կըսվին քօռօմանտէլ ու մալապար, և ան կղզիներուն՝ որ հնտ ու գանգէս ըսված գետերուն անդին դին կէյնան, առաջնորդութե՛ մեր հայնաւապետներուն (խափուտաններուն), որ ան ատեններըը շատ յաճախերէին հնտտին ծովուն մէջը:

Հարիւր տարի անցնելէն ետև ֆիլէմէնկը եկան դուրս հանեց վռնտեց փօրթուկալները, հնտին պահարները իրենք բերել սկսաւ, ետքը ֆրանսզնալ տեղվանք առաւ հնտիստան, որուն անուանի տեղը եղավ բոնդիշէրի քաղաքը, թէպէտ չիհասաւ ան մեծութենը՝ որ վերոյիշեալ երկու տէրութիւնները ունէին:

Ինկիլիզնալ կամաց կամաց առաջ գնաց հնտիստան. 1764 իր ձեռքին տակը ունէր մատրաս քաղաքը՝ քանի մընալ պզտիկ տեղ-

վանք. ան ատենները Լօռտ Քլիվ իր զօր-քով Մտաւ Պէնկալա գաւառը Հայերուն ձեռքովը, որ Մողոլի տէրութեն գաւառնե-րուն մէջ ամենա հարուստն է, օրէօր աւելի տեղվանք առնելով ինկիլիզի բաժանորդու-թիւը (քօմբանիան) ամմէն Քօռօմանտէլ ըսված ծովեզերքին տէր եղաւ. Գանգէս գետին եզքի ձիւղէն սկսեալ ինչվան Մա-տուր ու Դանձնեւար՝ Սէյլան կղզին դիմա-ցը. մէջը 20 միլիոնի չափ մարդ լեցուն. ան տեղերուն ապրանքները ու ձեռագործ-ները ինչ գնով որ ինկիլիզը կուզէ՝ ան գը-նով կառնէ, Եւրոպա բերելով ինչ գնով որ կուզէ՝ կըծախէ, մեծ խաղնա կըվաստը-կի. անով կրնայ ծեծերուն համար անչափ խարճ ընել, նաեւ ուրիշ տէրութենց փոխ ըստակ տալ, անանկ մեծ նաւատորմիղ (տօ-նանմա) մինալ ծովու վրայ պահել 800 նաւով և աւելի (1)։ Ասանկալ Ֆիլէմէնկ-ները 1704 տարիէն առաջ շատ կըշահէին Հինտիստանէն, երբոր իրենց ձեռքն էր Բա-րէյուսոյ հրուանդանը, Պադավիան, Սէյլա-նին տեղվանքը, Ամպօինն եւն։

Հիմա աս մեծ շահն է պատճառը՝ որուն համար ինկիլիզները կըվախնային կորսնցը-նելու թէ որ Մոսկովը նոր ճամփայ մը բա-նալու ըլլար, մանաւանդ կըլսէին որ՝ հին ատենը աս գոցված ճամփան կըբանեցը-

---

(1) Աս բանիս վրայ աղէկ տեղեկութիւն կրնաս գըտ-նալ 1816 տարվան Եղանակին մէջը Թղթ. 208.

նէին հռոմայեցիները հայ վաճառականնե-
րուն ձեռքով, կը բանեցընէին նաև ան ժո-
ղովուրդները՝ որոնք հիմա մոսկովի տակն
են։ Ու իրաւի որ 300 տարի առաջ մոսկո-
վին ցարերը ուզեցին նորէն անոր փորձը ը-
նել. առջինն որ՝ աս բանս առաջարկեց ի-
րենց՝ կըսեն որ Ճինիվիզ մըն էր պօղոս չէն-
դուրիօնի անունով, որ հռոմայէն դեսպան
էր գացած մօսքվիա. անիկայ առաջարկեց
յօհաննէս վասիլովիչ ցարին նորէն բանա-
լու ցամաքի ճամբան Հնտիստանէն եւրո-
պա, բայց որովհետև պէտք էր քովի թա-
թարներուն մէջէն անցնիլ, անկարելի ե-
ղաւ։ ան թաթարներուն հետ մէկ դաշնա-
դրութիւն մը ընել առուտուրի վրայօք, ո-
րովհետև հետերնին մէկ թշնամութիւն մը
ունէին։ Մեծն պետրոս խիստ կը բաղձար
աս բանիս վրայ, բայց շվէտի պատերազմին
մէջ ըլլալով, և բրութ եղված դաշնադրու-
թենը կեօրէ չիկրնալով սև ծովուն վրայ նա-
ւարկել, իր յաջորդներուն թողուց, ինքը
միայն կասպից ծովուն եզերքը աղէկ բերդ-
մը ու իշխան (խան) մը թողուց. բայց ան-
նա իվանօվնա իր թոռը աս ճամբուն վրայ
անհոգ ըլլալով՝ կամ ուրիշներէն խաբվե-
լով՝ պարսից ձեռքը թողուց աս տեղվանքս,
ըստ որում շատ խարճ կըլլըլվէր ան տեղէ-
րուն համար։

Հիմա կատարինէին ձեռքը անցնելով պըզ-
տիկ թաթարը՝ խըրըմ՝ քուպան՝ որ կա-
պահովցընէ տօնաւիս կամ թէն գետին նա-
ւարկութիւնը, կիմանար որ կրնար աս ճամ-

փան բանալու, որովհետեւ Աստրապատ որ կատարից ծովին վերջին ծայրն է, խիստ յարմար է ժողովատեղ ըլլալու մասկովէն ու հնդէն եկած ապրանքներու, նաեւ նաւերուն՝ որ կուգան աստրախանէն ու էթիլ կամ վօլկա գետերէն՝ ջրանցքներով միացած ըլլալով (1). Մօտ եղած Պալխ քաղաքէնալ մէկ լան ու հեշտ ճամփով մը հինտոյին երկիրը կանցնին, ինչպէս են լահոռ ու սերքերտ, ուր կըժողվըվին ան երկիրներուն ամմէն ապրանքը՝ որ հինտ գետին քովը կիյնան. աս գետս ովկիանոս ծովը կիջնայ դուճրադ ցամաք կղզիին արեւմուտքէն անցնելով, և ցամաքին ներսերը կըքալէ. գետին ճիւղերը ինչվան քիշմիրէն կիջնան՝ որ պուխարայի ու պարսից մէջն է, խիստ անուանի է իր ձեռագործներուն համար. հիմա երբոր աստրապատ վաճառատեղի ըլլայ՝ աս տեղերուս առուտուրը աւելի կըշատնայ:

Ասանկ եղածին պէս շատ ձեռս կըլլար եւրոպայի վաճառական ազգերուն, միայն գերմանիային կամ նեմցէին համար խիստ շահաւոր կըլլար, անոր համար յաւէտ կայսրը խիստ կըյորդորեր մասկովը իր դաշնակիցը աս ճամփան բանալու համար, և

(1) Աս նաւահանգիստս 500 մղոնի չափ հեռու է Պալխ քաղաքէն պուխարայի՝ որ կըմօտենայ հնդի երկրին. հոն ամմէն տարի շատ կուգան կերթան հնդիկ ու հայ վաճառականներ, ան երկիրներէն ճամփայ ընելով որ մասկովէն ու պարսից մէջը կիյնան.

ասոր համար բէդրօպուրկ գնաց, ետեւէ
ետեւեալ դաշնագրութն ըրաւ Մոսկովին հետ։
Աս թանիս մէջ Մոսկովինալ աղէկ էր նեմ-
ցէն դաշնակից ունենալ, վասն զի Մոսկովին
մեծ ապրանքը ըլլալով քիւրք, խավեար,
տախտակ, կաշի, չուանի անանկ ապրանք մը՝
որ հինտին երկիրը անցնի փոխելու համար.
սիպիրին մէջը ոսկիի արծըթի հանք ունի՝
բայց Մոսկովին ըստակ տպելուն չօգտէր.
իսկ նեմցէն կերպ կերպ ապրանք ունի՝ որ
հինտ կանցնի։ Աս մոքով յովսէփ կայսրը
1785 ապրիլի 26 դաշնագրութիւն ըրեր է
տաճկին հետ՝ որ ազատ նաւարկութին ու-
նենայ տաճկին ծովերուն վրայ, պարպառու-
շի խուրսանտներէն անվտանգ ըլլալով, նաեւ
դունա գետին վրայ՝ որ սվէվիայէն կանցնի
պավիէրա, աւստրիա, մաճառստան, և
հինկ բերնով սեւ ծովը կըթափի, ասով
ամմէն Մոսկովին երկիրը կրնան մեծ նա-
ւեր նաւարկել, նաեւ խըրըմին նաւահան-
գիստները երթալ. ուր թէ որ հինտին ճամ-
փան բացվելու ըլլայ, նորէն կըդառնայ
առջի վաճառականութիւնը՝ ինչպէս որ
կըլլար վէնետիկցոց ու ճինովիզներուն ա-
տենը։

Հիմա աս միտքերս ավրելու համար՝ Մոսկո-
վին թշնամիները ինկիլիզը նաեւ պրուսը
կուզէին որ խըրըմ Մոսկովին ձեռքէն առ-
նըվի, անոր համար տաճիկը կըգրգռէին
ձայն հանելով որ՝ իրեք տարվան մէջը խը-
րըմցիք խիստ կըճշգոհային Մոսկովին ձեռ-
քէն, անոր համար Մոսկովը դեռ չէր կըր-

նար իրեն տէրութիը հետ հաստատել ։ Կըլայէ լինչ նախանձ, ան նախանձէնալ լինչ կատարած, լինչ արիւնհեղութի, կարգամ լինչ որ գրեցինք ներածուն մէջ կրից վրայ ։

## Է. Կաթարինէ Թագուհիին ճամբորդութիւնը դէպ 'ի Խրըմ.

### 1787.

Մոսկովին թշնամիները՝ խըրըմի մէջ չէն կըրնար մոսկովի տէրութիը հաստատվիլ կըհաչակէին, իսկ մոսկովները իրենց թագաւորը ան ատենը խըրըմ բերել կուտային. բօղէմէքին իշխանը որ կառավար էր եղած խըրըմին ու պզտիկ թաթարին վրայ, յորդորեց կատարինէ թագուհին՝ որ իր ամմէն փարթամութիւը անձամբ երևնայ ան տեղացի ժողովրդեան մէջ, որուն պատճառը զանազան ազգ. զանազան բան ըսեցին. մանաւանդ կարծեցին որ հան կերթայ հանդիսիւ թագուհի պսակվելու համար պզտիկ թաթարի վրայ ։ Թագուհին շատ մեծամեծներով բէդըրօպուրկէն ճամփայ ելաւ 1787 յունվ. 18. գիշեր ցորեկ ճամփայ կընէր միշտ, չէր կենար որ միայն որաշեալ տեղվանքը հանգչնալու համար. ճամփուն երկու դիհացէն 30 դրկաչափ (խուլաճ) մէկմէկէ հեռու միշտ կրակ կըվառէր. բազմուն մարդոց երկու դիհացէն կըժողվըվէին տեսնալու համար ։

Վեց օրվան մէջը Սմօլէնսքօ հասաւ ատա-

Ն. ըհինգ օրէն ետև մտաւ Քիօվիա՝ որ խիստ զարդարված էր, հոն էին ժողվըված Լեհին մեծ իշխանները՝ որոնք որ մոսկովին տակն էին, որպէս զի իրենց պատիւը տան, որոնց գլխաւորն էր Սաբեզկայ իշխանը՝ որ հայու ազգէն եկած իշխանութիւ մընէ Լեհի մէջ, հոն էր նաև Բօդէմքին իշխանը՝ նաստօ սիէժ իշխանին հետ մէկ՝ տեղ (1). Հոն անեբէր կամ պօրիսթէնէս գետին վրայ նաւատոր-միղ (տօնանմա) մը պատրաստըված կար 122 նաւերով որ Քէրսօն պիտոր տանէր. ատոնցմէ 40. նաւը թագաւորական մարդիկ-ներուն համար էին, մնացածը ուրիշ մեծ-ծերուն համար՝ որ եկերէին իրենց կամքո-վը ընկերութիւն ընելու համար: Ասկից 6. ամսու թագուհին մէկ նաւ մը՝ որ մեծ չէք-տիրին կըմանէր, մէջը սրահներ՝ խուցեր՝ խիստ մեծաշէն զարդարված ան երիտա-սարդ վարպետներուն ձեռքով որ թագա-ւորական խարձով հռոմ խրկըված էին արհեստ սորվելու համար. ատոնք իրենց նոր վարպետութիւնը ցըցընելու համար մէկմէկէ գերազանց աշխատեցան, մէկալ չէքտիրի-ներնալ մեծագործ կերպով զարդարեցին, որոնց խարձը երկու միլիոն ռուպլիէն (պէշ-լիքէն) աւելի եղաւ:

Երբոր Պրանիէֆ ըսված տեղը հասան եր-կաթ ձգեցին՝ օգոստոս Լեհին թագաւորը

(1) Ասիկայ քիչ մը ետև մոսկովին ու ռօմանցօֆ մառէշալին ծառայութիւնը մէջ մտաւ, որ ձիաւոր զօրաց վրայ մեծ զօրագլուխ էր:

ծպտեալ (Թէպտիր) կերպով իր ազգին ա-նունը Պօնիադօվսքի կոմս վրան առնելով հոն եկավ Կատարինէին տեսութիւն՝ որ զին-քը ան Թախտը հաներէր, և ան առէնը ին-քը կըրդահէր. ասիկայ լեհի օրէնքին կեօրէ չէր կրնար լեհաստանէն դուրս ելլալ, անոր համար Կատարինէն երկու ոսկեղօծ նաւակ-ներ խրկեց լեհին գետեզերքը, որ առին իր չէքտիրին բերին. 1764 տարվընէ վեր որ ուրկայի մէջ տեսնըված էին, անկից ետև 23 տարի անցած էր որ՝ մէկ մէկու հետ չէին տեսնըված։ Մէկ ժամու չափ ծածուկ խօրաթայ ընելէն ետև իրարու հետ՝ ուրիշ չէքտիրի գացին հաց ուտելու համար. հոն հացին վրայ Կատարինէն լեհի Թագաւորին տըվավ Ս. անդրեասի կարգին նշանը պռիլ-լանդի քարերով զարդարված. բօղէմքին իշխանը որ դեռ չէր տեսած լեհին Թագա-ւորը, զարմացաւ մնաց սա Թագաւորին գեղեցիկ անձնաւորութեանը վրայ՝ իր գեղեց-կախօսութեանը ու քաղաքավարութեանը վրայ. հետը խիստ սիրով կապվեցաւ, մէկ տեղ ընկերացաւ մինչվան իր առապան հեծցուց։ Երբոր լեհին Թագաւորը վարշով կըդառ-նար, Ճամփան յովսէփ կայսրը պատահե-ցաւ, որ վէննայէն կուգար խըրըմ երԹա-լու, երկու Թագաւոր մէկ տեղ երկան բա-րակ խօսակցուԹի ընելէն ետև իրարմէ բաժ-նըվեցան։

Կատարինէն հասաւ քռէմէնչուքը, ուր ի-րեն համար յատուկ բնակարան մը շիներ-էին խիստ գեղեցիկ. սա բնակարանին առ-

ջին 12 հազար զինուոր նստած կային ամ-
մէնն ալ նոր հագուստով․ հոն սուվարով զօ-
րապետին կարգադրելովը չորս՝ բաժնըվե-
լով՝ մէկ պատերազմ ձևացուցին ղազախնէ-
րու գնդի մը հետ՝ որ քառակուսի կեցած էր,
կատարինէն ասանց ամմէննունալ առատա-
ձեռնութի շատ պարգևներ բաժնեց ։ Մ՝ս
ջուրի վրայի ճամփորդութիւնը տնեքեր գե-
տին մէջէն շատ ախորժելի եղավ, երկու-
դետեզերքը լեցուն հովվիւներ նորակերպ
հագուստներով խումբ խումբ ոչխարներով
երթար կերևնային ․ աս դիս ան դին մայիսի
մէջ զուարճալի դաշտերուն վրայ , ճամ-
փորդներուն տեսութիւնը խիստ կըզուարճա-
ցընէին ։ Յովսէփ կայսրը առաջուցմէ հա-
սած էր քէրսօն, երբոր լսեց կատարինէին
գալը՝ որ ջուրի ճամփան լմննալէն ետև
ցամաքով գալ սկսաւ, անոր առջին գնաց,
քայլթաք տեղէն 15 մղոն հեռու իրեն հա-
սաւ, մէկ տեղ անոր առապան նստաւ, ուր
որ էին նաև քօղէմքին իշխանը ու քօպէն-
ցէլ կոմսը որ նեմցէին դեսպանն էր ։
Իրեք օրալ ճամփայ ըննելէն ետև հասան
քէրսօն, ուր 60 հազար հոգիէն աւելի բնա-
կիչ կային , թող տուր անոնց բազմութի
օտարականներու՝ ամմէն կերպ մարդիկնե-
րու՝ ամմէն ազգերու՝ թաթար , հայ ; հո-
ռոմ՝, լեհ, Ֆրանսզ, սպանիացի, որ ամմէնք
նալ եկերէին կատարինէին գալստեան հան-
դէսը տեսնալու համար (1) ․ 40 հազար ո-

(1) Ասոնց մէջն էր ամերիկացի զօրապետնալ միրան-

Ջուրը ձգեցին տեսնալու համար, որ խիստ հաճոյ եղաւ իրենց, մէկ նաւուն անունը երկրորդ յովսէփ անուանելով։ Շատ տէ-րութենէ դեսպաններ (էլչիներ) եկան հոն շնորհաւորելու, տաճկի դրանն ալ իմաց տը-վերէին աս կատարինէին ճամփորդութենը վրայ, որպէս զի ինքն ալ իր դեսպանը ար-տաքոյ կարգի խրկէ շնորհաւորելու, բայց դուռը չխրկեց. միայն ուրիշ երկու հոգի խրկեց ծածուկ կերպով իմանալու համար ինչ պատճառով հոն կըժողվըվին իրենն եր-կու դրացի թագաւորները, և անչափ զար-տուկ խորաթելուն միտքը վախճանը, որ իրաւ ուրիշ տէրութեանց դեսպաններն ալ կըզարմացըններ, փնտրըտուքի մէջ ձգել կուտար։ Ասոնց ժողվըվելուն վրայ շատ չը-հաւնելով դուռը՝ հիմակու հիմա 4 նաւ խրկեց երկու խափախը, և 6 ֆուխաթա, որոնք եկան պորխաթէնէս զետին բերանը երկաթ ձգեցին։

Նորէն մայիս ամիսը լմնցաւ՝ թագաւորնե-րը քէրսօնէն ճամփայ ելան՝ պզտիկ թա-թարը զացին քալելու համար. քամէմօսդ-րըված պզտիկ զեղին քով մէկ քաղաք մը տեսան վրաններով (չատըրներով) շինված, ինչպէս որ երկըրցիք սովոր են շինելու, որ թագաւորներուն նոր բան մը երևցաւ. հոն բազմութին թաթարներու մենծերուն եկան իրենց պատիւը ցըցընելու։ Առջեմ-քին իշխանն ալ խազախ թաթարներու մէկ ծեծկըվիլ մը ձևացընել տըվաւ իրենց հե-ներուն ըրածնին կեօրէ՝ որ սարմատացիք

Չորրորդ օրը հասան Պաղչէսէրայ, ուր կընստէին խըրըմին Թաթար խաները, ամմէնմաւ լուսաւորված ինչվան քօվի լեռը՝ որ կրակի մը պէս կըվառէր, հոն եղած կոպտաշէն դարպասին (սէրային) մէջը ինջան՝ ուր որ հին խաները կըբնակէին, առաջ աս քաղաքս շատ մարդ կար, բայց Մոսկովը առնելէն ետև խիստ քիչցան մէջինները: Հոն Թաթարին մեծերը որ միրզայ կըսվին՝ եկան շնորհաւորելու. Կատարինէնաւ սիրտերնին շահելու համար ծանր պարգևներ տըվաւ, ըստակալ տըվաւ երկու Ճամի շինելու համար. առաջ երկու տարին անգամ մը միրզաներուն մէջը արիւնահեղ խռովութին կելլար, բայց աս ատեն դադրած էին: Թագաւորները ետքը եկան Սեբաստուպօլիս՝ որ պալըքլավային քօֆն է Աքեառ տեղը, հին Քերսոնին աւերակներով շինված, միլեսացոց ժողովրդով բնակված, ուր որ հին ատենը Սր. Մարդինոս քահանայապետը քշվեցաւ, ասոր ծովուն եզերքը 8 նաւ երկու խափախըլը, 10 Ֆրըխաթա, 12ալ ուրիշ պզտիկ նաւեր կըրակով մէկ պատերազմ ձևացուցին 4 ժամու մէջ: Հոս ժուռ եկան անուանի քարայրերը (մաղարաները) Ինքէրման անուն ապառաժ քարին մէջը փորված, որուն գլուխը հին բերդի մը աւերակ կերևայ. Ճինիվիզները իրենց տէրութեն ատենը անոր մէջը բանտը դրին աստիճաս բռնաւորին մնացած սերունդը (սօյը), որ Թաթարներէն առաջ հոն կիշխէին:

Ասոնք եկան Քէֆէ, որ Ճէնովիզները շինած էին հին Թէոդոսիա քաղաքին աւերակներով, իրենց վաճառատեղի ըրած էին, ինչպէս որ Փաթիհ Բ, սուլթան Մէհէմմէտէն քշվեցան. Աստ ծովեզերքին խիստ հաւնեցան, որ պարտէզներով տներով զարդարված էր Ճէնովիզներուն շէնքին օրինակովը, որոշեցին որ՝ նաւատորմղին (տանանմային) մէկ մասը հոն կենայ։ Նաւատիր պաղը ըսված լեռը ոսկիի հանք կար, անոր փորձը ըրին որ Ճէնովիզներուն ատենի եղած շահը իրենքալ ընեն. որոշեցին որ հոն կանչել տան ան հոռմի տներըը՝ որ Քիւրտիսթան ու Մինկրելիին մէջը կըպըտըտէին՝ բարերարութի խոստանալով իրենց։ Հոն եղած ձիերուն համրանքը առին, իմացան որ Խրիմու կզզին ամմէն տարի 60 հազար ձի կրնար տալ զօրաց համար. ամմէն տեղ ձմեռոց (խըշլա) ապսպրեցին շինելու, ինչու որ Խրիմու գետինը Թէ և քիչ վարուցան ըլլայ, բաւական պաշար կուտայ, քիչ խարճով կրնայ հոն զօրքը պահվելու։

Կատարինէն յովսէփ կայսեր հետ դարձաւ եկաւ Տնեբեր գետը Պօլդավային ճամփան բռնելով, հոն իրարմէ բաժնըվելով յովսէփ դարձաւ Վիեննա, ուսկից որ արտորանօք կանչըվեցաւ Փիլէմէնկ կամ ստորին նահանգներուն մէջ խռովութի ելլալուն համար. Կատարինէն ալ Մօսքովայի վրայէն Պէդըրօպուրկ գնաց։

Յանկերուդը Եւրոպաէ պատմիչը [illegible] վերայ Եղերաց.

1787.

Այս երկու Թագաւորներուն մէկ տեղ ասանկ տեսնըվիլը՝ ամմէն տէրութեն կըզաշակէին որ՝ մինակ հետաքրքրութէ տեղեր տեսնալու համար չէր, հապա մէջերնին մէկ բան մը կեփէին, մանաւանդ որ իրենց խօսակցութենը մէջ մարդ ներս չէին առներ՝ որ միայն պօդէմքին իշխանը՝ մնալ երբեմն. ամմէն տէրութեց դեսպանները ետեւէ ընկան իրենց դիւանադպիրներուն (սըռաքեաԹիպներուն) ձեռքովը իմանալու, ասչափ իմացան կամ գուշակելով կամ ստոյգ, Թէ անոնք դաշնադրութիւնը որ եղած էր ա. պետրաւին առնէնէն՝ ետքը ընդարձակելով հաստատվերէր Զ. կարոլոս կայսեր ու ա. կատարինէին առնէնը, հիմա Բ. յովսէփ կայսրը ու Բ. կատարինէն նորէն իրենց մէջը կապը նորոգերէին, աւելի կապերով խիստ գաղտուկ դաշնադրութի մը ըրերէին մարտապահ ու մարտավար, խօսք դնելով որ ինչ երկիրներ առնեն՝ մէջերնին բարեկամաբար բաժնեն :

Թէ իրաւ ըլլայ սա կապս և Թէ սուտ, ինկլիզը՝ անոր հետ պրուշնալ մէկ տեղ՝ արժան սեպեցին որ ոտք ելլան, անոնց մտվընին դրածը ընել Թող չտան, որպէս զի Եւրոպայի տէրութեց հաւասարակշռութիւնը

ինչպէս որ իրենք կըսէին՝ չավըրվի. կամ յայտնի ըսելով իրենց շահուն մէկ մասս մը չի հետեւի : Ու ատենվան ստամպօլ եղած ինկիլիզին դեսպանը՝ որ կըսվէր (1) Ս. յնգլէ ասպետ՝ շատ աս դիս ան դին ինա-կալ տաձկին դուռը ոտք հանելու համար, շատ ոսկի բաժնելով քիչ մը ըստրիկով քիչ մը յորդորելով կըսէր որ՝ մոսկովին միտքը տաձկի տէրութիւը կործանըննել է, աս վտանգէս խալըսելու ճարը աս է որ՝ մոսկովը դեռ պատրաստութիւն չիտեսած՝ տաձիկը իրեն վրայ ելլայ, խրըմին մէջը զարնէ՝ ան ատենը որ մոսկովին զօրքը աս դիս ան դին ցրուած ըլլալով չփկրնար շուտ մը ժողվել այնչափ ընդարձակ սահմաններէն. իր խաղնանալ պարպըրված է այնչափ խարձերուհամար՝ որ կատարինէն ըրավ աստր անոր պարգեւ տալով. իրեն ժողովուրդնալ ձշգահ նն իր վրայ՝ չէն ուզէր ծեծկըվիլ. ասանկ ըսելով կըյորդորէր տաձիկը՝ որ արտորայ ծեծ բանայ մոսկովին վրայ :

Տաձիկը ան ատենք դեսպան մը չուններալով ուրիշ տէրութեց քովը՝ արմէք չիտակ

---

(1) Աւիկայ մէկ զօրաւոր խօսքով դեսպան մըներ ստամպօլի մէջ, առովհալ երեւելի եղավ որ՝ իր դեսպանութէն ատենը ամմէն օսմաննեան սահմանէն ժողվեց հին ըստակներ, հին քարէ փորվածներ, որոնք ինչվան ան ատեն շատ ժողվըված չըլլալով ան անդվանքներէն ասիկայ կըցաւ մէկ հարուստ ժողով մը ընել 100 հազարի չափ հին դրամներ զանազան տէրութեց, որոնց մէջն է նաեւ օսմանեան թագաւորացը իրենց կարգով, որչափ որ կրցաւ գտնալ.

տեղեկութիւն տային անոնց զօրացը վրայ՝ հարստութեան ու առուտուրի վրայ՝ իրենց մէջի խառնակութեց վրայ, միայն օտար տէրութեց դեսպաններէն տեղեկութիւն կառնէր, որոնք ուզածնին պէս ծուռ մուռ տեղեկութիւն կուտային իրեն. ինչպէս որ վերոյիշեալ այնգլէյին տրված տեղեկութիւններնալ ծուռ էին, ինչու որ աղէկ բարեկարգութիւներ ընելէն ետև՝ մոսկովին խաղնան պարապ չէր՝ ինչպէս որ վարը ունինք պատմելու:

## Տաճկին մէջի եղած զանազան ապստամբութիւնները.

## 1785 — 1787:

Սիւրճինները մոսկովին տակը անցնելէն ետև, գիտես թէ օրինակ մը եղավ, ուրիշ տեղվանքալ ասանկ ուզեցին ընել. ինչպէս եղան խարատաղցիք, որ կուզէին մոսկովին տակը անցնիլ, բայց 1785 իւսքիւտարի կամ ըսքօդարի փաշան՝ որ մօտիկ է, զսպեց անոնք. Պարսից սահմանակցութեան տեղերնալ աւելի խռովութիւն հանած էր արապ չէյխ մը Կէրինէյ անուն, որ պասրան առավ 1785, հոն գտնըված տաճկին նաւերը թալլեց: Այն տարվան մէջ ստամպօլ ուզեցին կարգ դնել, ան ենիչէրիներուն որ՝ ծառայութիւն չէին ըներ, իրենց թոշակը (էսամէն) կտրել, բայց աս ընելով որով հետև խռովութիւն պիտոր ելլար՝ չըրին, և

ամէն պաշտօնատէրները փոխեցին։ Պաշ-պարըշները երկրին տուրքը չէին տար, չէին հնազանդէր դրանը հրամանին։

Առնավուտլուխի դեղիայլ իսքիւտարի կամ ըշքօդարի անուանի Մահմուտ փաշան՝ ոտ-ատենները ապստամբութիւն հանելով չէր հնազանդէր Թագաւորին, բացարձակ տէր էր եղած, անոր համար սուլթանն համբոյր էյխնէպախթի փաշան անոր վրայ խրկեց, որ 1786 օգոստ. 6 անոր վրայ գնաց տաւրացցօ կամ տիրան, 6 նաւով. Հոն էր Մահմուտ փաշային մէկ ազգականը՝ որ չունենալով զօրութի չէր կրնար դէմ դնել. անանկով ծովէն ցամաքէն պաշարվեցաւ Մահմուտ փաշան, բայց ան ատենը նաւերը կանչըլվեցան չանախ խալէսին դառնալու՝ որ անկեց սեւ ծով երթան։ Երբոր ասոնք գացին՝ փաշան իր ամմէն ընտանեօքը՝ հարստութիը՝ ու բարեկամներովը՝ որ քիչ մնացերէին, փախաւ մտաւ իսքիւտարին բերդը՝ որ սուր ապառաժ քարի վրայ շինած բերդ մ՚ըլլալ, առնելը խիստ դժար. տաճիկը ասիկայ պաշարեց, բայց չիկրնալով խումպարայով ծեծել՝ կըպատրաստըվէր երթալու. ամսոյն 20ին խիստ անձրեւը իրեն միջոց տալով գիշերանց դուրս ելավ վրանին վազեց։ Ասկից ետքը առնավուտլուխի մէջ ալ աւելի ընդարձակեց իշխանութիը ըստակալ կախեց, մեծ անուն մը հանեց ինչվան Փրէնկիստան։

Ասոր վրայ 24 այեաներն ալ բացարձակ իշխել սկսերէին. հոն եղած փաշան չէին ուզեր

Ճանչնալ, տաճկին հնազանդութէ̃ բոլորո-
վին դուրս ելլալ կընային, իրենց տուրքը
որչափ որ կուզէին՝ անչափ կուտային տաճ-
կին. անուանի այն պէյը մեռնելէն ետև
1773ին խռովութիւն տիրերէր մորայ մէջը.
1786 յուլիսի մէջ Ճեզայիրլի ղափուդան
հասան փաշան իր ամենէն նաւերով մըսըրը
գացած ըլլալով պէյերը հալածեց, մանա-
ւանդ երկու զօրաւոր պէյերը իպրահիմ
ու մուրատ պէյը. շատ տուրք ժողվեց
մորէն՝ իւքէնտէրիէն՝ ըէշլիտէն՝ ու տիմա-
ղէն. միտքը ան էր որ՝ մէմէլուքներուն
կամ քէօլէմէններուն տէրութի̃ը անկեց վեր-
ջացընէ, որ շատոնցմընէ մըսըրը կիշխէին,
միշտ ապստամբութե̃ անհանգիստ կընէին.
աս քէօլէմէններէն երկու հազարի չափ խըրդ-
ըըր խրկեց, ու աստանայէն և իչէլէն ծա-
վեզերքը. կերևար որ ասոնք բոլորովին
պիտոր վերջացընէր, որովհետև կիւրճիս-
թան, չէրքէս ու մնկրէլ մոսկովին իշխա-
նութե̃ տակը անցնելով, չէին կրնար գերի
առնել մըսըր խրկել. 80 հազար քեսէի
չափ ստանպօլ բերաւ, անանկալ կարդի
մէջ դրաւ որ մըսըրցիք տարվէ տարի իրենց
տուրքը կուտային.

Նորօր ինկիլիզը կերպ կերպ խօսքերով
կուզէր տաճիկը մոսկովին վրայ վերցընել
դուռը իր մէջի եղած աս ամենէն ապստամբ-
ները ձգեց ինկիլիզին դրդելովը՝ իր միտքը
դարձուց մոսկովին վրայ. և թէպէտ սուլ-
դան համիտը չէր ուզեր ամենևին, բայց
քանի մը մեծեր յորդորելով միտքը դար-

ձուցլին ծեծ թանալու, անոր համար Միսը-րէն եւ կանչեց Ջէզայիրլի ղափուտան Հասան փաշան : Սակայն շատ անուանի մարդ եղաւ մէյմը իր կտրըճութեան եւ ուժին համար, որ կերպարանքովալ սրտովալ առիւծանման ըլլալով՝ իր քովը առիւծ մը կըպահէր ընտանեցուցած, ինչպէս հետը իր նաւակը կառնէր մէկ տեղ կըքալցընէր, թէպէտ եւ օրմընալ իր հետը սիրով գգուելով՝ անանկ ճանկռտեց իր երեսը, որ անոր վրայ իր քովէն հեռըցուց: Նըրեւելի եղաւ մէյմընալ իրեն շինութե ու բարեկարգութե համար. առոր օրը թէրսանէն շատ կարգի դըրվեցաւ. ձմերոց (խըշլա) շինեց խալեօնճիներուն համար, ծովու քով աղբիւրներ շինեց թէրսանէն ու խասպա թաշ նաւերուն դիւրութե (խօլայութե) համար. թէրսանէի տիվան խանան ու փաշային տունը նորէն գեղեցիկ շինեց շատ մեծցուց, նոր նաւեր շինել տըլաւ տաջիրներուն վըրայ աւելի վարպետաշէն, նաւերը զինելու պատրաստելու համար տեղեր համբարներ շինեց քարաշէն, ուր պիտոյքը պատրաստած կըպահվին. Թող տուր թէրսանէէն դուրս ըրած շինութիւնները՝ որոնցմէ մէկնալ է լէվէնտ չիֆթլիքն, ուր սուլթան համիտնալ պինիշ ըրաւ, ուրիշ մեծ չիֆթլիկմընալ չանախ խալէսին նաղարա պուռնուին քով. իսկ ձմերան ծովին մէջ շատ տեղ չէնքեր ունի. միայն միտիլլի քաղքին մէջ 18 աղբիւր, քաղքէն դուրսալ մեծ քէօշքեր իրեն նստելու համար :

Դո՛ւռը աս խափուտան հասան փաշան ստանպօլ կանչելով՝ սև ծով խրկեց մոսկովին վրայ. իր հետն ալ 16 նաւ երկու խափախլը; 5 ֆռխաթա, ուրիշն ալ պզտիկ նաւեր, սինապ ուրիշ զանազան տեղերալ 26 նաւ շինել կուտար. բերդերնալ ամրցուց զօրացուց նոր զօրք խրկելով որոնք որ մոսկովին սահմանակից էին դունայէն ու Թուռլայէն դին եղած բերդերը, մանաւանդ հօթին որ քօչին կըսվի, պէնտէր, նոր քիլը, իսմայիլ, ամմէնէն աւելի հոգ տարաւ որ օզու կամ ոչզաքով ամրցընէ, մնաւուրկ բերդ մը ընէ. հոն ըլլայ իր զօրութեն կեդրոնը սիրտը, աս տեղվանքս ամրցընօղը եղաւ Բռուան քուլան սապետը ֆրանսըզ վարպետը: Երբոր ինկլիզը ասանկ ոտք հանեց տաճիկը՝ ստանպօլ եղող ֆրանսըզին դեսպանը շատ կըյորդորէր տաճկին դուռը որ չխաբվի ինկլիզին խօսքերէն, ծեծ չբանայ մոսկովին դէմ. աս դեսպանս կըսվէր կոմս շուազէօլ կուֆֆիէ, որովհետև շատ երևելի մարդ էր, փարէզի բանասիրական ճեմարանէն մէկմը ըլլալով, խիստ ճարտասանական զուրցըված մը ունէր, իր ամմէն ճառոմաբանութերը թափելով ջանաց որ խափանել տայ, բայց ինկլիզը անանկ ծածուկ ճամփաներ ոլորակներ կըբանեցընէր, անչափ ըստակ կըքալցընէր մեծերուն, որ ֆրանսըզին խօսքը պարապ հանել կուտար, և որպէս զի բոլորովին վարկումը ավրել տայ անոր. վրայ տաճկին առջին՝ աս մատնութխալ ըրաւ:

Մերգիչեան շուշաղեօլ կուֆֆիէն՝ գետ-
ղանը ըլլալէն առաջ Հին բանեցուն զմայլող
ըլլալով Ճաշկերոյ ըրած գեղ ՚ի յունաստա-
նան. Հին յունաց ճաշած բաները ան-
տար, ինչ որ ցամաքը ու կղզիներուն մէջը
կը գտնուէին. իր Ճաշերգութեանը վրայ
մէկ մեծ գիրք մը չինեց կոփոնեց Փրանսացւ-
րէն, որուն մէջը քաղած տեղերուն վրայ
կը գրէ, ու շատ տեղերուն աղւոր փորձած
պատկերներնուն կը գտնէ, որոնց օրինակը
(րեսիմը) ինքիր ձեռքովը հաներեր, բայց ան
ատենը ինքը մանուկ երկիատաւոր ըլլալով
որոնց քովը կը պակսի խոհեմութին, յաւա-
Ճարտարութին մէջը չափէ դուրս մտերելով մը
Հին յունաց քաղքութեցը վրայ՝ կը գրէ կը-
յորդորէ հիմնակվաններնաւ որ՝ տաճկի ան-
րութեան տակէն ելլան. Ըս խօսքերս ինչ-
կիլլցը տաճկերէն թարգմանեց, գրքին հետ
մէկ տեղ գրաւ դուռը խրկեց ըսելով, ան-
սէք ձեզի հաւատարիմ բարեկամ սեպվող
Փրանսազը, նայեցէք ինչ երկու երեսանց
մարդ է, բերնով ինչ կը խօսի, գրչով ինչ
կը գրէ ձեզի դէմ. և թէպէտ ասկից ետքը
Փրանսազ դեսպանը իր գրքին օրինակները
ժողվել սկսաւ ծախու գին վճարելով բայց
պարապ, որովհետեւ ան ատեններնաւ տաճկին
դուռը իր վարկուածը կորսնցուցեր էր Փը-
րանսազի տէրութենը վրայ, որ ատեն որ նէ-
քերը մէկ հաշիւ (հիսապ) մը հանելով ամ
մէն աշխարհի իմացուցեր էր Փրանսային
խաղնայէն պակսութիւնը, իրենն բաց ելլա-
լուն մօտիկնալը։

Ըսանկով Ինկլիզին հետ պրուշեանը մէկ եղած անդադար կըփչէին ; տաճիկը կը-դըրգռուէին պատերազմ բանալու մոսկովին վրայ ։

Տաճկին մեծ բանալը մոսկովին վրայ .

1787 ։

Երկու եւրոպացոց թագաւորաց վախը կասկածը իրենց շահին մէկ փնաս մը չըլլալու համար՝ տաճիկը անհանգիստ ըրավ, պարապ տեղը ոտք հանեց, ան խաղաղաւէր թագաւորը սուլթան համիտը ակամայ ծեծ ընել սորվեց, որուն բնութիը խաղաղասէր էր, խիստ հեզ, ամմէնուն բարերարող, ամմէնուն վաստըկցընող, ինքը զբօսասէր ըլլալով կուզէր որ ժողովուրդնալ զբօսնու, միշտ վայելէ, շահ ընէ, հանգիստ նստի . իրեն սէրը ( հաւէսը ) ըրավ որ՝ իր օրը ստամպօլին մէջ արհեստները խիստ ծաղկեցան, մանաւանդ խույումճիութեան ճէվահիրճիուէ արուեստը մեր ճարտարագործ հայու ազգէն եղօղ վարպետներուն ձեռքովը ան աստիճանը բարկըցաւ, որ հաւասարեցաւ ինկլիզի ու ֆրանսըզի վարպետներուն ձեռագործներուն ։ Թէւէ որ աս պատերազմը չիբացվէր՝ շատ աղէկ օրեր պիտոր տեսնար ժողովուրդը անոր թագաւորութէ ատենը, ինչպէս որ իրեն թագաւորուէ առջի տարիները տեսեր էր . բայց եւրոպացոց անհանգարտութիւնը՝ պատե-

բազմասէր ըլլալը՝ իրենց շահին ու մեծնա-լուն չափէն աւելի ցանկութիւնը՝ մեղք որ ասանկ խաղաղասէր Թագաւորը ակամայ պատերազմի մէջ ձգել տըվաւ։ Կարդա՛ ինչ որ գրեցինք Ներածութեան մէջ և ինչ որ գրեցինք 1815 և 1816 Եղանակներուն մէջ, որոնք գիտնալը խիստ հարկաւոր են աս պատմութիւններուն ծուծը հասկընալու համար։

Օգոստ. 12 շատ երկան տխվան ընելէն ետև՝ տաճիկը ծեծ հրատարակեց մոսկո-վին դէմ՝ դունէն հրաման գնաց պուլկա-քօֆին մոսկովի դեսպանին՝ որ իրեք օրվան մէջը հանդխսով (ալայով) թող դուռը գայ. ասանկ յանկարծ կանչըվելէն պուլկաքօֆ կուահեց, նեմցէի դեսպանին իմացուց՝ որ կըսվէր պարոն հերպերդ, անալ շուտ մը իր Թարգմանը (Թերճիմանը) դուռը խրկեց հարցընելու համար ասանկ յանկարծ կան-չըվելուն պատճառը. դուռը պատասխան տըվաւ որ՝ տաճկի տէրութիւնը ըլլալով ան-կախ տէրութիւն մը մոսկովին պէս՝ ինչպէս որ ուզէ՝ անանկ կըկառավարէ իր բաները, մէկին չիպարտաւորիր պատճառները հա-կըցընելու, անոր համար չէր վայլեր դես-պանին աս հարցումը։

Ասչափ խօսքը հասկըցուց իրեն միտքը. ան գիշերը նեմցելին դեսպանը նորէն երկու ի-րեն դիւանադպիրները (սըրաքեաթիպնե-րը) երկու ուրիշ Թարգմաններով դուռը վեզիրին խրկեց ըսելով. „Ան որ դուռը „կըմտածէ ծեծ բանալ մոսկովին դէմ՝

„ պէտք է իմանալ՝ որ իր թագաւորնալ
„ յաւելեալ կայսրը Մոսկովին հետ դաշնակից
„ ըլլալով՝ չիկրնար անտարբեր կենալ Լաս
„ ծեծին մէջ“ ։ Սէփրը որ էր կիւրճի եու-
սուֆ փաշան՝ գիշերը քունեն ելլալով
դժվարելով մը պատասխան տըլվավ ։
„ Չեմ հասկընար, ինչ իրաւամբք կայսրը
„ պիտոր խառնըվի մէկ ծեծի մը մէջ՝ որ ի-
„ րեն չիյնար ամենեւին“ ։ Դեսպանին մար-
դիկը ըսին ։ „ Կայսրը կրնայ իր միջնորդութիւնը
„ ընել աս ծեծը խափանելու համար ։ Վե-
„ զիրը պատասխան տըլվավ ։ Նեմցէին միջ-
„ նորդութիւնը ընդունելի չէ ․ ինչու որ յայտ-
„ նի կերեւնայ թէ նեմցէն Մոսկովին դին
„ կըտաշէ ․ գիտենք որ խօսք տըրված ունի
„ դաշնադրութեամբ՝ երբոր Մոսկովը տաճկին
„ հետ ծեծկըվի, նեմցէն 30 հազար զօրք
„ օգնութիւն տայ Մոսկովին, ասանկ ըլլալով
„ ալ աւելի աղէկ է որ յայտնի թշնամի ըլ-
„ լայ նեմցէն՝ քան թէ սուտ մուտ բարե-
„ կամ ձեւանայ ․ միայն աս չիյտենք որ՝ ար-
„ դեօք մինակ օգնութիւն տալ պիտոր ըլլայ
„ նեմցէին միտքը՝ թէ ինքնալ ծեծ պիտոր
„ բանայ, ինչպէս կըցըցընեն անչափ բազ-
„ մութիւն զօրաց որ ժողվել տըրված է Մա-
„ ճառի մէջ“ ։

Պուլկաքով հասկընալով որ դըրան միտքը
ծեծ բանալ է՝ իր հարկաւոր թղթերը ա-
պահով տեղ պահելով պայման դըրած օրը
հանդիսով (ալայով) գնաց դուռը ։ Իրեն
հարցուցին որ՝ արդեօք ինքը ունէր իշխա-
նութիւն ստորագրելու մէկ դաշնադրութիւն մը՝

որ բաները ան կացութիւնը համար՝ ինչ կա-
ցութէ որ մէջն էր քայնարճըք եղած հաշ-
տութէ ատենը՝ խըրըմ ետ դարձընելով ։
Կուդուզով ըսելով որ՝ չունիմ իշխանու-
թիւն, ուրք ելավ երթալու, բայց երբոր
դուրս ելաւ՝ բանեցին, սովորութենը կեա-
րէ եէտի խուլէն տարին օգոստ. 18 ըստ
ամանց. միայն հրաման տըվին իրեն՝ ինչ որ
պէտք էր իր հանգստութիւնը հոգալու, ամ-
մէն բանը թող հոգայ՝ իր հետը առնէ,
ինք թէ իր պալատը (սէրայը) նստած ըլ-
լար. անսալ իրեն հետը առաւ դիւանա-
պետը, երկու թարգմանը (թէրճիմանը),
երկու հոգիալ իր ընտանիքըներէն, մնացած
իր մարդիկը հանդիսով տարին մոսկովին
սէրայը. քանիալ մոսկովի նաւեր կային՝
ամմէննալ բռնեցին թէրսանէն տարին,
մէջի եղած մոսկովի նաւավարըները. երկա-
թը զարկին ։ Աս բանիս վրայ ուրիշ դեսա-
պանները գանկատեցան, որոնց ըէիս էֆէն-
տին պատասխան տըվավ. հին սովորութի
է դեսպանը եէտի խուլէն վերցընելու՝ չէ
թէ մէկ փնաս մը հասցընելու համար՝ հապա
ժողովուրդին կատաղութէն խալսցընելու
համար, թէ որ թող տանք ծեծի մէջ եղող
տէրուն դեսպանը ազատ իր տեղը երթայ,
վտանգի մէջ կընայ իյնալ ։
Օգոստ. 24, տաճիկը յայտարար թուղթ
հանեց, որուն մէջը ասանկ կըյիշէ ծեծին
պատճառը ։ „Մենք 1774 քայնարճըք խա-
„ղաղուն ըրինք մէջերնիս՝ որ ժողովուրդ-
„նիս հանգիստ ըլլայ, բայց մոսկովը միշտ

„դէմ գնաց, յանկարծ խըրըմը իր տակը
„առավ, որ վերոյիշեալ դաշնադրութե̃ը
„կեօրէ անկախ պիտոր մնար, և թէպէտ
„հոն գրով սահմանված էր որ՝ Թշնամու-
„թե̃ բան մը չընենք ո՛չ յայտնի և ո՛չ ծա-
„ծուկ, բայց մոսկովը խորամանկութ̃ մը
„Թիֆլիսին խանը տաճկին հպատակութ̃
„հանեց, որ անյիշատակելի ժամանակէն
„ետև տաճկի ֆէրման առած ունէր դըրու-
„նէն, տաճկին հպատակն էր, իր զօրքերը
„նալ ամմէն կիւրճիսթան ու իրեն մաս-
„նակցող երկիրները խրկեց։ Խօսք դրինք
„որ գըլպուռուն եղած աղեհանքը օզուլին
„ժողովուրդը հանէ՝ որոնց շատոնցմընէ
„յանձնըրուած էր, բայց մոսկովը Թող չը-
„տըվավ որ հանենն տանին՝ ծանր տուրքէ-
„րով։ Մոսկովը իր քոնսօլին ձեռքովը որ
„պուղտան էր՝ խաբեց մավռօքօռտատ ա-
„ղէքսանդր պէյը, յանկարծ խաբելով մը
„փախցընել տըվավ, երբոր ուզեցինք չը-
„տըվավ։ Ռսանկով դաշնադրութե̃ խօս-
„քերը կոտրեց, անօգուտ ըրավ, ուզածին
„պէս քաշկռտելով խօսքերը ամենուն
„մտիկ չընելով։ Վրանի տեղվանք որ մոս-
„կով քօնսօլներ դըրավ, ուլահ պուղտանու
„մէջ՝ կղզիներու մէջ՝ ուրիշ տեղվանքալ
„(ուր որ հարկ մը չիկար դնելու), մոսկո-
„վին միտքը ուրիշ բան չէր որ՝ տաճկը-
„ներուն վնաս հասցընէ, տաճկի հըպա-
„տակները (րայէները) խաբէ որչափ որ
„կրնայ, իր երկիրը տանելով, նաւավար
„ընելով, կամ ուրիշ բանի բանեցընելով

» մեզի դէմ։ Մենք Հերիք չենք, սկսաւ մեր
» ներքին կառավարութեան խառնուիլ,
» իբր թէ մոսկովէն կախեալ ըլլայինք,
» պահանջելով որ՝ մաքսապետները (կէօմ
» րիւքճիները) պատժենք, նոյնպէս
» ախլցխայի ու չըլտըրի փաշաները՝ ու Լահ
» պուղդանի դէյերը պատժենք։ Մենք
» մոսկովի վաճառականներու ազատութիւն
» ապահովութիւն տըված էինք՝ ամմէն տաճ-
» կին երկիրները տանելու իրենց ապրան-
» քը, տաճկին վաճառականներուն տանիկ
» ազատ պիտոր ըլլային մոսկովին երկրին
» մէջը, բայց մոսկովը աւելի տուրք կառնէ
» տաճկըներեն քան ուրիշ տէրութեանց վա-
» ճառականներէն. երբոր տաճկի վա-
» ճառականները իրենց առնելիքը կըպա-
» հանջեն մոսկովին քաղաքներուն մէջը,
» չեն թողուր որ անցնին երթան. աս ըսել
» է որ առնելիքնին չառնեն. առանցմէ շա-
» տը չէ թէ միայն պարապ, այլ մանաւանդ
» թէ վնաս քաշելով կըդառնային, ոմանք
» ալ լաճնիս կեօրէ սիպիր քշվեցան,
» կամ աղաննըվեցան թալլելու համար։
» Երբոր տաճկի դրօշակով նաւերը կու-
» զէին մոսկովին նաւահանգիստները մըտ-
» նալու կամ ալէկոծութեն համար՝ կամ
» ջուր առնելու համար, թօփ նետելով
» կըհեռըցընէին։ Պինտ ետքը մոսկովին
» դեսպանը պատճառ եղաւ աս ծեծը բա-
» նալու. ուզելով որ դուռը գիր տայ Հրա-
» ժարի իր տէրութեն՝ որ ունի կիւրճիի ու
» քարթլի վրայ, թէ չէ ըսաւ բօղէմեքին

„ զօրապետը հրաման ունի մոսկովլի տէրու-
„ թէ 100 հազարով տաճկին սահմանները
„ կոխել, բռնութիւն առնել աս գիրս „։ Այս
որովհետեւ առջի պատճառն է խաբէութիւն
խըրըմ առնելը, անոր համար դուռը ու-
զեց որ՝ մէկ նոր դաշնադրութիւն մը նորէն
խըրըմ ըլլայ ինչպէս որ էր 1783. բայց մոս-
կովին դեսպանը չըլլար ըսելովը՝ հարկ ե-
ղաւ մեզի ծեծ քաշել։

## Մոսկովին յայտարար թուղթը ծեծի համար.

## 1787։

Տաճկին յայտարար թուղթը դուրս ելա-
ծին պէս, մոսկոֆխալ սեպտ. 18 իր յայտա-
րարութիւնը հանեց ասանկ։ „ Տաճիկը թէ-
„ պէտ մշտնջենաւոր խաղաղութիւն ըրաւ
„ մոսկովին հետ, բայց հիմա երկրորդ ան-
„ գամ կոտրեց, մեր երեսփոխանը դեսպա-
„ նը ու խորհրդականը պուլկաքով եէտի
„ խուլէին բերդը դրաւ. նեմցէին ու ֆը-
„ րանսզին դեսպանները պարապ տեղը աշ-
„ խատեցան ետ կեցընելու, որուն դատաս-
„ տանը կտրելու համար կըծանուցանենք
„ ամմէնուն՝ որ 1768 ինքը տաճիկը ծեծ
„ բացաւ. ետքը երբոր 1774 հաշտութիւն
„ եղաւ. քանի տեղ որ առեր էինք՝ մեծ
„ մասը ետ դարձուցինք խիստ քիչ տեղ
„ մեզի պահեցինք, աւելի ուզելով հաշտը-
„ վիլը՝ քան թէ տեղվանք առնելը. 1783
„ կիւրճիին ու քարթլին խանը ամմէն իրեն

» ներով իր կամքովը մեր տէրութեան ու պաշտ-
» պանութեան տակը անցաւ, դաշնադրութեան
» ըրավ։ Ո՛չ բանիս մեր հաւանութեան տալը
» ամենևին դէմ չէր այն պարտաւորութեանցը
» որ դրանը հետ ըրերեինք, որովհետև ու-
» նիկայ ամենևին չէր կախվէր տաճկի տէ-
» րութէ, բայց դուռը ախըցխայի փաշային
» ձեռքովը տակէն գրգռեց լէզգիներըը, ու
» նոնց ձեռքով գերիներ բռնել տըվավ այն
» երկիրներէն, գրգռեց խանը որ մեզի հետ
» ըրած կապը քակէ, իրեն տակը անցնի։
» Մ՛եր քօնսօլները ու վաճառականները
» շատ կըչարչըրվէին տաճկի պաշտօնատէր-
» ներէն՝ տուրք պահանջելով պարապ հա-
» նելավ մեր մէջի եղած դաշնադրութիւնը.
» ասոնք անանկ բաներ էին որ կուխ բա-
» նալ կըգրգռէին, բայց մենք խաղաղութե
» սիրող ըլլալով երբոր խըրըմ եկանք,
» պուլկաքօֆը հոն կանչեցինք որ աս բա-
» ներս խաղաղութե շտկելու համար խօսա-
» թէ, ինչպէս նաև նեմցէին ու ֆրանսզին
» հասկըցուցինք, որոնքալ հաւնեցան մեր
» խաղաղութի ուզելը քան թէ պատերազ-
» մը։ Երբոր պուլկաքօֆ ստամպօլ դար-
» ձաւ՝ խաղաղութեան նշան մը չիգտնալով
» օգոստ. 15 դռնէն կանչըրվեցաւ, որուն
» առջին ըէխս էֆէնտին աս թէսութինները
» դրաւ։ ա. Մոսկովը թող հրաժարի ամ-
» մէն դաշնադրութենէ որ կիւրճի խանին
» հետ եղերէ, ամենևին չխառնըվի անոր
» բանին և ուրիշ ասիայի երկիրներուն։
» բ. Մավրօզօռտադը որ է պուղտանին

„ պէյը շուտ մը տաճկին ձեռքը թող՛
„ յանձնէ ։ ԺԳ. Յաշ նստող մոսկովի քոն-
„ սոլին փոխանորդը եօ կանչըվի, զըպար-
„ տելով որ ասիկայ մոսկով փախուց պէյը
„ և ուրիշ տաճկին հպատակները ։ ԺԴ. Պըրէ
„ պուռունին պղտիկ գաւառին մէջի եղած
„ 39 աղեհանքը տաճկին դարձըվի, որ դաշ-
„ նադրութեը կեօրէ իրենց ամմէն երկիր-
„ ները մեզի կըվերաբերին ։ ԺԵ. Մոսկո-
„ վը իր ամմէն նաւահանգիստներուն մէջ
„ տաճիկ քոնսօլներ դնէ, և անոնք որ խը-
„ րըմ կընստէին՝ շուտ մը տեղերնին դար-
„ ձընէ ։ ԺԶ. Որանի մոսկովի նաւ որ ստան-
„ պօլի պօղազէն անցնելու ըլլան, խոստու-
„ նայվին ասկից ետքը փնտռվին՝ որ մէջը
„ տաճիկ նաւավար չունենան, խահվէ՝ զէյ-
„ թին եաղի՝ բրինձ դուրս չիտանին, թէ-
„ պէտ և աս բաներս դուրս տանելու հա-
„ մար ազատութի ունէինք նոր ըրած դաշ-
„ նադրութեը ։ ԺԷ. Տաճիկ վաճառականնե-
„ րը՝ հարիւրին իրեք միայն մաքս (կէօմ-
„ րիւք) վճարեն ։

„ Աս բաներուս պատասխանը րէիս էֆէն-
„ տին սպառնալով օգոստ. 17 ուզեց, որ
„ ետքը ինչվան 20 երկընցաւ. թէպէտ աս
„ չափ օրվան միջոց ամենևին համեմատու-
„ թիւն չունի ստանպօլու և բէդրօպուրկի
„ հեռաւորութեանը նայելով. ըսաւ որ՝
„ տաճիկը ամենևին իբրև ոչինչ կըսեպէ
„ ինչ դաշնադրութիւնեը որ եղած են գայ-
„ նարճըքին դաշնադրութէն ետև „ ։
„ Նեմցէին ու Ֆրանսզին դեսպանները

» պարապ տեղը աշխատեցան խաղաղցընե-
» լու, մանաւանդ թէ դուռը նորէն իրեն
» կանչելով պուլկարքովը՝ առաջարկեց որ
» մոսկովը տաճկին տայ ետ դարձընէ խը-
» րըմը. ամմէն դաշնադրութեանց ալինչ
» տեպլին, որոնց գիտնալով որ պուլկարքով
» չէր կրնար հաւանութի տալ, եղաւ ի խու-
» լէն վերցուց »։
» Նոր համար մէնքալ հրամայեցինք մեր
» զօրագլուխներուն տավրիկեան բողէմքին
» իշխանին, և ֆէլտ մառէշալ ռօմանցօֆ
» կոմսին յայնկոյս դանուբեան, որ իրենց
» զօրքերով ծեծկըվին։

## Տաճկին պատերազմունքը.

## 1787—1788։

Տաճկին պատրաստութեան տեսնալ պատե-
րազմի՝ զօրք ժողվելու դիւացէն այնչափ
հեշտ (խօլայ) է, այնչափ աղէկ կարգի մէջ
դրած է հնուցմէ՝ որ եւրոպացիք չունին ան
կարգը. եւրոպայի թագաւորները հաշտու-
թեան ատեննալ թոշակաւոր (էօլէֆէլի)
զօրք կըպահեն ոտքի վրայ, որպէս զի պա-
տերազմի ատեն պատրաստ ունենան, ա-
նով շատ խարճի տակ կըմտնան, ժողովու-
դէն շատ տուրք կըպահանջեն։ Տաճիկը
միշտ թոշակ տալու զօրք քիչ ունի, բայց
ամմէն իր սահմանին մէջ՝ ամմէն փաշայու-
թեան մէջ՝ պատրաստ զօրք ունի միշտ տա-
նաւոր, նոյնպէս ձիաւոր զօրք՝ որոնք մէկ

հրամանով մը շուտ մը ոտքի վրայ կ'ելլան. իրենց թոշակը իրենց երկրին գեղերէն է (1). տասանկ ըլլալով հիմա մէկ հրամանով մը շուտ մը ամմէն փաշայութէ զօրք ժողվեց, 500 հազար հոգի ոտքի վրայ հանեց։

Ծովու վրայ նաւ շինելն ալ տաճկին հեշտ է ու խարճը քիչ. Եւրոպային տէրութիւնները ոմանք իրենց երկրին մէջը քերեստէ չունին, օտար տէրութէ ծանր գնով ծախու կառնեն, ոմանք քիչ անտառ ունին, մէկ ծառ մը կտրելու ըլլան՝ իսկոյն ուրիշ մը կըտնկեն դողդըղալով չըլլայ թէ հատնի, ինչպէս որ ատենմընալ վենետիկի տէրութիւնը կըհոգար կըդողդըղար իր անտառներուն վրայ, տաճկին տէրութիւնը մեծիկ տեղ անատօլուն մէկ անհատնում անտառ մը ունի, որ սապանճա կեօլիւէն սկսեալ կերթայ կըհասնի ինչվան ճանիկ, անանկ մեծ որ Աղաճ տէնիզի կըսվի. եւ ծովին քավերնալ շատ անտառներ ունի, ուսկից անհատնում կայմեր (տիրեկներ) կուգան ամմէն տարի թերսանէն խիստ երկաններէն անչափ շատ՝ որ իրենց շատութէ համար կըկտրըրտեն՝ վառելու կըքանեցընեն. ատոնք կտրել՝ ջրով խրկել ինչվան թերսանէն՝ երկըրցոց պարտքն է, տէրութիւը մէկ խարճ մը չըներ եւ ծովէն սատանպօլ բերելու համար ան խոշոր տիրեկները. անանկ-

(1) Աս երկիրները ձիաւոր զօրաց կըսվին Զիամէթ Թիմար. անոնք ինչ որ գրեցինք տաճկին զինուորութէ վրայ աշխարհագրութէ համար Ե. թղթ. 80։

ալ պատրաստ ունի ուրիշ ամմէն բան՝ ինչ որ պէտքը կըլլան նաւերու ։ Ըս պատճառով հիմա իսկոյն մէկ նաւատորմիղ (տանանմա) մը հանեց տաճիկը սև ծովին մէջ, որ աս դարերուս ատենները սև ծովին մէջը չէր տեսնըված անանկ. Ճէզայիրնալ ուրիշ մէկ նաւատորմիղ մը հանեց Ճերմակ ծովին մէջը պզտիկ նաւերու, որպէս զի զսպէ մոսկովին ծովասպատակները (խուրսանտները), որ ելեր կըպտըտէին արշիպելակեան (ատաներուն) ծովը. մաղըրպը ըստըկով օգնութիւն ըրաւ տաճկին. իսկ Թունուսին օճախը չիկրցաւ մէկ օգնութիւն մը ընել տաճկին, որովհետև վենետիկին տէրութիւնը 30 նաւով մը իրեն վրայ էր ելած ։

Սադահ կիրայ կար՝ որ 1767 Թաթար խանի էր եղած, տաճիկը ասիկայ նորէն խան դըրաւ, քիւրք հագուց, ամմէն Թաթարներուն վրայ որ տաճկի տակ էին՝ սէրասքէր կեցուց. մէկ քանի ցեղմընալ Թաթարներէն սկսերէին մոսկովի ու լէհին երկիրները վազել, ասպատակութ (չարխա) ընել ։ Իսկ շահին կիրայը՝ որ տարիմընէր քանի որ ռօտոս քշված կընստէր (1), հիմա երբոր

---

(1) Ասիկայ ինչպէս որ ռաւաջները պատմերինք, մոսկովի գիտցէն խըրըմու վրայ խան գրված ըլլալովը մոսկովին յանձներէր իր խանութիւնը, բայց եաքը ղըջալով աս բանիս համար, չուզելով մոսկովինէրուն մէջը մնալու, որ մը՝ յանկարծ մոսկովի երկրէն ելաւ, տաճկին երկիրը պէնաէր եկաւ. ան տեղացի

ծեծ բացվեցաւ՝ ռուսոմն տաճկըներըը կառ-
ղած վրան վազեցին, անալ ֆրանսզին քօն-
սօլին պալատը (սէրայը) փախչելով, տաճ-
կըներըը բռնութ͞բ քօնսօլին պալատը մտան
դուրս հանեցին սպաննեցին, իր մեռելը
ճամփայներըը քաշկռտելով գլուխը ստան-
պօլ խրկեցին ։ Սէզիրը կիւրճի եաւսուֆ
փաշան պուճախ Թաթարներու և օզուի
Թաթարներու ապսպրեց որ՝ մէկէն գըլ-
պուռուն բերդին վրայ վազեն, ասիկայ մէկ
ցամաքի սարին կամ ծայրին վրայ է, պէ-
րէզէն կղզիին դիմացը կիյնայ, 1774 մոս-
կօվին տակը անցերէր, անկեց ետքը քանի
ապրանք որ կուգար ազախ կամ ծապադ-
ծովէն, կուզէր մոսկովը որ հոն ժողվըվին
պահվըվին, անով ապահովցընէ նաւարկու-
թիւը դէպի ազախու ծովը, որուն պօղա-
զը ուրիշ իրեք բերդալ ունէր, որոնք են
կերչ, եէնի գալէ, Թաման. ապահովցընէ
միանգամայն նաև տնեքէր գետը՝ որ 800
մղոնի չափ կըվազէ, ուր շատ ասպատակու-
թիւն կընէին ծաբարովեան ղազախները՝
թող չէին իտար հանգիստ նաւարկելու ան
գետին մէջը ։

Սա միջոցին մէջ ուրիշ դիպուածմըն ալ ե-
ղաւ տաճկըներուն յաջող. մոսկովի նա-
ւատորմղին մէկ քանի նաւը սև ծովը կըպը-
տըտէին աշնանային ատեն որ վտանգաւոր

---

փաշան պատուով ընդունելով պուքրէշ խրկեց, ան-
կից ետք, բայց ետքը գունէն բռնըվելով ռուսա
կղզին քշվեցաւ ։

փոթորիկ ըլլալու ատեն է ու ծովին մէջ, ատոնցմէ քանի մը նաւ Անատօլուի դին քշվեցան, մէկ Փուխաթայմընալ 42 թօփով Ստամպօլին պօղազը քշվեցաւ. մէջի նաւաստեարը որ ինկիլիզ էր՝ ուզեց Ճէպխանէն թուընկցընել ձեռք չիյնալ, բայց մէջինները թող չտըվին. ասանկով 1787 սեպտ. 15 պօղազէն ներս մտաւ ինքիրեն՝ տաճկին ձեռքը ընկաւ շատ վնասված աւեկածութէ, ասիկայ մեծ յաջողութիւն սեպելով բազմութիւն մէջը մտնալով համտխով սեսանք որ վերէն բերին, ուրայն առջեւէն անցընելով Թէրսանէն տարին, կտորտըված տեղերը շուտ մը նորոգելով, անունը յարմարութիւն մը խիւտավերտի դըրին, որովհետեւ աօծ տըված տաճկին ձեռքը, անանկով նաւատորմղին մէջ խառնելով մուկովի դէմ խրկեցին:

Յունվ. 29. 1788 փաշայ խափուսին դուղերը տնկըվեցան. մարտի 6, օուտու ալայիով սանճախը ելաւ, բայց էմնափ ալայի չըրին աս անգամուն, ամմէն մալքեաներէ տիրվըտոնցմէ ձէպէլինները ժողվեցին (1):

(1) Տաճկին մէջ ով որ մալըքեանէ կամ կալուած մը ունի, քանի որ կուժէ ան մալըքեանէն՝ ծեծի ուտէն հարիւրին տասը պարապքան է ուերութեան տալու:

Մոսկովին եկամուտը, զօրքը, տաճկին նաւէրը ծովին վրայ, չինին վաճառական հայութիւնը․

1787։

Մոսկովին տարեկան եկամուտը 1786 տարուն եօթերը կը հասնէր 32 միլիոն ռուպլի (պէշլիք)․ որուն դուրս խրկած ապրանքը ծովով տարուն կը հասնէր 20 միլիոնի ապրանք, իսկ դրսէն ներս եկած ապրանքը՝ կը հասնէր 14 միլիոնի։ Ռիկա նաւահանգիստը տարուն 700 նաւ կուգային լեցուն կերպ կերպ ապրանքներով․ 800 նաւալ Բէդրօպուրկ կուգային։ Ծովու վրայ ունէր 17 խիստ մեծ նաւ, 50 միջակ մեծ նաւ, 40 ֆռխաթա, 100 շէքթիրի, և ուրիշ պզտիկ նաւեր, ատոնք պալթիկ ծովու վրայ էին, իսկ սև ծովուն մէջ ունէր 30 նաւ։ Ցամաքի վրայ ունէր 250 հազար կրթրված զօրք, ու դրեթէ անչափ մընալ ուրիշ զօրքեր, խազախ խալմուխ, ու պաշիր․ խըրըմու թաթարները ասոնց մէջը չէին, ըստ որում դաշնակցութենը կեօրէ ազատ էին տաճկին դէմ ծեծկըվելու։

Այսչափ զօրք ծովու ցամաքի վրայ պահելու համար՝ տարին 26 միլիոն ռուպլի կուզէր, ասա բանին համար՝ քայսարձըք եղած դաշնադրուէ ետև (որ 1774․ եղավ) ազգային Սանդարան (պանքա) սահմանեցին, որպէս զի երբոր պընծէ ըստակը շուտով չէր կրնար կոխվէր, որչափ որ պէտք ըլլար՝ ա-

րիկայ ծառայէր։ Ըստ Թանգարանին դուրս տըրված Թղթերը՝ 1780 տարին 40 միլիոնի հասաւ. ան տարին ամէն ըստարկին Թղթե-րը երեցին, անոնց տեղը նոր Թղթեր հա-նեցին 33 միլիոն ռուպլիի. 22 միլիոնով ըստակ կար հին հարուստներու մեծերու փոխ տալու համար. 11 միլիոնով կար քաղքըրցոց շահով տալու համար՝ հարիւ-րին հինգ առնելով։ Հիմնալ մոսկովին ե-կեղեցականքը 8 միլիոն ռուպլի կամաւոր տուրք տըվին Թագաւորութե. այնչափով տըվին ազնուականները։

Գրանք որ մէկալ դիւրացէնալ խոչ գործա-րաններ որ կային փարթամութե ու հանգըստ-ութե բաներ բանող՝ ամէնուն խարձը կախ թողուց մոսկովը. ան ծովու համփորդ-ները՝ որ մեծ խարձերով խրկըված էին նոր տեղվանք գտնալու եւրոպային ու ամե-րիկային մէջը ձեռափոնէն վեր՝ ամէնինալ դադըրեցուց։ Իր զօրքը ցրուած ըլլալով աս դիս ան դին՝ քուպանին մէջը 50 հա-զար մարդ ունէր, հիմա 100 հազար նոր զօրք ժողվել հրամեց իր ամէն երկրէն, հարիւր մարդէն մէկ մարդ մը առնելով, շատ դժարութե քան խոչ որ տաճիկը կը-ժողվէ հեշտ կերպով. իրեք գունդ կամ բանակ բաժնեց, մէկը բօդէմքին իշխանին տակը՝ որ ամէնուն զօրագլուխ էր, մէկա-լը ռումանցօֆ կոմսին տակը, երրորդը՝ մուս բօդէմքին իշխանին տակը։

Ըստանկով սկսան երկու դիւրացէն իրարու զարնըվելու, շէյխ մանսաւուրը որ 10. 12 հա-

զատր զօրք ունէր իր տակը, մոսկոֆներուն հետ զարնըվելով եւ փախաւ, կովկասու լեռներուն մէջը պահըվեցաւ, որ կըռվին եալըպուզ սար, Թաթարներնալ միանալով օգուտէն եկած եէնիչէրներուն հետ որ տաճկըն նաւերը աս դիս անցուցին՝ իրեք անգամ վազեցին դըլըպուռուններն վրայ, նաւերնալ ցամաքին մօտիկ չիկըրնալով կենալ, չիկըրցան մոսկոֆներուն վրայ Թօփ նետել, փախչօղ տաճկընները ներս առնել, որմէք որ ջուրը ձգեցին զիրենք լողալով նաւերը հասնելու համար: Սերասքեր փաշան 10 հազար նոր զօրք առնելով իրեն՝ 1787 հոկտ. 11 նորէն դըլըպուրուններն վրայ վազեց, բայց ան առենը զունդ մը խումպարաճիներու օգնութի հասած ըլլալով մոսկովին՝ իր զօրքը ջարդըվեցաւ, տաճկին կարիճ զօրքնալ երկու տեղէն չարաչար վիրաւորեցին մոսկովին զօրապետը որ սուվարօֆ կըսվէր:

Անէպէտ ձմուվան սաստկութիւը շատ եղաւ բայց մոսկովին զօքքը ճամփայ ելավ, իրեն առաջապահ զօրքը լեհին սահմանը հասավ. տաճիկը գիտնալով որ՝ լեհին մէջը շատ մարդ ունի իր դին՝ աստնկ խմացուց լեհին հասարակապետութեը: „Դատծիս պէս որ
„ լեհը թողուցերէ մոսկովին զօքքը լեհաս-
„ տանին մէջ մնալու՝ ինչ պայմանները որ
„ հին առենէն վեր լեհին հետ ունիմ, ամ
„ մէննալ կըձգեմ. աւելի կըթշնամանամ
„ լեհցոց հետ՝ թէ որ մոսկովին ապրուստ
„ ուտելիք տան„: Ըս բանիս վրայ լեհի

մենծերէն մէկ քանին՝ շատ բաղադրիննէր կամ իշխաններ տաճկին բարեկամութիւնը պահելու համար՝ ուզեցին դէմ դնել, մոսկովը չխմտցընել, բայց չկրցան․ մոսկովին ելմէք զօրապետը և կալլեցին իշխանը 30 հազար մարդով մտան լեհին երկիրը պրաքլավլիա ըսված բաղադրինոյի մէջ՝ ու բոտօլիա գաւառին մէջ, երկրըցիք բունադատվեցան ակամայ ապրօւստալ տըվլին մոսկովներուն, Թէպէտ մոսկովլի դէմ եզօղ լեհերը կաղաղակէին ասոնց դէմ կըսպառնային որ՝ վարշովլի մէջ եղած խորհրդանոցէն կըվերցընենք վճռելու ազատութիւնը ։ Ուզեցին լեհերը արտաքոյ կարգի ժողով մը ժողվել, Թէպէտ և չէին կրնար, որովհետև բաց ՚ի վտանգաւոր ժամանակէն նաև ձայն մը ելած էր որ ան 1775 հաստատված կառավարութին կերպը պիտոր փոխվէր, Թագաւորը յաջորդութիւն պիտոր ըլլար, ինչպէս որ վարը ունինք պատմելու. ուզեցինալ ուքրանիայի մէջ եղած զօրքը շատցընելու որ սահմանները պահեն, բայց ամէն բանը կամաց կամաց կընէին իրենց դանդաղ կառավարութիւնը կեօրէ ։

Մ՚էկալ դիմացէնալ մոսկովները 5, հազար քասյարտիայի զօրքով իրենց գնդապետ միռղօֆը ունենալով դէկտ. վերջերը լըղալով քուպան գետը անցան, 2 հազար տնվոր ան տեղացի բարբարական Թաթարներէն զարկին, իրենց տակը առին, շատ պատանդ (ըռեհին) իրենց հետերնին տարին․ անկէց առաջ դացին չէրուբ գետին

գլխն պաշիր ըռված թաթարներուն վրայ յարձըկեցան, որ կիւրճիսթան վաղօղնե-րէն էյին, ու պատճառ դրանք հեռ ավըր-վելու. ասանցմէյալ պատանոգ ու տուրքը ա-ուրն ։ Նսանց պէս ըրին նաև նօղայի թա-թարները. ան տեղվանքը գտան մէկ մեծ խումբ մը թիւրք զօրաց, կովկասցիները իրենց գլուխ ունենալով, որոնց վրայ քօ-ռիդէշ զօրապետը ը հազար մարդով վա-զելով զարկաւ ։

Յովսէփ կայսեր հայրենասէրն, իրեն պատրաստու-թեն, վարձատրը.

1787.

Մը ատեններս յովսէփ կայսրը կըկլին աւուր-հանդակ (թաթար) խրկելով, ու խօսքս զուըցեց դրանը: „ Ես մասկովլին հեռ մըջ-
„ տըմիջենաւոր դաշնադրութեն ունենալով
„ իմին պապերուս պէս՝ պէտքը կըլլայ որ
„ եսալ մասկովլին հեռ մէկ տեղ ծեծկըլվիմ,
„ որովհետև դուն եղար առաջ անոր վրայ
„ ելլօղ, խոկ թէ որ մասկովը ըլլար առջինը
„ ծեծ բացօղ, ան ատենը ես իմ դիպացէս
„ կատարեալ չէզոքութին պահած կըլլայի.
„ ասանկալ ըլլալով միջնորդ կըլլամ հաշ-
„ տուին ընելու, միայն թէ դուն թշնամու-
„ թին վար ձգես, զինադուլ (միւթարէ-
„ քէ) մը ընես, որ մէջը գտնանք, որով
„ հետև դեռ ատեն կայ ": Նայց դուռը

յայտնի ասանկ պատասխան տըլւալ ։ „Ո՛վ որ հաշտեցընելու վրայ խօսք բանայ, „յանցաւոր կըսեպեմ„ ։ Նաքնաւ Նեմցեի դեսպանին ականջը ասչափ ձգել տըլւալ ։ „Թէ որ յովսէփ կայսրը չէզոք կենալու „ըլլայ, ան պզտիկ երկիրները, որոնք շատ „հեղ ուզերեր ուլահին ու խրվաթըլըխին „դիպացէն, իրեն կուտանք„ ։

Բայց յովսէփ կայսրը աս խօսքերս ոչինչ սեպելով աշնան ատեն հինգ խումբ զօրաց ժողվեց մաճառուին մէջ զանազան տեղ. մէկ խումբը 73 հազար զէմլինին քով, որոնց 20 հազար ձիաւոր էր. երկրորդ խումբը 17 հազար ոտանաւոր՝ 9 հազար ձիաւոր պու-քովինային մէջ՝ որ 1775 տաճիկը տըվերեր նեմցէին հօթաւնին մօտիկ. երրորդ խումբ-նաւ ասչափ զօրքով կըսպասեր դուանսիլ-վանիայի մէջ՝ որուն նեմցեները զիպեն պիրկն կըսեն. չորրորդ խումբը 22 հազա-րով գամըշվարին պաննատը կեցած էր. հինգ-երորդը խրվաթըլըխին մէջն էր 40 հազա-րէն աւելի. Ասոնք ամէնը մէկ տեղ 132 հազար ոտանաւոր զօրք կըլլային ու 44 հա-զար ձիաւոր. Թող տուր կամաւոր զօրքը որ 20 հազարի կըհասնէին, 10 հազարի չափ ալ թօփճի, լաղըմճի, ու վարպետ-ներ ։ Ասչափ զօրք պահելու համար 80 մի-լիոն ֆիօրին կերթար տարին. իսկ նեմցեին եկամուտը ան ատենը 100 միլիոն ֆիօրինը կանցնէր տարին, որովհետեւ Թագաւորա-կան պարտքը որ առջի ծեծերը ընել տըվեր-էին, շատ քիչցուցերեր յովսէփ կայսրը

իրեն խելացի տնտեսութիւնը ու չափաւորու-
թիւնը ։

Տաճիկը առջի բերանը Նեմցէին դեսպանը պարոն Հերպերդը ուզեց եէտի խուլէն վերցընել, բայց ետքը չվերցուց, հապա (·)ու-թա դրաւ իր սերայը՝ որ ժողովուրդը վնաս մը չհասցընէ, ինչվան որ Հերպերդը Փըրանսզի նաւ մը հեծնալով ելաւ գնաց ալլ-կուռնա, իր դրօշակին (պայրախին) տակէն եղօղները յանձնելով Փրանսզի դեսպանին ։ Փետրվ․ վերջերը յովսէփ կայսրը վէննայէն ելաւ եկաւ Թրեստ, ելլալու ատենը իր կտակը չորս կնքով զմռըլած՝ յանձնեց քանմըց իշխաններին՝ որ իր վէզիրին էր, Թրէստին ծովեզերքը ամրըցուց մարտկոցներ (թապեաներ) շինել տալով ամմէն տեղ․ ասանկալ ըրաւ Փիումէ ու սէյնա ըսված տեղվանքը, զօրքալ շատցուց, անկէց եկավ մաճառ՝ զէմլին եղած զօրքը տեսաւ որ պէլիղրատ բերդին դիմացը կինայ, մէկ քթի մը վրայ շինված որ երկու գետը կըշինեն դունան ու սավան մէկմէկու խառնըվելով, ասիկայ 1739էն ետև ամըրցուց Նեմցէն՝ որ պէլիղըրատի զօրքերուն դէմ դնէ ։ Նորբոր բերդերու վարատին եկավ յովսէփ՝ զօրաց պաշարը (զահիրէն) կարգի դնել տըվավ, հիւանդանոցները աւելի կարգաւորեց, որովհետև վարի մաճառին օդը դէշ կըլլայ գետերուն շատութենը համար, որոնք ձիւնները հալելու ատենը գետինը կոխելով ծաւալելով դէշ գոլորշիք կըհանեն խիստ վնասակար դըրսեցող, աւելի

նեմչէներուն (1). Հիմակվան ծեծին մէջ աս պատճառով ու գարունքը սաստիկ անձրևային երթալուն պատճառովը՝ ինչվան 80 հազար նեմցէի զինուոր հիվընտցան, շատնալ մեռան. Նոյն իսկ յօվսէփ կայսրըն ալ ողջութեն տկար ըլլալով ամսէ մը ետև տենդ (սըթմայ) բռնեց, բայց միշտ քաջութին պահել ուզելով ամմէնունալ օրինակ կուտար համբերելու, օդին խստուէը բանի տեղ չիսեպելու:

Յօվսէփ ամմէնուն մէջ առջինն էր որ քունէն կելլար արշալուսէն առաջ ձի կըհեծնար կերթար զօրքերը քննելու, ձէնէրալները ու մեծ ուֆֆիցիալները իր սեղանը կառնէր, բայց իր հաց ուտելը իրեք քառորդէն (չէյրէքէն) աւելի չէր քշէր, ըլլալով չափաւոր զինուորի մը պէս առանց մէկ փարթամութին մը ցըցընելու. իր քունը 4. 5 ժամը չէր անցնէր, անալ ապսպրված էր որ երբոր մէկ սուրհանդակ մը գալու ըլլայ հարկաւոր՝ իրեն իմաց տան: Շատ բանի մէջ կըջանար որ՝ Ֆ. Ֆետերիքոսի պրուշի թագաւորին հետևի, թէպէտ շատ տարբեր է մէկ չոր ու առողջ տեղ մը ծեծկըվիլ ինչպէս է գեր-

---

(1) Ասանկ լօռենայի դուքսը կարոլոս երբոր առջի անգամուն պուտիմ պաշարեց, ու եւգինէոս իշխանը երբոր պէլիգրատ պաշարեց, շատ զօրք կորսնցուցին հիւանդութենով. 1737 տենդը (սթման) գարձաւ փոխադրական (պուլաշըխ) հիւանդութիւն մը եղաւ. զօրքին կէսէն աւելին անկէց մեռան:

մամխիան՝ քան թէ թաց ու հոտած տեղ մը ինչպէս է դունային քովերը՝ ուր տեղվանք որ գետերը իրենց բերնին կըմօտիկնան ծովը թափելու, ուր տեղ նաև տրայանոս կայսրը տաչի ըսված ազգին հետ ութը տարի ծեծկըվելով աշխատելով ինքնալ քաշեց ան գէշ հիւանդութը ։

## Լեմչէին ծեծ բանալը փաշէին վրայ.

## 1788 ։

Փետրվ. 9 յովսէփ կայսրը իր յայտարարութեն թուղթը հանեց, ասանկ գանկտելով մէջը ։ „Երբոր մոսկովին դեսպանը ու-
„ զեց որ տաճիկը սպասէ ինչվան սուրհան-
„ դակ (թաթար) խրկէ բէդըրօպուրկ և
„ ինչվան որ դառնայ, տաճիկը ատեն չի-
„ տըվավ, մանաւանդ՝ թէ պնդեց ըսելով
„ որ մոսկովին դեսպանը ստորագրէ մէկ
„ թուղթի մը՝ որով կոչնչացընէ առուտու-
„ րի դաշնադրութիւը մոսկովին հետ մէջեր-
„ նիս ըրած քանի մը ամիս առաջ. կոչնչա-
„ ցընէ նաև ան պայմանադրութիւը՝ որ 1784
„ ըրերէինք խըրըմին համար ։ Երբոր մոս-
„ կովին դեսպանը աս բանս մերժեց ուրա-
„ նալով՝ տաճիկը եէտի խուլէին բերդը
„ վերցուց անիկայ, հանդիսով պատերազմ
„ հրատարակեց մոսկովին վրայ ։ Աս ու
„ ֆրանսան միջնորդ ըլլալ ուզեցինք հաշ-
„ տութի գտնալու մէջերնին՝ տաճիկը մտիկ
„ չըրաւ ։ Հիմա ես դաշնադրութի ունե-

„ նալով մոսկովլէն հետ՝ հարկ եղաւ մնա-
„ կովլէն հետ միանալ՝ տաճկլէն հետ բարե-
„ կամութիւնս ավրել, որ գրեթէ 50 տար-
„ վընէ վեր ունէինք. աս դաշնադրութիւնը
„ իս կըստիպէ մոսկովլէն դիւացէն տաճկլէն
„ դէմ պատերազմիլ. ասիկայ հարիւր տար-
„ վընէ վեր եղած մէկ դաշնադրութիւնընէ
„ մէջէրնիս, շատ հեղալ նորոգվերէ, մէկի
„ մը միտս տալու համար չէ, հապա իրար
„ պաշտպանելու„: Սա յայտարարութիւնս հա-
նելով կայսրը՝ իրեն սահմանի մէջի եղած
ամմէն տաճկընէրուն ու իրենց վաճառա-
կան նաւերուն ազատութիւն տըվավ ծով
որ ուզեն՝ երթան:

Տաճիկնալ նեմցերին գրածին դէմ ինքնալ
յայտարարութի հանեց մարտի 13, ուր ա-
ռաջ կըրգանկտի մոսկովլէն ըրածներուն վը-
րայ, որ իրեն դէմ գրած յայտարարութենը
մէջ կըպատմըվլին, տեսս վերը. մանաւանդ
յանկարծ խըրըմ առնելու վրայ: „ Ուր
„ զօրք խըրկելով շահին կիրայը (որուն ա-
„ ռաջ պաշտպան էր), վար ձգեց, վեր-
„ ցուց տէրութիւնը մէկ ցեղէ մը՝ որ 300 տար-
„ վընէ վեր կըժառանգէր. տաճկլին վաճառա-
„ ռականները որ պզտիկ թաթարը կամ
„ մոսկովստան կերթային՝ թօփի մը կըկա-
„ պէր՝ անանկ չարչըրկելով կըմեռցընէր.
„ անանկ ծանր մաքս (կէօմրիւք) կառնէր՝
„ որ ապրանքին աժողչէքէն աւելի կընէր.
„ տաճկլին նաւերը թօփտելով թող չէր
„ իտար ցամաքը ելլալու„: Ետքը նեմցերին
ըրածներուն վըրայ ասանկ կըրգանկտի երած

սրտով, որոնք իրաւ լսելու խօսքեր են։
» Ամէն տէրութիւն գիտէ որ մեր տաճկին
» տէրութիւնը մէկ առիթ մը չէ տըւեր նեմ-
» ցէի տէրութեան վնասելու կամ նեղելու,
» որ իր դըրացին է ու բարեկամ 50 տար-
» վընէ վեր, թէպէտ և գիտէր որ խիստ
» ներքին մտերիմ կապով կապված է մոս-
» կովին հետ, ատոր փորձը աս է որ՝ ամէն
» հեղուն ինչ որ ուզերէ նեմցէն՝ ըրերենք
» զիջանելով, թէպէտ և ան բաները բոլո-
» րովին դէմ էին դաշնադրութեանց որ մեր
» մէջը ունէինք։ Սաւաշ նեմցեն մէկ երևե-
» լի կտոր մը պուղտանու երկրէն իրեն ու-
» զեց առնել, երկիրը ինքը չափեց, սահ-
» մաններու նշան դրաւ. ետքը շատ զօրք
» խրկեց հոն սպառնալով մեծ ծեծ բանա-
» լու՝ թէ որ դուռը շուտ մը իրեն չիյան-
» ձնէ ան երկիրը. աս բանիս ինջանք, մարդ-
» խըրկեցինք հոն որ մեր տալը հաստատեն
» օրինաւոր գրերով։ Երկրորդ՝ պարսպա-
» րըշին տայիները թէպէտ անկախ են՝ մեր
» յորդորելովը պատուել սկսան նեմցէին
» վաճառական նաւերը, ծովու վրայ չի-
» դպչելով անոնց, թէպէտ մէկ դաշնադրու-
» թեան մը մէջ չիշվիր որ՝ իրենց ծովապա-
» տակներուն (խուրսանտներուն) տըված
» վնասը տաճիկը վճարէ, բայց ասալ վճա-
» րել յանձն առինք, որպէս զի նեմցէն իր
,, բարեկամութիւնը պահէ, յուսալով որ ե-
,, րախտագէտ կըլլայ։ Երրորդ՝ նեմցէն
,, ուզեց որ սև ծովին մէջը ազատութիւն ու-
,, նենայ առուտուրի ու նաւարկութեան վրայօք

» ամմէն արտունութիւն, որ տաճկի տէրու-
» թեան շատ վնասակար բան էր. մեր առջի
» ըրած դաշնագրութեանց մէջը՝ մանաւանդ
» րապէս Բասսարօվից ու պէլկրատի մէջ
» ըրած դաշնագրութեանց մէջը ամմէնուն չէր
» յիշուէր, մանաւանդ թէ ամմէնուն մոռ-
» ցուած բան էր, որովհետեւ նեմցէն չու-
» նէր բնաւ մէկ իրաւունք մը ատ բանս պա-
» հանջելու, բայց բարեկամաբար սատալ
» ընդունելով ազատ անցուդարձ ու նա-
» ւարկութի՛ շնորհեցինք նեմցէի ու դօս-
» քանայի դրօշակով նաւերուն ամմէն ծո-
» վերու գետերու մէջ որ մեր սահմանին
» մէջն են, մէկ տեղ մը չիբացառելով,
» մէկ կապ մը չիդնելով ու քննութի՛ մը
» չընելով: Չորրորդ՝ անցած տարիները
» ու երբեք եղերէ որ՝ նեմցէի քօնսօլ նստի
» ուլահ պուղտանի մէջ, մէկ խօսքմընալ
» չիկայ եղած առջի դաշնադրութեանց մէջը՝
» բայց նեմցէն պահանջեց որ՝ իր մէկ գոր-
» ծակալը նստի ան պէյութիւններու մէջը.
» մենքալ բանի տեղ չիսեպելով ան փնաս-
» ները՝ որ անկէց առաջ կուգային, ասոր-
» ալ խնջանք թող տրվինք, ամմէն ասս ու-
» զած բաներուն համար վաւերական գի-
» րեր ըրինք: Ու թէպէտ նեմցէն քայ-
» նարձըք եղած դաշնադրուէն եւս միշտ
» օգնօղ եղավ մոսկովին թշնամութեանը,
» բայց մենք ասոր վրայ ամմէնուն մէկ տհա-
» ճութի մը կամ գանկատ մը չիցըցուցինք.
» ատանկով յայտնի է ամմէնուն՝ որ մենք
» միշտ հաւատարիմ մնացեր ենք մեր բարե-

„ կամութեը մէջ, նաև ան ատեններնալ
„ որ նեմցէն շատ ձախորդութիւն քաշեց,
„ ինչպես որ վկայեց նաև պարոն հերպեր-
„ տը իր դեսպանը։ Թէ որ մենք նեմցեին
„ թշնամիներուն մտիկ դրած ըլլայինք ան
„ ձախորդ ատենները, և իրենց տրվածնին
„ առած ըլլայինք, շատ դէշ պիտոր ըլլար
„ նեմցեին կացութիւնը, բայց ոչ երբէք հե-
„ ռցանք մեր շիտակ ճամփեն, մեծասըր-
„ տութէն, ու առատաձեռնութէն, չուզե-
„ ցինք որ մեր դրացիին տկարանալովը ձա-
„ խորդութեը մենք զօրանանք։ Գործերեինք
„ մտվընիս որ՝ նեմցէնալ ասոր կեօրէ ա-
„ ղեկուն կընէ, ինչպեսալ որ իրաւը զուր-
„ ցելով զանազան ատեն ըրերեր, բայց հի-
„ մա նեմցէն սաստիկ բաղձանք ունենալով
„ մեծնալու, իր ընդարձակ սահմանը աւե-
„ լի ընդարձակելու ուրիշները փճացելով
„ յարմար առիթ մը գտաւ իրեն՝ մեր ավըը-
„ վիլը մոսկովին հետ, անիրաւութ՞ մը մեզ
„ ավրօղ սեպեց աս բարեկամութեը, դնաց
„ մոսկովին հետ միացաւ, առանց պատճա-
„ ռի մը կոտրելով իր կապը, ետ կանչելով
„ իր դեսպանը։ Մենք ասորալ ինջնալով
„ թողուցինք իր դեսպանին որ երթայ,
„ փերմանալ տալով որ ողջ առողջ հասնի
„ դօսքանա, անկից իր արքունիքը․ յանձն
„ առինք որ իր տնեցինները Փրանսզի դես-
„ պանին յանձնէ"։

Ասոր նման բերնովալ շատ բան զուրցեցին նեմցեին դեսպանին, մէկիկ մէկիկ յիշեցը- նելով թէ ինչպես մարիամ թերեզինային

ձախորդ օրերը ուրիշ տէրութիւններ շատ գրգռեցին տաճիկը որ նեմցէին վրայ ելլայ, որով խնչվան վէննա կրնար երթալ տաճիկը· բայց մենք աս բանս անիրաւուն սեպելով եւ կեցանք, չուզեցինք անոր ձախորդ օրերուն մէջ իր փնասվելովը մենք աւալ երթալ, երկիրնիս ընդարձակել։ Մարիամ Թերեզինան ըսին աս մեր ըրած աղէկութիը ճանչնալով կտակ էր ըրած յովսէփ կայսեր իր որդւոյն՝ որ տաճկին վրայ ծեծ չիբանայ, որովհետեւ տաճիկը իր նեղ օրերը ծեծ չիբացաւ իրեն դէմ, մարդկութիը կըպահանջէր չիմոռնալ անանց ըրած երախտիքը· Թող յիշէ ըսին յովսէփ իր մօրը կտակը, հիմա որ ինքը չիբռնէր իր մօրը կտակը, մենքալ ա̃յ կըԹողունք, աս բանիս դատաստանը Թող ա̃ծ տեսնայ։

Տեսնանք հիմա աս երկուքին ծեծկըռվելուն դիպուածը կատարածը՝ Թէ ինչ դին կըրըվեցաւ։

## Նեմչէին ու տաճկին ծեծկըռվուքը պօնային մէջ·

## 1788։

Նեմցէն շատոնցմընէ աչք ունէր պօսնային վրայ, ըլլալով մէկ երկիր մը իրեն կից, մէջինները բարձրահասակ ուժով մարդիկ, բնութը քաջ կորիճ, յարմար պատերազմելու· ասանկ ըլլալով իր ուժը անոր վրայ Թափեց, ամմէնէն առաջ պօսնային ու-

տաճկի խրվաթլըխին վրայ վազեց, որուն շատ կտրըճութիւն դէմ դրին պօսնացիք. ապրիլի 7 զէմլինի վրայ վազեց։ Նեմցեին զօրապետը միդրօվիչքի պօհեմիացի՝ որ անցած ծեծերուն մէջ պրուշի դէմ երեւելի էր եղած՝ ուզեց Սապաչ բերդը պաշարել, աս բերդս Բ. սուլդան սիւլէյման առեր էր, երբոր պելիգրատու վրայ գնաց, ուսկից 21 մղոնի չափ հեռու է տումաչա ջուրին քով, անոր համար առաջ շլուք գեղը առաւ որ մօտիկ է. յովսէփ կայսրնալ անձամբ հոն եկաւ, իր ձմերոցը հոն շինել տըվաւ. ձիաւոր զօրքը ու թօփերը նաւակներով տումաչա գետը անցան։ Տաճիկները նեմցեին մօտիկնալը տեսածնին պէս, ինչ տուն որ կար բերդէն ինչվան ջուրը՝ ամմէննալ երեցին որ թշնամին տեղ չիգտնայ նստելու. նեմցէն մէկ կամուրջ մը շինեց սավա գետին վրայ 600 ոտնաչափ՝ անանկով թօփուտեւ սկսաւ, մէջի պահապան զօրքը փախան բարձր անմատոյց ապառաժին վրայ որ բերդին մէջն էր, յովսէփ կայսրը յորդորեց անձնատուր ըլլալու, անանկով առանց ջարդըռվելու 1860 զինուոր՝ հոն եղած ենիչէր աղասին 32 մէնծերով գերի ընկան, մէջի բնակիչներնալ 2 հազար հոգիի չափ տուրնիչ խրկեցին. բայց նեմցեինալ շատ հազարապետները (ուֆֆիցիալները) կոտըրտըռվեցան խոցվեցան, ինչպէս նաեւ բօնիադօվսքի իշխանը խոցվեցաւ, որ կայսեր թիկնապահն (սիլէհտարն) էր, եւ եղբօրորդի լեհի թագաւորին։

Գտանք որ մէկալ դիւացէն պէլիրզբատէն դէ-մացի եղած տաճկըները՝ և պէլիրզբատին զօրքը յունիսի ու յուլիսի մէջ իժիր նեմ-ցէներուն վրայ կըվազէին թէ հոս եղածնե-րուն և թէ պէպքանիա եղածներուն ու շատ կըջարդէին, ինչու որ՝ աս կողմս շատ թերդէր չըլլալով նեմցէն հոն զօրաւոր թա-նակ մը չէր դրած, այլ մէկ գիծ մը զօրաց կարգաւ կեցուցած ըլլալով միտքը դրեր էր որ ան չափը կօգտէ տաճկին դէմ դնելու. Երկան կըլլայ պատմել ինչ որ ականատե-սներէն լսեցինք թէ ինչպէս տաճկըները խումբ խումբ տեղ մը 300, տեղ մը 500 հոգի մէկ եղած կըվազէին նեմցէին քիչվոր զօրացը վրայ, մըր կըջարդէին, մըր գերի կըբերէին ստամպօլ։ Յունիսի 24 տաճկը-ները չարաչար յարձըկեցան հոն եղած նեմ-ցէին զօրքին վրայ, այնչափ կոտըրեցին նեմ-ցէին զօրքէն՝ որ յօվսէփ կայսրը լսածին պէս՝ շատ զօրքով երևելի զօրապետներով անձամբ հոն հասաւ, հազիւ փախուց տաճ-կըները, բայց նեմցէներէնալ շատ ջարդը-վեցան. ասկից ետքը նեմցէները հասկընա-լով որ՝ անանկ հեշտ չէ տաճկին դէմ դնելը ինչպէս որ կըկարծէին, անոր համար քանի նեմցէի զօրք կար որ՝ սավա գետին ան դի դին անցերէին՝ ամմէնն ալ ժողվե-ցին մէկ գունդ եղան։

Ու աս տեններս պօսնային մէջն ալ խիստ սաստիկ ծեծ կըլլար, մէջինները ըլլալով քաջասիրտ պատերազմական մարդիկներ և խիստ հաւատարիմ տաճկին, շատ նեղութ-

կուտայքին Նեմցէի զօրաց, մանաւանդ որ
պօռնայքին երկիրը դժուարին ըլլալով ինչ-
վանն որ Նեմցէները հոն մտան, շատ յոգնե-
ցան, կամաց կամաց կըցան մէջը ոտք կո-
խել, անալ չիկըցան տեղ մը նստիլ: Լի-
չէնստէին իշխանը որ խիստ բարեկամ էր
յովսէփ կայսեր՝ առաջ տուպիցա բերդին
վրայ վազեց՝ որ անկից Ճամփայ բացվի պա-
նիալուքա երթալու պօռնայքին գլխաւոր
քաղաքը. աս տուպիցա բերդը թէպէտ
պզտիկ է, բայց տեղը խիստ դժուարին,
գետին մէկ դին տաճկին բերդն է, մէկալ
դին նոյն անունով Նեմցէին բերդը, իրա-
րու թօփ կընան հասցընել: Օր մը՝ ինչ
տուն որ նստերէր յովսէփ կայսրը հոն մէկ
թօփ մը նետեց տաճիկը իբր 8 օխայ ծան-
րութք, իրեք մարդ մեռուց որ ան տանը
մէջ կեցած էին, մօտիկ ան խուցին ալ որ
կեցած էր յովսէփ կայսրը. իր դիւանագի-
րը որ հոն կըգրէր՝ սաստիկ շփոթեցաւ,
բայց յովսէփ անշփոթ մնալով իրեն կըզօրու-
ցէր ինչ որ պիտոր գրէր, նման ան դիպուա-
ծին որ պատահեցաւ շվէտի թագաւորին
ժբ. կարոլոսի:

Աս ատեն Սեարճիք գնդապետը՝ որ Օկու-
լէն ըսված կտրիճ զօրաց վրայ էր, տուբեզ-
նիք բերդը զարկաւ, որ պզտիկ էր բայց
հարկաւոր քօվանսա գետին ան դին. անկից
սիրտ առնելով կարոլոս լիչէնստէյն իշխա-
նը՝ ապրիլի 19 մէկ խումբ մը զօրաց անցուց
գետին ան դի դին. ատոնք չէուզելնա ըս-
ված տեղը նստան, երկու օրէն ետև տու-

ոլիցա բերդին քովը եկան. ամառուան 25 սան-
դուխք (ներտիվան) դնելով իրեք անգամ
վեր ելլալ ուզեցին, բայց մէջի գտնըված
կտրիճ պօմնացիները անանկ պաշտպանե-
ցին՝ որ նեմցէներուն ամէն աշխատանքը
պարապ հանել տըվին, մանաւանդ որ ան
ատենը յանկարծ տաճիկ զօրք հասան բեր-
դին օգնութ. բերդին մէջի զօրքնալ դուրս
ելլալով անանկ ջարդ մը տըվին, որ նեմցէ-
ներէն 3 հազար մարդու չափ կորսըվեցան,
մըը մեռած, մըը խոցված, երկու զօրա-
պետալ մեռան, մնացածը փախան, որոնց
ետեւէն հալածեցին պօմնացիք մինչվան նեմ-
ցէին սահմանը: Պատճառ ասանկ ըլլալուն
ան եղաւ որ՝ նեմցէները քովի եղած լճին
(կէօլին) վրայ չունէին ամենեւին մէկ մարտ-
կոց (թապէա) մը թօփերու, մտվընին
դնելով որ՝ տաճիկները չեն կրնար ան լճէն
անցնիլ. իսկ աներկիւղ քաջ պօմնացիք ի-
րենց ձիերուն պօչէն բռնելով անանկ լողա-
լով անցան ան լճէն:

Հոսալ տեսնալով նեմցէները որ հեշտ (խօ-
լայ) չէ տաճկին դէմ դնել, աս դիպուա-
ծէս ետեւ աղէկ ամրցուցին զիրենք, պօմնա-
ցոց վրայ վազելը թողուցին, զիրենք պաշտ-
պանելը նայեցան, որ թող չիտան պօմնա-
ցոց ուննա գետը անցնելու: Յովսէփ կայս-
րը թէպէտ խիստ առնըվեցաւ սրտէն՝ բայց
իր բարկութիւնը չիցըցընելով աս դիպուա-
ծիս վրայ՝ մխիթարական թուղթ գրեց լը-
չէնտղէյն իշխանին, դժբաղդութեն տալով
եւ ոչ իր պակսութեն. ցըցընելով որ՝ իրեն

առջիններուն պէս չիպատժէ պիտոր անոն զօրապետները՝ որ ձախորդութեան պատճառով չեն կրնար յաղթութիւն ընել, չէ թէ իրենց անհոգութեն. բայց լեհէնստանէն լսելով որ վենետայի մէջ շատ ծաղր կընէին կանարգելին զինքը՝ թէ ինչպէս ծեծին առջի բերանը նեմցեին անուանը կոտրեց, տըրտմութեն հիվընտցաւ, վենետա տանիլ տըլաւ զինքը, ուր քանի մը շաբթէն ետև մեռաւ, մէկ սիրտ կոտրել մը ձգեց ամմէնուն վրայ։

## Ս[illegible] պատերազմին ԳԼԷ ՕՃԱԿԸՎԻՆԻ.

## 1788։

Աւելի բաղդաւոր գտաւ յօսիա իշխանը Սաքս Կօպուրկեան պուղտանին կողմերը ուր տաճկրները թաթարները նեղ կիրճերու (պօղազներու) մէջ կեցած ըլլալով թող չէին իտար թշնամիին պուղտանին հողը մտնալու. տասվերկու անգամէն աւելի դէմ կեցան ծեծկըռվելով, բայց անիկայ իր զօրքով մտնալով եկաւ միացաւ 10 հազար մոսկով զօրացը հետ որ տնեսթեր կամ թուռլա գետը անցերէին, որոնց զօրապետը Սօլդիքօֆ կըսվէր։ Ասոնք երկու տէրութեն զօրքը մէկ տեղ հօթունին գացին մօտիկցան որ բալլըքըն է ան ամմէն երկրին՝ ինչ երկիր որ կայ թուռլա գետէն ինչվան դունա. բերդէն դուրս քանի շէնք որ կային՝ ամըրվան մը մէջ թօփառե-

լով փլցուցին բերդնալ վնասեցին. մէջը երկու փաշայ կար՝ տեսնալով որ իրենց մէկ օգնութիւն մը չէր իգար, պատրաստըվերէին անձնատուր ըլլալու, բայց 15 օրվան մէջ նոր օգնութիւն գալով իրենց, նորէն քաջութիւն սկսան դէմ դնել ։

Նեմցէն ու մոսկովը հասկընալով որ՝ լեհերը օգնութիւն կըբերեն հօթունցոց, շատ հեղ ապսպրեցին որ ետ կենան. տեսնալով որ մտիկ չեն ընէր, քանի՛ ջաղացք որ ունէին լեհերը՝ երեցին, որովհետեւ ալիւրը հօթունցոց կըծախէին. հոն բնակողները դէմ դնելով ծեծի մը պէս եղավ, պրաքլավ գեղը որ լեհին բոտօլիա գաւառին մէջն է՝ երվեցավ. աս բանս առիթ առնելով լեհին հասարակապետութիւնը բալադինները ու մեծերը՝ գրգռուեցան նեմցէին ու մոսկովին դէմ ։

Աս ատենս ուրիշ նեմցէի զօրապետ մըն ալ Փապլըս օտերցեան, եկաւ բօղիշան պուղտանին քաղաքը, ասոր դէմ Իսմայիլ նըրտօղ սերասքերը՝ խըրկեց Իպրահիմ նազըրը 30 հազարով որ դուրս հանէ անկէց. Փապլըսին օգնութիւն եկավ մէկ գունդ մը զօրաց ու 500 առնավուտ, ասոնցմով եղավ Փապլըս եկօղներուն դէմը գնաց ուլեսդտեղը, ուսկից տաճիկները փախան լարճիք տեղը եկան, անկից ալ փախան իրենց բաները թողլով ։ Աս ատենը Փապլըս եաշին վրայ քալեց ապրիլի 20 հոն նստաւ. Իպրահիմ նազըրը իր մնացած զօրքովը քաղքին ձախ դին նստերէր բարձր բլրի (թէ-

փէրի) մը վրայ, որ մէկ ձորով (տէրէով) մը կըբաժնըւէր Նեմցէին կեցած տեղէն, ան ատենը Եաշ նստող Իփսիլանդիի պէյը փախչելով 500 տաճիկ զօրքով դուրս ելավ, քաղաքին դին գնաց պաքլին գետին վրայէն. բայց Նեմցէին զօրապետը հասկընալով, կամ ինչպէս որ ոմանք կըսեն՝ առաջուցմէ գաղտուկ խօսք դրած ըլլալով, ձիաւոր զօրք ետևէն հասցուց որ՝ դէմ կեցող պահապանները սպաննելով մնացածը պէյին հետ մէկ տեղ գերի բռնեցին, նեմցէին բանակը բերին իր ամմէն ծառայներովը՝ ամմէն գանձովը 40 ջորիէն աւելի բեռնաւորած: Նոյն ատենը տաճիկը ամբողջ պուղտանը Թողուց, դունայէն դին գնաց. Նեմցէն ու մոսկովը եաշին մէջը մըտան, որովհետև բերդ մը չունի, դռնէն արգելված ըլլալով ուլահ պուղտանին մէջ բերդ շինելու. մինակ էն ետև տուրք առին ըստակ և ուրիշ բան, կով, ոչխար, ձի:

Հոկտեմ. 2, հօթունը առին [1]. աս բերդը առնելով պուղտանին առնըվիլը ապահովցուցին, ետևնին բերդ մը չունենալով ուկից որ վախնային. 12 հազար նեմցէի զօրք որ պաշարելու համար կեցեր էին՝ արձըկվեցան. հօթունը իր բարեբեր գաւառովը՝ 260 գեղերովը՝ նեմցէն իրեն առաւ պահեց, իսկ մնացած պուղտանը բարեկամաբար մոսկովին տըվավ, խօսք դնելով որ

1 Ոմանք կըդնեն 26 օգոստոսի: Ոմանքալ սեպտեմբերի մէջ:

ձմեռը Նեմցեններն ալ պաշտամանի մէջ մնալո-
վին հետ մէկ տեղ ձմեռեն :

Տաճիկը մէկ ուրիշ մը պաշտամնաւ պէյ գրաւ, վերոյիշեալ Իպրահիմը Թաթար խանին տղին հետ մէկ տեղ խրկեց որ թշնամիները պաշտամնէն դուրս հանեն. բայց ռօմանցօֆ մառէշալը իմանալով երկու գունդ զօրաց խրկեց իր բանակէն, որոնց զօրապետ դրաւ Էլմթ ու քամինսքօյ, որ տաճիկը հոն չեկած Փայրխսին հետ միանան, տաճկըները եկան ինչվան բրութ ու սէրէթ, հոն գետերը սփռըվեցան :

Ուլահին դին Նեմցէն մարտին առջի օրերը տեղվանք ամրըցուցերէր ալութ գետին գլուխը, որ 1718 թասսարօվից եղած հաշտութենը մէջ տաճկին ու Նեմցեին սահմանը բաժնող եղավ. հիմա անկ ջուրը սառած ըլլալով Նեմցէնները գետին վրայէն անցան եկան ռօդէրըքուն երթալու ճամփան, հոն քէրվան մը առին տարին՝ որ շատ ապրանքով ստանպօլ կերթար : Ան ատենվան ուլահ պէյին էր մավրօ եանին, որ ուրիշներուն պէս տիվան Թէրճիմանութէ պէյ չէր եղած, այլ հասարակ մարդ մը ըլլալով պախալ արհեստով բայց սիրելի դափուդան հասան փաշային՝ անոր ձեռքով պէյութե էր հասած. ասիկայ տաճկին աւելի հաճոյանալու համար անանկ արտասուոց բաներ կընէր որ՝ իր ազգին խիստ ատելի մարդ մընէր եղած, ինչվան պուքուէշէն մէկ քանի ժամը ճամի ընել տըվավ, մանկաւանդ երբոր լսեց որ

Նեմցէն պրինս ըսված Յուավլիոյին թերդը դըրերէր փախած իփսիլանդի պէյը՝ իրեն մարդիկներով, աւելի տաճկի գին կըբըռանէր զինքը, զամէնընալ կըյօրդօրէր որ զէնք առնեն Թշնամիին դէմ երթան։ Բայց ասանկ բաներ ընելով տաճկինալ հաճոյ չեղավ, մէկ ճարմընալ չիկրցաւ ընել. նեմցէն օրէօր առաջ գալով խնչվան օրդաք հասավ, որ 10 ժամ հեռու է պուքուէշէն. Փապրիսը եկավ սինայի հաըռուստ վանքը առավ թերդանման՝ ուր տեղ շատ մարդ իրենց ապրանքը պահերէին. Թէըրցպուրկ տեղը ունկից որ տաճկընէրը պիտոր անցնէին՝ անանկ պահեց որ անկարելի եղավ անոնց անցնելու։ Հօքվարթ քնդապետնալ աս տեղեներս Փօքշան մտաւ կոտրելով գերի ընելով։

## Շվէտին, մէջ նորէն ապստամբելու պատրաստութիւնը, մոսկովին հետ ծեծ բանալը։

## 1786—1788։

Երբոր մէկ կարծիք մը մէկ մոլութ̃ի մը խիստ հնցած կըլլայ մանաւանդ մեծերուն մէջը՝ ան կարծիքը խիստ դժար կըլլայ վերցընելը. ասանկ եղավ շվէտին մէջի եղած տարաձայնութ̃իը բռնաւորութ̃իը, որ Թէպէտ Գ. կուստավոս վերցուց, բայց չէին դադրեր գաղտուկ աշխատիլ որպէս զի կուստավօսին նոր կառավարութիւնը փոխեն, առջի իրենց բռնաւորութ̃իը ձեռք

ձգեն իրենց շահուն ու փառասիրութեանը համար թէեւ շվէտի ազգին շատ վնաս ըլլար։ Երբոր 1786 մեծ ժողով եղաւ սա քանն աւելի երկան եղաւ, յայտնի եղաւ որ խօսք դրած էին՝ ինչ որ թագաւորը առաջարկէ՝ իրենք դէմը զուրցեն, աւելի ազնուականները անանկ քանաարկութիւներ ըրին՝ որ մարդ չէր հաւատար թէ որ ետեւի եղածները չտուզէին։

Մոսկովին հետ դաշտուկ խօսք դրին թէ որ իրենց կռնակ կենայ նոր կառավարութիւը փոխելու, կուստավոսին ըրած սահմանադրութիւը ջնջելու, իրենց հին անտէր ինքնագլխութիւը ձեռք ձգելու, իրենքալ ան տեղը Ֆինլանտիա դաւառը մոսկովի տան, որ մոսկովին խիստ բաղձալի բան էր, իրենց խիստ վնասակար։ Ինչ խեղճ, ինչ վտանգաւոր կըլլայ ան կառավարութիւը, ուր որ կառավարը իր պաշտօնեայներուն դէմ կըլլայ, պաշտօնեայները կառավարչին դէմ։ Պարոն ըսբրէնկբօրդէնը մէկը եղաւ ասոնցմէ, որ թէպէտ երդվընցած էր նոր սահմանադրութիւը պահելու, բայց հիմա անոր դէմ ելլալով սուտ ձան հանեց որ Ֆիլէմէնկ պիտոր երթայ անոր ծառայութեանը մէջ մտնալու համար, անանկով ելաւ քէդուօպուրկ գնաց մոսկովին հետ խօրաթելու, անկէց Ֆինլանտիա անցաւ գնաց որ ոտք հանէ․ շվէտին կառավարները իմացան ուզեցին բռնել, անկէց նորէն փախաւ մոսկովստան, թշնամիներուն հետ մէկ եղաւ։

Կուտուզովս շատ վախի մէջ ընկաւ, տես-նալով որ դուրսէն սաստիկ մոսկովլի պէս մեծ տէրութիւն մը՝ ներսէն հակառակող-ներու ժողով մը՝ իր աշխատանքը պիտոր ոչնչացընեին. բայց արի մարդը ձախող-դութէ ատեննալ չիշփոթիր, կըջանայ հը-նարք գտնալու. կուտուզովս տեսաւ որ մոս-կովը տաճկին հետ ծեծի մէջ է, իրեն դաշ-նակից տէրութիւններուն հետ խօրաթեց, որ էր ինկիլէզը ու պրուշը. ատենքալ ան ա-տենը թշնամի ըլլալով մոսկովլին՝ զինքը յոր-դորեցին մոսկովլին վրայ ելլալու, խոստա-ցան իրեն օգնելու։ Այս թշնամանալը շվէ-տին որ ունեցաւ մոսկովլին դէմ՝ տաճկին խիստ հաճոյական բան եղաւ, անոր հա-մար ըստըրկով օգնեց շվէտին, շվէտը քաղըքըօնայի մէջ և ուրիշ նաւահան-գիստներու մէջ նաւեր հանեց. ցամաքի վրայալ 50 հազարի չափ զօրք էվելցուց և ըեք ամըրվան մէջ, պաշարներ (զահրէներ) պատրաստեց անանկ արտորնօք որ չէր կար-ծըվէր։

Ոմանք անանկ կըպատմեն որ առաջ մոս-կովը ծեծի պատրաստութիւն տեսաւ շվէ-տին սահմանակից տեղերը, իսկ ոմանք թէ առաջ շվէտը սաստիկ ծեծի պատրաստու-թիւն տեսաւ. մոսկովնալ տեսնալով կառ-կած առավ որ շվէտը կամ տանիմառ-քային վրայ պիտոր վազէ իրեն մտերիմ դաշնակցին, և կամ մոսկովլին վրայ Ֆին-լանտիային դիւացէն, ըստ որում ան դիէն միայն կընար զարնել մոսկովը. (Թէպէտ

մէկալ դիացէնալ չէր հաւատար որ՝ շվէ-
տին ժողովուրդը սաստիկ վնասակար բանիմ
հաւանութիւն տայ ) ։ Աս շվէտին պատրաս-
տութիւնը տեսնալով կըսեն մոսկովնալ ծեծ-
կըվելու պատրաստուելի տեսաւ շվէտի դէմ ,
ինկրիան քառէլլիան ամըրցուց . ըսդօքօլմ
նստած իր երեսփոխան դեսպանին՝ ( որ
կըսվէր անդրէաս ռօսօմօվսքի կոմս) ապըր-
պրեց չիտակ պատասխան պահանջել շվէտի
Թագաւորէն , ինչ պատճառով սաստիկ սըր-
տաուոց պատրաստութիւն մը կըտեսնար ծե-
ծի համար ։ Շվէտին Թագաւորը քիչ մը
լուռ կենալէն ետեւ պատասխանեց ։ „ Աս
„ մէկ Թագաւորի մը պարտըկան չեմ իմ
„ բաներս հասկըցընելու , իսկ Թէ որ ծե-
„ ծի պատրաստութիւն տեսնալու համար կը-
„ հարցընէք , ես ան բանը կընեմ , ինչ որ
„ կըտեսնամ որ մոսկովը ֆինլանտիայ սահ-
„ մանակից տեղը կընէ „ ։

Աս խօսքով հասկըցաւ մոսկովը որ իրեն
Թշնամի եղօղ տէրութիւններէն ինկիլիզէն
ու պրուշէն օգնութի գտնալով շվէտը՝ տաճ-
կին օգնելու համար ծեծ պիտոր բանար ի-
րեն դէմ , անոր համար աւելի ամըրցընել
արտորցաւ քառէլլիան ու ֆինլանտիան ,
որովհետեւ ասոնք ամուր տեղ մը չունէին
բայց միայն նիսլօթը՝ որ դիրքով աւելի զօ-
րաւոր էր քան Թէ շէնքով , ելլալով մէկ
ապառաժ քար մը մէկ կղզիի մը վրայ լճի
մէջ . ամուր տեղերէն կըսեպվէին նաեւ ֆռի-
տէրիսքամը , վիլմանշդրադը , ու վիպուր-
կը , բայց ասոնքալ կարօտ էին ամըրցընե-

լու ։ Մոսկովը բանը ուշացընելու համար ապսպրեց ռուսօմծվաքի իր դեսպանին՝ Ջանայ խափանել տալու որ շվետի իշխանները աս բանիս մէջ չխիթաբանին իրենց Թագաւորին հետ ․ ան դեսպանին գրգռելովը շատ մարդ որ արդէն Մոսկովի դին էին՝ զատվեցան շվետի Թագաւորին կարծիքէն ․ աս բանիս համար աւելի արտորաց կուսդավոս շվետին Թագաւորը ծեծը բանալ՝ քանի որ յովսէփ կայսրը չէր բացած տաճկին դէմ ։

Ան ատենը ռուսօմծվաքին մէկ թուղթ մը ներկայացուց շվետի դիւանին ասանկ գրելով ։ „ Մոսկովի Թագուհին 26 տար-
„ վան մէջ յայտնի նշաններ ցըցուց շվե-
„ տի Թագաւորին ու ժողովուրդին՝ անոր բա-
„ րեկամութիւ պահելու համար երկու տէ-
„ րութեանց մէջ Աբօ եղած հաշտութենէն
„ ետև , մանաւորապէս ան ատենն՝ որ
„ հարկադրեալ էր մէկ նաւատորմիղ ( տօ-
„ նանմա ) մը խրկելու արշիպելակեան ծո-
„ վը ․ ուսկից յայտնի կերևար որ՝ մոսկո-
„ վին ամմէն պատրաստութիւր մինակ ան ծե-
„ ծին համար էր որ տաճիկը բացաւ, ա-
„ նոր համար իր գրացիները չէին կրնար
„ իրենց վրայ կասկած մը առնել, թէ որ
„ իրենց սրտին մէջը չունենային մէկ ծա-
„ ծուկ կամք մը , իբր թէ մոսկովին զբաղ-
„ ման ատենը իրենք շվետներնալ բան մը
„ շահին ։ Հիմա թէ որ մոսկովի Թագու-
„ հին կասկած մը առնէ շվետի Թագաւո-
„ րին վրայ , որ մէկ դի ձգելով եղած դաշ-

„ Նազրութիւնները ազգականութիւնը՝ հաւա-
„ տարմութիւնը՝ թշնամութիւն ընել կըպատ-
„ րաստըվի, հարկ կըլլայ Թագուհիինալ
„ կանխել արտօրալ խափանելու, չէ թէ
„ գրգռելու․ անոր համար ամէն դիւա-
„ ցէն իրեն իմաց տալով որ շվէտի զօրք
„ կուգան, աւիթներ կուտան ծեծկըվե-
„ լու, Թագուհին ալ ինչ որ խոհեմութիւը
„ կըցըցընէ քիչ մը ամըրցուց սահմանա-
„ գլուխ տեղվանքը, բայց նաւերը որ ձեր-
„ մակ ծովը պիտոր երթային՝ և ոչ մէկ
„ հատ մը եկելցուց ։ Աս որովհետև մօս-
„ կովի Թագուհին սոյլ լսեց որ Օքսէն-
„ դիէրն կոմսը նեմցէի վէզիրին ըսերէր
„ թէ աս շվէտին պատրաստութիւը մօսկո-
„ վին դէմ էր, անանկ միտքը դնելով որ՝
„ մօսկովը շվէտին վրայ պիտոր վազէ․ ա-
„ սանկ ձայները սուտ ըլլալուն համար
„ յայտնի կըծանուցանէ շվէտի Թագաւորին
„ և ամմէնուն որոնք որ շվէտի կառավարու-
„ թեան մէջը կըխառնըվին՝ թէ չիհաւատան
„ անոնց, կըխոստանայ որ անայլայլե-
„ լի պիտոր պահէ իր բարեկամութիւը դաշ-
„ նադրութեցը կեօրէ ։ Անանկ յայտնի
„ խօսք տալէն ետև՝ թէ որ շվէտին Թա-
„ գաւորը առջինը ըլլայ աս բարեկամու-
„ թիւը աւրելու, ան ատենը Թագուհին գի-
„ տէ ինչ ձամփայ պիտոր բռնէ չէ թէ իր
„ գլուխները խռովելու համար, հապա և
„ ընեն ժողովուրդը պաշտպանելու հա-
մար ։

Ասիկայ անանկ խօսքվածք մընէր որ՝ իբր.

թէ հին կառավարութիւնը դեռ ոտքի վրայ կեցած ըլլար, ինչպէս որ շվէտին ապըս-տամբները կուզէին, որովհետեւ աս դեռ նման զինքը յայտնի ապստամբներուն դէմ կըցըցընէր, զանոնք կըդըրդէր։ Գուստավոս հասկընալով աս կծու խօսքերուն վախճա-նը՝ որ կընայէին զինքը ցըցընել իբր անի-րաւութեան ընող ժողովուրդին առջին, խիստ խոցվեցաւ սիրտը, յայտնի հրատարակեց թէ ռուսօմօվաքին խռովիչ է ժողովըրդեան, հրամմեց որ ծովով ճամփայ ելլայ իր տեղը երթայ։

Շվէտին ինչվան հիմա պատրաստած մեծ նաւատորմիղը (տօնանման) 20 նաւի չափ եղան երկու խափախը, պզտիկ նաւատոր-միղը 30 չէքտիրիէն աւելի եղան, թող տուր ուրիշ շատ տափակ նաւեր ծանծաղ (սըղ) տեղերուն համար, ցամաքի թօշակաւոր (եօլէֆէլի) զօրքը 45 հազարը կանցնէր, թող տուր գեղացիները՝ որ տղակուց սոր-ված են զինուորութեան արուեստը։ Իրաւ է որ շվէտին մէջ օրվան խարձը ուրիշ տեղե-րէն քիչ ըլլալով՝ զինուորները քիչ խարձով կըպահուին հոն քան թէ ուրիշ տեղվանք, որովհետեւ ձիաւոր զօրքը ազնուականները կըպահեն, իսկ ոտանաւոր (եաեան) զօրքը ամէն մէկ գաւառներուն քաղքըները կը-պահեն. տէրութիւը միայն հագուստը թուրն ու թիւֆէնկը կուտայ։ Ծովային զինուո-րութիւնը ամէնուն տէրութիւնը կըհոգայ, բայց նաւերուն տախտակը (քէրէստէն) որ տօ-ֆրին լեռներուն վրայէն կըկտրեն՝ խարձ

իրարու հանդիպած ըլլալէն, պատերազմով պիտոր լմննար բանը, մոսկովլին քիչվոր նաւերնալ գերի ընկած պիտոր ըլլային շվետին, ինչու որ անանկ ապսպրած էր կուստավոս Թագաւորը իր եղբօրը՝ մէկ թղթի մը մէջ որ կնքըված էր. Հրամայելով իրեն որ՝ երբոր խորունկ ծովը ելլայ՝ ան ատենը միայն բանայ, մէջի գրածը ընէ ։

Ասոնց մէջը յայտնի թշնամութիւնը չըսկըսած՝ կուստավոս ըսդօքօլմէն ելավ իրեն հետ առնելով օսդրօկօցիայի դուքսը՝ որ իր մէկալ եղբայրն էր, և ամմէն իր զօրքը՝ որ մոսկովի Ֆինլանտիան պիտոր ելլային. 1788 յունիսի 28, նաւերով եկավ ըսվէապօրկ, իրեք առաջարկութիւն ըրավ մոսկովլին՝ որ վարը իրեն յայտարար թուղթին մէջը կըրդանաս. Ֆինլանտիայի մէջ կարգաւորել սկսաւ իր ցամաքի և ծովու զօրքը՝ մէկէն մոսկովները կօխելու համար. քանի որ մոսկովները բաւական զօրք չունէին հոն պաշտպանելու համար. քիչ մը զօրք ունէին՝ անոնքալ ցրուած էին, քիմէնէ գետին՝ սավօլաքսիա ըսին քովընտիքը շարված ։ Երբոր հոն եղած շվետին զօրքը իրենց Թագաւորը քովերնին տեսան, շատ սիրտ առնելով՝ շուտ մը գացին նիժլօթ բերդը պաշարեցին, որ մոսկովլին մեծ դուքսը (1) անոր օգնութիւն չհասած առնեն. ասանկով գեղը առին՝ բայց կարելի չեղավ

(1) Ասիկայ է Պօղոս Բ. կատարինէին առջի զաւակը. որ ետքը մոսկովի Թագաւոր նստաւ ։

պատնէշը (մեթերիզը) ձգքել, ու կանոնով զարնել բերդը, այլ միայն պաշարել. մէջի եղած մոսկով կառավարը սպառնալով որ կամ շուտ մը քաշվին երթան, կամ թէ չէ՝ շատ ջարդ պիտոր տար անոնց, անոր վրայ քաշվեցան Փռիտէրիքսհամ գացին, որ մէկ նաւահանգիստ մընէր յարմար ձէպխանէ ու պաշար (զահրէ) ժողվելու. իրեն արուարձանին (վարոշին) մէջ լեցուն էին համբարները, վարպետութիւն մը ատոր վրայ վազեցին, բայց հոն էր վերոյիշեալ մեծ դուքսը պօղոս՝ վարպետ զօրապետով մը՝ որ կոտրելով ետ դարձուց անոնք, 40 հազար զօրքով ետևնէն հալածելով. անոր համար շվէտները իրենց երկիրը քաշվեցան։ Միայն թէ բէդըրօպուրկին մէջ անանկ վախ մը մտաւ շվէտէն՝ որ ցարսքօզէլ տեղը 160 ձի պատրաստեցին կատարինէ թագուհին մօսքվա փախցընելու իր գանձովը։

## Շվէտին ու մոսկովին յայտարար նամակները։

## 1788։

Եւրոպացիք կըզարմանային ինչպէս կըլլայ որ շվէտին թագաւորութիւնը 3 միլիոն մարդ ունենալով, 3 կամ 4 միլիոն ոսկի եկամուտ ունենալով, անանկ կըհամարձակի ծովով ցամաքով զօրաւոր թշնամիի մը դէմ ելլալու. այսչափ անձոռնի խարձը յայտնի կըցըցընէին որ՝ դըրսէն ուրիշ տէր-

ութիւն մը առոր դանձ (խազնա) կուտար, ինչպէս որ իրաւ եղաւ տաճկին տէրութիը. որ 1787 Նոյեմբ. 4, առջի դաշնադրութիւնին շվէտին հետ նորոգեց, ու քանս ետքը 1788 դեկտ. երևան ելաւ. 8 հազար քէսէ ան ատենը տըվավ շվէտին, 4 հազար քէսէալ խօսք տըվավ տարվէտարի վճարելու իրեն։ Աս խօսակցութիւներս և ըստակ վճարելը եղավ մեր հայու ազգէն պարոնի մը ձեռքով շվէտին երկիրը անցընելով ամսդրդամի ու համպուրկի վրայէն. շվէտնալ խօսք տըվավ տաճկին որ մոսկովին նաւէրուն թող չտայ պալդիկ ծովէն դուրս ելլալու ճերմակ ծովը գալու։

Աս ատեններս եւրոպայի մէջ կըպտըտէր շվէտին հանած յայտարար թուղթը՝ զինքը արդարացընելու համար, իր վրայէն քերելով ծեծկըվելու պատճառը, մոսկովին վրայ ձգելով։ „Շվէտին թագաւորը
„ իր 17 տարվան թագաւորութե ատենը
„ ամենէն կերպով հոգ ցըցուց խաղաղութի
„ պահելու համար իր դըրացիներուն հետ՝
„ մասնկալ մոսկովին հետ, ինչպէս որ պա-
„ հերէր իր հայրը. և թէպէտ մոսկովը ձեռ-
„ քի տակէն միշտ սրդողցընելու բաներ կը-
„ նէր առջի ատեններուն պէս՝ բայց շվէ-
„ տին թագաւորը ամենէն ընդդիմութիւնը
„ մէկ դի ձգեց հասարակաց խաղաղութիը
„ պահելու համար, միտքը դնելով որ՝ մոս-
„ կովի թագուհին սուտ խօսքերուն չիհա-
„ ւատալով օր մը դադրեր հակառակութե
„ ցանելէն միաբանեալ ազգի մը մէջ՝ որ

„ միացան իրենց Թագաւորին քաղաքավարու-
„ թեանը : Ա՛ն ատենը երբոր մոսկովը պատե-
„ րազմէն յոգնած ըլլալով սովեալ (խըլթ-
„ լըմեալ՝) ժանտախտանալ՝ մէկ մեծ ապըս-
„ տամբութեան մըննալ անհնարին նեղելով
„ վիճքը, (որովհետեւ ինչվան մոսքվիային
„ մօտիկցած էր բուկաչէֆ ապստամբը,)
„ սահմանակից տեղերէն ժողվել կընայեր
„ իր ամմէն զօրքը ան ապստամբին դէմ
„ խրկելու համար, թէ որ ան ատենը շվե-
„ տը ուզեր նեղը ձգել, մոսկովին վիզը կը-
„ խել, շատ չարիք կընար հասցընել ինչվան
„ Թագուհիին անձին, բայց շվետին Թա-
„ գաւորը ոչ երբեք մոռնալով իր մեծասըր-
„ տութիւնը բան մը չըրաւ, ջանաց վերցը-
„ նել ամմէն ազգային ատելութիւն սերմուն-
„ քը, յուսալով որ մոսկովի Թագուհինալ
„ աւանկ ըներ : Բայց ատոր դէմ ըողօքօլմ
„ նստած մոսկովին դեսպանը՝ ռօսօմօվսքի
„ անունով՝ կերպ կերպ ծածուկ ոլորակներ
„ բանեցընելով՝ կըջանար մարած տաքա-
„ ձայնութիւնը նորէն բռընկցընել . դեսպա-
„ նութեան պաշտօն ընելուն տեղը՝ կընայեր
„ որ ուրիշներուն հանգստութիւնը տակնու-
„ վրայ ըներ : Մենք չենք ուզեր եւրոպային
„ առջին հանել մոսկովին ամմէն ըրած նեն-
„ գագործութիւնները՝ որ ըրաւ շվետի ժո-
„ ղովրդեան մէկ մասին, բայց ան ճշմար-
„ տութիւնը դուրս հանենք, ան որոգայթնե-
„ րը չար միաբանութիւնները պատմենք, որ
„ մոսկովին տէրութիւնը իբր խորին խաղա-
„ ղութիւն ցըցընելով կըբանեցընէ շվետի

» Թագաւորին դէմ հանելու. ասով օգուտ
» կըլլայ շվէտի ազգին, կ'արդարանայ մեր
» գանկատը. ասով ամէնքն ալ իմանան փա-
» ռասիրութիւնը ու անհնարին մենծնալու ծա-
» րաւը՝ որ միշտ ունի մոսկովը, հասկընան
» անոր նենգագործութիւնները՝ որ 16 տարի
» առաջ աս կերպով խեղճ լեհաստանը
» բաժնել տըվաւ, Խըրըմ գերի ընել տը-
» վաւ, հիմա ալ ան բանը կըսպառնայ Քուռ-
» լանտիայի վրայ ընելու։
» Շատ մարդու յայտնի է որ Ապօ եղած
» հաշտութենէն ետեւ՝ մոսկովը միտքը դըրերէր
» Ֆինլանտիան շվէտէն բաժնելու, պատ-
» րուակ (մահանայ) բերելով թէ անկախ
» ընէ ան գաւառը, բայց իրօք կուզէր յա-
» ւելուած մը ընել իր երկրին, ինչպէս որ
» ըրաւ կրնանք ըսել լեհը ու Քուռլան-
» տիան. մոսկովին աս մտածմունքը խա-
» փանվեցաւ ան ատենը աւելի Ֆինլանտա-
» ցոց սիրոյն պատճառաւ որ շվէտին վրայ
» ունէին, որոնք կըյիշէին մոսկովին ըրած
» քանդմունքները աւրելները՝ որ ըրեր էր
» ԺԲ. կարոլոսին ծեծին ատենը, և 1741ին.
» բայց գլխաւոր հազարապետներէն մէկը
» որ շատ տարի Ֆինլանտիայի կառավա-
» րութեան մէջ եղեր էր, առանց պատճառի
» մը ձգելով իր հայրենիքը՝ անցաւ օտար
» տէրութեան մէջ։ Աս բանս մոսկովին յար-
» մար ատեն մը եղաւ ապստամբութեան որո-
» մը ցանելու. 1786 տարիին վերջերը մէկ
» մոսկով հազարապետ մը ելաւ, Ճամփոր-
» դութեան անունով քալեց ամէն Ֆինլան-

" տիան, որուն միտքը դիտել հասկընալ էր
" ձեր տեղը ամուր էր, ձեր տեղը տկար,
" վազելու զարնելու համար. աս բաներս
" երկըրցոց հարցընելով մէկիկ մէկիկ հաս-
" կըցաւ, անով երևան հանել տըվավ մու-
" կովին տէրութեան միտքը. թէ որ քիչ մը
" ատեն դադրեցաւ Թագուհիին խըրըմ
" երթալու պատճառովը, խըրըմէն դար-
" ձածին պէս՝ ալ աւելի եռանդ ընկավ մու-
" կովին տէրութիւնը իր դեսպանին ձեռքո-
" վը անդադար խռովութիւն հանել ըսդօ-
" քօլմին մէջ: Տաճկին պատերազմնալ որ
" բացվեցաւ՝ աւելի առիթ մը տըվավ տա-
" րաձայնութեան սերմանելու. մենք տաճկին
" հետ խիստ սիրով կապված ըլլալով 1739էն
" վեր, աս երկու տէրութեանց հին դաշնադ-
" րութիւնը կապը կասկած ձգել տըվավ մու-
" կովին սիրտը, աս իրեն կասկածը փարա-
" տելու համար իրեք անգամ առաջարկե-
" ցինք մէջերնին մտնալ տաճկին ու մուսկո-
" վին բանը շտկելու համար. ամմէն տէ-
" րութիւն կըճանչնայ թէ ինչպէս զօրաւոր է
" շվէտին միջնորդութիւնը ան ընտանութենը
" համար՝ որ տաճկին հետ ունի ժը. կարո-
" լոս թագաւորին ատենէնէն ետև. բայց մեր
" միջնորդուին ուզելու ատենը՝ ռօսօմօվսքի
" մուսկովի դեսպանը մէկ թուղթ մը ներ-
" կայացուց մեր շվէտի տէրութեանը իբր բա-
" րեկամական, բայց լեցուն վնասակար խօս-
" քերով թագաւորը ժողովուրդէն զատե-
" լու մտքով, որով մուսկովին ծածուկ միտ-
" քը երևան հանեց: Այս բանս հասկըցաւ-

„ ցինք մեր դաշնակցեալ Թագաւորաց , ան
„ դեսպաննալ հեռըցուցինք , զօրքով Փին-
„ լանտիա գացինք , յուսալով որ մոսկովը
„ պատժէ ան չարեացապարտ դեսպանը ,
„ Թագուհինալ ընդունի մեր միջնորդ ըլլա-
„ լը ծեծը չըսկըսած , հատուցում ընէ ան
„ խարձին տեղը որ հարկ եղավ ընել զօրք
„ պահելու համար . բայց խաղաղութիւնը
„ նայելու տեղը՝ մոսկովլին ասպատակ (չար-
„ խա ) զօրքը զարկին մեր շվէտին զօրքը՝ որ
„ առաջ գացերէին սավօլաղխա : Տեմնա-
„ լով մեր զօրաց հրամանատարը անանկ հե-
„ ռու տեղ՝ որ Թշնամութիը սկսաւ , կար-
„ ծելով Թէ պատերազմը բացվերէ , գացեր
„ նիսլօԹ բերդը պաշարերէ ինչպէս որ ի-
„ րեն պատուիրերէինք անանկ ընելու՝ եր-
„ բոր գործքով տեմնայ մոսկովլին Թշնամու-
„ Թիւն ցըցընելը . որովհետև մոսկովլի Փին-
„ լանտիայէն տեղ չառնըված՝ չիպահվիր
„ հոն եղած մեր երկիրները մոսկովլին բար-
„ բարոսներուն ձեռքէն : Ու դիպուածս
„ մեր նաւերը լսելով արտորցան , քիչ մը
„ ետքը սուտերմանիային դուքար մէկ պա-
„ տերազմը վաստըկելով Թշնամւոյն դէմ ,
„ որուն զօրուԹիը իրենմէ վեր էր՝ անյիշա-
„ չար ըլլալով՝ օխտը մոսկովլին նաւերը որ
„ մեր շվէտի նաւերուն մէջ պաշարված
„ մնացերէին՝ Թողուց չառավ : Հիմա աս-
„ չափ անհաձոյ բաներ ըլլալով , չիգիտնա-
„ լովալ որ ինչ եղավ բէգըօպուրկ նստած
„ մեր դեսպանին վրայ , ու երկու հազարա-
„ պետներուն վրայ որ հոն իրկերէինք ,

» Նաղըրութիւնները ազգականութիւը՝ հաւա-
» տարմութիւը՝ թշնամութիւն ընել կըպատ-
» րաստուի, հարկ կըլլայ Թագուհիին ալ
» կանխել արտորալ խափանելու, չէ թէ
» դրդուելու. անոր համար ամմէն դիւ-
» ցէն իրեն իմաց գալով որ շվէտի զօրք
» կուգան, աւրիթներ կուտան ծեծկըռվե-
» լու, Թագուհիին ալ ինչ որ խոհեմութիւը
» կըցըցընէ քիչ մը ամըրցուց սահմանա-
» գլուխ տեղվանքը, բայց նաւերը որ ձեր-
» մակ ծովը պիտոր երթային՝ և ոչ մէկ
» հատ մը էվելցուց: Այս որովհետև մոս-
» կովի Թագուհին ստոյգ լսեց որ ( )քսէն-
» դիէրն կոմսը Նեմցէի վէզիրին ըսերէր
» թէ աս շվէտին պատրաստութիւը մոսկո-
» վին դէմ էր, անանկ միտքը դնելով որ՝
» մոսկովը շվէտին վրայ պիտոր վազէ. ա-
» սանկ ձայները սուտ ըլլալուն համար
» յայտնի կըծանուցանէ շվէտի Թագաւորին
» և ամենուն որանք որ շվէտի կառավարու-
» թեն մէջը կըխառնըվին՝ թէ չիհաւատան
» ամենևին, կըխոստանայ որ անայլայլե-
» լի պիտոր պահէ իր բարեկամութիւը դաշ-
» նաղըրութեցը կեօքէ: Ասանկ յայտնի
» խօսք տալէն ետև՝ թէ որ շվէտին թա-
» գաւորը առջինը ըլլայ աս բարեկամու-
» թիւը աւրելու, ան ատենը Թագուհին դի-
» տէ ինչ ձամփայ պիտոր բռնէ չէ թէ իր
» գրաւչինները խաւովելու համար, հապա և
» րեն ժողովուրդը պաշտպանելու հա-
մար:

Ասիկայ անանկ խօսքվածք մընէր որ՝ իբր·

թէ հին կառավարութիւնը դեռ ոտքի վրայ կեցած ըլլար, ինչպէս որ շվէտին ապըս-տամբները կուզէին, որովհետեւ աս դեռ նմանս զէնքը յայտնի ապստամբներուն դէմ կըցըցընէր, զանոնք կըդըրդէր: Սուսդավօ հասկընալով աս կծու խօսքերուն վախճանը՝ որ կընայէին զէնքը ցըցընել իբր անիրաւունք ընօղ ժողովուրդին առջին, խիստ խոցվեցաւ սիրտը, յայտնի հրատարակեց թէ ռուսօմօվաքին խռովիչ է ժողովրդեան, հրամմեց որ ծովով Ճամփայ ելլայ իր տեղը երթայ:

Շվէտին ինչվան հիմա պատրաստած մեծ նաւատորմիղը (տօնանման) 20 նաւի չափ եղան երկու խափախը, պզտիկ նաւատորմիղը 30 չէքտիրիէն աւելի եղան, թո՛ղ տուր ուրիշ շատ տափակ նաւեր ծանծաղ (սըղ) տեղերուն համար, ցամաքի թոշակաւոր (եօլէֆելի) զօրքը 45 հազարը կանցնէր, թո՛ղ տուր գեղացիները՝ որ տղակուց սորված են զինուորութե արուեստը: Իրաւ է որ շվէտին մէջ օրվան խարձը ուրիշ տեղերէն քիչ ըլլալով՝ զինուորները քիչ խարձով կըպահուին հոն քան թէ ուրիշ տեղվանք, որովհետեւ ձիաւոր զօրքը ազնուականները կըպահէն, իսկ ոտանաւոր (եաեան) զօրքը ամմէն մէկ գաւառներուն քաղքընները կըպահեն. տէրութիւը միայն հագուստը թուրն ու թիւֆէնկը կուտայ: Ծովային զինուորութիւը ամմէնալ տէրութիւը կըհոգայ, բայց նաւերուն տախտակը (քէրէստէն) որ տօֆրին լեռներուն վրայէն կըկտրեն՝ խարձ

մը չունի բայց միայն ջրով լեցնել. անկից է որ շվէտին տէրութիւնը շատ ծեծեր ըրած է առանց մէկկէ մը օգնութիւն առնելու։ Նա նաւատորմղին մէկ մասը քառուքրուծնայէն ելած, աս ատեններս պալտիկ ծովին մէջը կըպտըտէր, որուն իրեք մոսկովի նաւ պատահեցան, որ քռօնշդատէն քօբէնհայկ կերթային տակօ կղզիին դիմացնէրը. երկու նաւ հարիւրական թօփով, մէկ նաւը 66 թօփով։ Սուտէրմանիայի դուքսը որ կուսդավոսին աղջի եղբայրն էր՝ ու շվէտի նաւերուն հրամմօղ՝ կարգով կեցընելով իր նաւերը՝ որ 17 մեծ նաւ էին, վեցալ Փըռխալթա, սանտալը խըրկեց մոսկովի նաւէրուն պահանջելով որ բարեւէ։ Մոսկայ նոր բան մը երեւցաւ, ինչու որ դաշնադրութիւն ըրած ունէին, երբոր երկու տէրութեան նաւերը իրարու պատահին՝ առանց բարեւելու անցնին երթան. մոսկովի նաւերուն բադռօնան տեսաէն անուն՝ չուզելով հակառակութեան առիթ մը տալ, աս նաւերուն մէջը իմ թագուհիիս իշխանաւոր ազգակիցը գտնըվելուն համար միայն կըբարեւեմ ըսելով, 13 թօփով բարեւեց, շվէտը 8 թօփ միայն նետելով բարեւը առաւ, ըսելով՝ կընդունիմ աս բարեւս չէ թէ իմ անձինս համար, այլ շվէտի դրօշակին (պայրախին) համար։ Ասանկ պզտիկ բաները որ առանձին մարդու մը ծիծաղական բան կերեւնան, թէ ինչ մեծ կըսեպվին թագաւորական գործողութեանց մէջ՝ յայտնի է կարդացողներուն։ Ասոնք թէ որ խորունկ ծովուն մէջը

իրարու հանդիպած ըլլային, պատերազմով պիտոր ըմնար բանը, մոսկովին քիչվոր նաւերնալ գերի ընկած պիտոր ըլլային շվէտին, ինչու որ անանկ ապսպրած էր կուստավոս Թագաւորը իր եղբօրը՝ մէկ Թղթի մը մէջ որ կնքըրված էր. հրամայելով իրեն որ՝ երբոր խորունկ ծովը ըլլայ՝ ան ատենը միայն բանայ, մէջի գրածը ընէ:

Անոնց մէջը յայտնի Թշնամութիւնը չըսկըսած՝ կուստավոս ըսդօքօլմէն ելավ իրեն հետ առնելով օստռօկօթիայի դուքսը՝ որ իր մէկալ եղբայրն էր, և ամմէն իր զօրքը՝ որ մոսկովի Ֆինլանտիան պիտոր ելլային. 1788 յունիսի 28, նաւերով եկավ ըսվէապօրկ, իրեք առաջարկութիւն ըրավ մոսկովին՝ որ վարը իրեն յայտարար Թուղթին մէջը կըգտնաս. Ֆինլանտիայի մէջ կարգաւորել սկսաւ իր ցամաքի և ծովու զօրքը՝ մէկէն մոսկովները կօխելու համար. քանի որ մոսկովները բաւական զօրք չունէին հոն պաշտպանելու համար. քիչ մը զօրք ունէին՝ անոնքալ ցրուած էին, քիմէնէ գետին՝ սավօլաքսիա ըսին քօվլընտիքը շարված: Երբոր հոն եղած շվէտին զօրքը իրենց Թագաւորը քովերնին տեսան, շատ սիրտ առնելով՝ շուտ մը գացին Նիժլօթբերդը պաշարեցին, որ մոսկովին մեծ դուքսը (1) անոր օգնութիւն չիհասած առնեն. ասանկով գեղը առին՝ բայց կարելի չեղավ

(1) Ասիկայ է Պօղոս Բ. կատարինէին առջի զաւակը, որ ետքը մոսկովի Թագաւոր նստաւ:

պատնէշը (մէթերիզը) ձգել, ու կանո-նով զարնել բերդը, այլ միայն պաշարել. մէջի եղած մասկով կառավարը սպառնա-լով որ կամ շուտ մը քաշվին երթան, կամ թէ չէ՝ շատ ջարդ պիտոր տար անոնց, ա-նոր վրայ քաշվեցան Ֆաւստերիքսհամ գա-ցին, որ մէկ նաւահանգիստ մընէր յարմար ձէպխանէ ու պաշար (զահրէ) ժողվելու. իրենց արուարձանին (վարօշին) մէջ լեցուն էին համբարները, վարպետութիւն մը ատոր վրայ վազեցին, բայց հոն էր վերոյիշեալ մեծ դուքսը պօղոս՝ վարպետ զօրապետով մը՝ որ կոտրելով ետ դարձուց անոնք, 40 հազար զօրքով ետևնէն հալածելով. անոր համար շվէտները իրենց երկիրը քաշվե-ցան։ Միայն թէ բէդըրօպուրկին մէջ ա-նանկ վախ մը մտաւ շվէտներն՝ որ ցարքօ-զէլ տեղը 160 ձի պատրաստեցին կատարի-նէ թագուհին մօսքվիա փախցընելու իր գանձովը։

## Շվէտին ու մոսկովին յաղթարար նաւամիները։

## 1788։

Եւրոպացիք կըզարմանային ինչպէս կըլ-լայ որ շվէտին թագաւորութիւնը 3 միլիոն մարդ ունենալով, 3 կամ 4 միլիոն ոսկի եկամուտ ունենալով, ասանկ կըհամարձա-կի ծովով ցամաքով զօրաւոր թշնամիի մը դէմ ելլալու. այսչափ անձոռնի խարճը յայտնի կըցըցընէին որ՝ դրսէն ուրիշ տեղ

ութիւն մը ատոր գանձ (խազնա) կուտար, ինչպէս որ իրաւ եղաւ տաճկին տէրութիր. որ 1787 նոյեմբ. 4, առջի դաշնադրութիւնին շվէտին հետ նորոգեց, աս բանս ետքը 1788 դեկտ. երևան ելաւ. 8 հազար քէսէ ան ատենը տրվաւ շվէտին, 4 հազար քէսէալ խօսք տրվաւ տարվէտարի վճարելու իրեն: Աս խօսակցութիւներս և ըստակ վճարելը եղաւ մեր հայու ազգէն պարոնի մը ձեռքով շվէտին երկիրը անցընելով ամստրտամի ու համպուրկի վրայէն. շվէտնալ խօսք տրվաւ տաճկին որ մոսկովի նաւերուն թող չիտայ պալթիկ ծովէն դուրս ելլալու ճերմակ ծովը գալու:

Աս ատեններս եւրոպայի մէջ կրպտրտէր շվէտին հանած յայտարար թուղթը՝ զինքը արդարացընելու համար, իր վրայէն քերելով ծեծկըրվելու պատճառը, մոսկովին վրայ ձգելով: „Շվէտին թագաւորը „իր 17 տարվան թագաւորութեն ատենը „ամմէն կերպով հոգ ցըցուց խաղաղութին „պահելու համար իր դրացիներուն հետ՝ „ասանկալ մոսկովին հետ, ինչպէս որ պա„հերէր իր հայրը. և թէպէտ մոսկովը ձեռ„քի տակէն միշտ սրդողցընելու բաներ կը„նէր առջի ատեններուն պէս՝ բայց շվէ„տին թագաւորը ամմէն ընդդիմութիւնը „մէկ դի ձգեց հաստարակաց խաղաղութիը „պահելու համար, միտքը դնելով որ՝ մոս„կովի թագուհին սուտ խօսքերուն չիհա„ւատալով օր մը դադրէր հակառակութեն „ցանելէն միաբանեալ ազգի մը մէջ՝ որ

„ միացման իրենց Թագաւորին քաջամարտու-
„ թեր։ Նոյն ատենը երբոր մոսկովը պատե-
„ րազմէն յոգնած ըլլալով սովեալ (խրթ-
„ լըխեալ՝) ժանտախտեալ՝ մէկ մեծ ապըս-
„ տամբութիւն մըն ալ անհնարին նեղելով
„ կէնքը, (որովհետեւ ինչպէս մօսքովիային
„ մօտիկցած էր բուկացչէֆ ապստամբը,)
„ սահմանակից տեղերէն ժողվել կընայէր
„ իր ամմէն զօրքը ան ապստամբին դէմ
„ խրկելու համար, թէ որ ան ատենը շվէ-
„ տը ուզէր նեղը ձգել, մոսկովին վիզը կա-
„ խել, շատ չարիք կրնար հասցընել ինչպէս
„ թագուհիին անձին, բայց շվէտին թա-
„ գաւորը ոչ երբեք մոռնալով իր մեծապըր-
„ տութիւն բան մը չըրաւ, ջանաց վերցը-
„ նել ամմէն ազգային ատելութեան սերմուն-
„ քը, յուսալով որ մոսկովի թագուհիին ալ
„ սատանկ ընէ։ Բայց ասոր դէմ ըստօքօլմ
„ նստած մոսկովին դեսպանը՝ ռօսամօվսքի
„ անունով՝ կերպ կերպ ծածուկ ոլորակներ
„ բանեցընելով՝ կըջանար մարած տարա-
„ ձայնութիւնը նորէն բորբոքցընել. դեսպա-
„ նութեան պաշտօն ընելուն տեղը՝ կրնայէր
„ որ ուրիշներուն հանգստութիւնը տակնու-
„ վրայ ընէ։ Մենք չենք ուզեր եւրոպային
„ առջին հանել մոսկովին ամմէն ըրած նեն-
„ գագործութիւնները՝ որ ըրաւ շվէտի ժո-
„ ղովրդեան մէկ մասին, բայց ան ճշմար-
„ տութիւնը դուրս հանենք, ան որոգայթնե-
„ րը չար միաբանութիւնները պատմենք, որ
„ մոսկովին տէրութիւնը իբր խորին խաղա-
„ ղութիւն ցըցընելով կըբանեցընէ շվէտի

„ Թագաւորին դէմ հանելու. ասով օգուտ
„ կըլլայ շվէտի ազգին, կարդարանայ մեր
„ գանկատը. ասով ամէնն ալ իմանան փա-
„ ռասիրութիւնը ու անհնարին մեծնալու ծա-
„ րաւը՝ որ միշտ ունի մոսկովը, հասկընան
„ անոր նենգագործութիւնները՝ որ 16 տարի
„ առաջ աս կերպով խեղճ լէհաստանը
„ բաժնել տըվաւ, իբրըմ գերի ընել տը-
„ վաւ, հիմաալ ան բանը կըսպառնայ քուռ-
„ լանտիայի վրայ ընելու։

„ Շատ մարդու յայտնի է որ Մ․պօ եղած
„ հաշտութեան ետև՝ մոսկովը միտքը դըրերէր
„ Ֆինլանտիան շվէտէն բաժնելու, պատ-
„ րուակ (մահանայ) բերելով թէ անկախ
„ ընէ ան գաւառը, բայց իրօք կուզէր յա-
„ ւելուած մը ընել իր երկրին, ինչպէս որ
„ ըրաւ կըրնանք ըսել լեհը ու քուռլան-
„ տիան. մոսկովին աս մտածմունքը խա-
„ փանվեցաւ ան ատենը աւելի Ֆինլանտա-
„ ցոց սիրոյն պատճառաւ որ շվէտին վրայ
„ ունէին, որոնք կըյիշէին մոսկովին ըրած
„ քանդմունքները ավրէնները՝ որ ըրեր էր
„ ԺԲ. կարոլոսին ծեծին ատենը, և 1741ին.
„ բայց գլխաւոր հազարապետներէն մէկը
„ որ շատ տարի Ֆինլանտիայի կառավա-
„ րութեան մէջ եղեր էր, առանց պատճառի
„ մը ձգելով իր հայրենիքը՝ անցաւ օտար
„ տէրութեան մէջ։ Աս բանս մոսկովին յար-
„ մար ատեն մը եղաւ ապստամբութեան որո-
„ մը ցանելու. 1786 տարին վերջերը մէկ
„ մոսկով հազարապետ մը եղաւ, ճամփոր-
„ դութեան անունով քալեց ամմէն Ֆինլան-

» տիրան, որուն միտքը դիւրաւ հասկընալ էր
» ո՛ր տեղը ամուր էր, ո՛ր տեղը տկար,
» վազելու զարնելու համար. ու բաներու
» երկըրցոց հարցընելով մէկիկ մէկիկ հաս-
» կըցաւ, անով երկուան հանել որչափ մոս-
» կովլին տէրութեն միտքը. թէ որ քիչ մը
» ատեն դադրեցաւ Թագաւորին խըրըմ
» երթալու պատճառովը, խըրըմէն դար-
» ձածին պէս՝ ալ աւելի եռանդ ընկավ մոս-
» կովլին տէրութիւնը իր դեսպանին ձեռքո-
» վը անդադար խառովութի հանել բաղօ-
» քօլմին մէջ: Տաճկին պատերազմն ալ որ
» բացվեցաւ՝ աւելի առիթ մը որչափ տա-
» րաձայնութեն սերմանելու. մենք տաճկին
» հետ խիստ սիրով կապված ըլլալով 1739էն
» վեր, ու երկու տէրութեց հին դաշնադ-
» րութիւնը կապը կապված ձգել որչափ մոս-
» կովլին սիրտը, ու իրեն կասկածը փարա-
» տելու համար իրեք անգամ առաջարկե-
» ցինք մէջերնին մտնալ տաճկին ու մոսկո-
» վին բանը շտկելու համար. ամէն տէ-
» րութիւն կըճանչնայ թէ ինչպէս զօրաւոր է
» շվէտին միջնորդութիւնը ան ընտանութեը
» համար՝ որ տաճկին հետ ունի ժը. կարա-
» լոս Թագաւորին ատենէն ետև. բայց մեր
» միջնորդութեան ուզելու ատենը՝ աօռօմօվսքի
» մոսկովլի դեսպանը մէկ թուղթ մը նէր-
» կայացուց մեր շվէտի տէրութեն իբր բա-
» րեկամական, բայց լեցուն մխասաական խօս-
» քերով՝ թագաւորը ժողովուրդէն զատե-
» լու մտքով, որով մոսկովլին ծածուկ միտ-
» քը երևան հանեց: Աս բանս հասկըցաւ-

„ ցինք մեր դաշնակցեալ Թագաւորաց, ան
„ դեսպաննաւ հեռըցուցինք, զօրքով Ֆին-
„ լանտիա գացինք, յուսալով որ Մոսկովը
„ պատժէ այն չարեացապարտ դեսպանը,
„ Թագուհինալ ընդունի մեր միջնորդ ըլլա-
„ լը ծեծը չըսկըսած, հատուցում ընէ այն
„ խարձին տեղը որ հարկ եղաւ ընել զօրք
„ պահելու համար. բայց խաղաղութիւնը
„ նայելու տեղը՝ Մոսկովին ապատակ (չար-
„ խա) զօրքը զարկին մեր շվէտին զօրքը՝ որ
„ առաջ գացեր էին սավօլաղլիա: Տեսնա-
„ լով մեր զօրաց հրամանատարը անանկ հե-
„ ռու տեղ՝ որ Թշնամութիւնը սկսաւ, կար-
„ ծելով թէ պատերազմը բացվերէ, գացեր
„ նիսլօթ բերդը պաշարերէ ինչպէս որ ի-
„ րեն պատուիրեր էինք անանկ ընելու՝ եր-
„ բոր գործքով տեսնայ Մոսկովին Թշնամու-
„ Թիւն ցըցընելը. որովհետև Մոսկովի Ֆին-
„ լանտիայէն տեղ չառնըված՝ չիպահվիր
„ հոն եղած մեր երկիրները Մոսկովին բար-
„ բարոսներուն ձեռքէն: Ըս դիպուածս
„ մեր նաւերը լսելով արտորցան, քիչ մը
„ եաքը սուտէրմանիային դուքսը մէկ պա-
„ տերազմը վաստըկելով Թշնամույն դէմ,
„ որուն զօրութիւնը իրենմէ վեր էր՝ անյիշա-
„ չար ըլլալով՝ օխտը Մոսկովին նաւերը որ
„ մեր շվէտի նաւերուն մէջ պաշարված
„ մնացեր էին՝ Թողուց չառաւ: Հիմա աս-
„ չափ անհաձոյ բաներ ըլլալով, չիգիտնա-
„ լովալ որ ինչ եղաւ բէգլօպուրկ նստած
„ մեր դեսպանին վրայ, ու երկու հազարաւ
„ պետներուն վրայ որ հոն ինկեր էինք,

» ջի եղած ամմէն նաւերը ներս քաշէ, Փին-
» լանտիա ու տաձկին դէմ խրկըված զօր-
» քերը ետ կանչէ . ասոր դէմ շվետը ա-
» պահովութեան համար իր ցամաքի զօրքը
» նաեւ նաւերը ոտքի վրայ պահէ ։ Գրուե-
» ցաւ 1788 . յուլիսի 25 ։

Այս ատեն մոսկովխալ իր յայտարարաք Թուղ-
թը հաներեր աս խօսքերու վրայօք ։

» Նիւշտատ ու ասպօ եղած դաշնադրութիւ-
» ները ոչ երբեք մենէ կոտրըված են, այլ
» զօրութեամբ ասպօ եղած դաշնադրութեանը մեր
» քեռւին ատօլֆոս ֆետերիքոս հօլշդէյնի
» էվդլին դուքսը նստաւ շվետին թախտը,
» անով եղաւ որ իր որդին ու մեր քեռոր-
» դին գ. կուստավոս հիմակվան շվետին
» թագաւորնալ յաջորդ եղաւ զօրութեամբ
» մեր մոսկովին զօրացը . աս արենակցութեան
» կապը ու երախտագիտութիւնը միշտ շատ-
» ցուցին շվետին բարեկամութիւնը դէպ 'ի
» մեզ . հիմա ասանկ բարեկամութեան մէջ ով
» չիզարմանայ տեսնալով որ շվետին թագա-
» ւորը դաւաճանութեամբ բռնակալութեամբ կը-
» կոտրէ իր հաւատարմութիւնը, ու մեզի
» դէմ կելլայ նենգութեամբ ։ Երբոր աս թա-
» գաւորս բռնաւորութեամբ մը փոխեց անտե-
» սակ կառավարութիւնը՝ որուն համար ինք-
» նալ իր ծնողքնալ երդվընցած էր պահե-
» լու, մենք դէմ չիդըրինք ասոր փառաւո-
» րութեները, ինչպէս որ իրաւունք ունէինք
» դէմ ըլլալով նիւշտատ եղած դաշնադ-
» րութեները՝ որ 1743 ասպօ հաստատվեցաւ,
» կարծեցինք որ աս փոփոխութիս ժամա մը

„ չիտայ պիտոր ոչ շվէտին և ոչ դրացինե-
„ րուն հանգստութեը ։ Միչ մը եւս տե-
„ սանք որ աս Թագաւորս երբեմն մեզի հետ՝
„ երբեմն տանիմառքային հետ՝ երբեմն պը-
„ րուսիին հետ գաղտուկ դաշնադրութի ը-
„ նելու կըպտըրտէր աս մտքով որ՝ իրենց
„ մէջէն եղած կապը քակէ . Մենք պատաս-
„ խան կուտայինք որ՝ պատրաստ ենք ա-
„ նանկ դաշնադրութի ընել՝ որ հիւսիսային
„ տէրութեց մէկ վնաս մը չբերէ ։ Աս բա-
„ նըս հերիք չիսեպելով իրեն՝ տաճկին հետ
„ բացված պատերազմը իրեն առիթ ա-
„ ռավ չար միտքը առաջ տանելու . Երբոր
„ մենք նաւեր պատրաստեցինք Ճերմակ ծո-
„ վը խըրկելու տաճկին դէմ, հասկըցու-
„ ցինք մեր միտքը շվէտին և ուրիշ ամէն
„ եւրոպայի տէրութեանցը, բայց շվէտին
„ Թագաւորը մէկ պատրուակ (մահանայ)
„ մը գտնալուն համար մեզի դէմ ելլալ
„ մտածելով, գաղտուկ ձանէր հանել որ-
„ վավ առաջ դուրսի երկիրները՝ ետքը իր
„ երկրին մէջը՝ Թէ մոսկովը շվէտին վրայ
„ պիտոր վազէ . Ինչպէս կրնար ըլլալ աս
„ բանս որ՝ մենք միշտ շվէտին օգներենք ա-
„ վի (խըլԹըրիի) ատեն պաշար խրկելով
„ իրեն սահմանակից տեղվանքը . իրեն ա-
„ ռուտուրի շահը նայելով, տուրքերը վեր-
„ ցընելով . Թշնամութե կասկած մը չունե-
„ նալուն հերիք նշան առ պիտոր ըլլար որ՝
„ շվէտին դին եղած մեր սահմանակից տեղ-
„ վանքը ամենևին չէինք ամըրցուցած ինչ-
„ պէս որ կըլլայ ծէծի ատեն . Ինքը շվէտը

» եղավ որ Թշնամութիւն ցըցուց պալդիկ
» ծովը խրկելով իր նաւատորմիղը՝ տաճկին
» տէր կենալով։ Նորբոր յունիսին առջի օ-
» րերը մեր իրեք նաւը Ճերմակ ծովը եր-
» թալու համար Ճամփայ ելլալով տակօ
» կղզիին մօտիկցան, մէկ շվէտի ֆռխաթա
» մը մեր տէսսէն անուն բաղռօնայէն պա-
» հանջեց որ բարեւէ թագաւորին եղբարը
» հոն գտնըվելուն համար. մեր բաղռօնան
» յիշեցընելով ժէ. Թէութիը ապօ եղած
» դաշնադրութէը մէջ՝ որ զանց ընել կա-
» պըսպրէ բարեւելը, աս պատիւը շվէտի
» դրօշակին չեմ իտար ըսելով՝ հապա թա-
» գաւորին եղբօրը որ մեր թագուհիին աղ-
» գականն է, 13 թօփով բարեւերէ, հաղա-
» րապետ մը իրեն խրկելով որ միտքը հաս-
» կըցընէ. թագաւորին աղբարը պատաս-
» խան տըվերէ, ես աղէկ գիտեմ մօսկովին
» ու շվէտին մէջի եղած դաշնադրութիը,
» բայց ասիկայ հիմա մէկ զօրութի մը չու-
» նի. ես ապսպրված եմ աղբօրմէս ամէն
» հեղուն աս պատիւս պահանջել շվէտի
» դրօշակին համար։ Մ՝ենք մէկ գանկատ
» մը չըրինք դաշնադրութիւնները ասանկ
» յայտնի կոտրելուն վրայ՝ երբոր հրամեց
» մեր ռօսօմօվսքի դեսպանին շուտ մը դուրս
» ելլալ շվէտի երկրէն, ինչու որ մեր բա-
» րեկամութիւն պահելու կամքը զօրաւոր
» խօսքերով յայտնեց շվէտի թագաւորին,
» սեպելով որ՝ անոր խօսքերը կընային թա-
» գաւորը ժողովուրդէն զատելու. թէպէտ
» մէկ թագաւոր մը չիկընար իրեն ժողո

„ սեպել երբոր իրենալ իր հպատակներուն
„ ալ միակերպ բարեկամութիւն կը ցուցընեն։
„ Երբոր մենք կսպասէինք որ շվէտին Թա-
„ գաւորը իր կարծիքը շտկէ, լսենք որ շը-
„ վէտները յանկարծ վազերեն մեր Ֆին-
„ լանտիային հողը, մաքսատունը (կէօմրիւ-
„ քը) առերեն, երկու զինուոր մէկ հազա-
„ րապետ սպաննելով, որոնք կասկած մը
„ չունենալով՝ նաւակով ձամփայ կընէին.
„ Նիսլօթ գեղը մտերեն, իրեն բերդը զար-
„ նել սկսերեն։ Այսանկով պատերազմին
„ պատճառը չհասկցած՝ պատերազմին
„ գործքը տեսանք չիլված կերպով մը որ
„ յատուկ է բարբարոս ազգի՝ և ոչ քաղա-
„ քավար եւրոպայի ազգի՝ որ զէնք չեն
„ առնէր առանց պատճառը հասկցընե-
„ լու. անոր համար հրամեցինք մեր զօրա-
„ ցը՝ որոնց գլուխն է մուսաին բուջին կոմ-
„ սը՝ շվէտին դէմ ելլալ, հրամեցինք մեր նա-
„ ւատորմղինալ՝ որուն խափուտանա պէյը
„ Կրէյկն է, շվէտին դէմ ծեծկըվիլ. աս
„ հրամանս կը հանենք չուզելով, ամմէն տէ-
„ րութեանց պատճառը հասկցընելով, երկ-
„ նի և երկրի առջին վկայելով՝ որ շվէտի
„ Թագաւորը միայն պատասխան ունի տալ
„ ամմէն չարեաց, որուն ձամփայ բացաւ
„ իրեն անհնարին ամբարհաւաճութիւնը։
„ Գոնէք իմ ամմէն ժողովուրդս՝ մեր աղօ-
„ թից հետ ձերնալ միացուցէք, որ ա͞ծ ի-
„ րեն օրհնութիւնը պաշտպանէ մեր զէնքը
„ աս նոր անիրաւ Թշնամույն դէմ. և ձեր
„ քաջութիւնը հաստատեցընէ ձեր նախնեաց

» քաջութիւնը որ յաղթանակեցին Շվէտին
» դէմ ։ Գրուեցաւ Ցարսքօզէլ 1788 · յու-
» լիսի 22 · և մեր թագաւորութեանը՝ 26 ։

## Շվէտի Դէմ պատերազմութիւնը, ծեծկռտուք ։

1788 ։

Թէպէտ Շվէտ ազգը շատ աղէկ պատերազմօղ է թէ իրեն կտրիճութիւնը համար՝ և թէ պատերազմի արուեստը աղէկ գիտնալուն համար, բայց իրեն մէջի եղած տարաձայնութիւնը ամէն բանը կաւրէ ։ Շվէտին օրէնքը այսանկ էր որ՝ Թագաւորը ինքիրմէ չէր կրնար ծեծ բանալ մէկ դրացիի տէրութեան մը դէմ առանց միաբան հաւանութեան չորս կարգ իշխաններուն՝ որոնք երդւընցած էին անխախտ պահել իրենց սահմանադրութիւնը՝ որ ինքը կուզածս Թագաւորը չինէր առաջարկերէր 1772 · և արովհետև հազարապետներէն շատը ան իշխաններուն մէջէն էին, մէկ տեղ առանձին կըժողվէին խորհուրդ կընէին որ Թագաւորին մտքին չիհետևին, որովհետև Շվէտին գլխաւոր օրինացը դէմ բան էր իր ըրածը · երբոր Շվէտին Թագաւորը տաքցած էր ամմէն ուժովը մոսկովին վրայ վազել, ասոնք մէկ միաբանութեամբ մը ըրին մէջերնին ։

Ասանկով մոսկովը բուն Շվէտին մէջը աւելի աղէկ զօրք ունէր քան թէ իրեններին մէջը · վասն զի աս հազարապետները մոսկովին հետ խօսքերնին մէկ էին ըրած, չէին ուզեր Թա-

գաւառին հնազանդիլ, և ոչ սահմանադրութիւը պահել, իրենց միտքը գոցելու համար սահմանադրութիւնը պաշտպանել կըցըցընէին. պինտ ետքը յայտնի բացին իրենց անհնազանդութիւը. արգելեցին նաւերուն թօփ և ուրիշ պէտք ըլլալու բաներ տանիլ Փուխտերիքսհամը պաշարելու համար, աս գլխաւորները միաբանելով՝ ուրիշներալ իրենց դին քաշեցին: Կուսակալն ան հաղարապետներուն գունդը ժողվեց, անոնց առջին իրենք պաշտօնէ ձգեց, բանակէն դուրս վռնտեց. ասոնք ըռդօքօլմ երթալով ուզեցին հոն ապստամբութի հանել, բայց ընդունելի չեղան. բանակին մէջը այնչափ բըռընկեցաւ ապստամբութիւը, այնչափ հակառակութի եղաւ մէջերնին՝ որ կուսակալին հարկ եղաւ բանակը թողուլ, ըռդօքօլմ երթալ արտորնօք ճար մը ընելու՝ ինչ որ կըցըցընէր իրեն խելքը ու անշփոթ քաջարութիւնը:

Երբոր կուսակալս հեռացաւ բանակէն՝ չարամիտ հաղարապետները մէկ տեղ ժողվըվելով՝ իբր թէ իրենք եղած ըլլային թագաւորութե կանոն տըվօղ՝ հուչակեցին առաջ թէ ինչպէս չիժողվըվին չիմիանան տէրութե իշխանները, մենք չենք պատերազմիր որ՝ բայց միայն պաշտպանելու համար, չենք ուզեր ծեծկըվիլ դրացի տէրութե դէմ որուն դէմ ելլալը անիրաւութի է, կուզենք խաղաղութի, մեր կեանքը ապրանքը մինակ մեր հայրենեացը շահուն համար կըդնենք: Ասոնք ետքը բէգքօպուրկ մարդ խրկեցին

գթութին խնդրելու թագուհիէն, իբր թէ անոր քանակը որ բէդրօպուրկ դող հաներեր, ինքը վախի վտանգի մէջ ընկած ըլլար, առանկ ըսելով մոսկովի թագուհիին։ «Որով «հետև ազգային ժողովոյն հաւանութիը չէր «եղած, անոր համար մենք թշնամութիւն «պիտոր չընենք մոսկովին դէմ, ասկից կը-«յուսանք որ մոսկովինալ պահելով իր բա-«րեկամութիը մեր շվէտի ազգին վրայ՝ թող «չիտայ իր զօրայը՝ շվէտին երկիրը ավըրը-«տըկելու»։ Ետքը իրենց խելքովը զինա-գուլ (մութարքէք) ըրին, անանկով մոս-կովին Փինլանտիան ձգեցին, շվէտին երկի-րը քաշվեցան. և որովհետև անիրաւ մար-դոց բնական է իրենց անիրաւութիը իրա-ւունքի բերել, պատճառներով հաստատել առանքալ աշխըրհքիս բերանը գոցելու հա-մար աս պատճառներս բերին, թէ կուսգա-վառին աս պատերազմ բանալը սահմանագ-րութին դէմ էր՝ վասն զի սահմանագրութիը հրաման չիտար թագաւորին պատերազմ բանալ առանց յայտնի հրամանի իշխանաց, բայց եթէ միայն մարտապահ պատերազմ որ է պաշտպանելու համար. իսկ աս պատե-րազմը մարտավար էր՝ ուրիշին մնաս տալու համար էր. հիմա մենք ըլլալով ազատ քա-ղաքացիք չենք կրնար գործակից ըլլալ մեր հայրենեացը կործանմանը՝ որ իյնալու վրայ է։ Աս խօսքիս վրայալ խիստ շատ գրուած-ներ դուրս հանեցին շվէտին մէջ պարսաւա-դէտ ու անվայել գրքէր, լեցուն ապստամ-բեցուցիչ խօսքերով ու զրպարտութին, շվէ-

» տխան, որուն միտքը դիտել հասկընալ էր
» ձեր տեղը ամուր էր, ձեր տեղը տկար,
» վազելու զարնելու համար. աս բաներս
» երկըրըցոց հարցընելով մէկիկ մէկիկ հաս-
» կըցաւ, անով երևան հանել տըվավ մոս-
» կովին տէրութեան միտքը. թէ որ քիչ մը
» ատեն դադըրեցաւ Թագուհիին խըրըմ
» երթալու պատճառովը, խըրըմէն դար-
» ձածին պէս՝ ալ աւելի ետևէ ընկավ մոս-
» կովին տէրութիւնը իր դեսպանին ձեռքո-
» վը անդադար խռովութիւն հանել ըսդօ-
» քօլմին մէջ։ Տաճկին պատերազմեալ որ
» բացվեցաւ՝ աւելի առիթ մը տըվավ տա-
» րաձայնութի սերմանելու. մենք տաճկին
» հետ խիստ սիրով կապված ըլլալով 1739էն
» վեր, աս երկու տէրութեանց հին դաշնադ-
» րութիւնը կապը կասկած ձգել տըվավ մոս-
» կովին սիրտը, աս իրեն կասկածը փարա-
» տելու համար իրեք անգամ առաջարկե-
» ցինք մէջերնին մտնալ տաճկին ու մոսկո-
» վին բանը շտկելու համար. ամմէն տէ-
» րութի կըճանչնայ թէ ինչպէս զօրաւոր է
» շվէտին միջնորդութիւնը ան ընտանութեը
» համար՝ որ տաճկին հետ ունի ժբ. կարո-
» լոս Թագաւորին ատենէն ետև. բայց մեր
» միջնորդութի ուզելու ատենը՝ ռօսօմօվսքի
» մոսկովի դեսպանը մէկ թուղթ մը ներ-
» կայացուց մեր շվէտի տէրութենը իբր բա-
» րեկամական, բայց լեցուն վնասակար խօս-
» քերով Թագաւորը ժողովուրդէն զատե-
» լու մտքով, որով մոսկովին ծածուկ միտ-
» քը երևան հանեց։ Աս բանս հասկըցու-

„ ցինք մեր դաշնակցեալ Թագաւորաց, ան
„ դեսպաննալ հեռըցուցինք, զօրքով Փին-
„ լանտիա գացինք, յուսալով որ Մոսկովը
„ պատժէ ան չարեացապարտ դեսպանը,
„ Թագուհինալ ընդունի մեր միջնորդ ըլլա-
„ լը ձեծը չըսկըսած, հատուցում ընէ ան
„ խարձին տեղը որ հարկ եղավ ընել զօրք
„ պահելու համար. բայց խաղաղութիւնը
„ նայելու տեղը՝ Մոսկովին ասպատակ (չար-
„ խա) զօրքը զարկին մեր շվէտին զօրքը՝ որ
„ առաջ գացերէին սավօլագլխա : Տեսնա-
„ լով մեր զօրաց հրամանատարը անանկ հե-
„ ռու տեղ՝ որ Թշնամութիւը սկսաւ, կար-
„ ծելով Թէ պատերազմը բացվերէ, գացեր
„ Նիսլօթ բերդը պաշարերէ ինչպէս որ ի-
„ րեն պատուիրերէինք անանկ ընելու՝ եր-
„ բոր գործքով տեսնայ Մոսկովին Թշնամու-
„ Թիւն ցըցընելը. որովհետև Մոսկովի Փին-
„ լանտիայէն տեղ չառնըված՝ չիպահվիր
„ հոն եղած մեր երկիրները Մոսկովին բար-
„ բարոսներուն ձեռքէն : Աս դիպուածս
„ մեր նաւերը լսելով արտորցան, քիչ մը
„ եաքը սուտերմանիային դուքսը մէկ պա-
„ տերազմը վաստըկելով Թշնամւոյն դէմ,
„ որուն զօրութիւը իրենմէ վեր էր՝ անյիշա-
„ չար ըլլալով՝ օխտը Մոսկովին նաւերը որ
„ մեր շվէտի նաւերուն մէջ պաշարված
„ մնացերէին՝ Թողուց չառավ : Հիմա աս-
„ չափ անհաձոյ բաներ ըլլալով, չիգիտնա-
„ լովալ որ ինչ եղավ բէդըօպուրկ նստած
„ մեր դեսպանին վրայ, ու երկու հազարա-
„ պետներուն վրայ որ հոն խրկերէինք,

» միշտ այն մտքին վրայ ենք որ խաղաղու-
» թիւն ընենք թէ որ մոսկովի թագուհին
» մեզ ապահովցընէ, որպէս զի տաճկին հա-
» մարալ հողանք. հերիք է որ հետևեալ
» արդար թէութիւնները պահէ, որոնք թէ
» որ չիլինցընէ՝ ծեծը պիտոր չիդադրի:
» Մէյմը որ՝ մոսկովին երեսփոխան դես-
» պանը ռօսօմանվսքի կոմսը յայտնի պատ-
» ժըվլի, որ իրեն դեսպանութեան ատենը շատ
» նենգութիւններ բանեցուց զատելու համար
» շվէտին ազգը իր թագաւորէն:
» Երկրորդ՝ մոսկովի թագուհին խարձը
» վճարելու համար՝ թող շվէտին տայ իր
» Ֆինլանտիային ամբողջ կտորը, ամբողջ
» քառելիան ու քէպքօլմը, անանկ ինչպէս
» որ մոսկովին տրվեցան զօրութեամբ նիւշդատ
» ու ապօ եղած դաշնադրութեանը. սուօթէր
» պէք դետը սահման ըլլայ ասկից ետքը եր-
» կու տէրութեանց մէջ:
» Երրորդ՝ մոսկովի թագուհին թող ընդ-
» ունի շվէտի թագաւորին միջնորդ ըլլալը
» տաճկին հետ խաղաղութի ընելու համար,
» կատարեալ իշխանութի տալ անոր՝ խըրը-
» մը տաճկին դարձընելու, սահմանները
» կանոնաւորելու 1774ին եղած դաշնադ-
» րութեանը կեօրէ. թէ որ տաճկին դուռը
» աշխափալ հերիք չիսեպէ; շվէտին թա-
» գաւորը իշխանութի ունենայ ան կացութը
» բերելու բաները՝ ինչպէս որ էին 1768:
» Չորրորդ՝ ապահովութե համար մոսկովի
» թագուհին իր ամմէն նաւերէն զէնքը
» ձէպխանէն պարպէ, պալթիկ ծովին մէ-

» չի եղած ամէնն նաւերը ներս քաշէ, փին-
» լանտիա ու տաճկին դէմ խրկըված զօր-
» քերը ետ կանչէ. ասոր դէմ շվետը ա-
» պահովութեն համար իր ցամաքի զօրքը
» նաև նաւերը ոտքի վրայ պահէ: Գրվե-
» ցաւ 1788. յուլիսի 25:

Աս ատեն մոսկովեան իր յայտարար թուղ-
թը հաներեր աս խօսքերու վրայօք:

» Նիւշդատ ու աբօ եղած դաշնադրութի-
» ները ոչ երբէք մենէ կտրըված են, այլ
» զօրութիւն աբօ եղած դաշնադրութեը մեր
» քեռին ատօլֆոս ֆետերիքոս հօլշտէյին
» էվդին դուքսը նստաւ շվետին թախտը,
» անով եղավ որ իր որդին ու մեր քեռոր-
» դին Գ. կուստավոս հիմակվան շվետին
» թագաւորնալ յաջորդ եղավ զօրութիւ
» մեր մոսկովին զօրացը. աս արենակցութեն
» կապը ու երախտագիտութիւը միշտ շատ-
» ցուցին շվետին բարեկամութիւը դէպ 'ի
» մեզ. հիմա ասանկ բարեկամութեն մէջ ով
» չիգարմանայ տեսնալով որ շվետին թագա-
» ւորը դաւաճանութիւ բռնակալութիւ կը-
» կտրէ իր հաւատարմութիւնը, ու մեզի
» դէմ կելլայ նենգութիւ: Երբոր աս թա-
» գաւորս բռնաւորութիւ մը փոխեց ան տե-
» սակ կառավարութիւը՝ որուն համար ինք-
» նալ իր ծնօղքնալ երդվընցած էր պահե-
» լու, մենք դէմ չիդրինք ասոր փառասի-
» րութեը, ինչպէս որ իրաւունք ունէինք
» դէմ ըլլալով նիւշդատ եղած դաշնադ-
» րութեը՝ որ 1743 աբօ հաստատվեցաւ,
» կարծեցինք որ աս փոփոխութիւս մէկ մը

„ չիտայ պիտոր ոչ շվէտին և ոչ դրացինե-
„ րուն հանգստութիւնը ։ Միչ մը եւս տե-
„ սանք որ աս թագաւորս երբեմն մեզի հետ՝
„ երբեմն տանիմարքային հետ՝ երբեմն պը-
„ րուսլին հետ գաղտուկ դաշնադրութի ը-
„ նելու կըպտըրտէր աս մտքով որ՝ իրենց
„ մէջէն եղած կապը քակէ ․ մենք պատաս-
„ խան կուտայինք որ՝ պատրաստ ենք ա-
„ նանկ դաշնադրութի ընել՝ որ հիւսիսային
„ տէրութեանց մէկ վնաս մը չբերէ ։ Նա բա-
„ նըս հերիք չխռովելով իրեն՝ տաճկին հետ
„ բացված պատերազմը իրեն առիթ ա-
„ ռավ չար միտքը առաջ տանելու ․ երբոր
„ մենք նաւէր պատրաստեցինք ձերմակ ծո-
„ վը խըրկելու տաճկին դէմ, հասկըցու-
„ ցինք մեր միտքը շվէտին և ուրիշ ամմէն
„ եւրոպայի տէրութեանցը, բայց շվէտին
„ թագաւորը մէկ պատրուակ ( մահանայ )
„ մը գտնալուն համար մեզի դէմ ելլալ
„ մտածելով, գաղտուկ ձաներ հանել որ-
„ վավ առաջ դուրսի երկիրները՝ ետքը իր
„ երկրին մէջը՝ թէ մոսկովը շվէտին վրայ
„ պիտոր վազէ ․ ինչպէս կրնար ըլլալ աս
„ բանս որ՝ մենք միշտ շվէտին օգներենք սա-
„ վի ( խըթլըրիի ) ատեն պաշար խրկելով
„ իրեն սահմանակից տեղվանքը ․ իրեն ա-
„ ռուտուրի շահը նայելով, տուրքերը վե-
„ ցընելով ․ թշնամութիւն կասկած մը չունե-
„ նալուն հերիք նշան աս պիտոր ըլլար որ՝
„ շվէտին դին եղած մեր սահմանակից տեղ-
„ վանքը ամմէնուին չէինք ամրցուցած ինչ-
„ պէս որ կըլլայ ծէծի ատեն ․ ինքը շվէտը

„ եղաւ որ Թշնամութիւն ցըցուց պալդիկ
„ ծովը խրկելով իր նաւատորմիղը՝ տաճկին
„ տէր կենալով։ Նորքոր յունիսին առջի օ-
„ րերը մեր իրեք նաւը Ճերմակ ծովը եր-
„ թալու համար Ճամփայ ելլալով տակօ
„ կղզիին մօտիկցան, մէկ շվէտի փոխաթա
„ մը մեր տէօսէն անուն բաղռօնայէն պա-
„ հանջեց որ բարեւէ Թագաւորին եղբարը
„ հոն գտնըվելուն համար. մեր բաղռօնան
„ յիշեցընելով ժէ. Թէութիր ապօ եղած
„ դաշնադրութեր մէջ՝ որ զանց ընել կա-
„ րըպարէ բարեւելը, աս պատիւը շվէտի
„ դըրօշակին չեմ իտար ըսելով՝ հապա Թա-
„ գաւորին եղբօրը որ մեր Թագուհիին ազ-
„ գականն է, 13 Թօփով բարեւերէ, հազա-
„ րապետ մը իրեն խրկելով որ միտքը հաս-
„ կըցընէ. Թագաւորին աղբարը պատաս-
„ խան տըվերէ, ես աղէկ գիտեմ մօսկովին
„ ու շվէտին մէջի եղած դաշնադրութիը,
„ բայց ասիկայ հիմա մէկ զօրութի մը չու-
„ նի. ես ապարըված եմ աղբօրմէս ամէն
„ հեղուն աս պատիւս պահանջել շվէտի
„ դըրօշակին համար։ Մ՚ենք մէկ գանկատ
„ մը չըրինք դաշնադրութիւնները ասանկ
„ յայտնի կոտրելուն վրայ՝ երբոր հրամեց
„ մեր ռօսօմօվաքիդէսպանին շուտ մը դուրս
„ ելլալ շվէտի երկրէն, ինչու որ մեր բա-
„ րեկամութիւն պահելու կամքը զօրաւոր
„ խօսքերով յայտնեց շվէտի Թագաւորին,
„ սեպելով որ՝ անոր խօսքերը կընային Թա-
„ գաւորը ժողովուրդէն զատելու. Թէպէտ
„ մէկ Թագաւոր մը չիկրնար իրեն վրաս

„ սեպել երբոր իրենալ իր հպատակներուն.
„ ալ միակերպ բարեկամութին կըցուցնեն։
„ Երբոր մենք կսպասեինք որ շվէտին Թա-
„ գաւորը իր կարծիքը շտկէ, լսենք որ շը-
„ վէտները յանկարծ վազերեն մեր Ֆին-
„ լանտիային հողը, մաքսատունը (կէօմրիւ-
„ քը) առերեն, երկու զինուոր մէկ հազա-
„ րապետ սպաննելով, որոնք կասկած մը
„ չունենալով՝ նաւակով Ճամփայ կընէին.
„ Նիւլօթ գեղը մտերեն, իրեն բերդը զար-
„ նել սկսերեն։ Այսանկով պատերազմին
„ պատճառը չհասկըցած՝ պատերազմին
„ գործքը տեսանք չիլսված կերպով մը որ
„ յատուկ է բարբարոս ազգի՝ և ոչ քաղա-
„ քավար եւրոպայի ազգի՝ որ զէնք չեն
„ առնէր առանց պատճառը հասկըցընե-
„ լու. անոր համար հրամեցինք մեր զօրա-
„ ցը՝ որոնց գլուխն է մուսսին բուշկին կոմ-
„ սը՝ շվէտին դէմ ելլալ, հրամեցինք մեր նա-
„ ւատորմիղինալ՝ որուն խափուտանա պէյը
„ Կրուէյկն է, շվէտին դէմ ծեծկըվիլ. աս
„ հրամանս կըհանենք չուզելով, ամմէն տէ-
„ րութենց պատճառը հասկըցընելով, երկ-
„ նի և երկրի առջին վկայելով՝ որ շվէտի
„ Թագաւորը միայն պատասխան ունի տալ
„ ամմէն չարեաց, որուն Ճամփայ բացաւ
„ իրեն անհնարին ամբարհաւաճութիւնը։
„ Դուք իմ ամմէն ժողովուրդս՝ մեր աղօ-
„ Թից հետ ձերնալ միացուցէք, որ ա͞ծ ի-
„ րեն օրհնութիւնը պաշտպանէ մեր զէնքը
„ աս նոր անիրաւ Թշնամւոյն դէմ. և ձեր
„ քաջութիւնը հաւատարցընէ ձեր նախնեաց

„ քաջութիւնը որ յաղթանակեցին Շվետին
„ դէմ։ Պրովեցաւ Յարսքօղէլ 1788. յու-
„ լիսի 22. և մեր թագաւորութիւնը՝ 26։

## ՇՎԷՏԻ ԱԶԳԻ ՊԱՐՏԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ, ԾԵԾԿԸԼԵԼԸ։

## 1788։

Թէպէտ Շվէտ ազգը շատ աղէկ պատերազմօղ է թէ իրեն կորըճութիւնը համար՝ և թէ պատերազմի արուեստը աղէկ գիտնալուն համար, բայց իրեն մէջի եղած տարաձայնութիւնը ամմէն բանը կավրէ։ Շվէտին օրէնքը այսանկ էր որ՝ թագաւորը ինքիրմէ չէր կըրնար ծեծ բանալ մէկ դըրացիի տէրութեան մը դէմ առանց միաբան հաւանութեան չորս կարգ իշխաններու՝ որոնք երդվընցած էին անխախտ պահել իրենց սահմանադրութիւնը՝ որ ինքը կուստավոս թագաւորը չինէր առաջարկերէր 1772. և որովհետև հաղարապետներէն շատը ան իշխաններուն մէջէն էին, մէկ տեղ առանձին կըժողվէին խորհուրդ կընէին որ թագաւորին մտքին չիհետևին, որովհետև Շվէտին գլխաւոր օրէնացը դէմ բան էր իր ըրածը. երբոր Շվէտին թագաւորը տաքցած էր ամմէն ուժովը մոսկովին վրայ վազել, անոնք մէկ միաբանութիւ մը ըրին մէջերնին։

Սանկով մոսկովը բուն Շվէտին մէջը աւելի աղէկ զօրք ունէր քան թէ իրեններին մէջը. վասն զի ան հաղարապետները մոսկովին հետ խօսքերնին մէկ էին ըրած, չէին ուզեր թա-

դաւորին հնազանդիլ, և ոչ սահմանադրու-
թիւը պահել, իրենց միտքը գոցելու համար
սահմանադրութիւնը պաշտպանել կըցըցը-
նէին. պինտ ետքը յայտնի բացին իրենց
անհնազանդութիւը. արգելեցին նաւերուն
թօփ և ուրիշ պէտք ըլլալու բաներ տանիլ
Ֆախտէրլիքսհամը պաշարելու համար, աս
գլխաւորները միաբանելով՝ ուրիշներալ ի-
րենց դին քաշեցին: Սուսդաւորս ան հազա-
րապետներուն գունդը ժողվեց, անոնց առ-
ջին իրենք պաշտօնէ ձգեց, բանակէն դուրս
վռնտեց. ասոնք ընդ.օքօլմ երթալով ուզե-
ցին հոն ապստամբութի հանել, բայց ընդ-
ունելի չեղան. բանակին մէջը այնչափ բը-
ռընկեցաւ ապստամբութիւը, այնչափ հա-
կառակութի եղաւ մէջերնին՝ որ կուսդա-
վորին հարկ եղաւ բանակը թողուլ, ընդօ-
քօլմ երթալ արտօրնօք ճար մը ընելու՝ ինչ
որ կըցըցըներ իրեն խելքը ու անշփոթ քա-
ջասրտութիւնը:

Նորբոր կուսդաւորս հեռըցաւ բանակէն՝ չա-
րամիտ հազարապետները մէկ տեղ ժողվը-
վելով՝ իբր թէ իրենք եղած ըլլային թագա-
ւորութեն կանոն տըվօղ՝ հուչակեցին առաջ
թէ ինչվան չիժողվըվին չմիաբանան տէրու-
թեն իշխանները, մենք չենք պատերազմիր որ
բայց միայն պաշտպանելու համար, չենք ու-
զէր ծեծկըվիլ դըրացի տէրութեն դէմ որուն
դէմ ելլալը անիրաւութի է, կուզենք խա-
ղաղութի, մեր կեանքը ապրանքը մինակ
մեր հայրենեացը շահուն համար կըդնենք:
Ասոնք ետքը բէդըրօպուրկ մարդ խըրկեցին

գթութեն խնդրելու Թագուհիէն, իբր թէ ան քանակը որ բէդրօպուրկ դող հաներեր, ինքը վախի վտանգի մէջ ընկած ըլլար, առանց ըսելով Մոսկովլի Թագուհիին։ «Որովհետեւ ազգային ժողովոյն հաւանութիւը չէր «եղած, անոր համար մենք թշնամութիւն «պիտոր չընենք Մոսկովլին դէմ, ասկից կը-«յուսանք որ Մոսկովիան ալ պահելով իր բա-«րեկամութիւը մեր շվէտի ազգին վրայ՝ թող «չիտայ իր զօրայը՝ շվէտին երկիրը ավրը-«տըկելու»։ Աւագը իրենց խելքովը զինադուլ (միւթարէքէ) ըրին, անանկով Մոսկովլին Ֆինլանտիան ձգեցին, շվէտին երկիրը քաշվեցան. և որովհետեւ անիրաւ մարդոց բնական է իրենց անիրաւութիւը իրաւունքի բերել, պատճառներով հաստատել, ասոնքալ աշխըրհքիս բերանը գոցելու համար աս պատճառներս բերին, թէ կուսդավոսին աս պատերազմ բանալը սահմանադրութեն դէմ էր՝ վասն զի սահմանադրութիւը հրամմնէ չիտար թագաւորին պատերազմ բանալ առանց յայտնի հրամանի իշխանաց, բայց եթէ միայն մարտապահ պատերազմ որ է պաշտպանելու համար. իսկ աս պատերազմը մարտավար էր՝ ուրիշին վնաս տալու համար էր. հիմա մենք ըլլալով ազատ քաղաքացիք չենք կրնար գործակից ըլլալ մեր հայրենեացը կործանման՝ որ իշխանաց վրայ է։ Աս խօսքիս վրայալ խիստ շատ գրուածներ դուրս հանեցին շվէտին մէջ պարսաւադէտ ու անվայել գրքեր, լեցուն ապստամբեցուցիչ խօսքերով ու զրպարտութիւ, շվէ-

տէն դուրս ալ ինչվան Իտալիա ցրուեցին։ Ասոնց ըրածները խիստ կըգովէին շվէտին մէջի ապստամբները որ օրէ օր կըշատնային, բայց շվէտին ազգը ասոնք կըքամահրէր ու պատասխան կուտար։ „Պատերազմ բա-
„նալ ան տէրութեան դէմ որ անկարգութիւն
„ու ներքին ապստամբութիւն կըսերմանէ,
„տէր կըկենայ ան մարդոց որ բռնաւոր ըլ-
„լալ կուզեն հայրենեացը վրայ, ջնջել
„կրնայի ան սահմանադրութիւնը՝ որ ամբողջ
„շվէտին ազգը երդմամբ ընդունեց, և
„իրեն վարձք կուզէ մեծ գաւառներէն մէ-
„կը, ասանկին վրայ ծեծ բանալը միթէ
„պաշտպանե՞լ է, թէ փնասել. դուք ինչ-
„պէս կրնաք պահանջել թէ թագաւորը
„թող բռնէ իր երդումը որ ըրավ սահմա-
„նադրութեանը վրայ. ով դրաւ ձեզ քննօղ
„և դատաւոր ձեր թագաւորին վրայ, որ
„միայն տէրութեան իշխաններուն և ազգին
„պարտըկան է համար տալ, ձեզի միայն
„կիյնայ հնազանդիլ, ձեր զինուորական
„գործքը ընել„։ Ասանկով ազգը ասոնց ըրածը քամահրեց, երբը իշխաններնալ քըննութեան ու պատժոյ տակ ձգել տըվին անոնք. Երբոր ասոնք դատապարտըվեցան, հազարապետները պոռըվեցան՝ որ մոսկովի դէն անցան, շվէտին իրենց ազգին դէմ սուր քաշեցին. թէպէտ մէկ քանին ասանկ ըրին՝ բայց ուրիշ հազարապետները ընդհանրապէս հաւատարմութիւն ու քաջասրտութիւն ծառայեցին իրենց թագաւորին։ Կուստավոս Ըստօքօլմ եկածին պէս ատեանը ժող-

վեց, իրենց վճիռը առաւ ու ծեծիս վրայօք՝ որ երկու ամիս առաջ քանի տեղ չէր սեպէր, և թէպէտ վճիռ մը ունեցաւ որ իր ըրածին իրաւունք կուտար, բայց հասկըցաւ որ ատենակալաց մէջը շատ ընդդիմութիւն կար, որոնք ալ պատերազմը խիստ վնասակար կըսեպէին ժողովրդեան։ Սանկ տարաձայնութիւն զբաղիլը շվէտներուն՝ ատեն տըված մոսկովին իր զօրութիւնը ֆինլանտիային մէջը ժողվելու։

Ծովու դիհացէն շվէտը պալտիկ ծովին մէջը կօքլանտին ջուրերը երկու մոսկովի ֆռխաթա առաւ մէջինները գերելով. մոսկովին նաւերը ալ բածնին պէս կատղելով նաւահանգիստներէն դուրս ելան, որ էին 17 երկու խափախը նաւ, 7 նաւալ պզտիկ, շվէտին նաւերն էին 16 երկու խափախը, 5 հատալ ֆռխաթա։ Յուլիսին 17, մոսկովի խափուտանան կռէյկ առջինը եղաւ զարնելու՝ միտքը դնելով կամ յաղթել կամ մեռնիլ. շվէտի խափուտանան որ թագաւորին եղբայրն էր՝ դիմադէմ ասոր հետ ծեծկըռվեցաւ, վտանգի մէջ ընկաւ գերի ըլլնելու մոսկովի խափուտանային ձեռքը՝ որուն երկու ուրիշ նաւերալ կօգնէին. բայց ան ատենը ուրիշ իրեք նաւ օգնութիւն հասնելով իրեն, խալըսեցաւ մոսկովի ձեռքէն, ծեծը եղաւ ընդհանուր, ամմէն նաւ սկսան զարնըվիլ. երկու դիհացէնալ շատ մարդ ո՛րը սպաննվեցաւ, ո՛րը խղդըվեցաւ. շվէտը մոսկովի նաւ մը առաւ 74 թօփով մէկ նաւ մընալ ջարդ ու բուրդ ըրաւ, բայց իր նաւէ-

րը շատ կոտրտըված ըլլալով՝ առջինը ե-ղավ քաշվիլ Սվէապուրկ նաւահանգիս-տը (1) մտնալ նորոգելու համար. մոսկոֆեալ շվէտի նաւ մը առաւ 80 թօփով, քռօնշդատ քաշվեցաւ իր նաւերը նորոգելու որ քիչ փճացած էին, ետքը գնաց պաշարեց ան նաւահանգիստը՝ ուր ժողվըված էին շվէ-տին նաւերը, որոնցմէ մէկ նաւ մը 64 թօ-փով դուրս ելլալ ուզելով քանի մը պզտիկ նաւերով՝ ցամաքը նստաւ, որուն մէջի գըտ-նըված մարդիկը գերի ընելով մոսկովը՝ ե-րեց նաւը։ Նյանկ ըրաւ մոսկովը ուրիշ եր-կու շվէտի նաւերուն, որոնց մէջը 560 մարդ-կային, թէպէտ կուստավոս շվէտին թագա-ւորը ուրախութիւն ընել տըված ըսդօքօլմ մէջ իբր թէ իրենց եղավ յաղթութիւնը. բաղդավ ունեցաւ որ իր եղբայրը դեկտեմ-բերի մէջ կըցաւ քառասունօնս բերել նա-ւատորմիղը սառոյցներուն ու թանձր մշուշ-ներուն (մուշերուն ու փուսերուն) մէջէն, որոնց ապրուստը հոգալ դուրսը՝ անհնա-րին էր։

(1) Այսինկայ անաւսիկ է իր գրեցը և ամուր շէնքե-րուն համար՝ որ շինեց էհանէնսավէրտ Ֆէլտ մառեշա-լը, որնոր ամենիս մէջ մեծ վարպետներէն մէկը ե-ղավ զինուորական ճարտարպետութեան մէջ. ուր է և իր գերեզմանը։

Շվէտը տանիմառքային դէմ կելլայ ։

1788 ։

Չորրորդ վալտէմառ տանիմառքայի Թա-
գաւորին դուստրը մարգարիտա անունով,
1359 կարգըլվելով ազվին նորվէճիայի Թա-
գաւորին հետ՝ նորվէճիայի Թագաւորութիւնը
միացաւ տանիմառքայի Թագաւորութեանը
հետ. 1397 ինալ շվէտին Թագաւորութիւնը
միացաւ աս երկուքին հետ մէկ դաշնադրու-
թիւն մը՝ որ եղավ քալմար տեղը, անոր հա-
մար ըսվեցաւ քալմարի միաբանութիւն. որոնց
մէկ Թագաւոր մը կիշխէր մինչեւ 1523,
բայց ան ատենը կուսադավոս վազա շվէտի
վրայ Թագաւոր նստելով՝ տանիմառքայէն
զատվեցաւ, մէջերնին կռիւը անպակաս ե-
ղավ, ան ատենէն՝ մանաւանդ երբոր մեծին
պետրոսի ատենէն տանիմառքայիք իրենց
պաշտպանութեան համար աղէկ սեպեցին մոս-
կովը իրենց օգնական ունենալ ։ Հիմա աս
շվէտի Թագաւորին ատենը լսելով տանի-
մառքայի տէրութիւնը որ Թագաւորական իշ-
խանութիւնը շվէտի Թագաւորին ձեռքը ան-
ցաւ առջինին պէս՝ վախնալէն նոր դաշնադ-
րութիւններ ըրավ մոսկովին հետ, որպէս զի
երբոր Թշնամի մը վրանին ելլայ՝ իրարու
օգնեն զինուոր ու նաւ տալով. Հիմա շվէ-
տը մոսկովի վրայ ելած ըլլալով տանի-
մառքան առաջարկեց շվէտին միջնորդ ըլ-
լալ մոսկովին հետ բանը շտկելու համար ։
Շվէտը անիկայ մերժելով՝ հարկ եղավ

տանիմառքային որ մոսկովին օգնութիւն խրկէ, ուսկից՝ ինչպէս նաև նեմցէէն իժիր մարդ կուգար յորդորելով որ տանիմառքան շվէտին դէմ ելլայ, որ թէպէտ իրեն ազգականն էր՝ բայց բնական թշնամի էր իրեն. ինչպէս որ շվէտին թագաւորն ալ ինկիլիզին պրուշին կամքը կատարելով՝ տաճկին կօգնէր։

Տանիմառքայի վրայ թագաւոր էր աս ատեն Է. Քրիստիանոս, որ 1772էն տկար ըլլալով՝ ամմէն կառավարութիւն ընօղը Փետերիքոս իր մեծ տղան՝ ու իրեն խելացի վէզիրն էր պէրնստօրֆ կոմսը. ասիկայ մտածելով որ աղէկ ճամփայ հիւսիսային տէրութիւնները խաղաղցընելու՝ ծեծկըվիլն է, շուտ մը մոսկովին օգնութիւն խրկեց 6 նաւ երկու խափախը, 6ալ փոխաթա. 12 հազարալ ցամաքի վրայ զօրք, որոնց գըլուխ եղաւ հասսիա քասսէլին իշխանը. Փետերիքոս մեծ տղան զօրք խրկեց նորվէճիա անձամբ հոն երթալով. ասոնք ընելէն ետև՝ տանիմառքան յայտնի երևան հանեց իր մոսկովի դին ըլլալը։

Աս լսելով շվէտին թագաւորը իր դեսպանին ձեռքովը ասանկ զուրցեց։ „Կըյուսամ որ տանիմառքային զօրքը որ մոսկովին օգնութիւն կերթան՝ թշնամութիւն մը չիբանեցընեն շվէտին երկրին մէջը. շատ դժար բան է մեր ազգականը մեզի թշնամի տեսնալ, անչափ հոգ ցըցընելով պաշտպան կենալ մէկ տէրութեան մը՝ որ ուրիշ բան չիմտածէր բայց եթէ ամմէն եւրո-

„ պա ու ասիա իր ձեռքը առնել. իսկ եթէ
„ թշնամաբար մտնան շվէտի հողին մէջ,
„ ան ատենը շվէտի թագաւորը թշնամիի
„ տեղ պիտոր սեպէ տանիմառքացիները,
„ ազգականութիւը բանի տեղ պիտոր չիսե-
„ պէ „: Դանիմաքան ասոր պատասխան
տրվաւ: „ Նաւէրն ու զօրքը որ պատրաստ
„ էին՝ դաշնադրութեցը կեօրէ խրկեցինք
„ մոսկովին իր կարգաւորութեը տակ, որ
„ կրնայ բանեցընել ինչ երկրի մէջ որ ու-
„ զենայ „: Սեպտ. ամսոյն մէջ Հասսիա
քասսել իշխանը 10 հազար մարդով վա-
զեց պահուզէմ շվէտին գաւառը. ուրիշ 6
հազար տանիմառքացիքալ վառմիա մտան,
պահուզ տեղը առին իր ամմէն համբարնե-
րով որ լեցուն էին պաշարով (զահրէով)՝,
բայց ամմէննալ վճարելով: Կօդդեմպուրկ
կօցիային գլխաւոր քաղաքը պաշարելու
գացին, որ շվէտի երկրին երկրորդ քաղաքն
է պիտովական իրեն աղէկ նաւահանգստին
համար գերմանիայու ովկիանոսին վրայ.
շվէտը ասոնք արգելելու համար քվիստրում
կամուրջը (քեօփրիւն) քակեց շատ ջար-
դըվելով. բայց տանիմառքացիք անանկով-
ալ ջուրը անցան, չիսեպելով թօփերը՝ որ
շվէտը դիմացէն կըպարպէր:

Աֆրիկայ լամծին պէս կուստավոս շվէտին
թագաւորը՝ թողուց մոսկովին Ֆինլան-
տիան, շվէտին մէկալ ծայրը վազեց կօդ-
դեմպուրկ ազատելու համար. իրեն զօրքը
քիչ ըլլալուն համար՝ (հին կուստավոս վա-
զայէն օրինակ առնելով), գնաց տալէ-

քաղլիա և անոր քովի երկիրները, անհաստ կողմի բնակիչքը արթնցընելու համար, որ պաշտպանելու ելլան իրենց երկիրները. որոնք շուտ մը 3 հազար մարդ հանեցին, անչափմընալ քովինները հանեցին, ամմէնման յարմար թշնամիի դէմ դնելու: Շվէտին Թագաւորը ուրախացաւ, բայց չըլլայ որ աս զօրքը հոն չիհասած կօդդէմպուրկը անձնատուր ըլլայ, շուտ վազելով հոն հասաւ ծպտեալ (Թէպտիլ) հագուստով որ չիճանչցըվի, մէկ Թիկնապահով (սէլիհտարով) ու մէկ ծառայով. մէջինները չիհաւատալով որ Թագաւորն է՝ ներս չառին, շատ յոքնեցաւ ինչվան որ քաղքին դուռը բանալ տըվավ: Ասանկ արտառոց դիպուածներ խիստ հաճոյ էր աս Թագաւորիս. բնութիւն յանդուգն ըլլալով իր կամքովը վտանգներու մէջ կընձգէր զինքը բաղդին ապաւինելով, և իրաւ որ չէ թէ իրեն հոն գալովը՝ հապա բաղդով մը խալըսեցաւ կօդդէմպուրկ արտառոց ցուրտ մը տիրելուն համար 1788ին եղքերը և 1789ին սկիզբները, որով անհնարին ըլլալով ծեծկըվելու՝ երկու դիացէնալ զինադուլ (միւթարէքէ) ըրին առաջ երկու ամսըվան՝ ետքը վեց ամսըվան համար: Ռուծին ուշմանալոմիալ ինկիլիզը ու պրուշը մտածեցին որ իրենց ոտք հանած շվէտը երկու թշնամիի դէմ չիկրնայ պիտոր դնել, բռնադատեցին տանիմառքան որ չէզոք մնայ, շվէտին դէմ չիծեծկըվի, սպառնալով ծովէն ինկիլիզի նաւէ-

րով թօփառելու քօբբէնհայկ իր արքայանիստ քաղաքը, ցամաքէն ալ պրուշիին զօրքովը հօլշդէյնին երկիրը գրաւելու. Առ խօսքերս պէրնսդօրֆ տանիմարքային վէզիրը հասկըցուց մոսկովին, մոսկովն ալ ազատութի տըլավ տանիմարքային, որոնք իրենն աւելի յարմար էնէ, անանկ ընէ։ Ըն ատենը տանիմարքան յայտնի չէզոքութի յանձն առավ ան թէուլթ՞ որ՝ ինկիլիզնալ պրուշնալ չէզոք մնան, թող տան տանիմարքային որ ծովու վրայ նաւատորմիղ (տօնանմա) ունենայ. ցամաքի վրայալ 25 հազար մարդ պահէ գերմանիայի սահմանակցութն մէջ ըլնքը պաշտպանելու։ Այս որովհետև մոսկովի տէրութեան քանի մը նաւեր քօբբէնհայկին նաւահանգստին մէջ կեցած էին, պիտոր քռօնշդատ մոսկովին երկիրը երթային, չըլլայ որ համփան շվէտին նաւերը զարնեն, տանիմարքային նաւերը մէկ տեղ ընկերացան անոնք տանելու ինչվան ֆինլանտիային ծոցը։ Բայց կուստավոս շվէտին թագաւորը իրեն դէն մարդիկ ունէր տանիմարքային մէջ, առոնցմէ մէկն էր պեզենսթիէուն գնդապետ, որ ուրիշ շվէտի մը հետ միաբանելով մտածեցին գաղտուկ կրակ ձգել տանիմարքայի ու մոսկովի նաւերուն մէջ որ քօբբէնհայկին մէջն էին։ ( )պուրիէն ըսված իռլանտացի նաւապետ մը նաւ մը ծախու առին, 50 հազար դուռինի լիրէ առաջ վճարելով, այնչափմընալ գրով խոստացան տալու՝ թէ որ բաներնին յաջող

երթայ, ան նաւուն մէջ լեցընել սկսան վառիլներով ըռախի, խաթրամ, ուրիշ երելու բաներ. ապսպրելով իրեն հիւսիսային հով փչածին պէս՝ նաւահանգիստէն դուրս ելլայ, դուրս ելածին պէս կրակ տայ նաւուն, որ հովը նաւահանգստին մէջ քշելով՝ երէ հոն եղած ամէն նաւերը։ Բայց կըսեն որ ասնաւապետը անանկ բան խօսերէր լօստառութային տիրոջը ուր որ կընստէր, որ կռահելով գացեր մատներէր դատաւորներուն, որոնք մարդ խրկելով յայտնի տեսան նաւին մէջի պատրաստութիւը, անոր համար նաւապետնալ նաւավարներնալ բռնեցին. միայն պէզէնսթիէռն պտէն ունեցաւ ինկիլիզի դեսպանին քով փախչիլ, անկեց սուրհանդակի (թաթարի) հագուստով ինկիլդէռա։ Կէյլիկ նաւերուն նաւավարները լսածնին պէս լեցվեցան շվէտի դեսպանին տանը առջին, աղաղակ վերցընելով կուզէին որ իրենց ձեռքը տան աս չարիք մտածօղները, թէ չէ՝ կերենք կըկանչէին, բայց անոնք ըսքանչայի մէկալ դին անցեր գացերէին, ատոնց մէջ շատ մարդ մտնալով ըստակ վձարելով հազիւ կրցան տեղէրնին խրկել. դատաւորները շատ մարդ բռնեցին քննելու համար՝ բայց խիստ լռուն պահելով բան մը դուրս չիհանեցին, ուրիշ թագաւորները չիգրգռելու համար։

## Լեհին ալ ելլալը.

### 1788—1789:

Երբոր տաճկին ու մոսկովին մէջը մեծ բացվեցաւ, երկուքնալ կը բռնադատէին Լեհը որ իրենց դին քաշեն. մոսկովը իր սովորութենը կեօրէ առանց ծանուցանելու իր զօրքը Լեհի մէջ խօթեց, 1788 հոն ձմերեց, պահանջելով որ՝ Լեհը տայ անոնց ապրուստը. ան տարինալ ջուրերը կոխած ըլլալով ցորենը ուրիշ բերքերը խիստ քիչ ըլլալով ծանր եղավ աս բանս, Լեհին մենծերը չուզեցին պաշար տալ մոսկովին զօրացը, մոսկովին զօրապետները կը սպառնային բռնութ̃ ընելու: Նեմցէնալ որ տաճկին վրայ ծեծ ունէր, անալ ուզեց որ զօրքը Լեհէն անցընէ, Լեհը տայ անոնց ապրուստը: Տաճիկը կը սպառնար՝ թէ որ թշնամեաց զօրքը թող տայ Լեհը իր երկրէն անցընելու, ինքնալ 60 հազար զօրք Լեհին մէջը պիտոր խրկէր: Պրուշնալ աս ատեն նորէն ետեւէ կըլնար որ տանձքան ձեռք ձգէ:

Լեհին մէջի եղած տարաձայնութիւնը օրէօր կը շատնար, մէկ դին կըսվէր Թագաւորական, մէկալ դին կըսվէր Հայրենասէր. ան պատճառը հասաւ որ լաթերուն վրայ նշան դրին զանազանելու համար. առջինները կանանչ (1) նշան դրին, իսկ երկրորդը՝

---

(1) Ոմանք կըսեն՝ որ ասոնք ճերմակ նշան դրին:

կարմիր. ասոնք զօրաւոր ըլլալով վճռեցին որ Թագաւորը ու Միայուն խորհուրդը ամմէն իշխանութենէ զրկեն, ասոնց տեղը մէկ զինուորական դատաստան մը սահմանեն, որ ամմէն բանը կանոնի տակ պահէ, մանաւանդ Թագաւորը զսպէ, իբր թէ անիկայ եղավ ամմէն չարեաց պատճառը.

Ինկիլիզն ու Պրուսը մէկ տեղ կապուած ըլլալով (դաշնադրութիւն որ ըրին 1768 հոկտեմբ. 13, որպէս զի թող չտան մոսկովին ու նեմցէին մեծնալու տաճկէն երկիրները առնելով), տանիմարքային թշնամութիւնը խափանելէն ետև՝ ջանացին լեհը ոտք հանելու մոսկովին դէմ թէպէտ չէզոք էր հրատարակված. Պրուսը իրեն հետ կապեց լեհը խօսք դնելով որ՝ ամենեւին չընդունին ան դաշնադրութիւնը՝ որ մոսկովը առաջարկելէր լեհի ատեանին. իր դիւացէն խոստանալով թէ որ տաճկին ասպատակ (չարխա) զօրքը լեհին հողը վազէ, ինքը պաշտպան կենայ թող չտայ. թէպէտ տաճկին սահմանէն ինչվան պրուսին սահմանը խիստ շատ էր հեռաւորութիւնը, ինչպէս պիտոր պաշտպան կենար.

Հիմա լեհերը կռնակ ունենալով իրենց պրուսը՝ աղէկ ատեն սեպեցին մոսկովին բռնութենէն խալըսելու, երբոր 1789 ընդհանուր ժողով ըրին, կարծես թէ լեհերը փոխված էին, մէջերնուն շատը տաճկի դէմ էին, ջնջելով մոսկովին ըրածը՝ որ իրենց երկիրը բաժնեց, ու միշտ իր տակը կուզէր պահել լեհը, որոշեցին որ 1775ին

սահմանված կառավարութեան կերպը խափանեն, ինչպէս որ քիչ մը ետքը ըրին. Մ՚նայուն ըսված խորհուրդը վերուցին որ միօկամին էր դըրեր, անոր տեղը իրեք խորհուրդ կամ պաշտօն սահմանեցին, մէյմը դուրսի բաներու վրայ, մէկալը եկամուտի վրայ, երրորդը պատերազմի վրայ, առաջարկեցին դաշնադրութիւն ընելու պրուշին՝ ինկլիզին՝ շվէտին՝ Ֆիլէմէնկին՝ ու տաճկին հետ, ամմէն մէկուն զատ զատ դեսպան խրկելով, անանկով կըսեպէին մուսկովի տակէն քալըրովին ելլալու: ՄՃռեցին 100 հազար զօրք ոտքի վրայ պահելու, 40 հազարալ ձիաւոր զօրք. ասչափ զօրք պահելու՝ 48 միլիոն լէհի ֆիօրին պէտք էր տարին, իսկ իրենց եկամուտը 8 միլիոնէն քիչ մը աւելի էր, անոր համար տուրքերը շատցուցին, նոր մաքս (կէօմրիւք) դրին. հրէաներուն ալ որ մէկ կերպով մը զանազան արտունութիւններ ձեռք ձգերէին, 1776 ետ առերէին, իսկ աս տարի տուրքերնին եվելցուցին. եկեղեցականքը պարտաւորեցին կամաւոր ընծայ տալու հարիւրին քսան. շատ աբբայութենց եկամուտը իրենց առին. եպիսկոպոսներուն եկամուտներուն հինգերորդ մասը տասանորդ տալու կապեցին: Երբոր սրբազան քահանայապետը զանկատ ըրավ աս բանիս վրայ, լէհաստանին կարօտութիւնը պատճառ բռնեցին, օրինակ բերելով ուրիշ թագաւորներուն ըրածները. առաջարկեցին մալթացոց հարուստ կալուածները ծախու հանել. ըսդաքօսդի իշխանութիւնները

վճռեցին որ ժառանգութիւն ըլլայ․ հաշուելով (հիմայ ընելով) որ ատանկով 200 միլիոն ֆիօրին պիտոր վաստըկէին․ ամմէն կալուածներուն վրայէն՝ հարիւրին 15 տուրք ձգեցին, նաև թագաւորին կալուածներուն վրայ, բայց չիմտածեցին որ, ուր որ եկեղեցականաց ապրանքին դպաւ, ան տէրութիւը բան մը չիվաստըկեցաւ, այլ մանաւանդ ծանր վնաս քաշեց, փորձըված է որ հասարակապետութեց մէջ տնտեսութի ընելը ոչինչ է, որչափ բան ժողվըվի՝ աս ան առանձին իշխանները կուտեն, հասարակի խիստ քիչ բան կըմնայ․ ասանկ եղավ լեհերուն։ Փոխ ըստակ ուզեցին առնելու պէուլինէն, համպուրկէն, ձինիվիզէն, Ֆիլէմէնկէն, բայց լեհերը ասանկ անուն չունէին որ իրենց փոխ ըստակ տալ հաւատային։

Պօնինսքի իշխանին ըրածներուն վրայ քննութիւն ընել սկսան՝ որ մառէշալն էր 1773 եղած ժողովին, ուր տեղ հաստատվեցաւ լեհաստանին բաժնըվիլը․ ասիկայ իր տանը մէջ բանտը դըված էր՝ բայց անկից փախչելնինի նորէն բռնեցին պահեցին։ Ասոր վրայ աս յանցանքը կըդնէին, որ ան ժողովքին մէջը ամէնուն կանոնները չիպահեց, ըստակ առավ, իր հայրենեաց երկիրը, սահմանադրութիւը, ազատութիւնը օտար տէրութիւններու ծախեց, թող տուր ուրիշ ըրած չարութիւնները։ Պօնինսքին կաղաղակէր որ՝ աս բաներս միայնակ ես չըրի, հապա այնչափ եպիսկոպոսներ իշխան-

նէր մէկ տեղ վճռելով ըրին, բայց պատասխան տըվին որ՝ ուրիշները քեզի համախոհ ունենալով դուն չես արդարանար ։

Լեհին եկամուտը ու զօրքը օրէօր շատնալով իր դրացի տէրութեանց վախնալու եղաւ. 1789ին սէյմը համարձակ հրամեց մոսկովին իր զօրքը ետ քաշելու, մոսկովն ալ չիկրցաւ անոր խօսքը քամահրել ինչպէս առաջ, միայն թէ պատճառներ բերել կուզէր՝ որ ամմէն զօրքն ալ չիքաշէ ։ Պրուսը մէկ բանակ (օռտու) մը հանեց լեհերը պաշտպանելու համար, մոսկովը շատ չափաւորեց զինքը, զօրք անցընելը քիչցուց, վարկում սկսաւ ձգել լեհաստան, նեմցէն ու տաճիկը ուզեցին լեհին հետ դաշնադրութիւն ընել. լեհին ժողովքը միայն ըրին, վճռեցին որ չարձըկեն ինչվան ընցընեն լեհաստանին նորոգութիւնը ։

Լեհի ուքրանիայի մէջ եղած ժողովուրդը՝ որ գրեթէ ամմէննալ յունադաւան են՝ յայանի մոսկովի դին կեցան. անոր համար լեհերը հաւատարմութեան երդում ուզեցին անոնցմէ, պատիժ սպառնալով իրենց, բայց քիչ մարդ հնազանդեցան, մէկալնոնք կաղաղակեցին որ չենք կրնար աս երդումը ընել առանց հաւանութեան մոսկովի դեսպանին, ձիաւոր զօրք խրկեցին վրանին, անոնցմով վօլհինիայի իշխանը լուպօմիրսքի անուն շատ մարդ պատժեց, շատ եկեղեցականներ բռնեց, որոնց մէջն էր բրեզլավի յոյն եպիսկոպոսը որ ըռւվէք կըրնտէր

լիթուանիայի մէջ. ուքրանցիք յուսահա-
տելով սուր առնին ծեծկռվիլ սկսան զիրենք
պաշտպանելու համար։

Ռուալանտիանալ մոսկովյին տակէն հանե-
ցին, անոր դուքսին (որ էր պետրոս պի-
րէնեան.) հրամեցին՝ որ իր զօրքը լեհին
բանակը (օտտան) խրկէ. ութը օրվան
մէջ վերցընէ ան խոստմունքը՝ որ մոսկո-
վին ըրերէր՝ թէ իրենք մոսկովները մինակ
կարենան քուալանտիային ցորենը ծախու
առնել, որպէս զի իրենք լեհերը առնեն
ան ցորենը շվետին խրկեն. շվէտինալ դե-
սպան խրկեցին յորդորելով. որ իրենց հետ
միանայ մոսկովյին դէմ, բայց աս բանս գործ
չի դրաւ ան ատեանը՝ որ դուքսի բանէրու
վրայ դրերէին։ Նորէն ապսպրեցին մոսկովի
զօրացը ետ քաշվիլ հեռընալ լեհին սահ-
մանակից տեղերէն, բայց ռօմանցօֆ ա-
սանկ պատասխան տրվավ բոդօցքի կամնին՝
որ աս բանիս վրայօք իրէն թուղթ էր գրած։
„Իմ թագաւորիս շահին դէմ, և մոսկովյի
„պատուոյն դէմ՝ չեմ կրնար ես իս ցած-
„ցընել լեհէն դուրս ելլալով, դուք ինչ
„բանութի կուղէք ընել՝ ես պատրաստ կե-
„ցերեմ դէմ դնելու։

Իտալիայի պետութիւնները պարպարըշներուն դէմ կեցան, Նաբօլին Հռոմայ հետ վէճ կ'ունենայ.

1786—1788:

Այս տարիներս պարպարըշներուն ծովապատակները (խուրսանները) ամենքը մէկ եղած կը վխտային Ճերմակ ծովին մէջը. ամենեւին մէկ տէրութէ մըն ալ վախ չունէին. Իտալիա եղող տէրութիւնները չէդիմանալով ասոնց ձեռքէն՝ Ճենովիզը իրեն չէքտիրմէները դուրս հանեց ասոնց ետեւէն, ասանկ ալ Մալթացիք, իսկ Նաբօլին նորանց երկու խափախլը նաւեր ու ֆրխաթաներ շինել տըվաւ:

Դանուչչիի մէջ դանուչչիի վէզիրնալ փոխվելէն ետեւ եկեղեցական բաներու վրայի վէճը չիդադրեցաւ. դանուչչիին տեղը քառաչչիօլօն վէզիր եղաւ, ասիկայ գիտեսթէ Հռոմայու հետ աւելի հակառակութի ունեցաւ: 1787 նորէն վէճ բացվեցաւ Հռոմայու հետ Քինեա տուրքին վրայօք. որ Նաբօլիի տէրութիւը չէր ուզեր հանդէս ընելով տալ ինչպէս որ սովորութի էր իբր հարկատու (խարաճկիւզար) ազգերու պէս, հապա առանձին կերպով մը 7 հազար ոսկի տուքադ տայ իբր մէկ ընծայ մը ջերմեռանդութեան համար: Իսկ սրբազան քահանայապետը կուզէր որ հանդիսով տրվի, որով առաքելական աթոռոյն իրաւունքը գետինը չիյնայ, որ հարիւրաւոր

հաճոյ բաներ տեսնալով թէ իր անձին դէմ և թէ հռոմայու դէմ, անալ դարձաւ հռոմ եկաւ։

Ուրիշ դիպուածմընալ եղաւ, Նաբօլիի արքեպիսկոպոսին ատեանին մէջ ամուսնութեան մը վրայ դատաստան եղաւ, անանկ կտրըվեցաւ որ քակվի ան ամուսնութիւնը, բայց աս բանիս վրայ երիկը բողոքում ընելով ուրիշ եպիսկոպոսի մը յանձնեցին ան դատը (տավան) տեսնալու՝ և ոչ հռոմ ինչպէս որ պէտք էր։ Աս բանս շատ հակառակութիւներ բերավ, որբաղան պապը երկու թուղթ խրկեց սօբռանցի քահանային՝ որ իբր իրեն պզտիկ նուիրակ մը նստերէր Նաբօլի, մէկ թուղթը բողոքում ընօղին կնկանը տալու, մէկալը մօդուլա եպիսկոպոսին՝ որ դատաւոր էր եղեր բողոքողին. Կնիկը չուզեց ան թուղթը առնել, նոյնպէս եպիսկոպոսը՝ որ մանաւանդ թղթաբերին դէմ խօսեցաւ։ Ասոր վրայ Նաբօլիի տէրութիւնը վերոյիշեալ սօբռանցիին հրաման խրկեց 24 ժամու մէջ դուրս ելլալ Նաբօլիի քաղքէն, ետքնալ 24 ժամու մէջ ամմէն Նաբօլիի հողէն։ Ուրիշ մէկ դատմընալ տեսնըվեցաւ Նաբօլի երկու մալթացի ասպետներու մէջ, որոնք որովհետև հռոմ բողոքում ըրին՝ անկից նոր տարաձայնութի ծագեցաւ Նաբօլիի ու հռոմայու մէջ։

Աս ատենիս հռոմայու մխիթարութիւնը ան եղավ որ՝ չինումաչին անչափ շատցան քրիստոնեայները՝ որ 1788 հարկ եղավ փռօ-

փականտայի ժողովքի ատենաբանին մէջը չի-նու լեզուով մաշտոց տպել, պատարագամատոյց ու ժամագիրք տպել։

## Վենետիկի վրայ եղած դիպուածները.

## 1762 — 1792։

Լօրէտանօ Ֆրանչէսքօ դքսէն (տօժէն) ետեւ վենետիկի դուքս եղաւ 1762 Մարկոս Ֆօսքարինի, որ շատ երեւելի մարդ էր կենցաղակիրթ (բօլիդիքօ), շատ գործքի մէջ մտած եղած եփուն, արդարադատ, խոհեմ, խելացի, բարեպաշտ, սիրանալ չէտակ, սրամիտ ըլլալով շատ կարդացող մարդ եղաւ, լեզուաւոր խիստ Ճարտասան, ուր որ դեսպան գնաց՝ մեծ անուն էր հանած. Եւրոպայի երեւելի ձեմարաններուն մէջալ գրված էր. քանի որ ողջ էր աս ազնուական մարդը՝ վենետիկ խիստ հանգստութե մէջ մնաց իր խորհրդովը։ Իր գրուածոց մէջը երեւելի եղաւ ան գիրքը՝ ուր կըխօսի վենետիկի դպրութեց վրայ, որ մահը վրայ հասնելով չկրցաւ լմնցընել, ուրիշ օգտակար բաներալ պիտոր ըներ, բայց տասը ամսէն ետեւ 1763 մարտի 31 մեռնելով չկրցաւ ուրիշ բան ընել՝ բայց եթէ չորս աշխարհացոյցները նորոգել, որոնք Թագաւորական դարպասին (սէրային) մէջը հնուցմէ մնացած բան ըլլալով հարկինք ունէին։

Նոյն տարին 1763 ապրիլի 19 դուքս եղաւ

ալվիզէ մօչէնիկօ, ատոր երրորդ տարին վենետիկի ատեանը մէկ նաւատորմիղ (տօ-նանմա) մը խրկեց դարապլուսին վրայ, որովհետեւ անոր ծովապատակները քանի մը վենետիկի նաւեր առեր էին. երբոր յա-կոբ նանի վենետիկին խափուտանա պէյը նաւերով դարապլուսին դիմացը հասաւ՝ տային ատոր նաւը եկաւ, ամէն բան յանձն առաւ, վենետիկէն առնըված նաւերը ետ տըրվաւ, ան նաւապետներն ալ որ աս նա-ւերս առեր էին պատժեց, երկուքն ալ սահ-մաններու վրայ որոշեցին որ մարթա ըսված քթէն ինչվան իմաստութէ ըսված կղզինե-րը՝ որ մօռայի առջին են: Բայց ասոնք խօսքի վրայ երկան չիկենալով վենետիկի տէրութիւնը նորէն նաւատորմիղ խրկեց, անձէլօ էմօն խափուտանա պէյ ըլլալով, երբոր ասիկայ դարապլուսին առջին եկաւ սպառնացաւ քաղաքը կործանելու, ինչ որ պահանջեց՝ դարապլուսի տային յանձն ա-ռաւ գիր տալով: Աս դուքսին օրը մէկ մեծ բարեկարգութի մը աս եղաւ որ՝ վենետիկ քաղքին մէջ թուղթ խաղալու տեղ մը կար՝ ամէն կերպով զարդարված պալատ (սէրայ) մը որ Ռիտուտօ կըսվէր, բա-կենտի ատեն կըբացվէր. Հոն բաղդի վրայ ինչ թուղթի խաղ կայ կըխաղային, անոր համար շատ դրսեցիներ կըժողվէին ինչվան լեհէն մոսկովէն աս խաղերս խաղալու հա-մար, վենետիկ քաղաքը կըշէննար առու-տուրով, բայց շատ մարդ կըծվելով մէկ գի-շերվան մը մէջ մոխիր կըլլար, մենծութէ

կաղքըրանար, ատենը կամբըռնէին։ Մս ան-
կարգութեան դէպ ըլլալու համար՝ 1774 մեծ
ժողովներ ըրին վենետիկ, շատ հեղ խօսե-
լով երկու դիմացն՝ որովհետեւ աս բանիս
շատ մնլեալներ կային, վերջապէս սաստիկ
հրամանաւ արգելեցին բաղդի վրայ խա-
ղեր, կամ շատ ըստակով խաղեր չխաղալ,
ան տեղնալ գոցեցին, ով որ մտիկ չըրաւ
խիստ պատժով պատժեցին։

Մօչէնիկօ դուքը 1778 դեկտ. 31 մեռնե-
լով պօղօս ռէնեէռին 1779 դուքս նստաւ,
շատոնցմընէ պատերազմ չըլլալով հանգըս-
տութիւնը անանկ տիրած էր որ չիյտէին վե-
նետիկցիք ինչ ըսել է արիւն, ինչ ըսել է
նեղութիւն, բայց մարդս սաստիկ հանգստու-
թենէն թէ որ դուրսէն չըլլայ՝ ինքիրմէ մէկ
նեղութիւն մը կըհանէ իրեն, ասանկալ վենե-
տիկի աղքատ սեպուհները ուխճալները կը-
ճըշդոհային իրենց աղքատ աղբեկնուն վը-
րայ, կըցանկային մէկալ սեպուհներուն
հարստութենը վրայ, տրտնջալով որ ամմէն
բանը անոնք իրենց են առեր, կըմտածէին
դաղտուկ նոր կարգաւորութիւն մը ընել, ա-
նոնց գլուխ եղավ բիզանիին մէկ ցեղէն
աղքատ սեպուհ մը՝ բայց ճարպիկ ու խե-
լացի մարդ։ Ասիկայ գլուխ կենալով ի-
րենց նոր նոր կարգաւորութիւններ ցըցուց
աղէկ պաշտօնները իրենց ձեռքը ձգելու՝
բաները աժնցընելու, ամմէնուն աղքատու-
թէ խալըցընելու. ինչպէս որ ամմէն ապս-
տամբներու սովորութիւն է պաշտպան ցըցը-
նել զիրենք աղքատներուն՝ աժնութիւն խոս

տանելու, անոր համար ան աղքատ սեպուհներն ալ ասիկայ շուտ մը կարգէ դուրս գործակալ (բռօքուռատօռ) ըրին, որ իրենց մէջ մեծ պաշտօն էր։ Տաս հոգի ատոր հետ միաբանված խօսք դրերէին որ՝ մեծ սեպուհներէն շատը Ջարդեն քշեն, կառավարութիւնը փոխեն, բայց ռէնիէռի դուքսը՝ իմանալով, շուտ մը ուրիշ վերի մեծերուն հետ խորհուրդ ընելով մէկէն քշեցին բնդանին, և ուրիշ գլխաւորները, անանկով խափանեցին իրենց ըրած խորհուրդը։

Աս ռէնիէռի դուքսին օրը մէկ մեծ վէճ մընալ ելավ վենետիկին ու Փիլէմէնկին մէջ մէկ պզտիկ բանի մը համար. ալպանիացի կամ՝ առնավուտ խաբեբայ մէյմը որ իրեն անուն էր դրեր Օանօվիք կոմս՝ աղէկ յանձնարարական գիր ունենալով լիօն քաղքին երկու վաճառականներէն, շատ ըստակ փոխ առավ Փիլէմէնկի երկու վաճառականներէ, ուրիշ հեղ մըն ալ Նաբօլի նստօղ վէնետիկի դեսպանէն յանձնարարական գիր առավ նոյն վերոյիշեալ երկու վաճառականներուն վրայ, ան գիրով նորէն ըստակ առավ ան վաճառականներէն, անանկով 33 հազար Փիօռինէն սկսելով մինչվան 300 հազար Փիօռինը հասաւ։ Ասոնք ետքը իմանալով որ խաբեբայ ելուզակ (տօլանտըրճը) մարդ է եղեր, վենետիկի դեսպանէն կըպահանջէին ըստակը, դեսպանը՝ ըսելով թէ իմ թուղթիս մէջը չէի գրած որ իրեն ըստակ տան, հապա ի-

րեն պէտք եղած ծառայութիւնը ընեն . առ ընելով չէր ուզեր վճարել ։ Ան ատենը ասոնք վենետիկի տէրութենէ ուզան պահանջել , տէրութիւնը ատեան մը սահմանեց որ քննեն , ատեանը քննելէն ետև վճռեց որ դեսպանը պարտք մը չունի վճարելու ։ Աս բանիս վրայ Ֆիլէմէնկի վաճառականները վենետիկի ատեանին դէմ ուզան բողոք վերցընել . վենետիկի տէրունը առաջարկեց որ գլխաւոր տէրութիւնները մէկ ատեան մը սահմանեն եւրոպայի վաճառականնէրով , անոնք ինչ որ կտրեն՝ երկու դիմացէն ալ ընդունինք ։

Ասոր վրայ Ֆիլէմէնկները առաջ հաւանութիւն տըվին՝ ետքը մերժեցին , ամմա կեցան իրենց խօսքին վրայ . կայսրը մէջ մըտնալ ուզեց՝ Ֆիլէմէնկները անալ մերժեցին , կերևար որ ծեծ պիտոր բացվէր աս պզտիկ բանի վրայ , վենետիկը սկսաւ իր նաւերը ուժովցընել , հրաման խրկեց իր նաւատորմիղին որ մեծ ծովուն մէջն էր ա-թուն կենալու թէ որ բան մը փրթէր Ֆիլէմէնկի դիմացէն . բայց անոնք ան ատենը աւելի ծանր բանի մէջ զբաղեալ ըլլալով լռութին եղավ աս բանիս վրայ ։ Ասոր վենետիկը գովասանք լսեց ուրիշ տէրութիւններէն իր ամուր կենալուն վրայ , որովհետև թէ որ վճարելու ըլլար՝ մէկ գէշ օրինակ մը պիտոր ըլլար նաև ուրիշ տէրութեց , երենց հրապարակին կամ ժողովրդեան պարտքը վճարելու համար ։

Աս ամմէն դիպուածներէն աւելի մեծ բան

եղաւ Վենետիկի տէրութեանը իրեն ծեծ բանալը Թունուզի օճախին վրայ, որ 1781էն սկսաւ ոչինչ գրգռութեամբ մը. ան տարին քանի մը Թունուզցի վաճառականներ Վենետիկի նաւ մը ըստըրկով բռնելով Իսքէնտէրիէն դուրս ելան. Թէպէտ և նաւապետը հիւանդ էր, անոր տղան հասկընալով որ ժանտախտի ցաւ էր մտած նաւուն մէջ ուզեց Փինէ ըսուած կղզին ելլալ, բայց երկըրցիք թող չտուլին դուրս ելլալու, մանաւանդ թա ուզեց մտնալու՝ հանալ ներս չառին, և ոչ նաւավարներ խրկեցին որոնց կարօտ էր, այլ իրեն աչքին առջին նաւը բռընկցուցին մէջի բաներով երեցին. Աս եղած դէպքը՝ և ուրիշ ասոր նման բաներ պատճառնելով Թունուզի ծովապատակները (խուրսանները) շատ նեղութիւն կուտային Վենետիկի նաւերուն. երբոր ասոնք բողոք կըվերցընէին՝ Թունուզցիք ըսպառնալով մեծ դումար բստակ կըպահանջէին տարին. մէջերնին գտնալու խորհեցին՝ ընծայ խրկեցին Վենետիկի դիւացէն, Թունուզցիք ընծաները չընդունեցան, այլ աւելի յանդգնելով Վենետիկի քօնսօլին դարպասը վառելով, Վենետիկի տէրութեան նշանները վար ձգեցին.

Ասոր վրայ հարկ եղաւ Վենետիկի տէրութիւը Թունուզին վրայ խրկեց կարիճ պապետը Անճելօ Էմօն կարգէ դուրս Գափիդան անուանելով, որ 1784, նաւերով գնաց Կօլէթթա Թունուզին քաղաքը պաշարեց. շուշա քաղաքնալ հավան Թօփխնէ

րով ծեծել սկսաւ, շատ վնաս տըրվավ։ Աս էմօն շատ քաջ մարդ պատերազմասէր ու վարպետ զօրագլուխ ըլլալով կրցաւ մօտիկնալ ինչվան Թունուզ քաղքին ծովեզերքը, ուր տեղ ծանծաղ (սըղ) ըլլալով ինչվան հիմա մէկը չէր կրցած նաւերով մօտիկնալ. ասիկայ սալեր շինել տըրվավ փչիներու վրայ որ վեր կըբռնեին, ան սալերուն վրայ մեծ թօփեր դնել տըրվավ, ասանկով համարձակ կըմօտիկնային քաղաքը կըզարնեին. թօփը պարպածին պէս հեռուն ձգած երկաթ ունեին, պօձուրղատով քաշելով երկըթի դին կըհեռընային, թօփ նետօղներուն առջինալ չուալներով աւազ դրած ըլլալով, քանի թօփ որ նետեին քաղքէն՝ գնտակները ան աւազին կըզարնեին, նետօղներուն վնաս մը չէին կրնար տալ. հեռընալու ատենը թօփերը նորէն կըլեցընեին, ուրիշ երկաթմընալ քաղքին մօտիկ ձգած ունեին՝ անիկայ պօձուրղատով քաշելով նորէն քաղքին կըմօտիկնային կըպարպեին։ Ասանկ վարպետութենով հնարքներով մօտիկնալով հեռընալով շատ վնաս տըրվավ քաղքին՝ որ առջիներէն մէկը չէր մտածած չէր ըրած, ասանկով մեծ անուն հանեց էմօն ինչվան ինկիլիզներու մէջ. նոր հավան թօփուալ թափել տըրվերեր խիստ մեծ՝ որ շատ հեռու կընետէր, շուշա քաղաքը անանկ ավրեց որ՝ ցամաքը զօրք հանելով մէջը պիտոր մտնար, բայց ան ատենը սաստիկ ժանտախտ մէջը ընկած ըլլալով ետ կեցաւ։

Նոյն 1785 կօչէթթային առջին ըլլալով Թուղթ գրեց պէյին յորդորելով որ՝ պարապ տեղը չխտանջրվին խաղաղութի ընեն, պէյը հաւանեցաւ խաղաղութի ընելու միայն իրեն հետ, բայց էմօն հասկըցուց որ՝ խաղաղութեան թէութիւնները ընդունելու՝ պէտք էր որ վենետիկի առեանը որոշէ, անոր համար զինադուլ (մութարէքէ) ըրին 40 օրվան։ Վենետիկի առեանը աս թէութիւնը դրավ որ՝ Թունուզը աս պատերազմին ամմէն խարճը վճարէ, վենետիկնալ ասկէց ետքը տարեկան տուրքը Թունուզին չվճարէ. Թունուզը աս թէութիւներս յանձ չառնելով ծեծը չդադրեցաւ, էմօն 1786 ըսֆաքս ու պիզէրթա քաղաքները կործանեց։ 1789 ռէնեէռի դուքսը մեռաւ, անոր տեղը մարտի 9 նստաւ լուտովիքոս մանին բարեպաշտ մարդ, որ եղավ վերջի դուքսը ինչպէս որ ետքը ունինք պատմելու, բայց Թունուզին ծեծը միշտ կըքշէր, միայն ատեն ատեն զինադուլ ընելով կըդադրէր, երբոր 1790 մենք զանթա գացինք, հոն գտանք էմօն 6 մեծ նաւերով կեցած, մնացածները մալթա կըսպասէին, որոնք ամմէնը մէկ տեղ 30 նաւու չափ կային։

Իտալիոյի տէրութիւնները 1791 հասկընալով Ֆրանսզին պատերազմը՝ մէկ կապ մը ուզեցին մէջէրնին ընելու. վենետիկը աս առաջարկութիւը չընդունեց, միայն իր նաւերը Ճերմակ ծովին մէջը պահեց աւելի իր չէզոքութիւնը պահել տալու վախցընելու համար, չըլլայ որ մոսկովի ու տաճկի մէջ

ծեծ ըլլալովը՝ իր երկիրներուն վրայ յարձակին. անոր համար լսելով որ մոսկովը նաւեր պիտոր գան Ճերմակ ծովը՝ վենետիկը շտապուց իր նաւերը։ Նոյնպէս ուրիշ ամմէն տէրութեանց օգտակար եղաւ, որ պարպարբշիներուն ծովապատանները Էմօին նաւերէն վախնալով դուրս չէին կրնար ելլալ, վաճառականի նաւերը համարձակ կը պըտըտէին։

Բայց Էմօն 1792 մեռաւ մալթայի մէջ, մալթացիք իրենց մեծ համարումն որ ունէին առ քաջունակ զօրավարին վրայ ցըցուցին իրեն թաղման ատենը. ցամաքէն մինչեւան նաւը տանելու վրայ ծովի մէջ Ճամբայ շինեցին, իր մարմինը նաւէն առին ամմէն զինուորներով հազարապետներով մեծերով, ամմէն քահանայներով թափօր ըլլալով եկեղեցին բերին, ասնի պէս քաղքին խանութներնալ գոցել տըվին, ամմէն աղքատաց ողորմութ բաժնեցին. Սենեաորկի տէրութիւնալ հրաման գրեց որ մէյմը մալթա թաղելով մարմինը զմուել վենետիկ բերել տըլվալ պէյլիկ նաւով մը որ բոլորովին սեւ էր գունաւորած, վենետիկ քաղքին մէջնալ անանկ մեծ հանդիսով ամմէն զինուորական կարգով ծովացամաքէ՝ վենետիկցիի ու խորվաթի զինուորաց բազմութիւն, եղբայրութենց ու քահանայից ընկերութիւն, նը մարկոսի եղբայրութեն տեղէն մարմինը առին ու զարդարուած դըվածէր, բերին իրեն հօրենական գերեզմանին մէջ թաղեցին, որ նածածնոյ

Ծառայից եկեղեցին է։ Սա տէրութիւնը մանաւանդ Լինկոլնը աթոռ վրայ գովասանք տըվին իր քաջութենը ու խելքին համար ծովային պատերազմի մէջ. Վենետիկի տէրութիւնն ալ իր արձանը մէրմէրէ շինել տալով անուանի Քանօվա վարպետին Թէրսանէին դըրաւ, անանկ վարպետաբար՝ որ գիտես թէ կենդանի է։

Կօնտուլմէր ասպետը Էմօին տեղը զօրագլուխ եղաւ, նոյն տարին հաշտութիւն ըրաւ Թունուզի օճախին հետ, կըսեն որ աւելի Էմօին յորդորելովն էր որ Վենետիկի տէրութիւնը Թունուզի դէմ ծեծ բացաւ, առջաւ տարի Նաւատորմիղ (տօնանմա) ծովքի վրայ պահեց, որուն համար թէպէտ Էմօն ամմէն տարի կըխարճէր ինչ որ իրեն տարեկան եկամուտ ունէր, բայց ասանկալ ըլլալով տէրութեան շատ վնաս տըվաւ, անոր համար հիմա ծանր խարճերով հաշտութեան ընելով գոցեց։ Տէրութեան խազնան անանկ պարպըված էր որ՝ բան մը չունէր երբոր աւելի հարկաւոր բաներ ելան Ֆըրանսզի դիհացեն։ Երկու փորձանքալ պատահեցաւ սա ծեծին ատենը բուն Վենետիկ քաղքին մէջը, որ շատ վնաս տըվաւ խարճերուն, ոմանքալ թշնամիներէն եղած կարծեցին. մէկը աս եղաւ որ՝ ծեծին առջի տարիները երկու նոր մեծ Ֆուխաթա շինած Թէրսանէին դուրս հանեցին, մէկ Ֆուխաթան յանկարծ գիշերվան մէջ բըռընկեցաւ, իր ամմէն բանովը ամբողջ երեցաւ, ուրիշ վաճառականի նաւ մըն ալ

## Սպանիային հարկաւորութիւնները, Գ. Կարոլոսին մահը.

## 1787—1788:

Հինգ տարի մը կար՝ որ սաստիկ պատերազմունքը դադրած ըլլալով խաղաղութիւն կըվայելէին Եւրոպացիք՝ ամենէն աւելի Սպանիան, որ Գ. Կարոլոսին կառավարութիւնը ան բարիքը կըվայելէր՝ ինչ որ խաղաղութիւնը ու վաճառականութիւնը կըբերէ, բայց որովհետեւ Սպանիայի ազգը ընդհանրապէս չունէին ճարտարութիւն, չէին մտմտար աշխատելու որ ապրին, անկից շատ մուրացկան աղքատներ կըգտնըվէին՝ որ աս դիս ան դին կըպտըտէին մուրալու ապրուստ գտնալու ուրիշներուն վրայ ծանրընալով. ասով կըզըրկէին ողորմութենէ ան մարդիկը՝ որ իրաւ աղքատ էին: Ասոր բանիս վրայ շատ ցաւելով Գ. Կարոլոս թագաւորը մտածեց. ամէն Սպանիայի երկրի մէջ քանի եպիսկոպոսական թեմ կան՝ մէյ մէկ կամ աւելի հոգետուններ շինել տըվաւ, Ողորմութեան տուներ անուանելով, որպէս զի աղքատները հոն կերակըրվին, հոն գտնան հոգեւոր և մարմնաւոր պիտոյքը. աս հոգետուններուն համար եկամուտ կապեց թագաւորական խազնայէն, բայց որովհետեւ չէր օգտէր՝ ուզեց որ եկեղեցականք ալ իրենց եկամուտներէն կտոր մը օգնութիւն տան: Ասոր բանիս համար գրեց

որքաղան պաշտօնին որ էր Դ. պիտո, անկէց Հրամանն ընթրել տըվաւ. եւքը իր Հրամանայա կան Թուղթնալ Համնեց ամենէն եպիսկոպոսներուն 1787 դեկտ. 8. Թէ ամենէն եկեղեցականք որ տարեկան եկամուտ մը կըքաշէին, ան եկամուտէն տուրք տան վերջիշեալ Հոգետանններուն ։

Արտօլու ըս բաներու կարգաւորելու առենը Համկըցաւ որ՝ իր տղան որ էր Նաբօլի Թագաւորը Դ. Ֆերտինանտոս, Հակաճառութիւն ուներ Հռոմայու Հետ ․Բինեա տուրքին վըրայօք, ինչպէս որ ինքնալ առենօք երկու անգամ 1739, 1753 (կամ 1754) կալու Թողուցերեր ան տուրքը, Հիմա Ջանաց ու վիճմունքին մէջը գտնալ, բայց ատենն չունեցաւ ձախորդ դիպուածներու Համար, վասն զի ծաղկի Հիւանդութիւնը որ շատ մարդ տարերէ պօրպօնեան տունէն՝ (որ Ֆրանսայի ու սպանիայի Թագաւորին տունն է), Հիմաալ Հոկտեմ. մէջ Թագաւորին տղին գաբրիէլին կնիկը՝ որ կըավէր մարիանա վիքդօրիա պըրտուկանցեան, տղաբերքէն եւեւ ծաղկէն բռնըվեցաւ մեռաւ 20 տարվան 1788 Նոյեմբ. 1. Նոր ծնած տղանալ անոր եւեւէն մեռաւ. իսկ Նոյեմբ. 23 գաբրիէլ իր էրիկնալ մեռաւ ։ Աչչափ կսկիծ մէկ ամըրվան մը մէջ իրարու եւեւ քաշելով կարոլոս Գ. չիդիմացաւ ինքնալ ան տարվանը մէջ 1788 դեկտ. 14 մեռաւ 73 տարվան, բարի օրէնակ Թողլով քրիստոնէութէն ։

Մեռնելէն առաջ իրենններուն մանաւանդ

միշտ անշփոթ միակերպ մնաց մանաւանդ պատերազմի ձախորդութեանց մէջը, որոնք կըհասկընար որ իր պաշտօնատէրերուն անհաւատարմութիւնքը ու պակսութիւնքը կըլլային ։ Թէպէտ քաջասիրտ էր երկու անգամ ինքը անձամբ պատերազմ մտաւ վտանգի մէջ դնելով զինքը, բայց պատերազմի դէմ էր, որոցաւ ըլլալով կըմեղադրընար ուրիշներուն արիւնը թափել, արդարուն դէմ բան չընելու համար խղճմտանք կընէր ։ Աղէկ կըմտածէր որ՝ իր ժողովրդեան հանդըստութիւնը չըլլար պատերազմելով, իրեն նման մարդերը ջարդելով, հապա կըլլայ արդար դատաստան տեսնալով, գետինը բանեցընելով աղէկ վարուցան ընելով, ժողովուրդը դատարկ չըպահելով, քաղաքաւորներուն արուեստաւորներուն սիրտ տալով, հնարագէտները ( մարիֆէթլիները) առաջ բերելով, բարի վարք ունեցող մարդիկը պատուելով ։ Իր խօսքին վրայ կեցող ըլլալով միշտ հաստատուն պահեց իր խօսք տրվածը մանաւանդ Փրանսային հետ՝ թէև իր շահուն վնաս ըլլար ։

Ասորուց գիտցէն բարի օրինակ մընէր ժողովրդեան, խղճմտանքաւոր, ժուժկալ, կանոնաւորեալ, մէկ մոլութին մը՝ անկարգ բան մը չէր երևնար վրան՝ բայց եթէ սաստիկ սէրը ողորմութեան (ալլի) վրայ, աս բանն թէպէտ խիստ յաճախ կընէր, բայց վնաս մը չէր ըտար իր կառավարութեանը. Ինչու որ՝ ոչ երբեք կըպակսէր խորհուրդէ

մէջ գտնըւիլը իր երկան թագաւորութե̄ն ատենը՝ որ 24 տարի Նաբօլիի վրայ թագաւորեց, 29 տարի սպանիայի վրայ։ Հաւատքի բաներուն ջատագով եղաւ, հռոմայ քահանայապետը պատուօղ, թէպէտ և երբեմն հռոմայու հետ վիճմունք ունեցաւ իր թագաւորութե̄ն իրաւունքը պաշտպանելու համար ինչպէս որ կըկարծէր, հռոմայու աթոռնալ միշտ իբրև յարգելի որդի ունեցաւ զինքը։ Երբոր մէկ պաշտօնատէր մը կընտրէր կըդնէր՝ անիկայ փոխելու կըդժուարէր, վախնալով որ՝ աւելի գէշի մը չիհանդիպի, ընտանի ու ներքին բարեկամութի ունեցաւ միշտ լօսստայի դքսին հետ, անոր ձեռքովը իժիր կըթղթակցէր դանուչչի մառքեզին հետ՝ որ Նաբօլիի վեզիր էր թողուցեր։ Շատ կըսիրէր Նաբօլի քաղաքը՝ որուն մէջը անցուց իր առջի երիտասարդութե̄ն օրերը, և որուն վրայ միշտ խօսք կըբանար, գիտնալով որ ամմէն քաղաքըցիքեալ զինքը կըյիշէին, որովհետև ատեն մը երեսէ ձգած քաղաք ըլլալով՝ իր ատենը դարձաւ մէկ նոր տեղ մը եղաւ Նաբօլի՝ ինչպէս որ առաջները պատմած ենք։ Վերջապէս մէկ թագաւոր մը եղաւ որուն ատենը սպանիան մեծցաւ կարողութե̄, հարստութե̄, ու վաճառականութե̄, օտար ազգաց առջինալ համարում ունեցաւ։

Ասոր մեռնելէն ետև Դ. կարոլոս իր տղան նստաւ սովորական հանդիսով, բայց առանց թագադրութե̄. որովհետև սպանիա սովը

բութն չկկայ Թագաւորին Թագ դնելու. ասիկայ Նաբօլի էր ծնած 1748 Նոյեմ. 12. Խնչ որ իր հայրը կարգաւորած էր՝ ամենն բանը իր հօրը ըրածին պէս Թողուց, միայն Թէ մէկ քանի նաւ մը խրկեց որ՝ Նաբօլիի Թագաւորին յանձնէն ամենն պատկերները՝ զարդերը՝ ու պատուական բաները, ուրոնցմով մեանօզ Թագաւորը որոշերեր Քազէրդա մեծաշէն բերդը զարդարելու: Նակից շուտ մը ձայն ելավ հռոմայու մէջ Թէ՝ ան մտքով ատենք հան խրկեց որ՝ իր եղբայրը բանադատելի ան երկիրները տալու, ուրովհետեւ Խնքը Թախտը նստաւ խօսք տալով հռոմայու՝ Թէ նորէն սահմանէ վերինեա ըսված ընծային հանդէսը՝ որ խափանված էր Խնչպէս որ վերը յիշեցինք. Իրաւ է որ քանի մը բանի համար քիչ մը պաղութիւն ընկած էր Նաբօլիի ու սպանիայի մէջ՝ ան պաղութը առիթ տըվավ աս խօսքերս ձանձընելու՝ բայց սուտ էն: Նոր Թագաւորը Դ. կարոլոս ամենն բանը իր հօրը ուզածին կերպէ կարգաւորելով ջանաց որ՝ ծեծերն կրակնալ մարել տայ, ու դեց միջնորդ ըլլալ իրեք տէրութեց մէջ որ հաշտեցընէ:

## Ինկլիզին Վրայ Եղածները.

## 1788.

Ամերիկայի պատերազմին ատենը ինկլի-զին վաճառականութիւնը շատ նեղուած քաշեց, որովհետեւ Ֆրանսզները առերէին աֆրիկէին ան քիթը՝ որ կըսվի Հրուան-դան Բարեյուսոյ, անոր համար ինկլիզին նաւերը որ Հնտիստան կերթային՝ չէին կրնար ան երկան ճանապարհորդութեը մէջ հոն հանգչիլ՝ հանգիստ առնել՝ իրենց պէտքի բաները առնել, ինչպէս որ առաջ կրնէին թէ իրենք՝ և թէ ուրիշ ամէն եւրոպացոց նաւերը։ Ասոր ճարը գտնա-լու համար 1788 ինկլիզները մտածեցին՝ ան դիերը մէկ նոր տեղ մը սահմանեցին՝ նոր ժողովուրդ բերելով, որ ըսվեցաւ Պօ-դանի պայ, ան տեղը շուտ մը սկսաւ շին-նալ ծաղկիլ բազմանալ, միայն թէ մէջին-ները ամէնն ալ յանցաւոր մարդերէն էին, որոնք հոն խրկեցին գետինը բանեցընելու։ Աս տարի քննութի ընել սկսան ինկլիզնե-րս Հասդինկ անուն պէնկալայի կառա-վարին վրայ՝ որուն համար ամէնն ալ ծանր ամբաստանութի կընէին՝ թէ Հնտիստան եղած խեղճ ժողովրդեան վրայ շատ անի-րաւութի կըբանեցընէր, անոնց ռաճայնե-րուն կամ իշխաններուն վրայ շատ բար-բարոսութի կընէր։ Ասոր քննութիւնը քրէա-կան յանցանքի վրայօք շատ տարի քշեց,

բայց բան մը չեղաւ. մեծ յանցաւորները մեծաւ պաշտպան կունենան իրենց ։

Անկլիզին Թագաւորը Գ. գէորգ՝ առաջ մէկ խորունկ մաղձոտութիւն մը մէջ էր ընկած, կամաց կամաց անանկ եկաւ որ՝ սա տարի խելքին վնաս եկաւ, փախուց, տաքութիւնալ վրայէն չէր պակսեր. հարկ եղաւ տեղը կառավար մը դնել, բայց ասոր վրայ շատ վիճմունք եղաւ, որովհետեւ օրէնք էր որ առանց Թագաւորին հաւանութեան չըլլալի ։ Անուանի բիդդը իր խոհեմ կենցաղակրթութիւնը ուզեց բանը երկնցընել, բայց բժիշկները յուսահատցընելով շատ վիճմունքէն ետեւ՝ կալլէսի իշխանը որ Թագաւորին տղան էր, կառավար դրին իշխանութիւնը չափաւորելով. զարմանքը սա եղաւ որ՝ վճիռը եղածին պէս Թագաւորնալ կատարեալ ըռընտցաւ Ճարպիկ բժըշկին ձեռքովը որ կըսվէր Ուիլիս, ասանկ բանի մէջ խիստ վարպետ ։

Այս տարի յունվ. 31 կարոլոս Էդուարդ ըստվարդեան մեռաւ 67 տարվան հռոմայու մէջ, ուր շատոնցվընէ փախած օտարութիւն ու մաղձոտութիւն կընստէր, հետեւեալ տարինալ 1789 իր դուստրը քաւլօդդա ալպանիոյ դքսուհին մեռաւ 37 տարվան պօլօնիա քաղաքը երկան հիւանդութիւն քաշելով ։

## Տեղ տեղ կրակ կելլայ, տաճիկը Պապուայըն պօղաւը Ծովաբոլ առաջ կերթայ.

## 1788.

Աս ատեններս Նեմցէի զօրաց մէջը ամէն օր հազարներով մեռնիլ կըհանդիպէր տենդէն ու տիրացաւէն, այսինքն ըթմայէն ու հիւմմայէն. ասդիս անդինալ երեք պատերազմօղ տէրութեց մէջ կրակներ հանդիպեցան, երբոր զէմլին էր Յովսէփ կայսրը հոն բանակը եկաւ եղբօրորդին Ֆրանչիսքոս (1), իր հարսնիքէն քանի մը օր ետև, և ընոնց զէմլին եղած ատեննին կրակ եղաւ շատ տուն երվեցաւ, ասանկալ վերին մաճառքին մէջ Եբերինեօ տեղը կրակ եղաւ. մոսկովի մէջալ Նօվօկօրօտ քաղաքը մեծ մասը երվեցաւ. պօմնային սերայ ըսված քաղաքնալ մեծ կրակ ըլլալով 10 հազար տուն ու խանութ երվեցան:

Յովսէփ կայսրը երեք ամսի չափ զէմլինին մէջ մնալէն ետև դադրեցուց պատերազմը, փոխել մտածելով իրենց ծեծկըվելու կերպը. առաջ Նեմցէի զօրապետները կարծեցին որ քիչ զօրքով կըլլայ տաճկին դէմ դնել, հերիք է ըսին սահմանակից տեղերը

---

(1) Աս Ֆրանչիսքոս հիմակվան կայսրն է, ան ատենը հարսնիք ընելով մասկովի Թագուհիին Ք. Կատարինէին պզտիկ քոյրը առած էր, որ կըսուէր Եղիսաբէթ Վիրդդեմպերկի Ըշդուդկարդեան:

տըկվին ։ Վեզիրը շատ զօրքով դմըշվարին վրայ խրկեց վէտինի փաշան, որոնք դունան անցնելով Նոր օրշօվայէն անցան մօտան դմըշվարին պահնադը, որ մաճառին երքի գաւառն է արևելեան դին (1), տաճկներուն կտրիճ զօրքը հին օրշօվա կամ խրշօվա ըսըված բերդը առին, անկից գացին ըսդուբ-բանէք և ուրիշ տեղվանք առին ։ Սեա-տիսային կիրճը (պօղազը) անցնելու պզտիկ բերդ մը կար որ թող չէր տար, փաշան շատ ոսկի ետևէ եւ ցանելով գետինը անանկ լեռան գլուխը ելավ, իր ետևէնալ կըյորդորէր ամենքնալ թօփմը վեր քաշելու, իրեն յորդորները՝ ըստըկին սերը՝ մէկ տեղ ժողվել տըլվավ անչափ քաջութիւն զօրաց որ՝ ամենքը մէկ սիրտ եղած ամենն ուժով թօփը քաշեցին, անանկ վեր անելանելի տեղ հանեցին, ուր որ ամենեւին ճամփայ չիկար, և ուր որ նեմցէները չէին կարծեր ամենեւին թէ հոն թօփ կարենան հանել ։ Աս թօփս վեր հանելէն ետև տաճկըմները՝ սկսան ան պզտիկ բերդը թօփոտել՝ որ շուտ մը անձնատուր եղավ, որովհետև շատ վարը չինված ըլլալով չէր կրնար ամենեւին դէմ դնել ։ Տաճկին զօրացը մէջ շատ արի կտրիճներ կան՝ որոնք թէ որ գլուխ եղօղը գտնայ աղէկ կառավարել, իրենքալ աղէկ հնազանդութիւն ունենան, չիկարծած

(1) Հ. Կարոլոս կայսրը պզտիկ ուլահը Ք. սուլթան Մէհէմմէտին տալէն ետև՝ ամէն աս գաւառը բաց թողուցած էր ։

քաջագործութիւներ կընեն ։ Պատերազմին մէջի եղօղները մեզի կըպատմեին որ՝ ատ բերդս առնելէն ետև՝ մէկտախային պօղազը իրենց առջին բացվեցաւ, ամմէն տաճկին զօրքը ներս դիմեցին, 18 գեղվանք որ ան դաշտին մէջը կային՝ ամմէննալ մէջի բնակիչներով առին ։

Տաճիկը դունային գետեզերքը եղաւ, նեմցեներեն շատ մարդ կըջարդէ ։

1788 ։

Երբոր յովսեփ կայսրը լսեց որ՝ տաճիկը նեմցեներին երկիրը մտերէ՝ շուտ մը իր ընտիր զօրքը առնելով ու լաւշի մաւեշալը՝ վազեց հոն եկաւ, կէմմինկէն զօրապետը 25 հազարով զեմլինի մէջ թողուց, տեսնալով որ՝ տաճիկը միատխ առերեր, գարանշեպեշ եղած զօրքը ետ քաշեց, 60 հազար զօրքով լուղուշը կամ լուկօսը կեցաւ, որ տաճկին չիթողու դըմըշվարը պաշարելու, և զիեպն պիրկն կամ դրանսիլվանիայի մէջը վազելու, ինչպէս որ միտք ունէին տաճիկները, բայց շատ ցաւեցաւ երբոր լսեց որ բաքիլլա նեմցէ զօրապետը նեղը իյնալով թողուց լասսամաու տեղը, ան ատեն տաճիկները բազմութիւն ցրուեցան դունային գետեզերքը կերակուր գտնալու համար ։ Վեզիրնալ բանակը (օրտուն) գետին քովը բերաւ, 26 հազար հոգի հին օրշօվային տակը թողուց, 10 հազար սեւերին աշտարակին

մօտիկ. 30 հազարաւ քռայօվլին դէն Թէրց-
ալուրկ կիրճին (պօղազին) մօտիկ: Սեպտ.
սկիզբը տաճիկը ջանաց վանդէռալէպէն զօ-
րապետին կռնակը անցնիլ, բայց ասիկայ
ամմէն տեղ իր դ.էմը բերաւ Թող չխտրվավ,
տաճիկը ջանացաւ որ՝ կայսեր բանակին հետ
հաղորդակցութիւնը կտրէ՝ անսաւ չյաջողե-
ցաւ, բայց տաճիկը շատ զօրք ջարդեց նեմ-
ցեներէն, շատ բան առաւ, 20աւ Թօփ, ա-
նոր համար լիպլիէն զօրապետը շատ նեմցեի
գեղ ձեռքովը երեց, որ տաճիկը հոն չկըր-
նայ կենալ:

Սեպտեմ. 21. շատ յաջողութի եղաւ տաճ-
կին, շատ վտանգաւոր գիշեր եղաւ նեմցե-
ներուն համար, լուղուշին քովերը հազար
առապայի չափ պաշար (զահրէ) կերթար
նեմցեին, ասոնք տաճկին ձեռքը ձգելու
համար՝ ուլահցի զօրքը որ նեմցեի հետ էին՝
դաւաճանութի ընելով գիշերանց աղաղակ
վերուցին որ տաճկընները կուգան զէնքեր-
նիդ առէք, աս ձայնս ամմէննաւ վախցուց
շփոթութե մէջ ձգեց, արտորալէն ձիերը
առապաներէն քակեցին արձըկեցին, անան-
կով փախչիլ սկսան, ամմէն բան տաճկին
ձեռքը Թողլով: Ըսինաւ որ՝ աս փախչօղ-
ները նեմցեի բանակի մէջնաւ շփոթութիւն
բերելով գիշերանց՝ անոնքաւ սկսան փախ-
չիլ, մութ ըլլալով անանկ կարծեցին որ
ետեւի եկօղները տաճկըներն են՝ մէկզմէկ
Թշնամի սեպելով իրար զիրար կըզարնէին
շփոթելէն. ասոնց մէջն էր նաեւ յով-
սեփ կայսրը՝ որ արտորնօք փախչելով 5 ժա-

մու չափ ձիէն վար ընկաւ, կուրծքը քարին զարկաւ, ուրիշ ձիու մը վրայ հեծնելով հա-զիւ փախաւ, ու գիշերվան դիպուածը ի-րեն ողջութեան շատ վնաս տալով սկսաւ արիւն թքնել, իր մահը արտորցուց : Ուրիշ մը ետքը երբոր Նեմցէները Թեմիշ գետը կանցնէին՝ որոնց առաջնորդ նոյն տեղս ուլահցիներ էին, տաճկընները ծուռ (սուտ) ճամփով մը երկրագործ Նեմցէ-ներուն վրայ հասան, խեղճերը ջարդեցին, նաև հուսսար զօրքերէն շատը՝ որ ան գա-ւառները պահելու համար կեցերէին : Ա-սանկ ջարդ ըրաւ տաճիկը քեռնիա, բան-ջօվա, վիրալանքա, և ուրիշ տեղվանք՝ որ վարի պանատի մէջն էին, առանց բաւա-կան զօրքի թողուցերէին, հոն գտնված հի-ւանդանոցները՝ մահճէկները՝ հիւանդ ու անզէն զօրքերը կոտրեցին, միայն թէ ինչ-վան Թեմիշ ու մարօշ գետը կրցան վա-զել, Նեմցէն զինքը ապահովցուց իր զօրքը ժողվելով գարանշէպեշին ու դմըշվարին մէջ տեղը նստեցընելով :

Տաճկին Հանտը դրանսիլվանիա մտնալը, Եանաքնէ-րուն քաշվիլը .

1788 :

Յովսէփ կայսրը երկրորդ անգամ սաստիկ տենդ (սթմա) ունեցաւ, հազալով արիւն թքնելով, բայց նորէն զինքը զօրացուց, տաճկըները չէին դադրեր մէկ քանի նեղ

կիրճերէն (պօղազներէն) կըջանային դրան-սիլվանիա կամ զիէպն պիրկն անցնիլ, հոն եղած մաճառ զօրքերը կոտրտելով, որոնց մէջն էր նաև Թուռաւթթի քաջ զնդապե-տը, բայց մառէշալ Փասքիս կոմսը որ ի-դալացի էր ազգով՝ Թող չտըրված առաջ խաղալ, ասանկալ տաճկընները ռօքուռ տե-ղը վրայ վազելով նեմցէներէն որը կոտրտե-ցին, որը փախուցին, ինչպէս որ մուլլէնս հովտին (տէրէին) մէջը մէկ քանի բարձր տեղեր առին, պապա տաղիէն մերիպզօնի դին եկան: Բայց ուրիշ տեղերէն հալած-վեցան, մանաւանդ տէմիր խափուն ու հարդէցէկ հովտին մէջը՝ ուր տեղ որ երկու Փասքիս զօրապետները դէմ կըդնէին, իսկ երբոր ըսըլէնի նեմցէ զօրապետը ճամ-փայ բացաւ միացուց իր բանակը էլմէդ մու-կով զօրապետին բանակին հետ՝ որ ինչվան օքանին մօտիկ եկերէր, ան ատենը դրան-սիլվանիա վազելու ճամփան գոցվեցաւ տաճկին առջին. քօպուռկ իշխանինալ գը-րացուց վանդէրսլէպէնը:

Հոկտեմ. 5. քըմբըլունկէն ուզեցին տաճ-կընները վազել, բայց երբոր անալ չկըյաջո-ղեցաւ՝ աս ամսուս մէջը բոլորովին դադրե-ցան դրանսիլվանիա վազելէն, որ հարիւր տարվընէ վեր չէր տեսած ասանկ զօրաւոր Թշնամի: Տաճիկը Թէպէտ նեմցեին շատ տեղվանքներուն միսաս ըրվերէր, բայց մէկ քաղաք մը կամ բերդ մը չէր ունեցած իր ձեռքը՝ որ հոն ձմերէ, իր բանակը ինչվան սեպտ. եաքը մէջտախային հովիտը կեցերէր,

Երբոր լեռները ձիւն սկսաւ գալ, դաշտավայր տեղվանքը անձրեւ, ան պղտոր ջուրերը գէշ օդը աւելի շատցուցին ժանտախտը բանակին մէջ, եւ որովհետեւ անտառօլցիք չէին կրնար չխտորված բաներնին քաշել, շատը կրձգեին կրփախչեին ։ Աս տեսնալով վեզիրը բանակը անկէց վերցուց պելկրադա տանելու համար, հոն թողլով սերասքեր փաշան. երբոր կայսրը իմացաւ տաճկին բանակին ետ դառնալը, անալ իր բանակը վերցուց ետեւնուն գնաց. վախնալով չըլլայ որ զէմլինին վրայ երթան, կամ կէմինկէն զօրապետին վրայ վազեն, որ միայն 20 հազար զօրքով ան տեղվանքն էր. իրեք օրվան մէջ եկավ առջի տեղը բանակեցաւ ։

Աս ատենները նեմցեի զօրքը աղէկ կարգի մէջ մտան, իրենց պաշարը (զահիրէն) դըրնալով, մանաւանդ երբոր քուաք զօրապետը հոկտ. 24 վիբալանքան առավ, վանդերսլէպէն զօրապետնալ դուրս հանեց տաճկըրները մէատիայէն, քօունիայէն, ու հին օրշօվայէն, անանկ որ նոյեմբ, մէջ տաճիկ չմնաց պաննադը, որը ուլահ փախաւ, որը սըրուֆ ։ Ռօմանցօֆ մառեշալնալ մօսկովին զօրքը առավ եաշ տարաւ ։

## Պօսնայի Դէպի Ծեծըլնէրէն.

## 1788:

Յովսեփ կայսրը խրվաթըլըխի ու պօսնայի վրայ զօրագլուխ խրկեց պարոն դեդեօն լավտօնը շատ պատուով, հրամայելով որ իրեն կայսերական ձիերէն 20 ձի տան, և իրեն ամմէն գանձը բանան՝ որչափ որ ուզէ՝ առնէ. ասիկայ թէպէտ ամմէնէն վարպետ զօրապետ էր, բայց վէննայ թողուցած էր, իրեն նախանձօղները շատ ըլլալով՝ իր տըված խորհուրդը մերժել տըվերէին յովսեփ կայսեր առջին: Նա ատենը լավտօն թէպէտ 73 տարվան ծեր էր՝ բայց սիրով հնազանդելով գնաց հոն, երբոր օգոստ. 16 բանակը հասաւ՝ ամմէն զօրք բարձր ձանով սկսան ուրախութիւնին ցըցընել, մտվընին դնելով որ՝ լավտօնին տակը իբր թէ պիտոր չի մեռնէին, ինչու որ՝ վարպետ ըլլալէն զատ, հօր պէս զօրքը կընայէր, սըրացաւ ու հոգացօղ ըլլալով:

Օր մը ետև իսկոյն իրեն արիութիւնը ձեռք առնելով ան ծերը՝ հրամեց տուպիցայի վրայ քալել, պօշնախները յարձըկեցան իրեն շինած պատնէշին (մէթէրիզին) վրայ, բայց չիկըրցան, լիճէն (կեօլէն) ուզեցին անցնիլ ինչպէս առաջ՝ բայց լավտօնը ութը թօփ դըրած էր մէկ յարմար տեղ մը, անով անցնօղները ծեծել սկսաւ. ետևնինալ զօրք խրկեց՝ որով մեծ մասը կոտորվե-

բայց բան մը չեղաւ. մեծ յանցաւորները
մեծաւ պաշտպան կունենան իրենց ։

Անկլիզին Թագաւորը Գ. Գէորգ՝ առաջ մէկ խորունկ մաղձոտութեան մը մէջ էր ընկած, կամաց կամաց անանկ եկաւ որ՝ աս տարի խելքին վնաս եկաւ, փախուց, տաքութիւնաւ վրայէն չէր պակսէր. հարկ եղաւ տեղը կառավար մը դնել, բայց ասոր վրայ շատ վիճմունք եղաւ, որովհետև օրէնք էր որ առանց Թագաւորին հաւանութեր չըլլալի ։ Անուանի Բիդդը իր խոհեմ կենցաղակրթութիւնը ուզեց բանը երկնցընել, բայց բժիշկները յուսահատցընելով շատ վիճմունքէն ետև՝ կալլէսի իշխանը որ Թագաւորին տղան էր, կառավար դրին իշխանութիւնը չափաւորելով. զարմանքը աս եղաւ որ՝ վճիռը եղածին պէս Թագաւորնաւ կատարեալ բռընտցաւ Ճարպիկ բժըշկին ձեռքովը որ կըսվէր Ուիլլիս, ասանկ
բանի մէջ խիստ վարպետ ։

Աս տարի յունվ. 31 կարոլոս եդուարդ ըստվարդեան մեռաւ 67 տարվան հռոմայու մէջ, ուր շատոնցվընէ փախած տրտմութեան ու մաղձոտութեան կընստէր, հետևեալ տարինաւ 1789 իր դուստրը քառլօդդա ալպանիոյ դքսուհին մեռաւ 37 տարվան պօլօնիա քաղաքը երկան հիւանդութի քաշելով ։

## Տեղ տեղ երաշ եըււայ, փաճիկը Ջաւրէայէն պօղաւը Ֆրանսայի տուաւ հերկայ.

## 1788.

Աս տարեններս Նեմցեի զօրաց մէջը ամէն օր հազարներով մեռնիլ կը հանդիպէր տենդէն ու տիրացուէն, այսինքն սրթմայէն ու հիւմմայէն. աստիս անդինաւ իրեք պատերազմօղ տէրութեանց մէջ կռակներ հանդիպեցան, երբոր զէմլին էր յովսէփ կայսրը հոն բանակը եկաւ եղբօրորդին Ֆրանչիսքոս (1), իր հարսնիքէն քանի մը օր ետև, իրենց զէմլին եղած տարեններին կրակ եղաւ շատ տուն երվեցաւ, սասնկալ վերին մաճառքին մէջ եղերիկս տեղը կրակ եղաւ. մոսկովի մէջաւ նովօկօռոտ քաղաքը մեծ մասը երվեցաւ. պօմնային սերայ ըսված քաղաքնաւ մեծ կրակ ըլլալով 10 հազար տուն ու խանութ երվեցան։

Յովսէփ կայսրը իրեք ամսի չափ զէմլինին մէջ մնալէն ետև դադրեցուց պատերազմըլը, փոխել մտածելով իրենց ծեծկըվելու կերպը. առաջ Նեմցեի զօրապետները կարծեցին որ քիչ զօրքով կըլլայ տաճկին դէմ դնել, հերիք է ըսէն սահմանակից տեղերը

(1) Աս Ֆրանչիսքոս հիմակվան կայսրն է, սոր առաջ նը հարսնիքը ընելով մոսկովի Թագուհիին բ. կատարինէին պզտիկ քոյրը առած էր, որ կըռմէր եղբարեթ վիրդդեմպերկ ըղգուգկարութեան։

կարգաւ զինուոր կեցընել՝ որ Թշնամին ուսկից որ գայ՝ հոն շուտ մը ժողվըվելով հալածեն, Թող չիտան, բայց աս դիրքս կենալով զեմլինին դիերը՝ առջի բերանը նեմցեններէն շատ մարդ կոտորեցին տաճկընեըը, ետքը սկսան խումբ խումբ կենալ նեմցերին զօրքը, բայց շատ տեղալ անհոգ եղան զօրք դնելու ամրըցնելու՝ տկար սեպելով տաճիկը, հիմա յովսէփ կայսրը տաճկին ուժը աղէկ մը հասկընալով ծեծը դադրեցուց, նոր զօրք հրամեց՝ բերելու աւստրիայէն ու պօէմիայէն, որպէս զի ատեն ունենայ ան զօրքերով մէկ նոր կերպ մը կարգաւորելու։ Ու Թէպէտ իրեն խրատ տըվին որ՝ մէկ հատիկ միջոց յաղթելու ան էր որ՝ մէկէն շատ զօրքով ինքը Թշնամիի վրայ վազէ, բայց կըսեն որ յովսէփ կայսրը վախցաւ իր զօրքը վտանգի մէջ դնել ան ատենը՝ որ շվէտը մոսկովին դէմ էր ելած։

Աս պատճառովալ եղաւ որ նեմցեները մոսկովին բանակին հետ չիկրցան միանալ, ինչպէս որ կըքաղձային, ինչու որ մոսկովի բանակին շատ զօրքը բեդրօպուրկէն կանչեցին որ՝ Ֆինլանտիային սահմանները պաշտպանեն շվէտին դէմ։ Իսկ տաճկին բանակը սըրուֆին ամմէն երկիրը անցնելով իր առաջապահ զօրքը ղրկեց ինչվան մօտիկ պէլիղրատի, պէլիղրատին մէջի զօրքնալ շատցուց, բայց բանակին մէջնալ շատ ժանտախտ ընկաւ, որ մէկ դիհացէն տաճկին աղէկ եղաւ, ինչու որ Թշնամինները կըվախնային ծեծ ընելու, չըլլայ որ իրենքալ պըրծ-

տըկվին ։ Մեզիրը շատ զօրքով դմըշվարին վրայ խրկեց վէտինի փաշան, ատոնք դունան անցնելով նոր օրշօվայէն անցան մոտան դմըշվարին պահնադը, որ մաճառին ետքի գաւառն է արեւելեան դին (1), տաճկնէրուն կտրիճ զօրքը հին օրշօվա կամ խրշօվա ըսված բերդը առին, անկից գացին ըսդուբբանէք և ուրիշ տեղվանք առին ։ Մէհատիային կիրճը (պօղազը) անցնելու պզտիկ բերդ մը կար որ թող չէր իտար, փաշան շատ ոսկի ետեւէ եւ ցանելով գետինը անանկ լեռան գլուխը ելավ, իր ետեւէնայ կըյորդորէր ամէննալ թօփմը վեր քաշելու, իրեն յորդորնէրը՝ ըստըկին սէրը՝ մէկ տեղ ժողվել տըվավ անչափ բազմութիւն զօրաց որ՝ ամէնք մէկ սիրտ եղած ամէն ուժով թօփը քաշեցին, անանկ վեր անելանելի տեղ հանեցին, ուր որ ամենուին ճամփայ չիկար, և ուր որ նեմցէնէրը չէին կարծէր ամէնուին թէ հոն թօփ կարենան հանել ։ Աս թօփս վեր հանելէն ետեւ տաճկընէրը՝ սկսան ան պզտիկ բերդը թօփոտել՝ որ շուտ մը անձնատուր եղավ, որովհետեւ շատ վարը շինված ըլլալով չէր կրնար ամենուին դէմ դնել ։ Տաճկին զօրացը մէջ շատ արի կտրիճներ կան՝ որոնք թէ որ գլուխ եղօղը գիտնայ աղէկ կառավարել, իրենքալ աղէկ հնազանդութիւն ունենան, չիկարծած

(1) Զ. Կարոլոս կայսրը պզտիկ ուլահը Բ. սուլթան Մէհէմմէտին տալէն ետեւ՝ ամէն աս գաւառը բաց թողուցած էր ։

քաջագործութիւններ կընեն ։ Պատերազմին մէջի եղօղները մեզի կըպատմէին որ՝ աս թերդս առնելէն ետեւ՝ մէջատխային պօղա-ղը իրենց առջին բացվեցաւ, ամմէն տաճ-կին զօրքը ներս դիմեցին, 18 գեղվանք որ աս դաշտին մէջը կային՝ ամմէննալ մէջի բնակիչներով առին ։

Տաճիկը դունային գետեզերքը կառնէ, Նեմցիներէն շատ մարդ կըջարդէ ։

1788 ։

Երբոր յովսեփ կայսրը լսեց որ՝ տաճիկը նեմցէին երկիրը մտերէ՝ շուտ մը իր ընտիր զօրքը առնելով ու լաւշի մառւէշալը՝ վազեց հոն եկաւ, կէմմինկէն զօրապետը 25 հա-զարով զէմլինի մէջ թողուց, տեսնալով որ՝ տաճիկը միատխա աւերէր, գարանշէպէշ եղած զօրքը ետ քաշեց, 60 հազար զօրքով լուղուշը կամ լուկօսը կեցաւ, որ տաճկին չիթօղու դըմըրշվարը պաշարելու, և զիէպն պիրկն կամ դրանսիլվանիային մէջը վազե-լու, ինչպէս որ միտք ունէին տաճկըները, բայց շատ ցաւեցաւ երբոր լսեց որ բաքիլ-լա նեմցէ զօրապետը նեղը իյնալով թողուց լաստամառ տեղը, աս ատենը տաճկըները բազմութիւ ցրուեցան դունային գետեզեր-քը կերակուր գտնալու համար ։ Վեզիր-նալ բանակը (օւտուն) գետին քովը բե-րաւ, 26 հազար հոգի հին օրշօվային տակը թողուց, 10 հազար սէւէրին աշտարակին

մօտիկ. 30 հազարաւ քռայօվլին դէն Թէրցալուրկ կիրճին (պօղազին) մօտիկ: Սեպտ. սկիզբը տաճիկը ջանաց վանդէռսլէպէն զօրապետին կռնակը անցնիլ, բայց ասիկայ ամմէն տեղ իր դէմը բերաւ Թող չիտըվավ, տաճիկը ջանացաւ որ՝ կայսեր բանակին հետ հաղորդակցութիւնը կտրէ՝ անալ չյաջողեցաւ, բայց տաճիկը շատ զօրք ջարդեց նեմցեններէն, շատ բան առավ, 20ալ Թօփ, անոր համար լիպիէն զօրապետը շատ նեմցեի գեղ ձեռքովը երեց, որ տաճիկը հոն չիկըրնայ կենալ:

Սեպտեմ. 21. շատ յաջողուն եղավ տաճկին, շատ վտանգաւոր գիշեր եղավ նեմցեներուն համար, լուղուշին քովէրը հազար առապայի չափ պաշար (զահրէ) կերթար նեմցերին, ասոնք տաճկին ձեռքը ձգելու համար՝ ուլահցի զօրքը որ նեմցեի հետ էին՝ դաւաճանութի ընելով գիշերանց աղաղակ վերուցին որ տաճկըները կուգան զէնքերնիդ առէք, աս ձայնս ամմէննալ վախցուց շփոթութէ մէջ ձգեց, արտորալէն ձիերը առապաներէն քակեցին արձըկեցին, անանկով փախչիլ սկսան, ամմէն բան տաճկին ձեռքը Թողլով: Ըսինալ որ՝ աս փախչօղները նեմցեի բանակի մէջնալ շփոթութիւն բերելով գիշերանց՝ անոնքալ սկսան փախչիլ, մութ ըլլալով անանկ կարծեցին որ ետեւի եկօղները տաճկըներն են՝ մէկզմէկ Թշնամի սեպելով իրար զիրար կըզարնէին շփոթելէն. ասոնց մէջն էր նաև յովսեփ կայսրը՝ որ արտորնօք փախչելով 5 ժա-

մու չափ ձիէն վար ընկաւ, կուրծքը քարին զարկաւ, ուրիշ ձիու մը վրայ հեծնելով հազիւ փախաւ, ու գիշերվան դիպուածը իրեն ողջութեան շատ վնաս տալով՝ սկսաւ արիւն թքնել, իր մահը արտորցուց: Քիչ մը ետքը երբոր նեմցէները թէմէշ գետը կանցնէին՝ որոնց առաջնորդ նոյն տեղս ուլահցիներ էին, տաճկըները ծուռ (սապ) ճամփով մը երկրագործ նեմցէներուն վրայ հասան, խեղճերը ջարդեցին, նաև հուսսար զօրքերէն շատը՝ որ ան գիւղացիները պահելու համար կեցեր էին: Ասանկ ջարդ ըրաւ տաճիկը քէօնիա, բանջօվա, վիրսալանքա, և ուրիշ տեղվանք՝ որ վարի պաննադի մէջն էին, առանց բաւական զօրքի թողուցերէին, հոն գտնված հիւանդանոցները՝ մահսէնները՝ հիւանդ ու անզէն զօրքերը կոտրեցին, միայն թէ լինչվան թէմէշ ու մարօշ գետը կըցան վազել, նեմցէն զինքը ապահովցուց իր զօրքը ժողվելով գարանշէպէշին ու դմիշվարին մէջ տեղը նստեցընելով:

Տաճկին ընկըրը գըրանսիլվանիա մտաւ, բանաքնէրուն ջարդվեցաւ:

1788:

Յովսեփ կայսրը երկրորդ անգամ սաստիկ տենդ (սթմա) ունեցաւ, հազով արիւն թքնելով, բայց նորէն զինքը զօրացուց, տաճկըները չէին դադրեր մէկ քանի նեղ

կիրճերէն (պօղազներէն) կըջանային դըրան-սիլվանիա կամ զիէպն պիրկն անցնիլ, հոն եղած մանճառ զօրքերը կոտրտելով, որոնց մէջն էր նաեւ Թուսաթթի քաջ գնդապետ-տը, բայց մառէշալ Ֆապրիս կոմսը որ ի-տալացի էր ազգով՝ Թող չիտրվալ առաջ խաղալ, ասանկալ տաճկըները ռօքուռ տե-ղը վրայ վազելով նեմցէներէն ոմը կոտրտե-ցին, ոմը փախուցին, ինչպէս որ մուլլէնս հովտին (տէրէյին) մէջը մէկ քանի բարձր տեղէր ասլին, պապա տաղիէն մերիաքօնի դին եկան ։ Բայց ուրիշ տեղերէն հալած-վեցան, մանաւանդ տէմիր խափուն ու հարդէյէկ հովտին մէջը՝ ուր տեղ որ երկու Ֆապրիս զօրապետները դէմ կըդնէին, իսկ երբոր ըսպլէնի նեմցէ զօրապետը ճամ փայ բացաւ միացուց իր բանակը էլմբդ մնա-կով զօրապետին բանակին հետ՝ որ ինչվան օքանին մօտիկ եկերէր, ան ատենը դրան-սիլվանիա վազելու ճամփան գոցվեցաւ տաճկին առջին . քօպուռակ իշխաննալ զօ-րացուց վանդերսլէպէնը ։

Հոկտեմ. 5. քըմբըլունկէն ուզեցին տաճ կըները վազէլ, բայց երբոր անալ չկյաջո-ղեցաւ՝ աս ամսուս մէջը բոլորովին դադըրե-ցան դըրանսիլվանիա վազելէն, որ հարիւր տարվընէ վեր չէր տեսած ասանկ զօրաւոր թշնամի ։ Տաճիկը թէպէտ նեմցէին շատ տեղվանքներուն մնաս տըվերէր, բայց մէկ քաղաք մը կամ բերդ մը չէր ունեցած իր ձեռքը՝ որ հոն ձմերէ, իր բանակը ինչվան սեպտ . եօքը մէջտախային հովիտը կեցերէր ։

Երբոր լեռները ձիւն սկսաւ գալ, դաշտա-
վայր տեղվանքը անձրեւ, ան պղտոր ջուրե-
րը գէշ օդը աւելի շատցուցին ժանտախտը
բանակին մէջ, եւ որովհետեւ անատօլցիք
չէին կրնար չխարված բաներնին քաշել, շա-
տը կրձգէին կրփախչէին։ Այս տեսնալով
վէզիրը բանակը անկէց վերցուց պէլիղրատ
տանելու համար, հոն թողլով սերասքեր
փաշան. երբոր կայսրը իմացաւ տաճկին
բանակին ետ դառնալը, ան ալ իր բանակը
վերցուց եաւենուն գնաց. վախնալով չըլլայ
որ զէմլլինին վրայ երթան, կամ կէմլինկէն
զօրապետին վրայ վազեն, որ միայն 20 հա-
զար զօրքով ան տեղվանքն էր. իրեք օրվան
մէջ եկավ առջի տեղը բանակեցաւ։

Այս ատենները նեմչէի զօրքը աղէկ կարգի
մէջ մտան, իրենց պաշարը (զահրէն) գըտ-
նալով, մանաւանդ երբոր քուաք զօրապե-
տը հօկտ. 24 վիբալանքան առաւ, վան-
դէրալէպէն զօրապետն ալ դուրս հանեց
տաճկըրները մէատիայէն, քօռնիայէն, ու
հին օրշօվայէն, անանկ որ նոյեմբ., մէջ տա-
ճիկ չմնաց պաննատը, ո՛րը ուլահ փախաւ,
ո՛րը որուփ։ Սօմանցօփ մառեշալն ալ մա-
կովլին զօրքը առաւ եաշ տարաւ։

## Պօտնայէ ԳԷՐԸ ԾԵԾԸՎԵՐԸ.

## 1788:

Յովսէփ կայսրը Խրվաթլըխի ու պօսնայի վրայ զօրագլուխ խրկեց պարոն Տեդէօն լավտօնը շատ պատուով, հրամայելով որ իրեն կայսերական ձիէրէն 20 ձի տան, և իրեն ամմէն գանձը բանան՝ որչափ որ ուզէ՝ առնէ. ասիկայ թէպէտ ամմէնէն վարպետ զօրապետ էր, բայց վեննայ թողուցած էր, իրեն նախանձօղները շատ ըլլալով՝ իր տըւած խորհուրդը մերժել տըվերեին յովսէփ կայսեր առջին: Սն ատենը լավտօն թէպէտ 73 տարվան ծեր էր՝ բայց սիրով հնազանդելով գնաց հոն, երբոր օգոստ. 16 բանակը հասաւ՝ ամմէն զօրք բարձր ձայնով սկսան ուրախութիւնին ցըցընել, մտվընին դնելով որ՝ լավտօնին տակը իբր թէ պիտոր չի մեռնէին, ինչու որ՝ վարպետ ըլլալէն զատ, հօր պէս զօրքը կը խնայէր, սըրտացաւ ու հոգացօղ ըլլալով:

Օր մը ետև իսկոյն իրեն արիութիւը ձեռք առնելով ան ծերը՝ հրամեց տուպիցայի վրայ քալել, պօշնախները յարձըկեցան իրեն շինած պատնէշին (մեթերիզին) վրայ, բայց չիկըրցան, լիճէն (կեօլէն) ուզեցին անցնիլ ինչպէս առաջ՝ բայց լավտօնը ութը թօփ դըրած էր մէկ յարմար տեղ մը, անով անցնօղները ծեծել սկսաւ. ետևնինալ զօրք խրկեց՝ որով մեծ մասը կոտորվե-

ցան իսկ բերդը չորս օր՝ թօփոտելով ,
անձնատուր եղաւ․ տասն օրվան մէջ ամ-
մէն բան փոխվեցաւ , յայտնի եղաւ որ ամ-
մէն գործքին աղէկութիւը կըկախվի գլխա-
ւորին աղէկ ըլլալէն ։ Լավտօնը ետքը Նօ-
վի բերդը պաշարել տըվաւ որ ունոա գե-
տին վրայ է , բայց մէջի պօշնախները ա-
նանկ կտրիճ՝ քաջ էին որ՝ ինչ որ լաւտօնը
ցորեկը կըքակեր , անոնք գիշերը կըշինէին․
ատնոց 8 հազար մարդ օգնութի եկաւ դը-
ւաշխըքէն , անոնցմով ամսոյն 21 վրայ յար-
ձըկեցան իրեք անգամ , բայց ետ փախան ,
վասն զի լաւտօն անանկ տեղվանք երկու-
մարտկոցներ (թասպեաներ) շինել տըվեր էր
պզտիկ թօփերով որ թող չէր իտար ։
Հոկտեմ․ 3․ Նեմցէները երկրորդ անգամ
փորձելով վրան ելլալով աշտարակ մը ա-
ռին անկից ետքը քաղաքը առին , ամմէն մէ-
ջի եղօղները անվնաս պահելով ազատութի
տըվաւ լաւտօնը , ձի՝ առապայ տըվաւ պռե-
տօր իրկեց , որուն վրայ բնակիչքը շատ
շնորհակալ եղան իրեն ։ Ետքը կռատիշ-
քայի վրայ գնաց , բայց 1789 ձմեռը սաս-
տիկ ըլլալով՝ լաւտօն դադրեցաւ ծեծկը-
վելէն , իր զօրքը հոն թողուց՝ ինքը վիէննին
գնաց որ կայսրը վիեննա չիգացած հետը խօ-
րաթէ , մէկ նոր կարգի մը փոխէ պատե-
րազմին կերպը , որովհետեւ իրմէ առջիննե-
րուն դրած կերպը չէր յարմարէր ամէնուին
իրեն վարպետութեանը ։

## Սև ծովուն վըայ ծեծկըռտուքը, Օզուին առնըլնուքը·
## 1788 ։

Տաճկին բանակին մէջը հիւանդութիւնը շատնալով 30 հազարի չափ հիւանդ կային, ծովու վրայի նաւատորմիղը (տօնանմա) դեռ պէյլիւքտէրէ կեցած ըլլալով մայիսի մէջ երկու մոսկովի նաւ Սէպաստաւպօլէն (1) դուրս ելան եկան Խնչվան դունային բերանը, հոն և ուրիշ տեղ մը երկու նաւ թօփտելով ընկղմեցին, ան ատենք անուանի Ճէզայիրլի Հասան խափուտան փաշան նաւատորմիղը պէյլիւք տէրէէն հանեց՝ սև ծովը տարաւ, որ 16 երկու խափախլը նաւեին, այնչափ մընալ ֆալխաթա, 7 քօռվէթ, 13 հավան թօփու նետող, ամէն պզտիկներով 80 նաւու չափ կային, Օզուին քովնալ Տնեբեր գետին բերանը ուրիշ պզտիկ նաւատորմիղ մընալ ունէր տաճիկը, ուր տեղ որ մոսկովնալ ունէր պզտիկ նաւատորմիղ մը պահպանութեան համար Քերսօնէն Խնչվան գըլըպուրունուն ։ Ասոնք շատ հեղ իրարու հետ կըծեծկվէին, անգամ մը 12 տաճկի պզտիկ նաւեր մէկ մոսկովի պզտիկ նաւ մը

(1) Այս Սէպաստաւպօլիսը Խըրըմ մոսկովին թէրսանէն է հիմա լիմանին մէջը՝ որ մեծ ծոցի մը մէջ է, որուն դուրսի քիթը կըսվի Ֆէնէնէկ պուռնու, ձմըռն Պալըքլավայէն արևմտեան դին, թէրսանէին քովը քաղաք կայ Աքեար անուն լէվանտերուն ձեռըմ-կութնը համար ։

գտան Թօփ նետող որ կլապաք կ՚երԹար, մոսկովին նաւապետը տեսնալով որ չի կրնար դէմ դնել՝ ցամաքին մօտիկցաւ, երբոր մէջինները ամմէնը ցամաքը ելան խալըսեցան, ինքը նաւուն մէջը մնաւ, ձէպխանէն բըռընկցընելով ինքնալ մէկ տեղ երկինքը ելավ, որուն ընտանեացը շատ բան կապեց մոսկովը ասանկ քաջուԹիւն ընելուն համար :

Երբոր խափուտան փաշան սև Ծովը ելավ, երկու պզտիկ մոսկովի պատերազմական նաւ բռնեց, ստանպօլ խրկեց, յունիսի 17 նաւատորմիղը՝ օզու գնաց՝ Թօփ նետելու չափ հեռու կեցաւ, մոսկովի պզտիկ նաւատորմիղին գլուխը էր պօղոս յոնէս, որ ամերիկացի ծովապատակ (խուրսան) մըն էր, ու ամերիկայի ծեծին մէջը շատ անուանի էր եղած, իսկ ամմէն մոսկովի նաւերուն զօրագլուխ էր Նասսօ սիէկէն իշխանը՝ որ նոյնպէս ամերիկայի պատերազմին մէջ ապանիային ծառայած էր, անկից մոսկովի ծառայուԹեանը մէջ մնած : Հիմա ասոնք եկան՝ տաճկին նաւեր 2 մղոնի չափ հեռուն կեցան, սկսան կռուիլ. համան փաշան իր խըրլանղըճը մնած՝ անանկ քաջուԹեամբ ասդին անդին կըպտըտէր, սիրտ կուտար ամմէնուն, որով մոսկովի նաւերուն շատ վնաս տըվավ. բռնադատեց սեպաստոպօլիս փախչիլ, որովհետև ան ատենը մոսկովին նաւատորմիղը (տօնանմիան) սև Ծովին մէջ շատ տկար էր քան տաճկինը. բայց իր նաւերէնալ իրեք հատ կորսըվելով բաց

՚ի մանրերէն , մնացած նաւերը առաւ օ-
ղուլին բերդին տակը բերաւ ։

Այս օղուլին բերդը թէպէտ զօրաւոր էր , բայց 1777 ու 1784 տաճկին հրամանաւ աւելի ամրցուց ներսէն դրսէն ան Ֆրանսըզ վարպետը որ կըսվէր բուան գուլան. (1) գրիգոր բօդէմքին իշխանը շատ բաղձալով աս բերդս առնելու 70 հազար հոգիով սկսաւ վրան գալ , շատ կռուելով ցամաքի վրայ տաճկին զօրացը հետ հաղիւ կրցաւ օղուլին տակը գալ , շատ հեղ վրան վազեց ; բայց ամմէն հեղուն տաճկէն կոտրտըվեցաւ , շատ մարդ կորսնցուց իր զօրքէն , անկից ետքը չիհամարձակելով օղուլին վրայ յարձըկիլ՝ հեռըվանց պաշարված պահեց . տեսնալով որ տաճկին նաւերը հոն ըլլալով , չէր կըրնար ծովուն դիհացէնալ ծեծել քաղաքը , անոր համար հրամեց նասօօ իշխանին՝ որ նորէն ծեծկըվի տաճկին նաւերուն հետ ։

Նաւերուն կռիւը սկսաւ յուլիսի 1 գիշերը , որ 8 ժամ քշեց , օղուլին բերդէն թէպէտ շատ կրակ ըրին մոսկովի նաւերուն վրայ , բայց տաճկին նաւերը վնասվեցան . ան միջոցին մէջ ցամաքէնալ սկսան մոսկովները յարձըկիլ օղուլին վրայ . առաջ դուրսի եղած մարտկոցները պատնէշները (թապեաները , մէթերիզները ) առնել , ծովէնալ մոսկովլին պզտիկ նաւերը լիմանին դիա-

---

(1) Աս ան վարպետն է՝ որ նոյնպէս Թագաւորին հրամանաւ ամրցուցերէր պէնտէր , իսմայիլ , հօթուն , նովի , ու պէլկըրատ ։

ցեն մօտիկնալով խումպարա ձգել քաղքին
վրայ, որով շատ տներ փլան ։

Հասան խափուտան փաշան չուզեց երբորդ-անգամ մասկովին հետ կռուիլ, առաւ նաւերը մեծ ծովը ելաւ, ամմէնն վառնա տարաւ, բայց վերոյիշեալ յանդուգն յունէս եաւէն գալով նաւերով ինչվան վառնային լիմանին մէջը մտաւ, իրեք նաւ ձգաեց, մնացածը խափուտան փաշան առաւ տարաւ սամսոն։ Լասօ իշխաննալ ծովը արձակ գտնալով նոյեմբ․, մէջ մասկովի նաւերով եկաւ պերեզէն կղզին առաւ, որ օզուի լիմանին դիմացն է, ու երբ անոր նախապարիսպը, ան ատենը օզուն ծովէն ցամաքէն պաշարված մնաց։ Լրբար ձմեռը վրայ եկաւ ան տարի խիստ սաստիկ ցուրտ ըրաւ, անանկ որ սև ծովը մէկ սառուցի (պուզի) ծով մը կերևնար (1) մասկովները որ սորված ըլլալով պաղուն կըդիմանան, կուզէին սաանկ սաստիկ պաղ ըլլալը, որ ոչ զի իրենց զօրաց աւելի հեշտ (խօլայ) ըլլայ ծեծկըռվիլը, բայց գետնի տակ խորունկ փոսեր փորելով կըցան նստիլ, որոնք

---

(1) Աս տարուայս ետքերը և հետևեալ տարույն առաջները ամմէն եւրոպա սաստիկ եղաւ ձմեռը․ առնօ և գետերի գետերը սառեցան, վենետիկի ծովը ցամաքի պէս անանկ սառեցաւ, որ ցամաքէն ինչվան վենետիկ քաղաքը ամմէն բեռ մարդիկ ծովու վրայ քալելով կըտանէին կըբերէին, սովէն (խըթլըխէն) վախնալով մաքոր (կէօմրիւքը) վերուցին, ա՛լ որ ինչ ուզեր ուտելու բան կըբերեր առանց մէկ տուրք մը տալու, անանկով մեծ առատութ բացվեցաւ ժողովրդեան ։

օզուին տակը եղողները 14 հազար էին. իսկ օզուցիք 25 հազար հոգի մը կելլային զանազան դաւանանքով, 20 հազար ալ տաճիկ զօրք կային, ասոնք չէին կարծեր որ մոսկովը անանկ անտանելի կծու ցուրտին և անանկ Թանձր ձիւնին օրերը յարձըկի: Բոդէմքինը խիստ նեղութեան մէջ ընկատեմնալով որ իր զօրաց ապրուստը կըպակսէր, ցուրտնալ անհնարին կընեղէր, միտքը դրաւ խալըսելու համար մէկէն վրայ յարձըկիլ, բայց տեմնալով օզուին ամրուԹիւը՝ մէջի զօրաց ահեղ պատրաստութիւնը՝ չէր իշխէր, ուրիշ վարպետութիւն մը բանեցուց՝ ինչպէս որ պատերազմին մէջէն եկողները մեզի՝ պատմեցին, մարդ խրկեց ըսելով որ՝ ձիւնը անանկ շատնալով ես հիմա չեմ ծեծկըվիր, կելլամ կերԹամ, բայց պատրաստ կեցիք, գարնանը ատենը ամմէն ուժովս պիտոր գամ, հարկաւորապէս աս քաղաքս պիտոր առնեմ. աս ըսելով Թըրւամբէթաները զարնելով ամմէն իր զօրքը ժողվեց ելաւ գնաց: Օզուցիք իրենց աչքովը տեմնալով մոսկովին ասանկ հեռընալը, սաստիկ ցուրտէնալ նեղած ըլլալով, ամենուին անհոգ մնացին Թմրեցան:

Ահա աս անհոգ կենալնուն ու վարպետ Թօփճի չունենալնուն ան ատենը՝ օզուն կորսնցընել տըվաւ, ինչու որ բոդէմքինը խորամանկութիւն բանեցընելով, գիշերանց իր զօրքը ուրիշ ճամփով մը պտըտցընելով, նորանց դարձաւ եկաւ օզուին քովը: Դեկտ. 17 որ մոսկովներուն Սբ. Նիկողոսի տօնն է, և ի-

րենց տէրութեան պաշտպան, եղաւ մէկ յիշատակելու օր մը, ան օրը քահանաներն քարոզ տըւաւ ու որ աս օրս Թագաւորին համար մեռնի՝ նը Նիկողոս պատրաստ կեցած է երկինքը, մէկէն ձեզ կառնէ արքայութի կըտանի, աս քարոզնալ լսելով մոսկովին զօրքը՝ կրկին և կրկին զօրանալով՝ ելան իրենց կեցած տեղերէն, որ խորունկ փորված փոսերուն մէջ կեցած էին, վեց թև բաժնըվեցան, բալէմ զօրապետը յանկարծ յարձըկեցաւ լեռան վրայ պատնէշներուն վրայ. բալթեմպրախ գնդապետը բերդին դռները կոտրելու վազեց, բլադօվ գնդապետը ապառաժ քարին վրայ վազեց, ուր 500 առնավուտ զօրք կեցած էին պաշտպանելու, ամէնէնալ կորիճ վարպետ Թիւֆէնկ նետող ըլլալով, ասոնք շատ կռուեցան, շատ մարդ ջարդեցին մոսկովէն. անհալդ պէռնպուռկ իշխանը քաղքին վրայ յարձկեցաւ, կըակներու թուրքերու մէջէն անցնելով դըրան մէկը առաւ. հոն օղուցիք երկու լաղըմ բուրնկցուցին, որ շատ մարդ սպաննեց մոսկովի զօրքէն, բայց անանկալ մտիկ չընելով մոսկովը՝ հասավ եկավ ան աշտարակը՝ ուր որ հասերէր նաև տօլկօրուքի իշխանը.

Տաճկըրները սիրտ ընելով դուրս յարձըկեցան ան պատնէշներէն որ լեռան վրայ շինված էին, բայց մոսկովի ձիաւոր զօրքին ձեռքը ընկան, որոնց վրայ չէին կարծէր որ այնչափ բարձր տեղ կարենան ելլալ. ան օրը անանկ թանձր ձիւն կուգար, անանկ

կծու հով մը կըփչէր ձիւնով որ մարդուն շունչը կըխղդէր, ձիւնը աչվըներուն մէջը կըխօթէր, ձեռվըներին չէր բռնէր զէնքը, մէկ պարութի մահսէնմընալ բռընկելով շատ մարդ կոտորեց վնասեց. ծովուն դիացէն նաւերը անդադար խումպարա ձգելով ցամաքի դին կըփախցընէր մէջինները, բայց հոնալ փախչելու տեղ չիգտնալով չխտէին որ ուր երթան: Այս միջոցիս մէջ հասան փաշայ խալէսինպլ որուն վրայ առաճկընէրը մեծ յոյս ունէին՝ մոսկոֆներէն առնըվեցաւ, վերջապէս օղուլին դռներնալ առին ներս մտան. ան ատենը օղուցիք կտրըճուլթք տներուն մէջը եղած թիւֆէնկ կըպարպէին մոսկոֆներուն վրայ, անանկով մոսկոֆներէն շատ զօրք կոտորտեցին, իրենքալ կռուելով տներուն փլածին տակը մնացին՝ որ խումպարաները կըփլցընէին: Բոդէմքին ժամացոյցը ձեռքը բռնած կռուին քշելը կընայէր, հինգ քառորդ անցաւ քաղաքը առնըվեցաւ, մտնալէն ետև աչվըներին դարձած թուր 'ի վեր թուր 'ի վար ընելով մէջի պահապան զօրքերը ջարդեցին. և որովհետև թալլել հրաման տրված էր, շատ դանձ ու հարստութի թալլեցին խազախները, այնչափ ցածցաւ մաճառ ու վենետիկ ոսկիին գինը՝ որ 2 ռուպլիով մէկ եալտըզ ոսկի կըփոխէին: Մոսկոֆներէնալ շատ մարդ ջարդըվեցան, 2 զօրապետ մեռան, 3 մեծ հազարապետ, 56 պզտիկներէն. 6 հազար հոգիի չափ զինուորներ մըը մեռած մըը խոցված. ուրիշները ամմէն մե-

ուած հազարապետները 540 հոգի կրցնեն. Մէկ քաջ անուանի տաճիկ կնկան մը համար պատմեցին որ՝ ան խռովութեան ատենը՝ վերէն գաղտուկ տեղէն Թիւֆէնկ պարպելով ետեւէ ետեւ 18 հոգի սպաննեց մոսկովներէն՝ որ իր տանը առջեւէն կանցնէին։

Նոյն օրը մէկ գունդ մը խաղալիկներու ալէն-տէրի դէն գացին, երբոր տնեսութեր կամ Թուալա գետը անցան, մէկ գունդ մը տաճկի զօրքի դըպան, հոն ծեծկըրվեցան զարկին.

